ԱՐԻԱՀԱՅ

# ՔԱՂԱՔԱՆ

ՆՈՐՈԳ ՏԵՍՈՒԹԵԱՄԲՔ
ԵՒ ՅԱՒԵԼՈՒԱԾՈՎՔ

---

ԱՇԽԱՏԱՍԻՐԵՑ

Յ. ԹԻՐԵԱՔԵԱՆ



ՎԻԵՆՆԱ
ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ
1914

# ՅԱՌԱՋԱԲԱՆ

---

Կարծեմ՝ թէ չկայ այսօր իւր լեզուին հետ քիչ շատ ծանօթացած հայ մը որ չգիտնայ թէ բազում պարսկերէն բառեր կը գտնուին հայերէնի մէջ որոնց լիակատար ծանօթութիւնը դեռ կը պակսի մեզ:

Օտարք, մեզմէ աւելի հետաքրքիր, վաղուց հոգացած են այս պէտքը, եւ բարեացապարտ Հիւբշմաննին հոյակապ գործը միշտ հսկայ կոթող մը պիտի մնայ հայ բանասիրութեան համար: Սակայն եւրոպական լեզուով եւ եւրոպացւոց ուղղեալ, Հայ հասարակութեան մեծ մասին համար կնքեալ տառ է ան. եւ յետոյ, անկէ մինչեւ ցայսօր նոր հետազօտութիւնք նոր լոյսեր բերին որք կ'արժէ որ արձանագրուին:

Այս ուղղութեամբ եւ յատկապէս Հայոց համար պատրաստուած հայ աշխատութիւն մը չերեւցաւ դեռ մեր մէջ:

Բարեյիշատակ Գ. Դպրի Պալատցւոյ բառարանին վերջը դրուած պարսկահայ բառացանկը. առաջնութեամբ միշտ յարգելի, սակայն արդի համեմատական ուսումնասիրութեան տեսակէտով հազիւ յիշատակելի է:

Հ. Ս. Տէրվիշեանին "Հնդեւրոպական Նախալեզու„ն վերլուծական գնահատելի փորձ մ'է, այլ ուղղակի մեր նպատակին չհայիր:

Ոչ ալ Տ. Յ. Հիւնքեարպէյէնտիինը որ ընդհանուր ստուգաբանութեանց շուրջը կը դեգերի. անմասն արդի մեթոտներէ եւ տեսութիւններէ, թէպէտ եւ ունի բաւական յաջող վարկածներ եւ հայեացքներ զոր անիրաւութիւն է անտեսելը: Գործոյս մէջ առիթ պիտի ունենամ յաճախ զինքը յիշելու:

Գալով իմ աշխատութեանս, սա՝ ոչ թէ այլոց ուսուցանելու. այլ յատկապէս իմ ուսանելու հետա-

1*

քրքրութեանս ծնունդն է: Ցափշտակուելով այն նմանութիւններէ եւ նոյնութիւններէ որ հայ եւ պարսիկ բառից մէջ կ'երեւէին, թելադրուեցայ նշանակել ատոնք հետ զհետէ. պարսկական աղբիւրներէն օգտուելով միշտ, մանաւանդ փէհլէվիէ եւ զէնդէ որոնց՝ հնարը գտած էի քիչ շատ ծանօթանալու:

Բայց յետոյ երբ եւրոպական նմանօրինակ հետազօտութիւնները ուսումնասիրեցի, զգացի որ իմ կարողութենէս շատ վեր գործի ձեռնարկեր եմ. բաւական չեկաւ ինծ իմ պատրաստութիւնս. շատ տկար գտայ իմ ոյժերս՝ համեմատելով գործոյն ծանրութեանը եւ դժուարութեանը. յիշեցի անմահ Հաֆըզին հետեւեալ տողը

که عشق آسان نمود اوّل ولی افتاد مشکلها

“զի թէեւ ի սկզբան դիւր երեւցաւ սէրը, այլ մէջը մտնելէն վերջը յայտնի եղաւ թէ ինչ դժուարութիւններ կ'սպասեն եղեր„:

Ուստի կամ տեղի տալ քաշուիլ կար ասպարէզէ, կամ սրտապնդելով յառաջ վարել, չխնայելով ջանք եւ յօժարութիւն: Այս վերջինին յորդորեցին բարեկամք. եւ այսպէս մարմին առաւ այս աշխատութիւնը՝ ըստ կարի օգտուելով միանգամայն համազգի եւ օտար արտադրութիւններէ: Ասոնց մէջ մասնաւորաբար յիշելի են Hübschmann, Meillet, Hovelacque, de Harlez, Casartelli, Darmesteter եւ այլ մի քանի ականաւոր գիտնականաց գործերը որ երբեմն ուղղակի եւ երբեմն անուղղակի այլ կարեւոր հայեցուածներով մեծապէս նպաստեցին մեզ մեր համեմատութեանցը մէջ:

Ազգայիններէն աչքի առաջ ունեցեր ենք “Հանդ. Ամսօրեայ„ի եւ “Բազմավէպ„ի վերջին տասն եւ աւելի տարուան հաւաքածոյները ուր այնչափ նիւթ ամբարուած կայ բանասիրական: Թող այլ կարգի զուտ հայկական գործերը, որչափ հնար եղաւ մեզ հայթայթել:

Պարսկական աղբիւրներու գալով. բաց ի ընդհանուր գթականութենէ որ բնականաբար պարտադիր է, ընդ ձեռամբ ունեցեր եմ Աւեստայն բնագիր եւ փազէնդ եւ պահլաւիկ եւ փարսի մեկնաբանութեամբք, եւս եւ Դաստուր Ջամասբջիի Փարսի գիտնականին անգլ.-պահլ. Բառարանին ցարդ երեւցած հատորները.

եւ فرهنك, برهان եւ غياث اللغات երեք ալ. մեծահատոր բառագիրք որք հին ոճով եւ իմացմամբ ըլլալով հանդերձ շատ յարգի են եւ ի բազում պարագայս շատ պիտանի եղան մեզ․

Զէնդ եւ պահլաւիկ բառերը կը ցանկայինք բուն իրենց յատուկ գրչութեամբ տալ, աւելի շօշափելի ընծայելու համար ապացուցութիւնները, այլ տպագրական դժուարութեանց պատճառաւ զանց ըրինք. շատանալով լատինական տառերով ինչպէս սովորութիւն է. այլ նոր պարսկերէնը միշտ արաբականով դրոշմեցինք առանց լատինատառ հնչման առընթեր. ենթադրելով որ մեր ընթերցողը անշուշտ պէտք չպիտի ունենայ այդ աւելորդ ընթերցուածին:

Համեմատականին մէջ, հեղինակներէ օրինակելով շատ մը մեզ անծանօթ լեզուներէ բառեր խճողելու չաշխատեցանք, բուն իրանականները բաւ համարելով որ մեր միակ կէտ նպատակին էր:

Արդարութեան պարտք կը համարիմ միանգամայն ըսել որ այն ամէն բառերը որ ինէ առաջ նշանագրուած եւ վերլուծուած են ուրիշներէն, որչափ ալ ես իմ կողմէս անկախաբար մի եւ նոյն արդիւնքի հասած եմ, առաջնոց անուան գրել իրաւունք համարեցայ, չնսեմացնելու համար անոնց աշխատութիւնը:

Եղան սակայն բաւական թուով բառեր ալ որ ուրիշներու քով չգտնուեցան, կամ գէթ ես չհանդիպեցայ. զորս իմ սեփական նուէրս կը կարծեմ հայ բառագանձին:

Կան դեռ բաւական բառեր որք կը զգամ թէ պարսկական ծագում ունին այլ որովհետեւ ուսումնասիրուած կամ բաւական լուսաբանուած չեն՝ ի բաց ձգեցի:

Կը հաւատամ որ այս քիչ շատ գուշակուած կամ մեկնուածներուն քով կան անշուշտ դեռ շատ մ'ուրիշներ ալ որոնց գոյութիւնն իսկ կասկածուած չէ, զորս ապագայ խուզարկութիւնք ի յայտ պիտի բերեն:

Հայ լեզուին իրանականին հետ ունեցած առնչութիւնը այն աստիճան սերտ եւ խոր եղած է որ որչափ աւելի ուսումնասիրենք այս վերջինը, այնչափ

աւելի լոյս կ'առնու առաջինը. ըստ իմիք եւ փոխադարձաբար, ճշմարտութիւն որ Կարնամակի թարգմանութեանս առթիւ ալ շեշտած էի:

Բայց Պարսկին այս խաւարամած ողորմելի վիճակին մէջ, այսպիսի ազնուական հետաքրքրութիւն մը անոնց կողմէ. մտքէ անցընելն իսկ աւելորդ է: Ընդհանուր Պարսկաստանի մէջ չհանդիպեցայ միւսլիւման պարսիկ գրագէտի մը. նոյն իսկ Եւրոպա կրթուածներէն, որ իր լեզուին պատմա-բանասիրականովը հետաքրքրուի:

Ամէն ինչ զէնտ ու փազէնտ ու փէհլէվի է անոնց համար, առանց որ ամենաղոյզն գաղափար իսկ ունենան, ուր թէ ծանօթութիւն. զէնդի եւ փէհլէվիի վրայ զոր Հնդկաստանի Փարսիները կը մշակեն:

Տարիներ առաջ Պոմպայի Կաճառին, յատուկ գրութեամբ. զգացուցած էի հայերէնի կարեւորութիւնը հին պարսկերէնի ուսման համար. եւ թելադրած՝ որ հայերէնի յատուկ ամպիոն (chaire) մը հաստատուի անդ, այլ ժամանակի եւ այլ զբաղանաց անթոյլատրութեամբ առանց հետեւանքի մնաց այս ձեռնարկը, թէպէտ եւ բաւական հետաքրքրութիւն յառաջ բերած էր եւ մասնաւոր յօդուածի մ'ալ նիւթ եղած Zartoshti անուն. Պոմպայ հրատարակուող անգլօ-Գուճարաթի հանդէսին մէջ (Ամք Ցազկերտի 1274, Հատ. Բ, Թ. 3).

Այնպիսի բառեր եւ դարձուածներ կան արդարեւ որոնց ծագումը եւ նշանակութիւնը պարսկերէնի մէջ մթագնած կամ աղօտացած են. եւ որոնց վրայ հայերէնը մեծ լոյս կը ծագէ. կան պահլաւիկ թիւր ընթերցուածներ որոնց վրայ համաձայնութիւն կը պակսի գիտնոց մէջ, այլ հայերէնը պահած լինելով նոյնը իւր յատուկ հնչմամբ եւ իմաստով, վճռողական բարձրագոյն դեր մը կը կատարէ:

Կան ալ հակադարձաբար շատ պարագաներ որ հայերէն ընդ առաջ եկած մթութիւնները փարատելու համար անհրաժեշտաբար պարսկերէնի դիմելու պէտք ունինք:

Այնպէս որ այս երկու լեզուները կրնանք ի բազումս իրարու օժանդակ եւ լրացուցիչ համարել:

Բաց ի այս բանասիրական կարեւորութենէն, պարսկերէնի ուսումը կամ պարսկահայ արմատներու

լիակատար գիտութիւնը մեզ ուրիշ մեծ նպաստ մ'ալ կրնայ ընծեռել. այն է բառակերտութիւնը: Փոխանակ ի պէտս յումպէտս մեզ բոլորովին օտար լեզուներէ անհամ եւ անարուեստ փոխառութիւններ ընելու որ լեզուին ոգւոյն հետ կը մաքառին, կրնայինք, ի հարկին, բուն աղբիւրին վերադառնալ եւ հարազատ եւ հայեցի կազմով եւ յօրինուածով նորանոր ընտիր բառերու ծնունդ տալ, ինչպէս կը տեսնենք որ ըրած են բուն նախնիք: Անոնց փոխառութիւնները այնպիսի քաղաքացիական հանգամանք մը կը կրեն որ այլ եւս ի բազումս անհնարին դարձած է որոշելը թէ բնիկ թէ եկամուտ են:

Բայց բնիկը եւ եկամուտը ո՞րն է լեզուներու մէջ: Ո՞ր լեզուն իրեն համար բուն բնիկ, ինքնեկ, ինքնեղ կրնայ ըսել, ո՛չ ապաքէն ամենքն ալ, որչափ կան, հազարաւոր փոխանակութեանց, տուրեւառութեանց, կլիմայական, ցեղական եւ այլ անթիւ ազդեցութեանց ծնունդ են:

Հայ ազգին պատմութիւնը դեռ նոր սկսուած է լրջօրէն ուսումնասիրուիլ: Նախ քան Հայաստանի հին բնակիչները, այսինքն Հիդիդները, Խալդերը կամ Ուրարդացիները, Ալարոդները եւն. ինչպէս կը կարծուին, նուաճել եւ այն աշխարհին մէջ բնակութիւն հաստատելը, Հայք շատ մեծ թափառումներ ըրած կ'երեւին, Մակեդոնիայէ Թրակիայէ անցնելով Փռիւգիա, Կապադովկիա եւ փոքր Ասիայի այլ եւ այլ տեղերը եւ ուղղուելով հուսկ ապա ի Մեծ-Հայս:

Դարերու երկար շարքին մէջ կատարուած այս պարայածութիւնները բնական էր որ մեծ եւ նոր խառնումներու ձուլումներու եւ կերպարանափոխութիւններու տեղի պիտի տային եւ ինչպէս որ ալ տուած են: Զարմանք չէ ուրեմն որ հայ լեզուին մէջ կը գտնենք այսօր ա՛յնչափ այլազան տարրներ: Տուրանականն ալ կայ, Իրանականն ալ կայ, Սկիւթականն ալ կայ, Քաղդէականն ալ, Ասորականն ալ, Յունականն ալ, Եբրայականն ալ. իւրաքանչիւրը իր որոշ չափով, որը քիչ, որը շատ:

Տիրականը վճռականը սակայն Արիա-Իրանականը եղած է: Երեք հազարի չափ հայ պարզ բառերուն:

*չըսելու համար արմատակա՛ն, զորս համբերութիւն ունեցած եմ վեր ի վերոյ համրելու, մէկ երրորդէն քիչ մը պակասը Արիա-Իրանական երեւցաւ: Ահագին քանակութիւն:*

*Զեմ ըսեր զուտ պարսկական, վասն զի բառեր կան որ մեզ ծանօթ պարսկերէնով ալ չեն մեկնուիր, այսինքն միջին պ.ով, Տէրիով եւ Փէհլէվիով, այլ մինչեւ զէնդ, մինչեւ սանսկրիտ բարձրանալու է:*

*Կը պատահի երբեմն ալ որ ասոնցմէ ալ լոյս մը չառնուի, այլ հնդեւրոպական միւս ցեղակցաց մէջ գտնուի բուն աղբիւրը, ինչ որ միանգամ եւս կը հաստատէ այն վարկածը թէ էր երբեմն Արիական հնագոյն մայր-բարբառ մը, այսօր շիջեալ, որոյ ճառագայթումներն են այսօրուան կենդանի կամ հին քարացած բոլոր հնդեւրոպական լեզուները:*

*Ասոր համար է որ մենք ներկայ աշխատութիւնը Արիահայ անուանեցինք աւելի՝ քան Պարսկահայ:*

*Մեր հին յատուկ անունները մանաւանդ բոլորն ալ հին Արիա-Իրանական ծագում ունին որ նպ.ին անցած չեն, կամ հազիւ: Փարսի Զրադաշտեաններն են որ այսօր ալ այս անունները կը կրեն անաղարտ, Սասանեան հոլովոյթով եւ կերպարանափոխութեամբ*

ایراندخت = *Երանդուխտ,*
پریدخت = *Պար(կ)ադուխտ,*
پریزاد = *Պայազատ,*
خداداد = *Աստուածատուր,*
کیخسرو = *Կաւ Խոսրով.*
اردشیر = *Արտաշիր. եւն եւն:*

*Ասոնց ամբողջութիւնը լիակատար տուած է* **Hübschmann:**

*Մենք մի քանի անուանց ստուգաբանական քննութիւնը միայն աւելցուցինք որոնց մասին կամ բան մ'ըսուած չէր տակաւին, կամ վեր ի վերոյ եւ զորս նոր հայեացքները կրնային քիչ մ'աւելի լուսաբանել:*

*Ահա այս է գործը իւր էական հանգամանաց մէջ:*

*Գիտեմ որ շատ հեռի է գիտութեան եւ նիւթոյն պահանջած պայմաններուն համապատասխանելէ, եւ եթէ կը համարձակիմ ի լոյս տալ, ոչ այն տղայական յաւակնութեամբ է որ պատշաճապէս մշակեալ գործ մը կը ներկայացնեմ հայ գրականութեան. զոր արդէն խոստովանեցայ թէ իմ ոյժերէս վեր տեսայ, այլ գոնէ իբր անտաշ եւ անարդ նիւթ մը զոր կարող են ապագայ խուզարկուք աւելի ճեռնհասօրէն ուղղել ճշդել եւ կատարելագործել:*

*Նիւ-Եօրք, 30 Մարտ 1913:*

Ց. ԹԻՐԵԱՔԵԱՆ

# ՀԱՄԱՌՕՏՈՒԹԻՒՆՔ

| | | |
|---|---|---|
| Hb. | = | Hübschmann |
| Hr. | = | de Harlez |
| D. | = | Darmesteter |
| Հ. Ս. Տ. | = | Հ. Ս. Տէրվիշեան |
| Հ. Պ. Ի | = | Հիւնքեարպէյէնտի |
| Հ. Ա. | = | Հանդէս Ամսօրեայ |
| Ա.բ. | = | Առձեռն բառարան |
| Կարն. | = | Կարնամակ |
| Սնս. | = | Սանսկրիտ |
| Հպ. | = | Հին պարսկերէն |
| Մպ. | = | Միջին պարսկերէն |
| Նպ. | = | Նոր պարսկերէն |
| Պ. | = | Պարսկերէն |
| Զն. | = | Զէնդ |
| Փզ. | = | Փազէնդ |
| Պհլ. | = | Պահլաւ |
| Յն. | = | Յունարէն |
| Ար. | = | Արաբերէն |
| Տճ. | = | Տաճկերէն |

# Ա.

*Ազուր* — նպ. آگور որոյ արաբացեալ ձեւն է آجور կամ آجر։ Վերջինս աւելի գործածական է։

*Ազատ* — զն. âzâta զոր â + zan կը վերլուծէ Hr. â յարգական մասնիկով եւ zan արմատով որ մեր ծին (ծն)ն է։ Որով ազատ կը նշ. բարձր, ազնուական ծնունդ։ Աւելի լաւ էր, ըստ իս, ուղղակի داز արմատը առնուլ نداز բայէն որոյ անցեալ դերբայն է داز եւ ەداز որ եւ ի մեզ ինչ ինչ բարդութեանց մէջ պահուած է, ինչպէս Նուրազադ, Յերքազադ, եւն։

Այն հիմէն, բուն հայեցի կերտուածներէն զատ ինչպէս են ազադագէի, ազադարէար, եւն, ունինք պ.ի ուղղակի համապատասխանող՝

Ազատական = آزادكان։
Ազատանի = آزادان։

*Ազդ* — հպ. azdā եւ պհլ. azd կը դնէ Hb.։ Նպ.ի մէջ հանդիպած չեմ այդ բառին։

*Ազոխ* — տ. Ածուխ։

*Աթաշակ* — յետնոց բառ թուի, արաբական շրջանէն եւ հիւանդութեան մ'անուն. Նպ. آتشه (برهان) որ սաստիկ եռք եւ ջերմ կը

պատճառէ, յորմէ անունն որ կրակ, հրային կամ հրաբորբոք կը նշ.։

Աժան — տ. Արժան։

Ալոճ — նպ. آلوچ, آلوچه ։

Ախոռ — նպ. آخور որոյ պհլ. ձեւը axᵛar կը կարդայ Hb., սակայն պհլ. գրչութեան մէջ այս ընթերցումը պարտադրող նշան մը չտեսայ։ Ա՛յնչափ եւ թերեւս աւելի ուղիղ է հօս — կամ o ընթեռնուլ որչափ վ։

Hb.ին յիշած akᵛar i storān կազմին պատահած ենք Կարնամակին մէջ զոր սակայն բացորոշապէս ախոռ ի ստորան կը հանէ Դաստուրը զն. գրչութեամբ որ ստորանոց ախոռ կը նշ.։

Գալով բառին վերլուծութեանը տար հիմ կ'առնուի պհլ. հնագոյն ձեւ մը զոր ոմանք avχor կարդացին Ջուրէ իմաստով, v = b ի փոխանակութեամբ՝ ինչ آوخور = آبخور. եւ այլք av χᵛar կամ av χur, պարզ յերկարում մը համարելով առաջին եզրը, առանց ջրի գաղափարին հետ կապուելու. եւ նպ. آخور ին երկար ա՛ն ալ՝ ինկած v ի նշանակ համարեցան։

Առաջին հայեցքը աւելի հիմնաւոր կը թուի, ջուր խմել եւ կենդանական պէտքի մը գոհացում տալը ախտաւայել համեմատութեանց մէկ կարեւոր մասը կազմելով։

Ախմար — տ. Անհամար։

Ախտ — զն. akhti, պհլ. akht որու համար Ph. Engl. բառարանին մէջ երկու առում նշանակուած է։

Գոյ. = filthiness, rubbish, refuse (*գարշելիք, ապականութիւնք*)։

Ած. = bad, wicked, ill (*յոռի, տգեղ, խոժ*)։

*Մենք այս երկու առումներն ալ ուրոյն ունինք*։

*Մեր ախտը երկրորդ առումը կը պահէ, հիւանդութիւն, ցաւ, վիշտ, եւն, տարածուելով միանգամայն յոռութեան՝ մոլութեան՝ մոլորութեան գաղափարին ալ, ինչպէս կ'ըսենք ախտանալ ղ..., եւն*։

*Իսկ առաջնոյն՝ այն է անմաքրութեան գաղափարին համար, մի քիչ յեղանակելով բառը, այն է փոխանակելով խն իւր լծորդ Ղին հետ՝ ունեցած ենք աղտ յորմէ թերեւս յառաջ եկած են եւ եղտ եւ կեղտ, օր. աղտիւր = եղտիւր, եւն*։

*Ախտաւոր* — *պհլ.* *aχtar*, *նպ.* اختر *թէ աստղ եւ թէ բախտ կը նշ.։ Այս վերջին առմամբ ունինք վատախտաւոր իբր* بداختر *կամ աւելի պահլաւօրէն՝* وداختر = *վատախտար* = *չարաբաստիկ*։

*Ախտարմող* — *Մաղ* — *մոլ, զոր ախտարմարք կը պարզէ Հպ.ին, վրիպակ համարելով մող ընթերցուածը, այլ ես աւելի կը միտիմ կարծել* Hb.*ին հետ թէ պհլ.* *aχtarmarն է սա՝ ր = լ փոխանակութեամբ որոյ օրինակները շատ են, ինչպէս յընթացս գործոյս պիտի տեսնենք*։

Իսկ ախտարմարը պարզապէս ախտար-համարն է, ինչպէս այլուր պարզեցինք (*amar, hamar, mar* = համար[1]) որ կը գրուի նաեւ շամար, աշմար, աշմաար, շմար եւ շմաար, նպ. شمار եւ اشمار որոյ հետ կը կապէ Hb. մեր նշմարն ալ։

Նոյն մտօք փարսի մատենագրութեան մէջ կան այլ բառեր ալ ինչպէս։

*aχtarsanas*[2] (նպ. اخترشناس) զոր նոյն տարրերով կրնանք ախտարճանաչ հանել ի հայ։

*aχtari-χrad*[2] զոր հայացնելու պէտք չունինք, լինելով յայտնի ախտարխրատ։

*aχtarstan*[2] (اخترستان) = ախտարաստան։

*aχtarmarz*[2] = ախտարմարզ որ Զոդիակոսի կամ ո՛ եւ է աստղի մը՝ տարածութեան մէջ գրաւած մարզը կամ սահմանը կը նշ.։

*Ածիլեմ* — պ. آزدن (√ آز) = ասեղով կամ այլ գործեօք կտել վիտել, ածիլել (برهان)։

*Ածուխ* — Հնտ. *ag, ang* (հուր) արմատներէն կը բերէ Հ. Ս. Տ. եւ ած-ուղ (ուխ) կը բաժանէ։

Հպ.ին ծաղէկին հետ կը նոյնացնէ տառերու տեղափոխութեամբ (ծաղ = ածղ) եւ Հ. Ա. Բագրատունիի միամտութիւնը կը մատնանշէ ծանօթութեան մէջ որ ածուխը անծուխ ըմբռնած է "զի ոչ եւս ծխի իբրեւ զփայտ" (քեր. զարգ.)։

Ես կը կարծեմ որ ճշմարտութիւնը Հ. Բ.ի քովն է պարզ եւ անբռնազբօս։ Անծուխը

1 Կարնամակ, էջ 9։

2 Phal.-Engl. Dict.

անծուխ է, այո, հին պարսկերէնի a ժխտականով որ այս բառին վրայ ալ մնացած է փոխանակ ն-ի փոխուելու, քնհինչպ. մի եւ նոյն կազմով եւ մօտ ունինք ալ դուխ որ. դ = ծ սովորական փոխանակութեամբ ա-ծուխ է, քիչ մը փոխաբերաբար, այսինքն չեփած, չհասունցած: Եւ երկուքին ալ նախատիպն է պ. آسوخ իմա ناسوختة չվառած, չեփած:

Ակահ — նպ. اکاه որոյ հնագոյն ձեւն է âkâs (զն. եւ պհլ.), զի շատ մը հին ձեւեր յորս ս կը տեսնուի, նպ.ի եւ հյ.ի մէջ շատ անգամ ճի կը փոխուի, ոչ զուգահեռաբար եւ միաժամանակ, այլ անկախաբար, ինչպէս զն. das (= 10) հյ.ի մէջ պահուած, այլ նպ.ի մէջ ده ի փոխուած է, իսկ پاس ը նպ.ի մէջ պահուած, այլ հյ.ի մէջ ս-հի փոխուած է:

Ակամայ — մին այն հազուադէպ բառերէն յորս հպ.ի a- ժխտականը պահուած է, ինչպէս a-amar = ան-մար = ան-համար:

Այս հին a ժխտականը սովորաբար ա-անցած է մեզ, եւ նպ.ի ալ نا, որով մեր ակամային դէմ նպ.ի մէջ կը տեսնենք ناکام կամ ناکامه:

Ակիշ — նպ. آگیش = երկաթէ մի գործիք՝ ճանկաւոր:

Ակիւռ — տ. Ագուռ:

Ահ — թուի լինել պ. باك (երկիւղ) որ նախ ուղղակի տուած է հյ. պակը (պակչիմ, պակնում). եւ ապա, լծորդաց փոխանակու-

թեամբ՝ վ-ի-ը: Կը սպասուէր նաեւ վ-ն մը, բայց սորա տեղ, ւ = ե լծորդութեամբ ունինք վ-ն (վեհեր, իմ, ու) եւ նոյն ի թաք վ-նէն հի անկմամբ՝ -ն որ եւ արհ (արհաւիրք) եւ ղի մը աւելադրութեամբ՝ զարհ (զարհուրիմ եւն):

*Ահանգ* — آهنك:

*Ահեակ* — Hr. զն. *havya* (ձախ) ի հեռ կը լծէ, բայց շատ հաստատ չերեւիր ինձ:

*Ահեկան* — մեր, ինչպէս եւ պարսից 9ր ամիսն էր սա եւ Ադէր (آذر) կամ Ատէր (آدر), կամ հայոցի Ատր (atar) կը կոչուէր յարմէ ատր-ական զոր կիրառութեան յաճախութեամբ դժուար չէր ահր-ական, ահեկ-ան եւ վերջապէս ահեկան ընել:

*Ահոկ* — պհլ. „*âhûk, âhû* = a blemish, vice“ (Ph. Dict.) = մեղս, պակասութիւն (Աբ.), նպ. آهو = هيب (فرهنك، برهان):

*Աղիկամի* = ազատ իր կամքին (Աբ.). պհլ. „*ahu-kâmê* = an absolute lord, one who is the master of his wishes“ (Ph. Dict.) = միահեծան տէր, այն որ ինքնիշխան տէրն է իւր կամքին:

*Աղիւս* — آخیز (Պլ. Դպ.):

*Աղճատ(անք)* — օտար հայագէտք առած չեն այս բառը. Հպ.ին միայն կը յիշէ աղաւաղանի հետ կապելով, իբր անոր հականակը, աղաւ-կատանքը երիտասարդական հասակի ախտ նկատելով եւ աղճատանքը զառամեալ հասակի վիճակ: Ցուած օրինակն ալ արդարեւ

*ի նպաստ կու գայ. “Մի՛ խոտան համարել (զզառամեալն) վասն դողդոջ եւ աղձատեալ հասակին.„*

*Բայց աս բացատրութիւնը բառերուն առնչութիւնը միայն կը յայտնէ, չվերլուծեր։*

Ph. Engl. *բառարանին մէջ* akhtjâdû *բառի մը կը հանդիպիմ զոր կը մեկնէ.* „Name of a wicked man, the name of a notorious magician generally called Akht the forcerer“ = *անուն մհուկի մը, անուն նշանաւոր կախարդի մը ընդհանրապէս կախարդ Ախտ կոչուած։*

*Աւեստաբար* akhta jâtû, *փզ.* akhad jâdû, *մպ.* اخد جدو (aχd jâdû), *զոր պահլաւաբար հայացնելով կ'ունենանք ախտ ջատու։*

*Սա չէ՞ արդեօք մեր բառը, բանդագուշանքը եւ զառանցանքը հիմ առնելով թէ կախարդական խաբեբայութեանց եւ թէ մտացնոր հասակի։*

*Աղուէս — եթէ մէկէն ի մէկ նպ.* روباه*ը գտնենք հանդէպ, անպատրաստ մտքերը պիտի ըմբռնեն անշուշտ՝ չգտնելով անցման օթեւանները։ Հետեւինք ուրեմն բառին կրած այլ եւ այլ երեւոյթներուն։*

*Նպ.* rubah*ը կը պատասխանէ պհլ.* rôpâs*ին,* s — h *փոխանակութեամբ։*

*Նոյն* rôpâs*ի պէսպէսութիւնները եղած են ուրիշ ցեղակից ճիւղերու մէջ տեսնուած* rûwas, rôpask, rûbas, *եւն ձեւերը։*

Ասոնցմէ ալ հնագոյն մնս. lópâça տիպը կայ որոյ այլակերպութիւնները կրնան համարուիլ միւսները, յորմէ եւ ἀλάπηξ եւ ἀλωπεχ յն. ձեւերը: Այս վերջինը կ'ընդգրկէ մեր բառը որ կը պահէ իւր -ն, որով կ'ունենանք աղո(ւ)էս ուր մեր կնճռոտ -ը դիմացը կ'ելլէ օտար pի եւ vի եւ Նոր հարցի (problème) մ'առաջը կը դնէ մեզ, գիտնալ թէ ինչ կը հնչուէր ի հնումն մեր բառը: Եթէ ըսենք -ղվէ-, ըստ այժմու սովորութեան, բառին մէջ մի նոր տարր (վ) մուծած պիտի լինինք, խզելով նախնական տիպերու հետ առնչութիւնը ուր կը տեսնենք թէ op, ow, ub, uw ձայները հաստատուն եւ տիրող են:

Հարկ ի վերայ կայ ուրեմն ընդունելու թէ մերն ալ op, մանաւանդ թէ ow էր եւ իբր այն կը հնչուէր -ղովէ- որով միայն կը հաշտուի -ին գոյութիւնը եւ հին ձայներու դաշն կապակցութիւնը:

*Աղտ* — տ. Ախտ.

*Աճ* — գն. *azին* հետ կը համեմատէ Hr., rejeter, repousser (ընձիւղել, վերաբուսնել) նշանակութեամբ:

*Աճապար(եմ)* — Հպ.ին ճեպ եւ հաղճեպէն բերելուն հաւանած չեմ. բառը բոլորովին խանգարել ծամածռել հարկ է այդ ծագումը հաստատելու համար. մինչդեռ چپاری կամ چپار աւելի մօտ է եւ կը նշ. պիսաւոր կամ խայտաբղէտ ձի. հոս ձիուն որակէն աւելի

*երագոտն հանգամանքին հետ կապելով անշուշտ գաղափարը։*

*Կրնայ ալ մտածուիլ որ* چاپار*ը թերեւս մի խանգարեալ ձեւը լինի* اچارپا *(քառասմբակ), երագութեան գաղափարին ակնարկելով միշտ։*

*Աճառ* — اجار *եւ աճառեմ* = اچاريدن (فرهنك)*, որով հարկ չմնար օծ(ումն) արմատին եւ ի հակառակէններուն (Հպ.)։*

*Աճպարար — կրնանք մի ամփոփումը նկատել* [illegible] *որու հետ կը դաշնակցի թէ կազմով եւ թէ նշանակութեամբ, զի աճպարարութեան մէջ ալ տիրող գաղափարը եւ խաղին բովանդակ գաղտնիքը կացուցանողը ձեռաց աննշմարելի արագութիւնն է։*

*Ամ* — *զն.* hama, *սնս.* sama*։*

*Ամանոր — ամ եւ նոր* (نو) *ի յարակցութեամբ = նոր տարի։*

*Ամանորաբեր — ամանորին եւ բեր (բերք, բարիք, բարութիւնք* = بار*,* بر *պտուղ, խայրիք) ի բարդութիւն որ կը նշ. նոր տարւոյ բերք եւ ոչ թէ ամանոր բերող, ինչպէս ոմանք կարծեցին։*

*Ամառն — զն.* hama *թէ ամ (տարի) եւ թէ ամառ կը նշ., իսկ ծայրի* [illegible] *կրնայ պարզ վերադիր մ'ըլլալ, ըստ օրինակի* summer. sommer*ի, ինչպէս կը կարծէ* Hb. *որուն եւ ի դէպ կու գայ* [illegible] *իբրեւ հանգէտը* [illegible]*, ուր արմատը* [illegible] *միայն* = زم *(ձմեռ), յորմէ* زمستان*։*

*Ամբար* — փզ., պհլ. եւ նպ. انبار, ի բայէս انباشتن (լնուլ) եւ انباردن (ժողովել, համբարել)։

*Ամբարիշտ* — -ն ժխտականով որ Ֆի քով ն դարձած է եւ բարիշտ (որ եւ պարիշտ = پرست) արմատով մի բարդութիւն, իբր ناپرست = այն որ կը թերանայ ի կրօնականս, եւ տարածաբար՝ անիրաւ, անզգամ, չարագործ, եւն։

Պարէշտ արմատը դուն ուրեք գործածուած է մեր մէջ, զ. օ. Խուդապարէշտ եւ մի քանի այլք, այլ ասոր տեղ իւր ամփոփ պաշտ ձեւն է յաճախականը, պաշտեմ, պաշտօն, աստուածապաշտ, արեւապաշտ եւն, մինչ պարսիկը միշտ անփոփոխ կը գործածէ. آتش پرست, خدا پرست, زر پرست, بت پرست եւն։

*Ամբոխ* — սկզբնապէս անբօհ, պ. انبوه, ուր առընթեր բի ազդեցութեամբ ն մ-ի փոխուած։

*Ամեն*
*Ամենայն* } տ. Համայն։
*Ամէն*

*Ամոխախ* կամ ամօղխօխ = մէկ տեղ մեծցած՝ սնած, ընտանի, ծանօթ (Աբ.)։ Տեղ մը յիշատակուած չգտայ այս բառը որ պարզապէս همخواه ը կը թուի ինձ, իբր խորհրդակից, կամակից, միաբան, միահաւան, ինչպէս ունինք պհլ. Նմանակազմ համակամակ (համակամ) եւ համաբաստակ (համավաստակ) եւն։

*Ամպարտքաշ* կամ անդարթաշ — Եղիշէի դժուարիմաց բառերէն մին է որու համար

քիչ յոգնած չեն բանասէրք։ Կրնամ՝ սակայն վստահութեան մեծ չափով ըսել թէ ինձ համար բոլորովին պարզուած է այս առեղծուածը եւ ազնուութեան պարտք կը համարիմ յայտնել որ ինչ լուծման եւ եզրակացութեան որ ես յանգեցայ անկախաբար, իմ սեփական խուզարկութիւններովս, տեսայ որ ճիշտ մի եւ նոյն հայեացքը պարզեր է նաեւ բարեյիշատակ Միք. Փորթուգալ փաշա՝ իւր Եղիշէի Ուսումնասիրութեան մէջ, ինչ որ միանգամ եւս կու գայ բարձրացնել իւր արդէն բարձր արժանիքը եւ խոր հմտութիւնը որ հին Արիական աշխարհի եւ լեզուաց ի մօտոյ ծանօթութիւն չունենալով հանդերձ, այդչափ ճիշտ զարկեր է նպատակին, ինչպէս եւ ուրիշ շատ կէտերու մէջ կատարելապէս յաջողած։

Արժանաւորաց այս հարկը հատուցանելէ զկնի, պարզենք հիմա խնդիրը։

Ա[illegible] գրչութեամբ հին փարսի մատենագրութեան մէջ բառ չկայ. այդ վերադիր [illegible]ը, ինչպէս կարծած եմ ես եւ նոյնը կը հաստատէ Փաշան ալ, պատուագրեալ [illegible] մ'ըլլալու է որ գրչագրաց անհմտութենէն եկեր միացեր է բուն բառին հետ որ "պարտքաշ" է, ինչպէս varianteի մը մէջ ալ տեսնուած է։

Խորտա-Աւեստայի Փ–ՐեՐներուն[1] մէջ մի քանի տեղ կը հանդիպինք այս բառին որոյ բուն զն. պարզագրութիւնն է։

1 Ջղջում։

*paorio-tkaêsha* որ անցնելով *paoriotkêsh* միջինէն յանգած է ի պհլ. *partkash* (պարտքաշ)։

Արդ՝ բառին առաջին եղըն է *paorio* որ կը նշ. առաջին, հին, նախնի. իսկ երկրորդը՝ *tkaêsho* = քէշ, դեն, կրօնք, որով բառին իմաստը կը լինի հին դէն։

Հոս պզտիկ դժուարութիւն մը կը ծագի, ո՞րն է այս հնագոյն կրօնքը, ա՞յն որ յառաջ քան զԶրադաշտ գոյութիւն ունէր ի Պարսս, թէ բուն Զրադաշտի տակաւին անայլայլ եւ անաղարտ պահպանուած հնագոյն վարդապետութիւնն էր։

Փաշան աւելի առաջին կարծիքին ոյժ տալ կը թուի, չժխտելով միանգամայն եւ երկրորդին հաւանականութիւնը. մինչ Hr. երկրորդին բացարձակ կը յարի։ Իւր Աւեստայի թարգմանութեան մէկ ծանօթութեան մէջ (էջ 494), սոյն բառին առթիւ կ'ըսէ.

„Ce mot ne désigne donc point les justes antérieurs à Zoroastre, mais les premiers adeptes de la loi mazdéenne, les premiers Ahuratkaesho“.

Որովհետեւ Եղիշէին ալ յարուցած խնդիրը, մանաւանդ Սասանեան այն դարուն, մազդեզնական աղանդի վրայ էր եւ նորա այս կամ այն զանազանութեանց կամ հանգամանաց կ'ակնարկէր, հաւանականագոյն կը թուի կարծել թէ Մանիի, Մազդակի եւ այլ պղտորիչներու կողմէն չաղարտած՝

չխանգարուած բուն հին Զրադեշտեան վարդապետութիւնը հասկնալու է աւելի։

Ամիս — առ հասարակ ընդունուած է որ զն. mâo եւ մնս. mâs արմատները ծնունդ տուած են այլ եւ այլ ճիւղերու մէջ երեւցած բոլոր զանազանութեանց, ինչպէս յն. μὴν եւ μεις, լտ. mensis, հպ. mâha, նպ. ماه զոր կը հաստատէ նաեւ մեր մահ(իկ) ձեւը։

Ամուսին — տեղ մը յիշուած չգտանք այս բառը, այլ սակայն برهان.ի մէջ կայ اموسی մը զոր ամուսինի կը ձայնագրէ եւ կ՚ըսէ թէ այն. երկու կանայք որք մէկ այրի մը կը պատկանին՝ իրարու նկատմամբ اموسی են։ برهان.ին ընթերցուածը կարեւորութեան չունի. պ. հեղինակաց ամէնէն տկար կողմն է phonétiqueը. թէ արաբական նշանագրաց անբաւականութիւնէն եւ թէ մանաւանդ ձայնական վերլուծութեանց մէջ իրենց կատարեալ տգիտութիւնէն։

Յայտնի կ՚երեւայ որ բառը իսկապէս ամուսինի կամ ամուսին է, ինչպէս մեր ձայնը կը վկայէ. նշանակութիւնը անշուշտ կրնայ փոփոխութիւններ կրած ըլլալ։

Պարսից աւանդապահութեանը շատ վըստահ չըլլալուս, մանաւանդ որ հիմա գործածութենէ ալ ինկած է բառը, որովհետեւ բնաւ ուրիշ տեղ լսած եւ հանդիպած չեմ, մեր պահած իմաստը ճշդագոյնը եւ հարազատը կը համարիմ.

Ամփոփ — բունը անփոփ, ժի ազդեցութեամբ

ն մի փոխուած. պ. انبوب որ կահաւորում կը նշ., այլ բուն իմաստը տուողը اندون բայն է որ հաւաքաբար իրարու վրայ դիզել կը նշ. որով մեր բառին կը զուգակցի։

Այդգոյն — ասոր պատասխանող պհլ. ձեւ մը կայ aitûn (այդուն) որմէ անպատճառ կը ին-կած կը համարիմ, ըստ որում նման կազմու-թեամբ angûn մ'ալ ունինք որ մեր անգոյնը կը ներկայացնէ, յորում կը պահուած կը տեսնենք։

*Aitûn*ը գն. *aeta gaónai*ի սղումն է որ պհլ ի մէջ շատ գործածուած է, նոյնպէս եւ միջին պ.ի, Ֆիրդուսիի, եւն, եւ այժմ ալ բանա-ստեղծականին մէջ կիր ունի (ایدون)։

Նոյն կազմով է նաեւ *ayûn*ը որ անգոյնէ զատ կը գրէ նաեւ Ենգոյն եւ Համգոյնոյնը։

Ունինք նաեւ اندون (անդ, անդր) եւ ایدر (այդր), օր.

گرزان درین بیشه جستم پناه[1]
رسید ستم این لحظه ایدر زراه

Փախչելով՝ այս անտառին մէջ ապաստան փնտռեցի։

Այս րոպէիս այս տեղ (այդր) հասայ ճանապարհէն։

Սոյն կարգի վերաբերող մի ուրիշ բառ ալ կայ պհլ.ի մէջ զոր *hadûînak* կ'ուզէ կար-դալ Hr., փակագծելով սակայն „étymologie

1 Ֆիրդուսի։

incertaine“ (տ. Յատուկ), եւ զոր *aïninak*[1] կը կարդամ ես փարսի Դաստուր Խոտաեարին հետ եւ մեր այնանակը կ'իմանամ, հետեւողութեամբ այսանակի, քանի որ տրուած մեկնութիւնն ալ (manière, espèce, manière d'être) ճիշտ ու ճիշտ մեր բառին իմաստին կը պատասխանէ։ Ահա մի նոր ապացոյց եւս հյ.ի օժանդակութեան՝ պհլ. ընթերցուածները ուղղելու, միանգամայն բարձրացնելու արհամարհեալ ինչ ինչ ռամիկ ձեւերը ինչպէս են, պ. օ. սանակ, տանակ, նանակ որք պատկառելի հնութիւն մը կը մատնանշեն, լինելով խտացումը այսանակ, այդանակ, այնանակ նախատիպերու։

Այս դիմորոշ ցուցականներու մէջ պարսկերէնը չկրնար մրցիլ հյ.ի հետ որ շատ ճոխ եւ շատ երփներանգ է։ Մինչ պարսիկը կը շատանայ این ու آن ով եւ հազիւ կը բաղդրէ ایدون, انکون եւ աւելի ցանցառ ایدر, հայը իւրաքանչիւր դէմքի համար որոշ եզրներ ունի.

սա, դա, նա
այս, այդ, այն
սոյն, դոյն, նոյն

ընդ որս եւ անձնորոշներն

ես, դու, նա.

մակբայներով

[1] Կարնամակ, էջ 4։

ատի, այտի, անտի,
աստ, այդր, անդ, անդր

բղխելով բոլորն ալ արմատական Ս. Դ. Ն. դիմորոշներէ որ ամենուն մէջ ալ կ'երեւայ եւ կ'իշխէ:

Մեր այս բազմօրինակ եւ բազմերանգ ճոխութիւնը պարսիկը դիմորոշներով (մ, դ, շ) միայն գիտէ տալ որք պհլ.ի եւ փարսիի մէջ արդարեւ անհնարին պէսպիսութեան հասած են որոց ընդարձակ ծանօթութիւնը մեր նիւթէն դուրս է առ այժմ:

Այծ — աւեստական (զն.) բառ մ'է, azi որուն համար Hr.ը կ'ըսէ. „mot obscur qualifiant la vache. La tradition en fait la désignation d'une vache de trois ans“, եւ կը յաւելու. „Parfois ce mot est rendu par c h è v r e[1]“.

Երինջ եւ այծ նշանակութեանց ո՞րն է նախնականը՝ դժուար է որոշել, սակայն անուրանալի է որ 1500 տարիէ ի վեր հայ բառին պահած իմաստը ի նպաստ chèvreի կ'որոշէ դատը:

Թէ ինչու պ.ին ըն մեզ ժ անցած է, այսպիսի տառաշրջութիւնք այնչափ շատ են որ ներկայ դէպքը բացառութիւն չկազմեր:

Յն. αἰξ́ի ազդեցութիւն կամ նմանողութիւնը որ կ'ընդունի Հպ.ին՝ անտեղի եւ անիմաստ է, քանզի սա այն ընդհանուր

1 La langue de l'Avesta, 306.

վերացեալ գաղափարներէն չէ որ յոյներէն փոխ առած լինին մեր նախնիք։ Ցոյն լեզուն եւ գրականութիւնը ճանչնալէ շատ առաջ Հայերը ունէին այծը եւ անունով մը կը յոր-ջորջէին, անուն որ ամենահին ժողովրդի մը բարբառէն ծագում առած եւ հնդեւր. միւս շառաւեղներուն մէջ ալ, փոքր ինչ այլայլու-թեամբ, նոյնը մնացած է։

Շփոթ եւ անհիմն կը գտնեմ նոյնպէս Հ. Ա. Տէրվիշեանի ածեմ, յածեմ, ածու (ագարակ), յն. ἄγω, ἀγρός, գղղ. agile (իբր թէ յածող) եւ յն ἀίξ բառերու անկապ խառնումը։

Այն — պհլ. âna, âno, նպ. آن յորմէ آنك (anak), հեռաւորը ցուցընելով, ինչպէս կայ این (այս)էն اینك (înak) մօտաւորին համար (برهان)։

Այր(եմ) — աչքի առջեւ բերելով հին թաւ-րին նպ.ի եւ ի բազումս նաեւ հյ.ի մէջ նուրբ եւ մեղմ դի փոխուելու յաճախակի դէպքերը, ինչպէս են պհլ. patkar՝ նպ پیکر, պհլ pâtkham՝ նպ. پیغم, پیام, պհլ pat-vand՝ նպ. پای بند եւ پیوند, պհլ. patman՝ նպ. پیان (հյ. պայման), եւս եւ پدر = հայր, مادر = մայր եւ այլ սոցին սակի փոխանա-կութիւնները, տարակոյսի տեղի չմնար որ մեր -յր արմատը աւեստական atar կամ atrն է որ պհլ. adr, azr ձեւն առած է եւ հուսկ ուրեմն նպ.ի մէջ آتش եղած։

Զայս կը հաստատէ նաեւ գործածու-թիւնը նոյն արմատին՝ մի քանի դէպքերու

մէջ որ անայլայլ մնացած են եւ առ մեզ, օր. Արտպատական, Արտօրմիզդ, Արտվշնասպ, ատրուշան, եւն։

Այսպէս կ'ընդունին բոլոր օտարազգի հեղինակք, զարմանք որ մերայինք անհաւան կը գտնուին ասոր։

Չեմ փորձեր հերքել Հպ. ին որ այր (մարդ) եւ հայրէն կ'ուզէ բերել, այլ թէ ինչպէս Հ. Ս. Տ. ը հնդ. էդհ, յն. αἴθ-ω, լտ. aes-tas (ամառն), եւն, օտարոտի արմատներու կը մօտաբերէ եւ յայտնապէս կ'ըսէ թէ. "Այս արմատէն զուրկ ենք մենք եթէ հոս չի պատկանիր այր-եմ, զոր օտարազգի հայագէտք կ'ուզեն ատր (կրակ) բառին հետ նոյնացնել[1]"։

Եւ սակայն այն փաստը որոյ վրայ կը յենու Հ. Ս. Տ.՝ այնչափ ալ ծանր կշիռ մը չներկայացներ, չըսելու համար բոլորովին զուրկ է կարեւորութենէ։ Ցիրաւի. "Ատր եկամուտ է մեր մէջ, կ'ըսէ Հ. Ս. Տ., եւ պահուած միայն ատրափոյն, ատրուշան, ատրձանակ օտարածեւ բառերուն մէջ, եւ նոյն բառին արմատն ինչպէս եւրոպական քերց, նոյնպէս հայ հողին վրայ բնաւ երեւցած չէ. իսկ այրել Հայաբուն բայ մ'ին է, որ յայտնի է նաեւ զանազան ածանցումներէն, ինչպիսի են այրեաց, ուստի են այրեցուածք, հր-այրեացք, եւ այլն"։

Կը պատասխանենք նախ որ ածանցումները բառի մը հայաբուն ըլլալուն հաւաստի նշա-

1 Հնդեւր. նախալեզու, էջ 66։

նակը չեն. զի շատ մը յայտնի օտար բառեր Հայ մկրտուած եւ Հայ ածանցներով եւ բարդութիւններով բնիկութեան իրաւունք եւ Հանգամանք ստացած են. այնպէս որ այսօր կէս մը դժուար եւ կէս մ'ալ անհնարին է որոշել զանազանելը թէ որն է բնիկը, որն է եկամուտը: Եւ լեզուաց յօրինուածութեան եւ կերպաւորման այն անդրագոյն դարերուն եւ վիճակներուն մէջ ինչ բանաւորութիւն եւ ինչ հնարաւորութիւն կայ այս զանազանութիւնները որոնելու:

Գալով թէ ինչո՞ւ տւր արմատը տյւին չափ գործածական չէ եղած. — վասն զի չէր կրնար ըլլալ: Կրօնական իմաստ եւ Հանգամանք կրող բառ մը որ իբր այն՝ ամենուն բերանը յաճախեալ եւ ամենուն Հասկանալի, չէր կրնար թարգմանօրէն տրուիլ կամ խեղաթիւրուիլ, թէպէտ եւ Հասարակ իմաստի ալ տեղ տեղ մերձեցուցած են մերոնք, ինչպէս տւրաքօյն, տւրանէք, տւրաշէկ, եւն, կը վկայեն:

Ես պիտի ըսեմ որ մասնաւոր դիտումով եւ որոշողութեամբ ալ տւչեմը տյչեմի փոխուած չէ, այլ սովորական եւ Հանապազօրեայ դէպքերու պահանջն է որ կիրառութիւնը յաճախելով՝ հնչման ալ սղում մը բերեր եւ հին տը յով մեղմացուցեր է, ինչպէս վերի օրինակներուն մէջ ալ տեսանք:

Hb.ը իրաւամբ "Զայրանամ„ը կը բերէ այր (bruler) արմատէն, վերադիր Համարելով սկիզբի զն, ինչ որ կը Հաստատուի բառին

իմաստէն ալ, զի ինչ է զայրանալը, եթէ ոչ սրտմտել, կրակ կտրիլ, ինչպէս կենդանի պատկերով կ'ըսէ ռամիկը։

"Այցեմ եւ Հայցանամ բնաւ իրերաց հետ վերաբերութիւն չունին եւ վերջնոյն սկզբան Հ գիրը նախդիր չէ„ կ'ըսէ Հպ.ին. — չցուցներ սակայն ինքը թէ ինչ է։

Այց — սնս. iččháti յորմէ iččhā, եւ զն. isaiti համապատասխանները յառաջ կը բերէ Hb., որոց հաստատութիւն տալ կը թուի آیشه, آیشنه, եւ آیشتنه ձեւերը որ գտանք برهان ին մէջ եւ որք լրտես, լրտեսել կը նշանակեն։ Այցելել եւ լրտեսելը իրարու օտար չեն։

Hb.ը Հայցեմն ալ այցեմին հետ կը կապէ։ Այս վերջին հանգիտութիւնը այնչափ ալ յայտնի չէ։

Ան — մասնիկ ժխտական որ հպ.ի, զն.ի եւ պհլ.ի â եւ յոյնի αἰ տեղ կը բռնէ առ մեզ։ Նի աւելադրութիւնը կը մեկնուի անով որ պ.ի մէջ a էն ետքը ուր ուրեք որ ձայնաւոր մը կը պատահի, hiatusը արգիլելու համար n մը կ'առնէ, ինչպէս զն. anarêta, փխ. aaretaի (անարդ, անհարթ), an-aôsha, փխ. a-aoshaի (անուշ, անյուշ, انوشه), եւն։ Մինչ բաղաձայններու քով կը մնայ պարզ a, ինչպէս պհլ. azarman (անզառամ, առանց ծերանալու). ahunarvant զոր կրնանք հայ ձայնին ահունարուանտ ըսել։

Նպ.ի մէջ՝ ինչպէս ըսած ենք, այս ժխտականը نا եղածէ, զ օ. ناکام = ակամայ, نامراد

= անմուրատ (ռմ.) ناديده = անտես, ան-
դէտ, չտեսնուած։

*Անազարմ* — պհլ. *âzarm* որ նպ.ի մէջ ալ آزرم պահուած է, իր ուրիշ շատ մը առումներուն հետ կը նշ. նաեւ գութ, կարեկցութիւն (رهان.)։ Այս վերջին իմաստն է տիրողը մեր կազմին մէջ, որով բառը կը նշ. անգութ, անողորմ, խուժդուժ, եւն։

*Անազ* — նպ. ناك։

*Անանուխ* — "մանր հունտ բուրումնաւէտ զոր հացի վրայ կը դնեն„ կ՚ըսեն պ. բառագիրք զոր եւ կը պատկերացնեն ناخواه որ թէ կ՚ստուգաբանէ եւ թէ կ՚օրինաւորէ արդարեւ տրուած մեկնութիւնը։

Կայ ասոր. եւ արաբերէն ալ نعناع կամ نعنع բայց իմաստ չունենալնուն բուն հնոյն՝ պարսկականին՝ աղաւաղումները կը համարիմ, ինչպէս յն.ն ալ կը ցուցնէ, պահելով να-νοῦχα մերձաւոր ձայնը։

*Անապակ* — ճիշդ բառը գտնելու համար պէտք է եկամուտ տարրերը թօթափել, այն է սկիզբի ـا ժխտականը եւ վերջի ـک ածանցը, որով կը մնայ ապ = آب = ջուր. ուստի եւ ան-ապ = անջուր, անջրդի, կամ աւելի բուն նպատակին զարնելով՝ անջրախառն, անխարդախ, քանի որ անապակ զուտ գինիի վրայ կ՚առնուի միշտ եւ ճիշդ հյ.ի պէս պհլ. ալ ունինք anâpak որ նպ.ի մէջ نایاب կամ ողմամբ ناب եղած է։

*Անապատ* — ան ժխտ. ով աբադ (آباد = շէն)ի բաղադրութիւն է որ կը նշ. ոչ-ապատ, ոչ-շէն, զն. *anâpât*։

*Անգամ* — պհլ. *hangâmé* = time, season (Ph. Dict.). Նպ. انگام, انگامه, هنگام (մի անգամ, երկու անգամ, եւն, այսպիսեաց մէջ ունեցած նշանակութեամբ)։

Այս իմաստի տարածութեամբ է մինչ-անգամ = même եւ այլ այս մտօք կիրառութիւնն ալ։

*Անգարեմ* — պհլ. *angâr*, զն. *hangârayemi* = հաշուել, համարել, պատմել, զրոյց տալ. եւս եւ խորհել, խոկալ, կարծել. Նպ. انگاردن, انگاشتن, انگاریدن։

*Անգուժատ* — Նպ. انگژد եւ انگژه, խէժ առ հասարակ, եւ իմաստնաւորի انگدان (անգուտան) ըսուած ծառինը, վասն որոյ եւ պ. բառագիրք կը տարրալուծեն՝

ژد = խէժ (հին բառ)
انکو = սղեալն انکودانի։

*Անգուժատաբեր* — "քաղքան խէժը բերող երկիր (Աբ.)։

*Անգոսնեմ* — որոյ տակ կը շարուին՝

Անգուշնեմ
Անկուշնեմ
Անգուշեմ
Անկուշեմ

բոլորն ալ նոյն կազմի արդիւնք

ան = ժխտ.

գուշ = զն. gaôsha, նպ. گوش = ականջ, լսողութիւն, որով բառին իմաստը կը լինի. ականջ չդնել, չհնազանդիլ, նշկահել, արհամարհել, եւն։

Այս արմատով աւեստական բառ մ'ալ կայ apagaoshaya զոր, „enlever l'ouïe, faire qu'on n'entende point" կը մեկնաբանէ Hr. եւ զոր ուղղակի ապագուշեմ կրնանք ըսել մենք։

Անգուման — պհլ. gumân (կարծ, կասկած), նպ. گمان էն ձեւացած է՝ ան ժխտ.ով, որոյ պհլ. համազօրն է avigumân, նպ. بی گمان = հյ. ապագուման։

Անդաճեմ { անդէճ / անդիճեմ } պհլ. andâjîtano = խորհել, չափել, ձեւել, նպ. انديشيدن, انديشه, انداچه, اندازه յորմէ կը համարի فرهنگ, ար. هندسه ձայնը։

Անդամ — նպ. اندام, զն. handāma, յն. ἐν-τομή, ἔντομος։

Անդարձ — պհլ. andarz, նպ. اندرز = խորհուրդ, խրատ, յորդոր, կտակ, յորմէ՝

Անդերձապետ — պհլ. andarzpat որ է աւագ խորհրդական, վերակացու, իշխան, եւն։ Աւելի ճիշտը անդարձապետ պէտք էր լինէր, տեղի չտալու համար շփոթութեան, ինչպէս որ եղած է եւ հանդերձապետ ընթերցուած (կարն. ծան. 122)։

Անդոհ — պհլ. andôh, նպ. اندوه = տրտմութիւն, թախիծ, յորմէ՝

*Անդոհական* — պհլ. andohkan, նպ. اندوهكين զոր կրնանք անդոհգին ըսել յոյժ վայելչաբար, ինչպես ունինք դրդոմ-գին, սրդագին, կաճագին, եւն։

*Անհամար* — ինչպես "ախտարմող"ի առթիւ նկատեցինք, պհլ. amar, hamar, կամ աւելի սուղ՝ mar կը նշ. թիւ, համրանք, համար, յորմէ հետեւաբար a ժխտ.ով a amarը կը նշ. անթիւ, անհաշիւ, անհամար։

Բայց a hamarը պհլ.ի մէջ կը նշ. նաեւ, փոխաբերաբար, անհեռատես, անզգոյշ, անխելք, անհաշիւ, ապիմակ։ Մենք սոյն իմաստին ալ զատ խումբ մը ունինք նոյն արմատէն շինուած, այն է ադամար, որ ինչպես կ'երեւայ, նոյն պհլ. կազմն է a ժխտ.ով որ մեզ ան է, եւ hamar արմատով, որոյ մէջ այս անգամ հն ղի փոխուած է։

Ունինք նաեւ ախմար ուր ան իւր լծորդ խի փոխուած է, բառն ալ աւելի սեղմուելով՝ աի մը անկմամբ։

Եւ սով ալ չբաւականանալով ա ժխտականն ալ իւր համազօր դին հետ փոխանակելով ունեցեր ենք դխմար, եթէ սա սխալ ընթերցուածի մը արդիւնք չէ, ըը դ կարդացուելով։

Ունինք վերջապէս ջխմար զոր աւելի բանաւոր կը գտնեմ հոս այս շարքին մէջ դասել՝ Հ = յ փոխանակութեամբ որ ուրիշ շատ տեղ ալ կը տեսնուի, քան թէ ար. حمار ին հետ բաղդատել, որչափ ալ փորձիչ ըլլայ

ձայնի նոյնութիւնը, զի արաբացւոց ծանօթութենէն շատ աւելի հին է մեր բառը, եւ բուն ոսկեդարեան։

Անհաս — պհլ. rasitano, նպ. رسيدن կը նշանակեն ռասընել, որով եւ նպ. نورس (nô ras)ը կը լինի առ մեզ նոր(ա)ռաս, եւ نارسը՝ նառաս կամ փռաս, խակ նշանակութեամբ թէ պ.ի եւ թէ հյ.ի մէջ։

Այլ թէ ինչպէս պ. րասը հյ.ի հաս անցած է, ասոր պատճառը կարծեմ մեր անընդունակութիւնը եղած է սկզբնական ռ կամ ր ձայները արտասանելու, ճիշտ Տուրանեան (Թուրք) ազգաց նման որոնց հետ կը միաբանինք յոյժ։ Յիրաւի, ուր ուրեք որ ռ կամ ր մը պատահի բառին սկիզբը, Թուրքն ալ, մենք ալ օգնական տառի մը կը դիմենք զայն արտաբերելու համար. զն. պհլ. ramakը (նպ. رمه) մենք կ'ընենք երամակ, Ռութը՝ Հռութ, Ռաքէլը՝ Հռաքէլ, Ռոբովամը, նախապատուաբար՝ Յերոբովամ, եւն։

Ճիշտ ինչպէս Թուրքն ալ روحը կ'ընէ ուռուհ, راحتը՝ ըռահաթ, رنكը՝ իրէնկ (եւ առ մեզ՝ երանգ), رشوةը՝ իւրիւշվեթ, رنجبرը՝ իրէնճպէր, رومը՝ ուրում, եւն, եւն[1]։

Ասկէ կրնայ հետեւցուիլ որ րասը ի սկզբան թերեւս կը հնչուէր հրաս ուրկէ ապա, կիրառութեան յաճախութեամբ եւ սահական հարկով ինկած լինի հն։

---

[1] Տես եւ "Երեքը ուր քիչ մ'աւելի մանրամասնուած է նիւթը։

*Անճահ* — ան ժխտ. ի եւ ճահ (جا، جای، جاه = տեղի)ի բաղադրութիւն, որով անճահը (بيجا) կը լինի՝ անտեղի, անպատշաճ։

*Անճար, -ակ* — պհլ. *a car ak*, նպ. ناچار، بيچاره։

*Անյայտ* — զն. „*an hait'ya (a-hait' ya + asatya)* = non existent, faux, non évident, invisible“ (Hr.)[1]։ Տ. Նաեւ Յայտ։

*Անուշ* — զն. *an-aósha* = անմահ, անապական. պհլ. *an-ósh. anóshak* = անմահ, անվախճան, յաւերժական, որ կը յիշեցնէ անյիշելի Անուշ բերդը որ վերջ վախճան չունէր[2]։

Նպ. نوشه կամ աւելի արդիապէս نوش، نوشيدن որ խմելու համար կը գործածուի, պարզապէս խմելու act'ը չնշանակեր որոյ համար մի յատուկ բայ կայ آشاميدن այլ դարձեալ հաճոյքի՝ վայելքի եւ երջանկութեան գաղափարի մը հետ կապուած է զոր աւելի յայտնապէս կ'արտայայտեն, ինչպէս գիտենք, գիններբութեան պահուն եղած ժողովրդական բարեմաղթութիւնք نوشجان ի պէս, զոր մենք ալ "անո՜ւշ„ով կը յայտնենք։

Սոյն այս առումներու հետ շատ քաջ կը կցորդի մեր "անոյշք„ը որ երանաւէտ կեանք, դրախտ, արքայութիւն իմաստով գործածուած է։

Նոյն իսկ "անոյշ„ (քաղցր) իմաստն ալ սոյն գաղափարին օտար չէ, մտածելով որ

---

1 Manuel de l'Avesta, S. 288.

2 Կարն. Ծան., էջ 59։

*ան ալ քիմքը հեշտացնող* sui generis *մի վայելք է։*

*Նուշ* (نوش)*ին անմահութիւն գաղափարը աւելի բացայայտ կ'երեւի* نوشدارو *կազմուածքին մէջ որ անմահութեան դեղ կը նշ. եւ վիպասանութեան մէջ յոյժ հռչակաւոր է իբրեւ անվրէպ սպեղանի ամէն մահացու վիրաց։*

*Ֆերդուսիի դիւցազներգութեան մէջ ալ մեծ դեր կը խաղայ Սոհրաբի եւ Ռոստոմայ դրուագներուն մէջ եւ մինչեւ ցայսօր ալ առածի կարգ անցած կը գործածուի "վէրքի համար նուշ տարու" ասացուածքը։*

*Նուշի սոյն իմաստով է կազմուած նաեւ* نوشيروان, انوشيروان *մակդիրը որ արդարութեամբը հռչակաւոր Սասանեան քսաներորդ արքային տրուեցաւ*[1] *եւ զոր ամփոփելով Անուշուան ըրած ենք մենք։*

*Սա բարդեալ է ի պհլ. անուշէ եւ ռուանէ որ է նպ.* روان = *հոգի։ Որով* انوشيروان*ը կը նշ. անմահ հոգի։*

*Անուշադր — պ.* نشادر, نوشادر*։*

*Անջատ(եմ) — պ.* انجيدن, آهنجيدن, آهنكيدن, *ըստ պ. բառագրոց կը նշանակեն մանր մանր փշրել, խորտել, եւս եւ քաշել եւ քերծել (ածելիով)։ Մասնաւորապէս ոչխարի մորթը*

---

[1] *Առոր օրով ծնած ըլլալով Խալամաց մեծ մարգարէն, Մուհամմէտ, ի գովեստ նորին ըսած է*

انا ولدت فى زمن الملك العادل

*"Ես ծնայ արդար արքային օրովը"։*

քերթելու ակնարկութիւն մը չկայ որու վրայ կը ծանրանայ Հպ.ին։

Ուրեմն իրարմէ բաժանել, քայքայել, տարորոշել է ընդհանուր իմաստը որոնց հետ կարի յարմարապէս կը զուգորդի եւ մերը։

Անքատ = չքաւոր, կարօտ։ Թուի յօրինեալ ան ժխտ.ով քատ (كت) արմատէ որ տուն եւ բնակութիւն կը նշ. որոյ պհլ. ձեւն է katak (քատ-ակ), զն. kata, նպ. كت, յորմէ կազմուած են բառքս كتخدا = տանուտէր, եւ كت بانو = տանտիկին։ Որով անքատը կը լինի այն որ տուն տեղ չունի։

Ուշադիր նայելով կը տեսնուի որ անքատն ալ օտար չէ այս կազմէն. անոր մէջ ալ քատը կը փայլէ իբր արմատ, այլ թէ ինչ է անը։ Իրաւ է որ ան—ը իբրեւ ան ե— ան եւ խանգարում, խաթարում նշանակութեամբ մեծապէս կը յարմարի լուսաբանելու բառը, սակայն ան արմատը ասկէ դուրս եւ այս նշանակութեամբ ուրիշ տեղ տեսնուած չըլլալով, մեզ համարձակութիւն չտար ապահովապէս զայն ընդունելու։

Թերեւս լինի սա ա-հու-քատ =

| | | |
|---|---|---|
| | ան-բարի | տուն |
| | ոչ-գեղեցիկ | |
| կամ | ան-գեղ | |

տարրական լուծմամբ, զի այսպիսի բարդութիւնք շատ կան պհլ.ի մէջ օր.

a-hu-kar = անբարեգործ.
a-hu-krdar = „
a-hu-tano = անգեղամարմին.
a-hu-χoh = անբարեխոհ.
a-hu-kanak = անբարեձեւ.
a-hu-dar = անբարի տէր, եւն։

Այս իմացուածով ուրեմն "աղ-քատ"ը կը մեկնուի՝ այն որոյ բարեկազմ, ճոխ, շքեղ, եւն. չէ տունը, իմաստ որ անյարմար չէ աղքատին։

Իսկ թէ ինչպէս –հու– եղած է –ղ, ասոր բանալին կուտայ "աղի կամի" կազմը որ վերը տեսանք եւ որ ահու-կամակ է, ուրեմն –հու– ձայնը կրնայ –ղի– դառնալ եւ թերեւս –ղի[illegible]– ալ էր երբեմն բառը յորմէ ապա ինկած լինի ի։

Եթէ լոկ հաւանականութիւն ալ է մեր այս ըմբռնումը, այնքան համոզկեր է սակայն որ մինչեւ աւելի զօրաւորը գայ՝ կը մնայ սա ամենէն յարմարաւորը։

Աշակերտ — պհլ. ashakert, նպ. شاگرد։

Աշահդանակ որ եւ Շահնդակ — զոր անորոշաբար "պտուղ մը" կ'ըսէ Աբ.ը, կարծեմ թէ [illegible] ըսուած մանր հատահունտն է զոր գաւառի մէջ ցորենի՝ գարիի կամ այլ սերմնահատիկներու հետ աղանձելով կ'ուտեն, ինչպէս կը յիշեմ, զոր եւ աղաւաղօրէն [illegible] կամ [illegible] կ'ըսէին որ անշուշտ պ. شاه دانه պէտք է լինի, ողեալն "աշահդանակ"ի։

*Աշղ* — տ. Ցաշտ։

*Աշխարհ* — հպ. եւ զն. χshatra կը նշ. պետութիւն, իշխանութիւն, տիրապետեալ երկիր, եւն։

Սա՝ պհլ. շրջանին մէջ եղած է shatur եւ աւելի կարճ՝ shatr որ հուսկ ապա նպ.ին տուած է شهر, բառը հոս իր աւելի լայն իմաստով առնելով, զի կ'ըսուի Իրան-շատուր կամ շադր = Իրան աշխարհ (ամբողջ երկիրը) իմացմամբ եւ ոչ թէ մի քաղաք միայն։

Հայերէնը հին "խշատրա„ ձեւը կը ներկայացնէ "աշխարհ„ կազմին մէջ, ինչ ինչ փոխակերպութեամբ, իսկ միջին "շատր„ը՝ պարզապէս ձգելով վերջին ր տառը, յորմէ "շատ„, որ թէեւ առանձին գործածուած չէ, սակայն բարդութեանց մէջ զգալի է իւր գոյութիւնը, օր. Արտաշատ, Ցաշտիշատ, Երուանդաշատ, եւն։

*Աշխէտ* — հպ. xšuita, զն. xšaeta, նպ šēdāna, šēda ձեւերը կը դնէ Hb.։ Դրած երկարի նշաններէն կ'երեւայ որ شید կամ اشیدին կ'ակնարկէ որ յատկապէս գոյնի սեփականուած չէ, այլ մանաւանդ լոյս, պայծառութիւն եւ մասնաւորապէս արեգակ կը նշ. եւ փարսի գրականութեան մէջ շատ յաճախեալ, (خور)شید ، شیدکی ، شید ستان ، شیدان شید, եւն։

Արեգակնային լուսոյ երանգէն առնուած լինի թերեւս նմանութիւնը, զի ունինք նաեւ شیدرنگ կազմութիւնը պ.ի մէջ, որ շէտերանգ կամ աշխետերանգ կրնայ հայանալ։

*Աշկարայ* — պհլ. *ashkara* (*k*), զն. *avishkara*, նպ. اشكاره ، اشكار։

*Աշտեայ* — զն. *aršti* եւ պհլ. *aržt* տիպերը կու տայ Hb.։ Կարնամակին մէջ ալ հանդիպեցանք այս բառին (ծան 19), արդէշտարան սալար ձեւին տակ զոր “սպասալար„ թարգմանելով հանդերձ, արդն, արդնընկէց զօրաց ակնարկած էինք։ Դժուար չէ արդարեւ արշտ եւ արշտի ձայներուն, յեղանակաւորուելով, աշտ(տեայ) եւ արդ(ն)ին յանգիլը։ Եւ արդէն Հյ.ի մէջ այս երկու բառերուն զինական տարորոշ հանգամանքն ալ աղէկ մը ճանչցուած չեն։

“Արդն„ (գեղարդն)ին համար Աբ.ին մէջ կը կարդանք.

“տէգ, տ. մզրագ, հարպա, խըշտ, սինկին„

եւ “աշտէ„ի համար.

“տէգ, նիզակ, տ. սինկիւ, հարպա„.

որը ինչով միւսէն կը զանազանուի՝ որոշ չէ։ Այս միայնը չէ, այսպէս շատ բառեր ունինք մութ որոնց զանազանութեանը մասին մանրակրկիտ քննութիւններ դեռ կատարուած չեն։

Ցնոր տնօրէնութիւն ուրեմն “արդ„ եւ “աշտ„ը կրնանք մի ըմբռնել եւ մի եւ նոյն արմատին վերագրել։

*Աչք* — զն. *ashi*, պհլ. *êsh* որմէ յայտնի կ'ըլլայ որ մեր ում. աչէսը այնքան ալ արհամարհելի

չէր, եւ նախապատուութիւն ունի "աչեմ"ի վրայ։

*Ապ*, *ապա* — մասնիկ ժխտական որ կը պատասխանէ, զն. apa եւ պհլ. abi որ աւելի յաճախ avi կը գործածուի եւ որ նպ.ի մէջ ابی կամ մանաւանդ بی եղած է. օր. aviguman = ابیگمان = ապագուման։

*Ապաքանեմ* (1. ափիբերան ընել. 2. պատասխան տալ, արդարացնել — Աբ.) — ճիշդ յն. ἀπολογίαին կը պատասխանէ իրաւ, ինչպէս ունինք նոյն կազմով

ապաթարց = ἀπόστροφος,
ապաբնակութիւն = ἀποιχία,
ապացոյց = ἀπόδειξις, եւն.

եւ տարակոյս չկայ որ յոյնին հետեւողութեամբ շինուած են բոլոր այս բառերը, սակայն ա՟ղ՟ ժխտ.ը յունական փոխառութիւն չէ. պարզ զուգադիպութիւն մ'է յոյնին հետ որ հնագոյն ժառանգութեան մը բաժինը կը ցուցադրէ։ Hb. ալ յն. համազօրները յիշելով հանդերձ, իրաւամբ ա՟ղ ժխտականին տակ կը դասէ ասոնք։

*Ապազոյլ* = նոյն ըստ վերնոյն։

*Ապագործ* = անգործ։

*Ապադէմ* = աներես (ابیدیم)։

*Ապազէն* = անզէն (ابیزن)։

*Ապաժամ*, -ան, -եան = ابیزمان։

*Ապալեպ* = առ ի շեղ (Աբ.) փոխաբերաբար՝ լպիրծ եւ դարահոս եզերք, տառացի՝ ա՟նչ՟՟չին

(ﻳ.ا կամ ﺑﻳ.), ինչպէս կայ اباب (լեփ առ լեփ)։ Տ. եւ լափեմ։

Ապալեր — ամենապարզ կերպով կը մեկնուի ապ ժխտականով եւ լէր (ل) արմատով որ ըստ պ. բառագրոց՝ յորդ եւ առատ ջուր կը նշանակէ. որով ապլէրը կը լինի անջուր, անջրդի, անապատ տեղի, ինչ որ իր բուն նկատեալ իմաստն է, առանց լէ—, ապէր մնացածին աղբիւրներու դիմելու Հպ.ի հետ։

Ապախուրեմ = խոյրը մէկ դի դնել, գլխարկը հանել (ապա + խոյր)։

Ապախտ = ապ + ախտ, վերջինը լինելով կրճատեալ “երախտ„ի (երախտիք) որ rakta կամ rakti կը լսուի սնս. (Hb.)։ Եւ որովհետեւ, ինչպէս ի վեր անդր ըսինք, մեր լեզուին հակառակ է ըով բառ սկսիլը, ուստի նախ raktը երախտ ըրած ենք եւ յետոյ ըն բոլորովին անհետացնելու համար եր վանկն ալ ձգելով պարզ “ախտ„ը պահած ենք, որով ձեւացած են մէկ կողմէն ապախտ եւ միւս կողմէն ապերախտ։ Ապախտին նշանակութիւնն ալ եթէ ուշադրութեան առնունք, կը տեսնենք որ տրուած երանգներուն բոլորն ալ երախտիք չճանչնալու շուրջը կը դառնան։

Ապախտար = չար գուշակութիւն, կախարդութիւն (Աբ.)։ Hb.ն ալ կը յիշէ այս բառը՝ պհլ. apāxtar, զն. apāxtara, apaxòra եւ նպ. baxtar ձեւերով, der Norden, nördlich (հիւսիս, հիւսիսային) նշանակութեամբ։

Եթէ ընդունինք ﺍﺑﺎﺧﺘﺮ ի ստուգաբանութիւնը որ

ﺑﺎ կամ ﺍﺑﺎ = (ընդ)
եւ ﺍﺧﺘﺮ = ախտար

կը տարրալուծէ, կրնանք հիւսիսի գաղափարին յարիլ, ջէղ յաստղ էօյս կամ բէնէի աղղարնէձ իմանալով ﺑﺎﺧﺘﺮը, զի ﺍﺧﺘﺮով աւելի հիւսիսային կամ բեւեռային աստղը իմացուած է: Այլ սակայն կը փութանք յաւելուլ որ մինչեւ հիմայ որոշ եւ հաստատուն իմաստ մը կապուած չէ այս բառին: Ոմանք ﺑﺎﺧﺘﺮով արեւմուտքը եւ ﺧﺎﻭﺭ (խաւար)ով արեւելքը կը հասկնան. ոմանք ալ բոլորովին հակառակը: Բանաստեղծք յերկուս դէմս ալ գործածած են:

L. C. Casartelli ախտարով կ'իմանայ constellationները, իսկ ապախտարով „les étoiles qui n'appartiennent pas aux constellations“[1]:

Այս միակը չէ. Փարսի մատենագրութեան մէջ կան այսպէս շատ բառեր, որոնց մութ մնացած իմաստը եւ գործածուած տեղւոյն եւ պարագային համեմատ կ'առաջնորդուի: Բառին մէջ մեր ընդունած իմաստին եթէ միտ դնենք՝ խաւար ըմբռնումը աւելի յարմար կու գայ, իբր արեւմուտք, այսինքն հակառակ լուսոյ եւ պայծառութեան որով կ'արդարա-

[1] La philosophie religieuse du Mazdéisme sous les Sassanides. Paris, 1884, էջ 91.

նայ ճախորդութեան գաղափարը, իբրեւ խաւարային, չարագուշակ, Ահրիմանեան։

Այս բացատրութիւններէն կը տեսնուի որ մեր խ——ւրը, որչափ ալ ձայնիւ նոյն է ընդ خاورի, սակայն նշանակութեամբ անոր ճիշդ հակառակը կը ներկայացընէ։ Կամ այն է որ خاورը իսկզբան, այսինքն մեր Թարգմանչաց ատենները, ճիշդ մերինին նման ——ղջ եւ ճ——ղփ կամ ճ——ն իմաստով կը գործածուէր տակաւին եւ յետոյ այլափոխեցաւ, կամ այն է որ մերոնք շփոթութեան մը զոհ գացին։

خاورի արեւելք իմաստով գործածութիւնը մինչեւ ցայսօր ալ ռամկին մէջ պահուած է, ինչպէս, մի քանի տարի առաջ, երբ Պարսից արքայորդւոյն հետ Շիրազ կը ճանապարհորդէի, առիթ ունեցայ շինականի մը բերնէն خاور زمين լսել իւր բնակած վայրը որ արդարեւ արեւելեան կողմը կ'իյնար Պարսից ծոցին, Արաբիոյ եւ Իրաք-Արաբի նկատմամբ։

Խորասանի կողմերը գաւառ մը կայ որ خاوران կ'ըսուի, իւր արեւելեան դիրքն ակնարկելով անշուշտ, զի Խորասան, ինչպէս գիտենք արեւելք կը նշ. هور ،حور ،خر ،خور արմատով որ արեւ՝ կրակ եւ լոյս կը նշ.։

Այլ կը փութամ աւելցնել որ չեմ կարծեր թէ այս արմատը մուտ եւ դեր ունեցած լինի մեր բառին մէջ։ Քանզի յայնժամ պէտք չէր որ պհլ. xᵒaparը p շրթնական մը պարունակէր որ v անցած է փզ.ին (xᵒawar) եւ նպ.ին (خاور), ինչ որ կը ցուցնէ թէ ջն բա-

ուին մարմինէն է եւ ոչ եկամուտ կամ յաւելուածական որով բուն արմատը կը լինի خواب որ եւ շատ անգամ, ب = و օրինօք, կը դառնայ خاو, ինչպէս շատ անգամ կը տեսնուի բանաստեղծութեանց մէջ

کر خری دیوانه شد یکدم کاو
در سرش چندان برن کاید بخواو

Եթէ երբէք գժուի եւ էշ դառնայ կովը — Այնչափի զարկ գլխուն որ թմրի (مولوی)։

Հոս خوان ն է որ քերթողը خاو դարձնելով كلو ի հետ կը լծէ։

Այն կերպով իրաւունք կը համարիմ ուրեմն խ———չին մէջ քնոյ եւ հանգստեան գաղափարը տեսնելու զոր եւ ժամանակին ըմբռնումը եւ մինչեւ ցայսօր լեզուաց մէջ մնացած ոճերը կը հաստատեն, արեւը, գիշերը, իւր մարը մտած (couché, couchant) համարելով զոր մայրամուտ գեղեցիկ բառով կը յայտնենք մենք։

Այս պարագայն ալ մինչեւ մէկ աստիճան կը զօրացնէ հաւանականութիւնը որ թերեւս ի սկզբան Պարսից մէջ ալ տիրող գաղափարը այս էր եւ خاور ը նշանակ էր մութի՝ քունի՝ հանգստի, նշանակութիւն զոր անկորուստ պահած ենք մենք, մինչ Պարսից մէջ ո գիտէ որպիսի հանգամանաց բերմամբ շփոթութեան եւ անորոշութեան մատնուած է երթալով։

կրնանք ուրեմն ամենամեծ հաւանականու-թեամբ ընդունիլ որ խ--- (خواب = خواو) արմատով եւ -ք ածանցով ձեւացած է բառը հաւասարապէս թէ պարսկերէնի եւ թէ հայերէնի մէջ։

Կարի յանդուգն եւ անտեղի կը գտնեմ Հպ.ի յարձակումը Ն. Հյկզ. բռրնի եւ Հ. Բագրատունիի դէմ որք նոյն խ---ը արմատ ընդունած են խ----քին, ճշգրիտ նմանու-թեամբ χάος յոյն ձայնին։ Զի ինչ աւելի ազ-դողապէս կրնար տալ տիեզերաց վրայ համա-տարած աղջամղջի (ténèbres) գաղափարը քան այն կարճ եւ պատկերաւոր ասացուածը։

“Եւ խաւար էր ի վերայ անդնդոց„։

Հոն միայն կը գթէ մեծ հայագէտն Բա-գրատունին երբ զուտ հայացի կ'ընդունի -ք ածանցը, մինչ սա հասարակ է եւ պարսկի։ Եւ սա անշուշտ ներելի է անով որ ինք ա-րեւելեան լեզուներով հետաքրքրուած չէր, եւ ոչ ալ համեմատական լեզուագիտութիւնն այնչափ զարգացած՝ իւր օրով։

Ապակայն, -եմ — Հին եւ Նոր պ.ի մէջ ap (آب) որ ըստ տեղւոյն av եւ af ալ կը դառ-նայ՝ կը նշ. ջուր։

Մեր բառը կազմուած է այս արմատէն՝ ½ան ածանցով եւ կը նշ. ստուգաբանօրէն՝ ջուր խառնել, ջրոտել, յորմէ եւ տարածա-բար՝ նենգել, կեղծել, խարդախել, եւս եւ եղծել, խաթարել, փճացնել, եւն. ինչպէս որ

ապականն ալ սորին հակառակն է եւ նախնական իմաստով՝ անջուր, անխարդախ կը նշանակէ։

Այս ապ արմատը, այս նշանակութեամբ, առանձին գործածուած չէ, այլ մի քանի ցանցառ կազմութեանց մէջ թաքցած է, ինչպէս աւազան, վիրապ։

Հպ.ին ապ-ական (= ակն) եւ իբր թէ թարգմանութիւնը յն. ἀ φανίξωի, եւն. բացատրութիւնը բռնազբօսիկ է։

Ապակի — նոյն آب արմատով آبیکی եւ آبکینه պ. բառեր ձեւացած են ջրեղէն, բիւրեղեայ նշանակութեամբ որոնց պարզ արձագանգն է մերինը։

Ապահար — աղաւաղութիւնը կ'երեւի "ապարահ"ի (տ. այս բառը)։

Ապահարզան — Հպ.ին դարձեալ անյարիր թուեաց մէջ կը զառածի "հարս"ով, "հարսանիք"ով եւ յն. ἀποχώρισιςով մեկնելու։ Ստոյգ լուծումը Hb.ին տուածն է մնս. apa-sarǰana, զն. apa + harzanaէն որ արձակել, ի բաց ձգել կը նշ.։

Ապահարկ = ազատ ի հարկէ։ Հպ.ին "հարկ"ը خراج մեկնելը ճիշդ է, արաբէն եւ թուրքէն այսպէս շատ փոխառութիւններ կան։ Ուրեմն ապահարկը կը լինի خراج (տուրքէ) ազատ։

Ապահով — հով, զով, ծով, եւս եւ հողմ մէկ ընտանիք կը կազմեն զոր ցուցըցած ենք այլուր. ուստի ապահովը աներկբայաբար կը նշ. անդորր եւ անքոյթ ի հողմոց։ Հպ.ին կը

մոլորի ἀποβένω եւ αποφυγή ներու դիմելով որք մեր իմաստին չեն այլ պատասխաներ։

Ապածեռն = դատարկաձեռն, ձեռնունայն, ապա ժխտ․ով կազմուած։

Ապանշան = աննշան, նոյն յօրինուածութեամբ։

Ապաշնորհ — մեր պհլ․ թարգմանութեանց մէջ հանդիպած ենք avishnoharh նոյն մտօք։

Ապաշուք = անշուք որ պհլ․ avishkoûh, նպ․ بی կամ ابیشکوه կու տայ։

Ապաջան = անջան, անաշխատ, բարդեալ ի ապա ժխտ․է եւ ջանք = جنك է որ ոչ միայն անձուկ մտօք պատերազմ կը նշ․, այլ ամէն աշխատութիւն, մրցութիւն, ճիգ, փոյթ, եւն։

Ապառաժ — պհլ․ avi-raçը կ'իմանամ որ անուղի, անճանապարհ կը նշ․, որ նպ․ի بیراه, بیراهه, اوراه դարձած է, այսինքն ուր որ ճանապարհ չկայ, երթեւեկ կարելի չէ։

Ապառում — զն․ aparum, նոյնպէս եւ պհլ․ avarun, նպ․ اوارون եւ وارون եւ وارونه = չարաբարոյ, դժնեայ, տմարդի իմաստով, բառագրոց մէջ կայ նաեւ اوارین = չար, որոյ հակառակն է برارین = լաւ։

Ապաշաւ — զն․ apasha = en arrière, apasha vaz = aller en arrière (Hr.)[1]։

Այս apashaն է անշուշտ որ նպ․ի پس ը տուած է, անցնելով միջին սղումներէ։

---

1 Manuel de la langue de l'Avesta, էջ 295։

Մեր բառին հետ համեմատելի ամենէն յարմար եզրը կը թուի ինծ, թէ կազմով, թէ իմաստով, զի ապաշաւելն ալ փոխաբերական մտօք յետս ընդդէմ դառնալ այն է զղջալ է։ Նոյն մտօք է նաեւ

*Ապաշխար* որոյ պհլ. տիպը կը տեսնեմ *avaχshի* մէջ որ ետ դառնալ կը նշ.։

Խորտա-Աւեստայի փաթեթ(զղջում)ներուն մէջ յաճախ կը հանդիպինք այս բառին, "կը զղջամ" նշանակութեամբ։

از همه گونه وناهی اواخش وپشیمان هم

"ամէն տեսակ մեղքէ ապաշխար եւ զղջացող եմ"։

Phl. Eulg. բառարանի մէջ ասոր ժխտական ձեւին ալ կը հանդիպինք *a-avakhoh* զոր „not to atone, not to repent, not to make amends" կը մեկնաբանէ, այն է՝ անզիղջ, անդարձ։

*Ապաստան* — պհլ. *apastân*, *avastân* զոր Hr. եւ Darmst. — *ava* + *sta* (aller vers, recours, supplication) կը թարգմանեն։ Ճիշդ է, բայց աւելի ըստ մտաց քան բառացի մեկնութիւն է։ Պէտք է, ըստ իս սապէս պարզել։

Ապա (ابا, با) նախդիր որ բայի հետ կցուելով այլ եւ այլ միտքեր կը յայտնէ ըստ պարագային։ Երբեմն մեր ընդ-ին կը պատասխանէ, երբեմն ի (տրական եւ ներքոյական), եւն։

Ստա (*sta* = ستا), արմատ *istâdan* = ایستادن = կալ, զտեղի առնուլ։ Այսօր ալ կ'ըսուի հրամայողաբար կամ խնդրողաբար بایست (պայիստ) = կաց։

Ուրեմն ابا ایستادن կամ վերջին արտադրեալը գործածելով ابستان է = [illegible], [illegible] եւ փոխաբերաբար՝ [illegible] [illegible], [illegible], եւն։

Մեր "Ատրպատ„ին մէջ արդէն ծանօթագրած էինք այս բառը զոր Փարսի թարգմանիչը չիմանալով անորոշ ձգած էր, افستان հանելով։

Շատ լաւ ներշնչուած է գիտնականն Spiegel այս բառին առթիւ մեր "ապաստան„ը յիշելով եւ refuge իմանալով, ինչպէս կը ծանուցանէ Ed. Drouin իւր Observations sur les monnaies à légendes en pehlvi et Pehlevi-arabe գրքին մէջ (1886, Paris, էջ 45)։

Նոյն հեղինակէն կը սորվինք դարձեալ որ Սասանեանց ժամանակը ո՜րչափ յաճախ գործածութիւն ունեցած է այս բառը որ ազնիւ քարերուն վրայ ալ սովորութիւն եղած է, նուիրական formuleի վերածելով փորագրել „apestan ver iezdan", „apestan ver iezd", կամ պարզապէս՝ „apestanam" (ապաստանիմ). formule որ, ինչպէս հեղինակն ալ դիտել կու տայ, արաբական توكلى على صمد կամ որ նոյն է توكلت على الله (ապաւինիմ առ Աստուած — Աստուծոյ ապաստան) տարազ-

ները կը յիշեցնէ որ մատանիներու եւ այլ քարերու (gemmes) վրայ յաճախ կը տեսնուի։

Ապատ — նպ. اباد = շէն, բարգաւաճ։

Ապատոհմ — որ պհլ. avi-tokhmak կամ նպ. بیتخم պիտի գար (տ. Տոհմ)։

Ապարահ — برهان ին մէջ յիշուած آبراه եւ آبراهه զոր آبراهگذار ով ալ կը մեկնաբանէ որ կը նշ. ջրի ճամբայ, շատ քաջ կը յարմարին բառին մեր մէջ առած իմաստներուն, թէ իբր տեռատեսութիւն, թէ արտաքսելի կարիք եւ թէ արտաքնոց (ճեմիշ) որոց ամենուն մէջ ալ տիրող գաղափարը ջուր եւ հոսումն էր, բարդութեամբ آب ի (ջուր) եւ راه ի (ճամբայ)։

Ես կը կարծեմ որ «ապաւառ»ն ալ որ նոյնպէս մարմնոյ աւելորդ եւ արտաքսելի նիւթերը կը նշ., նոյն այս «ապարահ»ն է որ, ինչպէս աղաւաղմամբ «ապահար»ը՝, նոյնպէս ալ «ապաւառ»ը տուած է, - = հի լծորդութեամբ։

Այլ է պ. اوراو. եւ اهراو. կամ պահլաւաբար [illegible], որ avi (او، و.) բացասականով յօրինուած է, ինչպէս «ապառաժ»ի առթիւ տեսանք եւ որ տառացի [illegible], [illegible] կը նշ., զի اهراو. գնալ կ'ըսուի երբ արահետէն դուրս ելլուի։

Ապարանջան — նպ. ابرنجن، برنجین. որ երկու տեսակ է, կամ ձեռքի (դաստ-ակ) զոր دستابرنجن (դաստապարանջան) կը կոչեն, կամ

ոտքի՝ որ پای‌ابرنجن կ'ըսուի զոր ամենաճիշդ հարազատութեամբ կրնանք պայապարանջան հայացնել, նոր կեանք տալով "պայիկ„ի մէջ ծածկուած "պայ„ (ոտք) հայապահլաւ արմատին։

**Ապարանք** — Hb.ի տուած հպ. apadâna, սոր āfadna տիպերը շատ մօտաւորութիւն չեն ցուցներ։ Հպ.ին գտումը (اواره) աւելի յաջող կ'երեւի զոր ابرهان.ի մէջ ալ գտանք արքայական պալատ, շքեղ տուն, եւ այլ այսպիսի առումներով որ եւ մեր մէջ ալ բառին ընդունած ճիշդ իմաստն է։

Ասկէ օտար չեմ համարիր նաեւ պ. اورنك (aorang կամ avrang) որ գահ, գահոյք կը նշ. եւ որ լայնաբար ապարանք եւս կրնայ իմացուիլ։

**Ապարասան** կամ ապերասան — տ. Երասան։

**Ապարդում** (ձիու գաւակին վրայ փռուած զարդեր) — բարդեալ ի պհլ. aparē (Նպ. ابر, بر = ի վերայ) եւ tum է (دُم = ագի, պոչ, ձետ)։

**Ապարթանեմ** — կնճռոտ բառ որոյ մասին թէ "Արարատ„ին, թէ "Բազմավէպ„ին եւ թէ կարնամակին մէջ արդէն առիթ ունեցանք գրելու։

Hb.ը պհլ. apartanīh, փզ avartani, Նպ. bartanէն կը բերէ։

Արդարեւ ابرتن որ եւ برتن կը նշ. տառաբար՝ անձը (تن) վեր (ابر) բռնել, որուն կը հակադրի فروتن (խոնարհամտութիւն)։

Այլ կայ նաեւ apartar (ապարթար) բարդեալ ի աղարէ (بر = ի վեր) եւ յէ (Բուշ գերադր. մասնիկ), որով իմաստը կը լինի զանձն իվեր համարել քան զայլս։ Եւ որով հետեւ գործածութեան մէջ այս ձեւն է աւելի պատշաճը այն տեղ ուր գործածուած է առաջին եւ վերջին անգամ ըլլալով Եղիշէէն, ուր համեմատական առաւելութեան սնապարծութիւն մը կ'ուզէ տեսնել Վասակին վրայ, ես միտեալ եմ կարծելու որ այս վերջին ձեւը պէտք է լինի բառին ուղեղ ընթերցուածը (կարն. ծան., էջ 30 եւ 140)։

Ապարհայիկ — անծանօթ բառ զոր ոչ Hb.ը յիշած է եւ ոչ այլք, եւ ոչ ալ պ. բառարաններուն մէջ գտայ։ Աբ.ը սակայն "պ. գունդ մը" ըսելով բաւական ճամբայ կը բանայ մեկնութեան մը որ միակ գոհացուցիչը կ'երեւայ, այն է աղարճէ՛ը որոյ աղաւաղումը կրնայ ըլլալ աղարճայէ՛ը։ Ըստ որում "ապարահ" = ապուղի, արտուղի, զարտուղի կը նշ, ինչպէս տեսանք, կարի հաւանական է որ բանակին մէջ մի առանձին գունդ մ'լ կար որ հասարակ պողոտաներէ դուրս, այսինքն ոլոր մոլոր ճամբաներով թշնամւոյն վրայ կը վազէր, աւելի լրտեսելու, դիտելու քան զարնուելու պաշտօնով, ինչպէս այսօր պիտի ըսէինք éclaireur։

Ապարօշ — որ կը պարզուի

ապա = پا، پ.

բաւշ = روش = رخش = լոյս

որով՝ բառին իմաստը կը լինի լուսարգել, ծածկոյթ, *aparafš* ըստ Hb.ի։ Հպ.ին տառատեղափոխական խազերով շեղագրէն բերել կը ճգնի։

*Ապաւ* = աչքի աղտ, ճպռոտութիւն, 2 փորի լուծմունք (Աբ.)։ Հեղուկի գաղափար կայ յամենայն դէպս, լուծմունք հասկցուի եւ թէ արտահոսութիւն բժոյ, որով կ'արդարանայ ապ (ջուր) արմատին գոյութիւնը։

Եւ կրնանք բառը նկատել կամ կրճատն ապաւանի զոր ապաւրանի առթիւ տեսանք, եւ կամ կրկնումն ապ արմատի, երկրորդին մէջ պ բաղաձայնը մեղմանալով ի *v* (ւ) իւր լծորդն։

*Ապաւանդակ* — մնս. *upabandha* (Hb.) որ պհլ. ապաւանդակ պիտի գար ճիշդ հյ.ի պէս զի

ապա (ابا, با = ընդ, avec)

վանդակ = ւանդակ = բանտակ (بند).

յորմէ իմաստն շուն կամ ծառան։ Հպ.ին ἀποβάτρα (տախտակ)էն ցամաք ելլելու կամուրջ, եւն, անտեղի թուիքներու կը դիմէ։

*Ապաւառ* — տ. Ապարահ։

*Ապաւարտակ* (անմաքուր) — Ապաւարտի մի այլազանութիւնը կ'երեւի՝ -ի մ'աւելադրութեամբ ծայրը, ի բաց ձգելով եկամուտ -ակը։

*Ապենիազ* — պհլ. եւ փզ. *avi-niâz*, նպ. بی نیاز = աննուազ, աննիազ, անկարօտ, անպակաս։

*Ապերախտ* — տ. Ապախտ։

*Ապերասան* — տ. Ապարասան եւ Երասան։

*Ապերեւական* — առ ժխտ.ով իբր աներեւական։

*Ապերդմնութիւն* = երդմամբ բացասել։

*Ապիգովեմ* = ոչ գովեմ։

*Ապիդատ* — بيداد (فرهنك) = դատմունքէ զուրկ։

*Ապիզակ* (կուրծքի զարդ, Ար.)։ Պ.ի մէջ اوزه ականջի օղ կամ զարդ կը նշ. զոր պհլ. ձայնիւ اوزك պիտի ըսէինք, համատիպը ճիշդ մեր բառին։ اوزه անց. դերբայն է اويختن (կախել)ին. աստի է որ բիւրեղեայ մեծ ջահերը —խըզէ կը կոչուին այն է առկախ։

*Ապիզար* = بيزار = ձանձրոյթ, զզուանք, գարշանք որ վերջոպէս նզովքի յանգած է մեր մէջ

*Ապիկար* — անկար, տկար։

*Ապիմակ* = անմիտ, անիմաստ, անիմաց (տ. իմաստ, իմանամ)։

*Ապիրատ* — Հպ.իին ἀπείρατον ի վերին երեսս հրապուրիչ է թէեւ, բայց նշանակութեան անպատշաճութիւն կայ, ոքչափ ալ ջանացեր է մերձեցնել։

Ցիրաւի, բառը յն.ի մէջ անփորձ, անճարակ. խակ կը նշ., դիցուք նաեւ անքարեգործ, բայց ոչ չոր մոզք, քանզի կրնայ մէկը անբարեգործ լինել, առանց եւ չար լինելու։ Մինչդեռ ողջերը մեր մէջ չարի, անզգամի, անիրաւի գաղափար կ՚արթնցնէ որուն աւելի կը պատշաճի պհլ. avirad (աւիռատ) կազմութիւնը, այսինքն այն որ չէ ռատ, ազնիւ, վեհ (اوى راد)։

Hb.ին տուած *apēdāt*, պհլ. *apēdātih*, փզ. *awēdāti*, նպ. *bēdād* (بيداد) աղբիւրները “ապիդատ„ին կը պատշաճին աւելի քան “ապիրատ„ին, զի յայնժամ չի եւ ոչ անսովոր փոխանակութիւն մ’ընդունելու հարկին մէջ պիտի գտնուինք, չնայելով որ իմաստն ալ բոլորովին կը շեղի։

Յիշելով թէ Ս. Գրոց մէջ, տեղ մը “առատանամ„ բառը գործածուած է ոխալ, մախալ, սրտմտիլ նշանակութեամբ, հետաքրքրուեցանք ստուգել թէ իրա՞ւ է եւ ցո՞րչափ շօշափած է մեր ենթադրած իմաստը։

Մեծ բաւականութեամբ տեսանք որ ամենեւին նոյն է դիտումը։

Ահա այն համարը՝

“Եւ նոքա իբրեւ լուան, առատանային եւ խորհէին սպանանել զնոսա„ (Գործք Առաք. Ե. 33)։

Այս խօսքը ըսուած է այն առթիւ երբ, յետ յարութեան Յիսուսի, առաքեալք սկսած էին անվեհեր քարոզել եւ նշանօք եւ արուեստիւք յինքեանս յանկուցանել ժողովուրդը։ Յայնժամ

“յարուցեալ քահանայապետն եւ ամենեքին որ ընդ նմա, աղանդ Սադուկեցւոց, լցան նախանձու եւ արկին զձեռս յառաքեալսն եւ եդին զնոսա հրապարակաւ ի բանտի„։

Եւ երբ սոքա հնարիւք իմն ազատելով ի բանտէ, նորէն կը շարունակէին իրենց քա-

*րոզութիւնը, Հրեայք ատեան քաշեցին զա-նոնք եւ խստիւ պատուիրեցին որ այլ եւս չուսուցանեն այն անուամբ։*

*Սոյն սպառնալեաց առջեւ էր որ խօսք առ-նելով Պետրոս՝ ըսաւ*

*“Հնազանդել պարտ է Աստուծոյ առաւել քան մարդկան„, եւն։*

*Այս մերժողական պատասխանին վրայ էր որ “առատանային եւ խորհէին սպանանել զնոսա„։*

*Դէպքին հանգամանքը երկբայութեան տեղի չթողուր, բացորոշ է որ հոս “առա-տանալ„ով բարկանալ, զայրանալ, չարանալ պիտի հասկցուի, ինչպէս եւ միւս թարգմա-նութիւնք ալ եւ յոյնն ալ կը հաստատեն։*

*Οἱ δὲ ἀκούσαντες διεπρίοντο . . . , զոր լտ.ը կը հանէ.*

Hæc cum audissent dissecabantur.

*եւ գղղ.ը՝ շատ ուժգին բացատրութեամբ՝*
„. . . ils frémissaient de rage“։

*Ուրեմն ամէնքին միաբան են զայրոյթ, ցասում, սրտի չարութիւն իմանալու։*

*Թարգմանիչք առիթ ունեցած են Ստե-փանոսի դէպքին պատեհութեամբ ալ այն մի եւ նոյն բառը ի հայ հանելու, բայց այս անգամ, կամ պէսպիսութիւն մը տալու համար լեզուին որ իրենց բնորոշ* qualité*նե-րէն մին է, եւ կամ աւելի բացայայտ ընծայե-լու համար միանգամ գործածուած համակ պահլաւիկ բառը, ուրիշ համիմաստ բառի*

մը դիմած են. “զայրանային„ ըսած են որ այլ եւս տարակոյս չթողուր առաջնոյն առման վրայ։

Ս. Գրոց մէջ մի՛ միայն այս տեղ յիշուած է կարծեմ “առատանամ„ը այս մտօք եւ տեղ մը ստոյգ լուծմանն ալ հանդիպած չեմ։

Ի՞նչպէս ուրեմն մի եւ նոյն բառը ամէն ուրիշ տեղ լիութիւն, լրութիւն, յորդութիւն, ճոխութիւն, միով բանիւ առատութիւն կը նշ., եւ այս տեղ՝ զայրոյթ, ցասում, չարակնութիւն, եւն։

Ասոր պատճառը այն է, ըստ իս, որ ամէն ուր ուրեք որ յորդութեան՝ ճոխութեան մտօք գործածուած է, պ. راد (ռատ) ի համապատասխանած էր որ արդարեւ լի, ճոխ, վեհ, ազնիւ, վսեմ, եւն. կը նշ., այլ զոր, մեր լեզուն հետեւելով սկզբնական -ի, -ի մ՚օժանդակութեամբ “առատ„ ի փոխած է։

Իսկ սորա հակառակ իմաստով “առատ„ը որ հոս զմեզ կը զբաղեցընէ, պահլաւականզմ եւ պահլաւաձեւ a+radն է, այսինքն ոչ ռատ, a ժխտ.ով եւ rad արմատով որ մի՛ այլ ձեւ կամ պէսպիսութիւնն է -ղէր-ի, իբր ապիռատ, անռատ կամ վերջապէս ա+ռատ։

Գ. փարպեցիէն ալ սոյն մտօք գործածուած կը տեսնենք այս բառը.

“...արք եւ կանայք որք անյագութեամբ համակեալք ոսկովք եւ պատուական ակամբք եւ մարգարտովք կապեն ախորժելով զիւրոյին անձանց զձեռս եւ զոտս եւ զպարանոց,

գորս թէ ոք ի թշնամեաց ... կապէր առ վտանգի եւ նովիմբ տայր կալ եւ չհանել ի բաց, առատանայրին փղձկալով եւ չունէին ժոյժ եւ առ վայր մի„։

Ապշոպ — պհլ. âshob, նպ. آشوب, ի բայէս آشفتن = խռովութիւն, խազմ, անկարգութիւն։

Դժուար է հյ.ի մէջ պի գոյութիւնը մեկնել. կամ այն է որ պհլ.ի մէջ ալ կար եւ ինկած է, եւ ասոր ոյժ կու տայ երկու ձեռագրաց մէջ առանց bի պարզապէս ašop գտնուիլը (Hb.) եւ կամ թէ հնչական անմեկնելի տարօրինակութեամբ մը հյ.ի մէջ պ մը եկեր մտեր է։ Ոչ նուազ տարօրինակ է նաեւ առաջին ենթադրութիւնը, զի յայնժամ, ինչպէս կ'ըսէ Hb., պհլ. ap նախադրութեան մը հանդէպ պիտի գտնուինք, ինչ որ սովորականն չէ։

Ապոսեմ, Ապոսմնեմ. ապուսեմ — ող ժխտ.ով՝ բացասել, մերժել, ողոել։

Ապուզանք = անդունդ, վիհ (Աբ.) — նոյն թուի լինել ընդ "աւազան„ի (آ.ز.ن) ուր իմաստի թեթեւութեան եւ սաստկութեան միայն տարբերութիւն կը տեսնուի. առաջինոյն մէջ ջրոյ թեթեւ քանակութեան, իսկ երկրորդին մէջ ամբաւութեան ակնարկելով։ Պ.ը այս վերջին իմաստը չունի։

Ապուխտ — Հպ.ին آویختن (կախել)ին آویخته անց. դերբ.ին հետ կը համեմատէր, բայց կախելը ապուխտի պատրաստութեան երկրոր-

դական գործողութիւններէն մին է. էականը, ինչ որ ապուխտին կու տայ իւր լինելութեան կնիքը՝ դրոշմը՝ չեփած ըլլալն է։ Ուստի ես ալ Hb.ին հետ պհլ. a·պուխտ (չ եփած), նպ. ناپخت կ'ընդունիմ։

*Ապուշ* — զն. *apaosha* որ կը պարզուի

| | | | |
|---|---|---|---|
| նպ. آپ եւ آ. | = հյ. ապ, ան | *aasha* | |
| զն. *apa* | | *hôsh* | = հյ. ուշ |
| պհլ. *avi* | | هوش | |

Տես եւ կարն. ծան. էջ 59։

*Ապուռ* որ եւ *ապուր*, եւս եւ *առ*, *աւար*, *աւեր*՝ մի շարք եւ ընտանիք կը կազմեն եւ մի եւ նոյն արմատին շուրջը կը դեգերին, պհլ. *āvār* = կորզել, կողոպտել (Hb.) եւ *âvirân*, նպ. ویران (Darm. I. 112)։

Մեր “ապրիմ„ը որ ուրիշ հիմ չցուցներ բաց ի “ապուր„ է, խողխողել, յօշոտել որով եւ թրքել իմաստով ինքնին կու գայ այս շարքին մէջ՝ տեղ առնելու. որուն եւ ճողոպուր ասացուածը կը վկայէ, իբր ճողը ճողի– ազատած, մազկուինչ մնացած կեանքի, եւն։ Իսկ “մազապուրծ„ը փրծանիմ ի, պրծանիմ ի պուրծ արմատը կը մատնանշէ որ կը նոյնանայ նաեւ կարելի թուրք, թէրք կամ դուրք, դէրք արմատին հետ, յորմէ թրքեմ։

*Ապսպարեմ* { *Ապսպուարեմ* / *Ապսուարեմ* / *Ապասպարեմ* } պհլ. եւ փզ.

*avaspar*, նպ. سپار յորմէ سپارش، سفارش، բայ՝

سپاریدن، سپردن։ Հյ. տարբեր ընթերցուած-ները պհլ.ի անհաստատ ընթերցանութեան արդիւնքն են թերեւս։

*Ապստամբ* — պ. استم որ եւ ستم կը նշ. անիրաւութիւն կամ ظلم ըստ պ. բառագրոց, այն է բռնութիւն, բռնաւորութիւն։

Կրնայ մտածուիլ ուրեմն որ հյ. բառը կազմուած է նոյն արմատին վրայ -ող ժխտ.ը բերելով, որով իմաստը կը մեկնուի խիստ բանաւորապէս՝ ըմբոստացում, հեստում ընդդէմ բռնութեան։

Ծայրի բը սակայն չենք կրնար անտես անցնիլ, զի կրճատումը սղման օրինօք կը մեկնուի, այլ յաւելումը ոչ։

Այս բը կը գտնենք استنبه|ին մէջ որ պհլ (i)stanpak պիտի գար, ինչպէս հյգ. "ստամբակ„ի գոյութիւնն ալ կը վկայէ, զոր Աբ. կը մեկնաբանէ "խիստ, դաժան, յանդուգն, տ. եավուզ, քէսքին, եօլսուզ„ եւ իբր երկրորդ առում" կը դնէ ճիշդ բառը՝ "ապստամբ„ մեկնութիւն որ կատարելապէս կ'ընդգրկէ պ. նշանակութիւնները։

Այս տուեալներէն կ'երեւայ յայտնապէս որ استم|ը մի սղեալ ձեւն է استنب|ի որոյ վրայ հիմնուած են նաեւ մեր ապստամբ եւ ստամբակ տիպերը։

*Ապրշում* — պհլ *aprēšum*, *aparēšum*, *uparēšum* (Hb.), նպ. յայտնի ابریشم։

*Առասան* որ եւ *երասան*, նպ. رسن، رس (տ. Ապարասան).

*Առատ* — սնս. եւ Հին եւ Նպ. բոլորին մէջ ալ rad = մեծանձն, վեհանձն, մեծահոգի, ձրի, փարթամ, եւն, կը նշ., ինչպէս կ'ըսուի զ. օ. رادمرد = վեհ մարդ:

Թէ ինչու — մը եկած է մեր բառին սկիզբը, այլուր պատճառաբանած ենք (տ. ապերատ, ապարասան) եւ թէ ինչու նոյն բառը տեղ մը —ով եւ տեղ մը չով ընդունուած կամ հաստատուած է, ասոր վրայ բնաւ օրէնք մը կամ հիմնական պատճառ մը չտեսայ: Այդի ընկալեալ ուղղագրութեան հետ հին՝ վաղեմի, կամ թէ ըսենք լեզուին յօրինուածական շրջանները եթէ աչքի առջեւ բերենք, կը տեսնենք որ կատարեալ ազատութիւն կամ շփոթութիւն մը կը տիրէ: Մի եւ նոյն բառը այլ եւ այլ տեղեր, այլ եւ այլ գրերով դրոշմուած է, եւ սովորութիւնը յետոյ ամէնն ալ նուիրագործելով հաստատած է զորս այսօր մենք լծ—:— անուանելով կ'անցնինք:

Այս է որ —————նը ըրած է նաեւ —չ———ն կամ էչ————ն, —————ը՝ —.է-չ——— կամ նոյն իսկ —-չ——— որ անազնիւ՝ անբարի մօք մայր-իմաստին մի այլ ճառագայթումն է. եւ այսպէս շատեր զոր մի այլ ուսումնասիրութեան մէջ պիտի տեսնենք:

*Առէջ* — ջուլհակաց յատուկ մի բառ, պ. ارش, չափ երկայնութեան որ կը ձգի աջ ձեռքի միջնամատին ծայրէն մինչեւ ձախ միջնամատին ծայրը, բազուկները ձիգ տարածուն դիրքի մէջ:

*Ասպ* — զն. *aspa*, պհլ. *asp*, նպ. اسب = ձի. բարդութեանց մէջ կը տեսնուի:

*Ասպազայ* | = ձիու զարդ, բարդեալ ի زین
*Ասպազէն* | (զէն) եւ اسب է: Կ'ըսուի հա-
*Ասպուզան* | ւասարապէս زین اسب, զոր զէն——դ կրնայինք հայացնել, եւ اسب زین = ասպազէն:

Մեր զէն(+) բառն ալ (arme), աներկբայապէս այս ծագմամբ է եւ զէնքն ալ ռազմի մէջ ձիու հանդերձանքներու անմեկին մէկ մասը նկատելով է:

*Ասպակ* = ուտելիք, պատառ, փշրանք (Աբ.): Այս բառը հեղինակաց մէջ յիշուած չտեսայ. برهانի մէջ սակայն سباغ բառի մը հանդիպեցայ զոր نانخورش (կերակուրի վրայ բրդուելիք հացի պատառ) կը մեկնէ որ ճիշդ մեր բառին իմաստն է:

Եւ որովհետեւ գիտենք թէ պ.ի մէջ ընդհանուր կանոն է, ամէն –ով շով սկսող բառեր ընդունակ են –մ'ալ առնել ի սկիզբն, ինչպէս سپاه = اسپاه, ستار = استار, ستوار = استوار, شتر = اشتر, شکم = اشکم, եւն, որոյ ալ պատճառը նոյն տառին հնագոյն շրջաններու մէջ գտնուիլն է, վասն որոյ կրնանք ընդունիլ թէ سباغին հնագոյն, աւելի արքայիկ ձեւն էր اسباغ կամ պահլաւապէս اسباك զոր կը ներկայացնէ մեր ——դ—կը:

*Ասպականապաս* = որսորդ շուն՝ ձիաւոր որսորդի (Աբ.), այսինքն շուն որ ասպականի (ձիաւորի) սպաս կը տանի (կ'օժանդակէ):

Ասպականի = ձիաւոր որսորդ, ասպ արմատի ածանցմամբ:

Ասպահապետ — պ. اسپاه (سپاه، سپه) է եւ զն. paiti (պետ) է կազմեալ. Նպ. اسپهبد կամ سپهبد: Ինչպէս պ.ի՝ նոյն եւ Հյ.ի մէջ բառը բաւական այլազանութիւններ կրած է ասպահ, սպահ, սպայ, սպար (ասպետ), սպա (սալար): Նոյն իսկ մեր աւատական "Սեպուհ„ը այս շարքին մէջ կ'իյնայ այնու զի սեպուհը իշխան, տէր, ասպետ էր (chevalier) եւ հեծեալ եւ այրուձի ընդ իւր ունէր եւ ընդարձակ հողեր եւ կալուածներ ունէր զորս կը պարգեւէր իւր ստորադասներուն (vassal), փոխարէն՝ ուխտ եւ հաւատարմութիւն պահանջելով իրեն բարւոք ծառայելու եւ ի հարկին զօրու ալ օգնականութեամբ ընդդէմ թշնամւոյն պաշտպանելու: Թէ Պարսից հնագոյն ժամանակներու սատրապական դրութիւնը եւ թէ Հայոց Նախարարութեան կեդրոնական իշխանութեան հանդէպ պահած պայմանաւորութիւնը զայս լիովին կը հաստատեն: Սոյն այս դրութիւնն էր որ յետոյ միջին դարու քաղաքական կազմին մէջ ալ գերակշիռ հանդիսացաւ Եւրոպա:

Ուստի երբոր կ'ըսենք ասպետին պարտականութիւն, ինչ զոր ոմանք շատ կը սիրեն գործածել, կը հասկցուի ոչ թէ յատուկ անունին (propre), ինչպէս կ'իմանան սովորաբար, այլ սեպուհի յատուկ, սեպուհի վայելուչ եւ արժանի, հետեւաբար անդրժելի, անտեղիտալի, սուրբ

*եւ նուիրական* (sacré)։ *Քանզի գիտենք որ* chevalier*ներուն ազնուապետական կամ ասպետական յատկանիշներէն մին ալ բերնէն ելած խօսքին՝ խոստման կամ երդման չդրժելն էր, եթէ մահ իսկ լինէր հետեւանքը։*

*Սոյն արմատին եւ սոյն գաղափարին հետ կը կապուի* [illegible] *ալ զոր թէեւ այժմ անխտիր* [illegible] *եւ է պէտս* propriété*ի,* possession*ի միօք կը գործածենք, այլ իր բուն հին եւ ստոյգ իմաստն է սեպուհի վերաբերեալ, սեպուհի պատկան, զի այնպէս կը կոչուէին բոլոր այն երկիրները՝ կալուածները՝ դաստակերտները որ* [illegible]*ին էին, ինչպէս պիտի ըսէինք* ميرى *կամ* اميريه *այն է* [illegible]*, որոշելու համար հասարակաց կամ ոչ սեպհական ստացուածքներէ։*

*"Սեփական" գրչութիւնը սխալ չէ ինչպէս կը կարծէ Հպ.ին, եւ ոչ ալ "սեպհական"ին աղաւաղումը, այլ ինքն ալ ուղղակի "սիփահ" կամ "սիփա" արմատէն առնուած. եթէ ոչ, ոչ թէ ամբողջ* [illegible] *տառախումբը՝ այլ մի միայն* [illegible] *գիրը պէտք էր որ իյնար, զի ․ը ինքնին իսկ առանձին գոյութեան իրաւունք ունի, իբրեւ փոխանակող պհլ.ի։*

*Ասպանճարականական* = *ձիարածական, որ կը պարզուի*

*ասպ* = *ձի*
*ճարակ* = *նպ.* چرا*, պհլ.* چراك*։*

*Ասպանդակ* — *Հպ.ին ցուցցած* اسب انكيز *ը*

իրաւ է կայ պ. բառագրոց մէջ նոյն նշանակութեամբ, սակայն կազմական հանգամանքը այնքան անյարմար է որ կը դժուարիմ ընդունելու: Էնկլիշէն ոնդակ չի գար, շատ շատ ռնկոռ մը կրնայ գալ եւ այն՝ չարաչար բռնազբօսութիւններով:

انداختن բայէն انداز ը միտք կուգայ, իբր Յէփէլ, Նեթէլ եւ պարագային յարմարցնելով Խբէլ, յոռոչ Վորէլ: Բայց աս ալ bonne volontéով է եւ բառին բուն էութենէն չբղխիր:

Բուն յարմարաւոր եւ միակ ընդունելի լուծումն է, ըստ իս, ասպ-բանդակ, իբրեւ Յիոռ կոռդ: Աղման եւ սահման օրէնքը ամենաբաւարար կերպով կը մեկնեն թէ ինչպէս քի խռնումը դարմանուած է պ + բ տարրերուն մէկուն անկմամբը:

"Բանդակ„ը գիտենք որ պհլ. vandak (վանտակ, ւանտակ), նպ. بند (բանտ)ն է = կապ: Ուրեմն "ասպանդակ„ով կ'ակնարկուի այն առասանին որ թամբին վրայէն անցնելով ձիուն երկու կողքն ի վար կը կախուի ազատ ճօճմամբ ինչպէս պերսեպոլիսի եւ այլ հին քանդակներու վրայ կը տեսնուի, եւ որ ի հարկին վարպետ ձեւով մը հեծելոյն ոտքերուն կը հանգրիճուէր, առկախ յօգնեցուցիչ դիրքը մեղմելու համար աւելի, քան թէ խթելու համար երիվարը. թէեւ ասոր ալ երկրորդաբար կը ծառայէր:

Ասպանջական յորմէ որ սղուելով "ասպնջական„ ձեւն աւելի ընթացք ունեցած է: Սա

պհլ. *aspanj*, նպ. اسپنج կամ اسپنج է որ հիւր, հիւրանոց, վանք, օթեւան, եւն. կը նշ. եւ բանաստեղծականին մէջ, փոխաբերաբար անցաւոր ուղեւորն. Վաղանցիկ կեանք առմամբ ալ ոսփորական է: Կ'ըսուի سرای سپنج, իբր سه پنج (3, 5 կամ 3 + 5 կամ 3 × 5) օրուան տուն (աշխարհ, կեանք): Իւս եւ խոտէ խուիւէ շինուած անշուք եւ ղաղփաղփուն հիւղ կամ բնակարան. զի սպնջը խոտ՝ խուիւ՝ ձար՝ մացառ ալ կը նշ:

*Ասպասալար* — տ. Սպասալար:

*Ասպաստան(իկ)* = ախոռի մէջ երկար ատեն պահուած՝ բտած ձի, որպէս թէ ըսուէր ձիաստանիկ, պ. اسبدستان:

*Ասպատակ* — զն. *aspa*, նպ. اسب = ձի, եւ *taka* = վազել, արշաւել, նպ تاز ընդ. թխուն تاختن, որով բառին իմաստը կը լինի ձիարձակ կամ ձիարշաւ: Հ. Պ.ին անտեղի ենթադրութեանց կը մտնէ [illegible] [illegible] վերբերութիւններ տեսնելով:

*Ասպար* — պ. سپر, اسپر:

*Ասպարէս* — պ. բառագրոց նշանակած اسبرز ը միտք կու գայ իրաւ, ինչպէս որ Հ. Պ ին ալ կը դնէ, Պալատցի դպիրէն առնելով անշուշտ. սակայն ասոր մէջ երկրորդ անդամը (رز) անորոշ կը մնայ իմաստով: تختيرز ին հետ կապել կարելի չէ, զի հեղուլ, թափել, վաթելու հետ գործ չկայ հոս, նա մանաւանդ որ պ. բառագէտք հաստատ ալ չեն բառին ուղղագրու-

*թեանը վրայ. կատարեալ խառնաշփոթութիւն մ'է որ կը տիրէ*

*اسب ریز ալ կը տեսնենք,*
*اسب رز ալ,*
*اسب رس ալ,*
*اسب ریس ալ,*

*թող այլ اسپرسبի եւ اسپرسفի նման անհեթեթութիւնները։*

*Բառին բուն աղբիւրը կը գտնենք պհլ. asp-rasի մէջ, բարդեալ ի*

*aspէ (اسب = ձի) եւ*
*rasէ (Նպ. راه, ره = ճանապարհ)։*

*Որով բառին ճիշդ նշանակութիւնը կը լինի, ինչպէս քաջ իմացած է* Hr. (Man. du Pehl. 186)՝ *ձիուն մէկ օրուան մէջ կտրած ճանապարհը։*

*Մեր մէջ ալ թէեւ ուղղագրութիւնը տատանեալ է ընդ մէջ զի եւ սի, սակայն ուղիղն եւ հարազատն, ինչպէս տեսնուեցաւ, սն է։*

*Ասպետ — Հոս ալ բառէն մի դ ինկած է ըստ պահանջման մեր լեզուի որ կրկնակ բաղաձայնի չհանդուրժեր։ Ասպ-պետ էր ի սկզբան բառը ինչպէս կը վկայէ զն.* aspa-paiti *որ Նպ. ի اسپهبد կամ سپهبد*[1] *անցած է եւ*

*1 Պարսիկները անգէտ եւ անծանօթ հին եւ ստոյգ աղբիւրներուն, մինչեւ ցայսօր յամառեալ կը մնան ուֆոհզոււոր սխալ ընթերցուածին վրայ զոր եւ բառագրոց մէջ չեն անտեսեր խնամով նշանագրելու։ Զն.* paiti*ի առջեւ որ* a*է,* بد*ին — ընթերցուածը հիմ եւ արժէք չունի։*

որ առ մեզ --ղէ- սուղլին հետ պահած է նաեւ --ղ-ն--ղէ-, -ղ-ն--ղէ-, -ղ-յ--ղէ- եւ -ղ-ր--ղէ- ձեւերը։

*Աստառ* — Նպ استر։

*Աստղ* — զն. stâre, պհլ. star, Նպ ستاره, սնս. stârâ, լտ. stella, եւն. ընտանիքին մէջ է նաեւ մեր բառը, ղ, ւ, չի լծորդականու-թեամբ։

*Աստուած* — Թէ ազգ. եւ թէ օտար բանա-սիրաց կողմանէ շատ մը լուծումներ առաջար-կուեցան այս առեղծուած բառին վրայ։ Հա-ւանականութիւն մ'ալ մենք փորձած էինք Կարն.ին մէջ "ուզտիշ" (կուռք) պհլ. բառը կարդալով "աստաս", այլ ոչ այն ժամանակ պնդած էինք եւ ոչ ալ այժմ պնդելու իրաւունք կը տեսնենք։

Վերջին տեսութիւնը որ պարզուեցաւ խնդրոյն շուրջը՝ Հ. Ա. Աւետիսեանինն է, որչափ գիտեմ (Հանդ. Ամս 1907 — Սեպտ.)։

Յիշեալ գիտնականը յետ կշռադատաբար յառաջ բերելու ինչ որ ցայն վայր ըսուած էր, լուծում մ'ալ ինք իւր կողմէն կ'առա-ջարկէ։ Այս նոր լուծումն ալ սակայն կը տես-նենք որ վերջինը չէ. պէտքը կը զգացնէ տա-կաւին շատ մը նոր եւ աւելի հիմնական հե-տազօտութեանց, մինչեւ որ աներկեւան ստու-գութեան կամ յոյժ բաւարար հաւանակա-նութեան մը հասնիլ յաջողուի։

*Ատակ* — պ. [illegible]ը հիմ, հուն, տակ, բուն, նաեւ անեզրութիւն, անբաւութիւն, եւս եւ գետին, յատակ, եւն. կը նշ. (زمان.):

Կարել, բաւել, ժամանել, վերահասու լինել իմաստը արդէն ինքնին վերի առումներէն կը բղխի իբր ի հուն հասանել, ի խոր իջանել, թափանցել որով եւ կարող լինել, ատիկել, եւն:

Բառին բուն արմատը ուրեմն [illegible]ը, ինչպէս մեր մէջ ալ պահուած է [illegible] [illegible] բառերով եւ նոյն արմատն է որ [illegible] վերադիրով մը աճելով տուած է [illegible] եւ այլ աճմամբ՝ [illegible]ը:

*Ասպուզան* — ծաղկի մ'անուն, թերեւս նմանողութեամբ [illegible]:

*Ատր* — զն. atar, հպ. aêthra, պհլ. adar, azar, adr, նպ. آذر = կրակ, յորմէ բարդութիւնքդ:

*Ատրագոյն*
*Ատրական*
*Ատրորակ*
*Ատրորմիզդ*
} = եւն: Տ. նաեւ Այրեմ:

*Ատրուշան* — այս կազմով եւ նշանակութեամբ բառի չհանդիպեցանք փարսի մատենագրութեան մէջ, ոչ ալ փարսի գիտնոց ծանօթ, որչափ ալ հարցափորձեցինք: Եւ սակայն մեր մատենագրաց մէջ առած յաճախակի եւ սովորական կիրառութեանը նայելով, ժամանակին ընթացիկ եւ հանրութեան հասկանալի բառ մ'ըլլալու է:

Գալով վերլուծութեանը, առաջին եզրին (ատր) վրայ խօսք չկրնար լինել: Սա՝ յայտնի

ատր, ադր, ադէր (اذر) = կրակն է. մթու-թիւն ընծայողը երկրորդ անդամն է։ Արդ՝ "զն. եւ սնս. [illegible]ուշ (փառել) եւ [illegible]շանհ (արշա-լոյս)„ արմատնե՞րը պիտի ընդունինք Միք. Փորթ. փաշային հետ թէ պհլ. rôshan, զն. raôχshan, նպ. رخش، رخشا، رخشان، եւ վեր-ջապէս روشن, թէ, մի երրորդ ենթադրու-թիւն, Ռոշան կամ Ռոշնու կոչուած Եզդ (ایزد)ը պիտի իմանանք, Իզէդներու երկրորդ դասակարգէն որոյ պաշտօնը միշտ կից կ'ըն-թանար Միթրայի (مهر) եւ Սրուշի հետ։

Եթէ այս վերջինս է, դիւրաւ կը մեկնուի բառը, Ատր Ռո՛շան, այսինքն Ռո՛շան եզդի[1] կրակատուն կամ կրակ։ Զի [illegible] բառը մի միայն կրակ իմաստով չգործածուիր՝ այլ կրա-կատուն ալ կ'իմացուի։ Կ'ըսուի, զ. օ Հուր-Ատր կամ Ատրա Հուր, նշանակելու համար թէ Հուր դից (Արեգական) նուիրեալ է։

Նոյնպէս եւ

Վահրամ - Ատր = Ատր - Վռամ,
Որմիզդ - Ատր = Ատր - Որմիզդ, եւն. (կարն. էջ 43)։

---

[1] Մազդեզնական դրութեան մէջ երկնային կամ Աhուրամազդական Ոգիները երկու դասակարգի բաժնուած էին. ամշասպանդք, գերագոյն ոգիք, թուով եօթն, եւ ստո-րինք որք Եզդ կամ Իզէդ (ایزد) կը կոչուէին։ Այս վեր-ջիններուն կարգէն էին Միթրա, Սրուշ եւ Ռաշն կամ Ռոշն, երեք գլխաւորներ որք միշտ զուգընթաց եւ զուգա-պաշտօն էին։ Ասոնց յանձնուած էր մեռեալ հոգիներուն, իրենց հոգեկան վիճակին համեմատ կայանները որոշել։

Ուրեմն սոյն իմացմամբ Ատր-Ռոշանը պիտի լինի Ռոշան Եզդի նուիրեալ բագին կամ մեհեան: Բայց կը փութամ ըսելու որ այս լուծումը ընդունելի չերեւար զի կը սեղմէ եւ կը մասնաւորէ բառին իմաստը, մինչ յայտնի ակնարկութիւն մը չկայ թէ Ռոշանի կամ այլ որ եւ է դից վրայ է խօսքը, այլ միշտ ընդհանուր իմաստով առնուած է բառը:

Կը մնայ երկու միւս նախադրելոց մէջ ուրեմն ընտրութիւն մ'ընել: Ասոնք իմաստին կողմանէ իրարմէ տարբերութիւն մը չունին, երկու արմատներն ալ լոյս եւ պայծառութիւն կը յայտնեն: Ռոշան պահլաւիկ ձայնը ինձ աւելի մերձենալի կ'երեւայ մեր բառին, յորում անշուշտ երկու զուգադէպ բաղաձայններուն (րր) մէկը հարկ էր որ իյնար, Ատր-Ռոշանը մնար Ատրոշան: Պալատցի դպրին "աշէրնուշ"ի հետ համեմատելը հիմ չունի:

Արդ՝ ի՞նչ կ'իմացուէր ատրոշանով: Եթէ Եղիշէին եւ Ղ. Փարպեցւոյն դիմենք, կը տեսնենք որ միշտ կրակատուն իմաստով գործածեր են, մանաւանդ Եղիշէ տեղ մը յայտնապէս կ'ըսէ "Հրաման ունիմք ի գեօղս եւ ի քաղաքս շինել ատրուշանս եւ զվռամական կրակն ի ներքս դնել": Եւ այլուր, Սամուէլի եւ Աբրահամի միջադէպով "քանդեալ էր եւ սոցա զատրուշանն յԱրտաշատ": Եւ Դենշապուհ Սահակ եպիսկոպոսին ուղղելով "Արդարեւ դու աւերեցեր զատրուշանն

յՌշտունիս, եւ կամ զկրակն դու սպա֊
ներ„, եւն։

Նոյնպէս եւ առ Փարպեցւոյն։

“Իսկ մազուցն գունդք ստիպով բռնադա֊
տէին տանել զկրակս ի տաճար սրբութեան
Տեառն, եւ յայլ ականաւոր եւ գեղեցիկ
տեղիս շինել ատրուշանս . . .„։

Եւ այլուր “աւերեցէք զատրուշանսն,
սպանեցէք զայնպիսի ճոխ կրականի„ — “իսկ
յաղագս ատրուշանացն աւերելոյ՝ որ ասէքդ,
եւ կամ կրակին սպանանելոյ„։

Յայտնի է որ այս ամէն տեղ շէնքի մը,
տան մը, տաճարի կամ մեհեանի մը վրայ է
խօսքը որմէ բացորոշ կերպով կը զատեն
կրակը։

Սակայն եւ այնպէս, այս առումը բացար֊
ձակ չերեւիր։ Բաբգէն եպս. Կիւլէսէրեանը
Օրբէլեանէն կոչում մը կ'ընէ յորում կը
տեսնենք որ կրակարան (մանկալ) իմաստով
ալ առնուեր է.

“Եւ հրամայեաց Թագաւորն հրովարտակս
գրել առ իշխանսն Հայոց, եւ ընդ նմին
ատրուշանս եւ փուշտիպանս եւ քուրմս առա֊
քեալ . . .։ Եւ մեծաւ պարգեւօք արձակեցան
յաշխարհս իւրեանց ածեալ ընդ ինքեանս
ատրուշանս եւ վարդապետս օրինաց„ (Հանդ.
Ամս. 1907, թ. 9)։

Այժմ կը համաձայնի նաեւ Փորթ. Միք.
փաշա երբ կ'ըսէ. “Սեղան որոյ վրայ կրակը
կը վառէր, եւ որ ի հնուց յարկածածուկ չէր

ու բարձր տեղեր կը կանգնուէր„. եւ քիչ մը
վարը՝ "մեր մատենագիրք շատ անգամ զա-
տրուշան՝ կրակատուն իմաստով կը գործածեն,
մասն ամբողջին տեղ առնելով„ (Եղ. եւ քնն
Վեննա. 1903, էջ 195)։

Թէ կրակի պաշտամունքը յարկածածուկ
չէին, ցայսօր ալ կը վկայեն պարսկաստանի
Ֆարս նահանգին մէջ աստ անդ երեւցող
ահագին վիթխարի որձաքար կրակարանները,
թեք ինկած ճանապարհի վրայ, եւ ընդու-
նարանի ձեւով կոփուած, խարիսխ նեղ եւ
բոլորշի, աստիճանաբար լայնցած դէպ ի բե-
րանը, որոնց մի քանին Պերսեպոլեայ մօտերը
մենք ալ տեսանք։

Եթէ ամէն տեղ եւ ամէն ժամանակ գոր-
ծածուածները այս սփինքեան զանգուածներու-
պէս կամ մօտ էին, շարժականութեան գա-
ղափարը մէկ դի ձգելու է. այլ հաւանութեան
է որ միջին եւ մանր modèleներ ալ կային
անշուշտ որք կրնային տեղէ տեղ փոխադրուիլ։

Ընդունելով հանդերձ ուրեմն թէ ասոնց
ալ տարածուած լինի ատրուշան կոչումը, դար-
ձեալ կրակատուն իմաստը գերակշիռ կը մնայ,
ինչպէս մեր հնագոյն մատենագրաց միաբան,
միահաւան վկայութիւնք կը հաստատեն։

Արահետ — որ կը պարզուի

ա = անխուսափելի օժանդակն չով սկսող
յաջորդին,
րահ = راه = ճանապարհ,
հետ = հետի, շաւիղ,

որպէս թէ լինէր [illegible] կամ [illegible] = յայտնի հետի կամ շաւիղ ունեցող ճանապարհ, [illegible] = արքունի պողոտայ։

*Արգ* — զն. arej կը նշ. գին, [illegible], չափ, կշիռ, յարգ, յն. ἄρτής, նպ. [illegible]։

Գիտենք այլուստ որ օտար այփաբետներու γ կամ ג կամ [illegible] մեր գը կը պատասխանէ, որով եւ զն. ի [illegible] ըկը դառնայ [illegible] եւ մեզ [illegible]։ Այս արմատէ են [illegible], [illegible], [illegible] (ἐργασία), [illegible], եւն։

*Արդ* = շէնք, ձեւ, շիտակ, ուղիղ, եւն։ Զն. areta կը նշ. ուղիղ գնալ. յորմէ anareta = ոչ ուղիղ, վայելուչ, իբր [illegible] կամ որ նոյն է [illegible] զի [illegible] ալ նոյն արդ է [illegible] փոփոխութեամբ։

Նոյնն է նաեւ [illegible], զի մ'աւելադրութեամբ որ շատ ուրիշ տեղեր ալ կը տեսնուի։

Այս շարքին մէջ կ'իմանամ նաեւ [illegible], իբր հարթ հաւասար, ուղիղ եւ անմէտ։

Գեղեցիկ ի վեր կը հանէ Եզնիկ այս իմաստները՝ ըսելով.

"Ուստի՞ իսկ բնաւ են, ասեն, այդպիսի [illegible]"։

"Իսկ եթէ էր երբէք հիւղն [illegible] եւ [illegible] եւ անկերպարան եւ [illegible] զնա Աստուած . . ."։

"Եւ թէ յամենայն ի հիւղն՝ որպէս ասենն՝ էր Աստուած, յորժամ՝ զնա ի [illegible] եւ ի [illegible] եւ ի կերպարանս ածեր, ինքն յո՞ մարթէր ամփոփել . . ."։

Եւ բարդութեանց մէջ, ինչպէս խօրօնօրդ, գոմէշնօրդ, կօրնօրդ, եւն։

Եւ բայքս օրդէմ, հօրնէմ, յարդարեմ آرا، آرایش، آراستن։

«Եւ գնեսցեն վէմս արդեալս չորեքկուսիս» (Նօրօգէօտ Մն. Բ. Գէրք, ԼԴ, 11), ուր Եւթանասնիցն ունի «քարինս կոփեալս»։

Արեւ — Սնս. *ravi* (Hb.) րէ– կամ ր–– պիտի տար մեզ եթէ անսովոր չլինէր մեզ այս սկզբնաւորութիւնը։ Այս է որ – օժանդակի մը ծնունդ տուած է, ––րէ–։

Ասոր մի այլազանութիւնն է –րէգ, յորմէ –րէգ–ն՝ իբր ակն (source) արեւու, –րգի որ թերեւս –րէգի է, *rav* = *rap* = *raf* օրինօք։

Առէգօչի մի այլ ձեւն է –րէ––կ որ եղած է նաեւ Էրէ–––կ, յորմէ Էրէ–էմ, Էրէ–օյթ, եւն, իբր յայտնութիւն (apparition)։ Թերեւս եւ Երէօգ (իբր երեւելի մասն մարմնոյ), Երօղ (երեւոյթ) զոր կը հաստատէ նաեւ կերպով մը իւր համանիշ ընկերն –է–էլ։

Վերլուծականին գալով, Երէօգը կ'իմանամ Էրէ–––, վերջին տառը լինելով յոքնակերտ – (+)՝ բուն արմատին վրայ եկած, ինչպէս ուրիշ ածանցներ, զ. օ. –յթ (երեւոյթ), էմ (երեւ-իմ) եւն։

Սորա մի այլազանութիւնը կրնայ համարուիլ Էրօ––ղ, անցնելով Երաւ-ս (– = Է) եւ Էրօ–––ղ (ղ = –) միջիններէ եւ ձգելով ապա –ը դիւրասահութեան բերմամբ։

Արեւ արմատի հարկատու են նաեւ Արուաստան, Արուեստան, որով Արեւելեայ Միջագետքը կ'իմանային, պհլ. Arvāstā-n-i-Hrōm (Hb.), իբր Արեւաստան, կազմ որ կը յիշեցնէ պ. شید ستانը։

*Արժան, -ի* | զն. √arej, erezu, պհլ. arjûk,
*Արժէք* | arjânik (Hr.), նպ. ارز յորմէ ارزش (արժէք), ارزان (արժան)։

erez (droit, juste), եւս եւ arej (prix, valeur) (Hr.) զոր վերեւ յիշեցինք. պհլ arj, յորմէ arjânik տարակոյս չեն ձգեր մեր բառին նոյնութեանը վրայ։

Սոյն արմատին ածմամբը ձեւացած են՝

արժան = պ. ارزان,
արժանի = ارزانی, պհլ. arjânîk,
արժէք = պհլ. arjûk (valeur, prix),
արժանեմ = ارزانیدن,
արժեմ = ارزیدن։

*Արիք* — Հնդուքուշ սարահարթին եւ Պամիրի շրջակայից նախկին բնակչացը կը տրուի այս անունը որ ապա յետ բաժանման Հնդկական ճիւղին եւ չուելոյ ի Հնդիկս՝ աւելի մասնաւորապէս Պարսից սեփականեցաւ, անոնց հետ իմացուելով նաեւ Մարք, Պարթեւք, Բակտրիացիք, եւն. եւ երկիրը յորջորջեցաւ պհլ. aïran-shatour, նպ. ایران شهر = Արեաց աշխարհ։

Սասանեանց ժամանակը շատ գործածական էր այս կոչումը ինչպէս քաջ կը հաս-

տատեն մեր մատենագրութեան մէջ պահուած հրովարտակները որ անգին գանձեր նկատուած են Եւրոպացիներէ։

Սովորական ասութիւններ էին “Արեաց Տէր„, “Արեաց երկիր„, եւն։

Անարիքով սովորաբար կ'իմացուի Ոչ-Արիք, բայց ինձ համար միշտ կասկածելի մնացած է այս մեկնութիւնը, հակառակող ապացոյցներ ալ տեսնելով (տ. Երան եւ Աներան)։

Գանք այժմ թէ ինչ իմաստ իր վերագրուի Արիք բառին զոր Եւրոպացիք *Arya* կը հանեն։

Ինձ կու գայ որ ոչ *Arya* բուն ուղիղ գրչութիւնն է, եւ ոչ ալ անորոշ excellent իմաստը, զոր կու տան, բուն հարազատ իմաստն է։

Եթէ բառին զն. եւ պհլ. գրչութեանը նայինք՝ *airya ayran* կը տեսնենք յորում *ayr* (ایر) արմատ մըն է իշխողը որ կորովի, քաջ, հզօր կը նշանակէ։

Հեռու չէ որ Տուրանեան ار (էր)ը լինի սա, ի Պարսից անոնց անցած, կամ Նախալեզուէ մը երկուքին մէջ ալ մնացած, մէկուն մէջ իսկական տարածուն տիպով միւսին մէջ սղած խտացած։ Ասկէ հաստատուն հիմ մը չեմ տեսներ մեր այր (մարդ) բառին ալ, իբր առնական կորովը մարմնաւորող։ Հ. պ.ին կը սխալի թուրք էրէն բերելով մեր բառը, հոլովոյթի օրինաց հակառակ է այս, զի այր

ժողովրդի բերնին մէջ ողուելով է կը դառնայ, այլ էն տարածուելով այր չտար։ Այս անցմամբ է որ մինչեւ ցայսօր ալ շատ մը այ ձայներ է դարձած են, օր․ հէր, մէր, փէտ, էգ, էս, էն, եւն։

Ուրեմն *ayran shatr*, *ayran zaminը* կը նշանակէր Արեաց այսինքն քաջաց աշխարհ կամ երկիր, իմաստ զոր Պարսից թագաւորներն ալ նախանձոտ խնամով կը սիրեն յիշել եւ հաստատել իրենց հրովարտակներուն մէջ, "Մազդեզանց քաջ[1]" անուանելով զիրենք։

Մեր առաքինի" բառն ալ կու գայ ինքնին լուծուիլ այս շարքին մէջ իբր այրագէն կամ աանագէն, գէն ածանցով, ինչպէս անդոհգին, սրտագին, ջերմագին, եւն (պ. گین)։

Բնականաբար այս սահմանին մէջ է նաեւ "արի" (քաջ) որ մի այլազանութիւնն է այր ի։

Այլ է "արի" հրմ "յառնեմ"ի որ զն․ *ere*, *ar* = *aller*, *s'élancer* (Hr.)ի հետ կ'երթայ։

*Արծաթ* — զն․ *erezata*։

*Արծաթեղէն* — զն․ *erezataèna* (Hr.)։

*Արծիւ* — զն․ *erezifya*, յն, ἄρξιφος․ նոյն բառն է որ թէ զն․ի, թէ յն․ի եւ թէ հյ․ի մէջ կը նշմարուի, ոչ թէ փոխառութեամբ՝ այլ պահպանողութեամբ հնագոյն տիպի մը․ զի

1 Խոր․։

*Հայերը պէտք չունէին ուրիշի դիմելու արծիւը ճանչնալու եւ նշանակելու համար:*

*Զն. բարդութիւն մ'ալ կայ*

*erezifyô-parèna*

*որ ճիշդ մեր* **արծուեփետուրին** *կը պատասխանէ* (Hr.):

*Արձակ* — *Հպ.* *harz*, *զն.* *harez*, *պհլ.* *harzak* *կը նշ. ազատ, ոչ կապեալ:*

**Միւս** *բոլոր առումները այս հիման վրայ են. օր.*

**Ընդարձակ** = *ոչ պարաւանդեալ, ոչ սահմանափակ, եւն:*

**Արձակ** (*գրական*) = *ոչ կապեալ, կաշկանդեալ՝ չափերով յանգերով:*

**Արձակել** (*ապահարզան*) = *խլել, լուծել կապերը, ազատ կացուցանել:* **Եւ** *նոյն իսկ* **Ապահարզան**, *ինչպէս տեսանք:*

*Արձէն* = *առամ, ժանիք, պ.* ارچین, *նոյն նշանակութեամբ:* **Մեր** *բառը առանձին գործածութեան մէջ չէ մնացած, "երեքարձէն" բարդութեան մէջ միայն կ'երեւայ, կարծեմ եռաժանի երկաթ, հեծանոց նշանակութեամբ:*

*Արճիճ* — *պ.* ارزیز:

*Արմաւ* — *նպ.* خرما, *ինչպէս նաեւ պհլ. եւ փզ.ի մէջ:*

**Թէ** *ինչո՞ւ* **խ** *տառը մեր բառին մէջ* **ա***ով փոխանակուած է, պհլ.ին մէջ մի եւ նոյն նշանագրին թէ* **խ**, *թէ* **հ** *եւ թէ* **ա** *կարդա-*

ցուելու ընդունակութիւնն է կարծեմ պատճառը, ինչպէս —ամար, — համար, —խմարի առթիւ ալ տեսանք։

Եթէ Phl.-Engl. բառարանին հեղինակը, Ջամասբջին, հյ.ի մէջ այս շարքին գոյութեանը տեղեակ լինէր, աներկմիտ եմ թէ այս իրական ընթերցուածներն ալ պիտի դնէր, իւր շատ մը անգոյ եւ մոացածին ընթերցուածներուն հետ զորս իրաւամբ կը քննադատէ Darm.։

Կը պարտաւորինք նոյն հարցումը կրկնել մեր բառին ծայրի -ին համար ալ թէ ուստի եւ ինչ պատճառաւ։

— Ի դէպ է կարծեմ Hb.ին հետ ընդունել թէ ի հնումն ալ կար թերեւս եւ ինկած է ժամանակաւ, կամ թէ զն.ին եւ պհլ.ին երկար ա՜ ը յիշեցնելու համար դրուած լինի, ինչ որ սակայն անսովոր է։

“Ամբրաւ„ ձեւով ալ կայ բառը, այլ հոս բի մուտը կրնանք ըսել թէ պարզապէս euphoniqueէ եւ մ եւ ր գէջերու սահումը դիւրացնելու համար եկած։

Այս կերպ ըմբռնել եւ մեկնելը աւելի պարզ եւ բնական է քան Հ. Պ.իի հետ —մբր արմատ մը յոյնէն առնել, avis (հաւ)ը լատինէն, եւ այս ամէնը՝ որպէս զի հյ.ի մէջ ալ —նմահ հա— իմաստը ելլէ յն. φοινιξ (փիւնիկ)ի դիմացը։

Արոյր — պհլ. եւ նպ. ։ Կ՛ըսուի, զ. օ.

روی کداخته կամ وداخته = հալած արոյր (պարն. էջ 20)։

*Արջ* — ŕkša-s, զն. areša, նպ. خرس, յն. ἄρκτος, լտ. ursus (Hb.)։ Մեր բառը, ինչպէս կ'երեւայ, զն. արմատը կը շօշափէ։

*Արտաասուք* — տ. Արտաւսր։

*Արտաւսր* — Այս գեղեցիկ եւ արքայիկ բառին էութեանը կատարելապէս խելամուտ լինելու համար մի քիչ բացատրութեան մտնել հարկ է։

Մազդեզնական գիրք[1] 17 տեսակ հեղուկ կը զանազանեն.

1. հիւթ տնկոց,
2. ջուր գետոց,
3. „ անձրեւաց,
4. մէզ կենդանեաց,
5. կաթ,
6. քրտինք,
7. արցունք,
8. արիւն,
9. թուք, եւն. եւն.

որոց մէջ ամենասուրբը՝ ամենամաքուրը համարուած էր ջուրը, ո՛ր տեսակն ալ լինէր։ Աւեստայն խստիւ կը պատուիրէ չպղծել ջուրը, աղտեղի եւ անմաքուր բաներ ձգելով մէջը։

Երկու եազադա (եզդ. ایزد) կար ջրոյ պահապան կամ խնամակալ Ոգիք, մին արու՝

1 Բունդահիշն XXI։

*Apam-Napat*, միւսը էգ՝ *Anahita* որ եւ *Ardvîsûra*, գեղեցիկ կոյս մը, անուններ որ միշտ անմեկին եւ անբաժան կ'երթան:

*Apam*ին մէջ, *ap* (ապ = آب = ջուր)ը յայտնի է: *Napat*ին համար գիտնոց մէջ կարծեաց զանազանութիւն կայ: Ոմանք բարձրութիւն կ'իմանան Աւեստայի

„*berezantem*[1] *apâm napâtam*"

ասացուածին վրայ յենլով, ինչպէս փարսի գիտնականք:

Այլք փոխաբերական իմաստով կ'առնեն եւ կենդանեաց եւ տնկոց եւ համայն երկրայնոց աճողական արգասաւորութիւն եւ բեղմնաւորութիւն տուող կ'իմանան:

Եւ որովհետեւ բարձրութեան գաղափարը տիրական է Աւեստայի մէջ, ուր երկու տեղ, ինչպէս դիտել կու տայ Hr. իբր տեղւոյ անուն կը յիշուի, բնական էր որ հռչակաւոր Ալբուրզ լեռը միտք գար եւ աւելի բնական էր որ Հայոց Նպատին վրայ որոնէին այս բարձր տեղը, ինչպէս իրաւամբ առաջարկած ալ են ոմանք ի գիտնոց[2]:

---

1 Բարձր, բարձրադիր:

2 En deux endroits Apâm Napât est évidemment le nom d'une localité; au Yesht V. 72, trois héros sacrifient à Ardvîçûra auprès de l'apâm napât; au Yesht VIII. 4, il est dit que Tistrya apparaît du haut de l'apâm napât. Le premier passage ne laisse aucun doute ... qu'il s'agit d'un lieu terrestre. Ce lieu, on l'a cherché dans le Niphates arménien qui contient la source du Tigris (Avesta, Introd. CVII).

Ինչ որ ալ ըլլայ մասնաւորութիւնը, ամբողջական իմաստը յայտնի կը ցայտէ որ դարավէժ կամ դարավազ ջուր կը նշ., բարձրէն իջած: Այս է apâm napât, ardvî-çûra: Բաղդատենք հիմա մեր բառը այս վերջինին հետ:

Մեծ ճիգերու պէտք չկայ, առաջին պարզ հայեցողութիւնն իսկ մոաց առջեւ կը բերէ խսկոյն հանդիտութիւնը ardvî-çur'ի եւ [illegible]ի, ուր կը տեսնենք որ vi ձայնախումբի տեղ հյ. — յօդաձայնը ելած է: Թէ ինչու — Որովհետեւ զն.ին մէջ ալ, Եւրոպացւոց տուածին պէս թաւ v ով չէ, այլ [illegible]ով որուն մեր [illegible]ը միայն կրնար յարմարիլ: Եւ որովհետեւ պարզ ui ալ չէ, այլ երկար, այս երկարութիւնը տալու համար հայը կամ [illegible]ի պիտի դիմէր իամ [illegible]ի: Այս վերջինը գերակշռած է:

Գալով "արտասուք„ին, սա [illegible]էն տարբեր մի ուրիշ բառ չէ, այլ նորա յոքնակին պարզապէս, ինչպէս Hb.ն ալ քաջ դիտած է եւ եթէ աւելի մանր զննենք՝ բուն բառը [illegible] ալ չէ, այլ՝ [illegible], ինչպէս քաջ կը հաստատէ ումկ. համարուած [illegible] ձեւն ալ որ ուղղագոյնն է, [illegible] անյարիր խումբին պարզ ցի վերածուելովը որոյ օրինակները շատ են:

Իսկ [illegible]ը մեր յայտնի յոքնականակերտ մասնիկն է որ խմբական չով վերջաւորած շատ մը բառերուն վրայ կու գայ. փոքր-

փոք + ունք, մանր-ման + ունք, թանձր-թանձ + ունք, եւն: Այս դէպքերուն մէջ ծայրի չին անկումը անխուսափելի էր, առանց որոյ արտաքերութիւնը յանհնարինս պիտի դանդաղէր:

Քաղելով ուրեմն [illegible]ը տուած է նախաբար "արտաւսրունք" եւ սա թօթափելով խոչընդաս տարերքը յանգած է ի "արտասունք" եւ հուսկ ուրեմն ի "արտասուք":

Տարրալուծենք հիմա բառը ըստ նշանակութեան:

Çurին համար գիտունք միաբան են եւ auguste, sainte կ'իմանան, իսկ ardviի վրայ տակաւին մթութիւն կը տիրէ:

Ոմանք (Windischmann) [illegible], միանգամայն եւ [illegible] իմաստով կ'առնեն, յոյր սակս եւ Hovelacque[1] յն. ἄρδω, ἀρδεύω (j'arrose)ին կը մերձեցնէ:

Այլք (Justi, Spiegel) բարձր եւ բարձրութիւն կ'իմանան պարզապէս եւ սնս. rdhyati, rdnôtiի համագոր կ'ընդունին:

Զարմանալի զուգադիպութիւն մը մեր միտքը կու գայ այս առթիւ որ զուգադիպութենէն աւելի նշանակութիւն մ'ունենալ կը թուի: Մեր "արտեւան" եւ "արտեւանունք" բառերուն վրայ է խօսքս: "Արտեւան"ը գիտենք թէ լեռան բարձրագոյն կատարը՝ գա-

---

1 L'Avesta, Zaroastre et le mazdéisme (Paris, 1880, էջ 254):

գաթը կը նշ. եզ. ձայնիւ. իսկ յք.ին մէջ՝ թարթիչ, աչքի կոպերը։ Ի՞նչ գեղեցիկ ամփոփում մի եւ նոյն բառի մէջ վերի երկու իմաստներուն ալ, թէ՛ բարձրութեան եւ թէ աղբերականց կափարիչներու, կարծես ընդ-նշմարել տալով նաեւ հիւթը (larme) որ ի բարձանց, յաղբերաց անտի կը հոսէ եւ որ հոս գլխաւոր դերը խաղալ կոչուած է։

Ուրեմն հայ բառը մի եւ նոյն ուրփ արմա-տով, որոյ ճառագայթումները կը համարիմ արտաւ եւ արտեւը (ἀρδεύω), երեք էական իմաստներ միանգամայն կը բովանդակէ.

բարձրութիւն՝ զոր արտեւանանց դիրքը կ՚ար-
դարացնէ.

արտասուաց աղբերակի աւընթեր գաղափարը
եւ վերջապէս նոյն ինքն արտասուքը,
հիւթը որ աստի կը ծորէ։

Հ. Պ.ին, լրտեսելու գաղափարէն մեկնե-լով՝ "Արտասիւրաս„ (ակն արքայի) լրտեսի մ՚անունէն կը բերէ "արտաւսր„ը. լտ. ploro եւ exploro ձեւերու թելադրութեան տակ։

Ընդունելով հանդերձ պատմական իրո-ղութիւնը, տակաւին խնդրական կը մնայ թէ ինչ է "արտասիւրաս„ը եւ ինչ տարրներէ կազմուած։

Նախ բառը խեղաթիւրեալ է, պարսկերէն չհնչեր. Պլուտարքոս անշուշտ յունացուցած է զայն որ անշուշտ մեր ծանօթ ardvî-çûrը պէտք է լինի։ Երկրորդ՝ քիչ մ՚աւելի

խաղի կերպարանք կը մտնէ գործին մէջ, լատինական, եւն. թելադրութիւններով արուեստակեալ ըմբռնելով ամենալուրջ կերտուած մը որ առանց այդ վարկպարագի ենթադրութեանց ալ ինք իւր մէջն ունի իւր մեկնութիւնը։

Չեմ կրնար ընդունել նաեւ Հ. Ս. Տ.ի[1] [illegible] տարրալուծութիւնը եւ ոչ ալ մեր բառին ուղղակի աղբիւրներ կը ճանչնամ տասրու կամ δάχρυ որոնց հետ եւ ուրիշներ ալ զորս կը յիշէ Hb.։ Ասոնք կրնան կողմնակի ծնունդներ լինել, այլ ոչ ծնողք։

Հ. Պ.ին “արտեւան„ին վրայ ալ կը սխալի յատուկ անուն Արտաւանը տիպ առնելով։ Այն “ամբարտաւան որպէս Արտեւան„ ասացուածն ալ որ յառաջ կը բերէ՝ աւելի բան մը չապացուցաներ քան թէ գոռոզ եւ բարձրայօն էր Արտաւանը։ Եւ այս իմացմամբ ալ թերեւս աւելի ճիշդ պիտի լինէր Արտաւանը արտեւանէն բերել քան զսա անկէ։

Այլ փութանք աւելցնել որ այս ենթադրութիւնք երկրորդական կը մնան բուն էականին հիմնականին քով զոր շատ լաւ իմացած եւ բացատրած են եւր. հեղինակք. Hr. (Manuel Avesta 304) եւ J. Darm. (Et. Iran. I. 98)։

Ըստ այս տեսութեան, “արտաւան„ը ծագում կ'առնէ հպ. art (արտ) արմատէն որոյ

1 Հնդեւր. Նախալեզու, էջ 83։

*rd* խումբը *sh* կ'անցնի զանդին, [illegible] = շ որոյ ուրիշ օրինակներ ալ կան, որով բառը կը լինի *ashavan* որ ամէն քայլափոխին կը հանդիպի զն. մատենագրութեան մէջ՝ [illegible], [illegible], [illegible] իմաստով։

*Աւազան* — նպ. آبزن = լոգարան, եւս եւ պղնձէ կամ այլ մետաղէ ջրաբուժական գործի (թերեւս ցնցուղ)՝ ի պէտս հիւանդաց (برهان.)։

Զեմ հասկնար թէ ինչու Hb.ը *apazan* մը կը սպասէր։ Անհրաժեշտ եւ պարտաւորիչ չէր սա քանի որ գիտենք թէ հյ.ի մէջ *p* եւ *v* միշտ փոխանակելի են, ինչպէս եւ պ.ի։ Կրնար մեր բառը ապազան ալ գալ, ափազան ալ, աւազան ալ, *p* = *v* = *f*, օրինօք։ Պհլ. ձեւը պահուեր է յորում գիտենք թէ *v* = [illegible] տառն է տիրականը։ Ինչպէս ուրիշ տեղեր ալ ղն պահուած է, օր. [illegible], [illegible], ինչպէս տեսանք։

*Աւաղ* — պ. آوخ, آوه։

*Աւան* — հպ *āvahana*, պհլ. *āvahan* (Hb.) = փոքր քաղաք։ Մեր մէջ աւելի սեղմեալ սղեալ է ն- խմբին իյնալովը։

*Աւանակ*, *յաւանակ*, *յովանակ* — նպ. جوان, جوانك = դեռատի, դեռահաս։ Այս տեղ երկու յաջորդ բառերուն վրայ տեսնուած յն եկամուտ չէ այլ բառին մարմինէն է, պատասխանելով *i* = *j* = ج = ي որոց հանդէպ միշտ մեր յն գրուած է։ Բուն կատարեալ բառը ուրեմն [illegible] կամ [illegible] է, [illegible] յին իյնալովը ձեւացած է։

Աւաչ — զն. avāč, պհլ. vāč, նպ. اواز = ձայն, աղաղակ։ Hr. կը սխալի պ بانك = հյ. վանկն ալ ասոր հետ իմանալով, զի սա ինքնին ուրոյն արմատ մը կը կազմէ։

Աւատ — տ. Հաւատ։

Աւար, առ — տ. Ապուռ։

Աւետ(իք) — տ. Հաւատ։

Աւեր, աւերակ — պհլ. avîran, նպ. ویران։

Աւիժք
Աւիշ
Աւիշկ
Աւիշտ
Աւիշք — պ. افشك = հիւթ վազած՝ կենդանի կամ մեռեալ մարմնէ, ծառէ, եւն. (Աբ.)։

Աւճառ (օձառ) = նիւթ, գործիք — պհլ. avzar, նպ. افزار։

Աւսարդ — աւ (հպ. awi, զն. aivi, նպ. af, aw) մասնիկով եւ հպ. sarda, զն. sarəda, նպ. سال (Hb.) = ամ, տարի արմատով բարդութիւն որոյ նմանն ունինք ի Նաւասարդ (Նոր տարի)։

Աւտար (օտար) — զն. aiwitara (Hb.)։

Ափսոս — զն. սաճսա, պհլ. աֆսոս եւ նպ. افسوس։

## Բ.

Բագ — 1 Բերնի կապ եւ իբր այս կը յիշեցընէ տճ. باغ ը որու հետ հոս գործ չունինք։ 2. մաս, բաժին, ժառանգութիւն որով կը պատասխանէ սնս. bhāgā (Hb.), զն. baγa, փզ. bag եւ նպ. باج ին։ Աստի է

բագեմ = բաժին հանել,
բագորդ = բաժնեկից, մասնակից եւն։

3. Աստուած որ առանձին գործածութիւն չունենալուն՝ բառարաններուն մէջ մտած չէ։ Այլ սակայն շատ հին բառ է եւ թէ Աւեստայի մէջ կը գտնուի (ƀag'a) եւ թէ պերսեպոլիսի բեւեռագիրներուն մէջ

„ƀaγa vazraka Auramazda“

(մեծ աստուած [է] Աւրամազդ). եւ թէ Սասանեան արձանագրութեանց մէջ կայ։

“Բաղդատ„ը (بغداد) լեզուաբանք կը մեկնեն

բագ = Աստուած
դատ = (داد) = տուրք, ի բայէս دادن որով իմաստը կը լինի աստուածատուր, իմաստ որ աւելի պատշաճական է քան Հ. Ա. Տ.ին ընդունած աստուածատուրը որուն ընդդէմ կ'ելլեն միւս նմանօրինակ կազմութիւնք, ինչպէս Տրդատ (Տիր, կամ ըստ նորագոյն, տեսութեան՝ Ատր դից տուրք), Միհրդատ (Միթրայի պարգեւ), եւն։

Հռչակաւոր Բեհիսթուն կամ Բիսութունն ալ (بيستون) աշխարհագիրք ոմանք[1] Բագստան դրած են։

Մենք այս Բագ արմատէն ունինք

բագայառիճ
բագարան

---

1 F. W. Putzgers. Historischer Schulatlas, Bielefeld und Leipzig 1901.

բագաւան
բագին

զորս լաւ մանրամասնած է Hb.[1]:

Բադ — Նպ. بت, որ بط արաբացած է:

Բադակ — ա. Բանդակ:

Բազէ — պհլ. եւ Նպ باز, յորմէ բազէակիր կամ բազէկիր (بازگیر):

Բազմ (ակումբ, խնջոյք, հանդէս) — Նպ. بزم. Այս արմատը մերկ գործածուած չէ մեր մէջ, այլ ածանցներու մէջ կը հաստատէ իւր գոյութիւնը, զ. օ.

բազմական = بزمکان,
բազմոց, բազմիմ:

կայ նաեւ բազմակ (بزم.), ճրագ նշանակու-թեամբ՝ յորմէ բազմակալ (ճրագարան, աշտա-նակ):

Մեր "բազում„ն ալ Հ. Պ.ին հետ այս խումբին մէջ կը դասեմ, հետեւելով խրախ-ճանութեան՝ խմբակցութեան գաղափարին որ բազմութիւն կ'ենթադրէ անշուշտ:

Բազուկ — զն. bâzu, Նպ. بازو, յորմէ՝

բազկեմ = թեւերը կտրտել,
բազկոց = բազմոց (fauteuil),
բազպան = թեւնոց (بازو بند):

Բաժ (մաքս, հարկ, տուրք, բաժին, մաս) — զն. եւ Նպ. باج:

---

[1] Arm. Gram. I., էջ 113.

Այն արմատի ածանցներն են Բաժան, Բաժէն որոնց հետ նաեւ Բաժակ, իբր բաժին, բաշխ որ իւրաքանչիւր գինեըմբուի կ'իյնայ խրախճանքի մէջ, ինչպէս գեղեցիկ երգած է Հաֆըզ

الا یا ایّها الساقی ادر کاساً و ناولها

(Օ՜ն, մատռուակ, շուրջ ած բաժակը եւ մատո՛ զայն բաղմականաց)։

Նոյն "բաժ„ արմատի բղխումներն են.

Բաժապան = մասն՝ բաժին ունեցող.
Բաժապետ = մաքսապետ.
Բաժէմ = մաքս առնուլ կամ տալ.
Բաժէնք = տարակոյս, մտքի բաժանում.
Բաժորդ = բաժանորդ, որոյ ծորդն է, ինչպէս տեսանք՝
Բաճորդ, եւն։

"Բաժ„ը կը նշ. նաեւ Բախտ, իբր տուրք, բարիք, պարգեւ բախտի (بخت)։ Սորա մի այլակերպութիւնն է Բաստ, յորմէ

Բարէբաստ (نیك بخت),
Չարաբաստ (بد بخت)։

*Բախտ* — տ. Բաշխ։

*Բահ* — նպ. فه (*fah*), նոյն նշանակութեամբ։

*Բահուանդ* (բազկի կապ) զի պ. باهو հոմանիշն է بازو ի (فرهنك) որ կը նշ. բազուկ. եւ وند որ եւ بند մեր Բանդն է (կապ նշանակութեամբ) որ ըստ պահլաւականին՝ կը գրուի նաեւ Վանդ, եւ աւելի՝ Ուանդ։

Բամբ (թաւ ձայն) — պ. بام կամ بم։ Բանաստեղծն[1] ըսած է

بسوز نالهٔ زارم ز عشاق
نوای زیر و بامی بر نیاید

(իմ խուշշաքէ[2] սրտակէզ հառաչանքներս ամենացած եւ թաւ նուագներն ալ չեն կարող տալ)։

Բամբակ — նպ. پنبه։

Բամբիշն (տիկնանց տիկին, թագուհի, դշխոյ) — պհլ. bāmb(i)šn, bānbušn (Hb.)։

Հ. Գ.ին, ձայներէ եւ ինչ ինչ ընթերցուածներէ ազդուելով անշուշտ՝ "շամբուշ„ին հետ կը համեմատէ։ Տուած օրինակները անհամոզկեր չեն, իրաւ, մերձակցութիւն մ'ընդունելու, բայց քանի որ բառին աղբիւրը շատ որոշ եւ պայծառ է պհլ.ին մէջ, այլ եւս ենթադրական հաւանականութեանց տեղի չմնար։

Բան = խօսք, լեզու, խելք, միտք, հանճար (raison, intelligence)։

Սնս bhaṇ, յն. φαίνω։ Ասոնց հետ կը նոյնանայ նաեւ պհլ. եւ փզ. վ–նկ եւ նպ. بانك ձայները ինչպէս իրաւամբ յիշած է Haug զոր յառաջ կը բերէ Darm. (Et. Ir. II, 137)։

Սնս. bhan նախնականին քով պհլ. vangին եւ նպ. بانكին ծն հաստատ չերեւար, քանի որ նպ. առանց գի ալ կայ լոկ بان (برهان)։

---

1 Խաջոյի Քիրմանի (فرهنك)։

2 Երաժշտական 12 եղանակներէն մին։

*Հայերէնը այս երկու ձայներն ալ միահաւ-ղոյն կը ներկայացնէ. մէկը بان, միւսը՝ وانک ձեւերու տակ: «بان» արմատէն ելած շատ մը բարդութիւններ՝ ածանցներ կան զորս աւելորդ է յիշել:*

*Այլ է սակայն՝*

*Բան (մեղրի բջիջ, բաղարջ) որ Նպ.* ﺑﺎﻥ *ի կը պատասխանէ* (Hb.)*: Եւ*

*Բան (բանուորական, միջակական նշանակու-թեամբ) — Նպ.* ﻥ. *զոր «անդ, անդաստան երկրագործական աշխատութիւններ» կը նշա-նակեն պ. բառագիրք:*

*Բանակ — պ.* ﻨﻪ *կը նշ. տուն տեղ եւ տան վերաբերեալ կահ ու կազմած որոյ պհլ. ձեւն է* بانک *յորմէ անկարելի է անջատել մեր* بنکը*, որոց ամենուն ալ արմատն է* بان (ﻥ.) *որ ի մեզ պեսպիսութեամբ տուած է նաեւ* بوم*, ինչպէս եւ պ.ի մէջ ալ* ﺑﻮﻡ. *որ երկիր, բնակավայր, տուն տեղ կը նշ.: Կ'ըսուի, զ.օ.*

ﻣﺮﺯﻭﺑﻮﻡ *= մարզ եւ բուն,*

ﺑﻮﻯ *= բնիկ:*

*Այս «բուն» արմատէն* بانکի *մի այլա-զանութիւնն է «բանակ»ը որ յընդարձակ միտս ոչ թէ զօրախումբ միայն կը նշ. այլ եւ ամէն ինչ որ զօրքի պէտքերուն կը վերա-բերի, տաղաւար, պարէն, հանդերձանք, եւն:*

*Բանդ, բանտ, վանդ, ւանդ, բոլորն ալ նոյն մի արմատն է, զն.* banda, *պհլ.* bandak, *Նպ.* ﺑﻨﺪ *որ կապ, կապանք, արգելան կը նշ.:*

Այս համիմաստ այլազան ձեւերը շատ մը բարդերու եւ ածանցներու ծնունդ տուած են։ Ունինք, զ. օ.

Վանդակ (տճ. قفس) = արգելան.
Դանդանաւանդ = պաշտօնեայ dandanvant, նպ. دندان بند.
Բազուանդ՝ զօր տեսանք, باهو կամ بازوبند (բազկապ).
Բանդակ կամ Քանդակ = պտղի քամուք՝ եփած, մուրապպա (Աբ.)։

Թէեւ յետնոց՝ բայց ընտիր կազմով է եւ պհլ. bandakը կը յիշեցընէ։ Հիմա بستی կ՚ըսեն պարսիկները بستن բայէն որ թէ պաղպաղակ կը նշ. եւ թէ ամէն տեսակ ազնիւ հիւթոց բիւրեղացում կամ թանձրացումը։

*Դանդաղագուշ(անք)* — Թուլ լինել گوش بند իբր ծառայ ականջի, ամէն լսածին հաւատացող, ամէն բան անընտրողաբար լսող խօսող։ Այս հիման վրայ է մեր բառին ցնորք դանդաղմանց, եւն. առումները։

Կը տեսնենք որ ճիշդ բառին ստուգաբանական իմաստը գործած է փարպեցին երբ կ՚ըսէ.

“Եւ ինքն քաջ սեպուհն Մամիկոնէից Վասակ պատրողական բանիւք քանդակաշաղացանէր պատգամաւորօք զԱտր Վշնասպ . . .„ այսինքն կը համոզէր, կը խաբէր։

Բանիկ
Բանկ } տ. Բան։
Բանկն

Բաշ, բարշ — զն. barəša, buš (Hb.), նպ. بش զոր Պալատցի դպիրն ալ դիտած է։

Բաշխ = բաժ, տուրք, հարկ, վիճակ, բախտ (Աբ.)։ Գրի մը տեսուառաջութեամբ խսկականէն քիչ մը շեղած է այս բառը քանզի զն.ը baχsh (բախշ)է, նոյն եւ պհլ.ը եւ նպ. بخش։

Hb.ը իրաւամբ պհլ. բաժ, բաշն ալ կը յիշատակէ, ոահ, բագ իմաստով յորոց սակի եւ բախտ։

Այն բաշխն է նաեւ մեր վաշխը զի վաշխ առնուլը ուրիշ բան չէ բայց եթէ սակ դնել, հարկ տուրք առնել։

Բաչ(եմ) — Շատ հին եւ շատ ընտիր արմատ մ'է "բաչ"ը որ զանազան ձեւերու մէջ մտնելով ճոխացուցած է հայ գանձարանը։

Սորա համազօրը կը գտնենք ի զն. "վաչ" որ ճիչ աղաղակ կը նշ. եւ զոր մինչեւ հիմա պահած են Պարսկաստանի փարսիները իրենց دری dialecteին մէջ vajah ձեւով (= ասեմ)։ برهان.ի մէջ ալ واج (= ասա՛) հրամայականի մը կը հանդիպինք واجيدن բայէն (= ասեմ)։

"Բաչ"ի ձեւակերպութիւնք կը թուին հաչ, հաջ, հառաչ, բառաչ, կառաչ, եւն. ամբողջ բառաշարքը որ մէկ ընտանիք կը կազմեն։

*Բաստեռն* — տ. Պաստառ:
*Բարակ* (նուրբ) — պ. بارك, باريك:
*Բարակ* (բորակ) — պ. بوره:
*Բարապան* — նպ. ր. (bar) կը նշ. նաեւ դուռ (هان ր.) որով "բարապան"ը կը լինի դարպան կամ դռնապան: Ասով կը մեկնուի նաեւ
*Բարաւոր* որ դրան վերի շեմը կը նշ. = դրանդիք:
*Բարեբեր* — տ. Բարի(ք):
*Բարեկենդան* — Այնչափ գեղեցիկ յօրինուածութիւն ունի այս բառը եւ այնչափ հայացի կը հնչէ որ իրաւունք ունին հայաբար **Բարի կենդանութեան** վերլուծողները: Եթէ չըլլինէր պ. غادان ր. կամ قندان ր. որ շփոթութիւն կը ձգէ, բառին հայ դրոշմը կոյս պիտի մնար:

Հակառակ սակայն այս յերկուաբեր միջամտութեան, լուրջ հետազօտութիւնը կը ցուցնէ որ հայ վերլուծութիւնն է դարձեալ ուղղագոյնը, եւ ահա թէ ինչպէս:

Զրադաշտեան մատենագրութեան բոլորովին անծանօթ է այս բառը եւ պ. բառագիրք ալ Ռամազանին նախընթաց Շապան ամսոյ վերջին եւթնեկին մէջ կատարուած կերուխումի, խրախճանութեանց կ'ակնարկեն, ճիշդ մեր պահսամուտի պատրաստութիւն:

Ուրեմն բոլորովին վերջին դարերու եւ մահմետական աշխարհի մէջ կ'ամփոփուի այդ սովորութիւնը: Ընդհանուր իսլամութեան մէջ ալ չէ, եթէ ոչ ամենուն լաւ գիտցած

բառը պիտի ըլլար, մինչդեռ ոչ Ցաճկաստան ծանօթ է, ոչ Պարսկաստան, բառարաններու մէջ միայն կը հանդիպինք։ Եւ ասոր ալ պատճառը կարծեմ այն է որ ամէնքն ալ անխտիր, ինչպէս նաեւ մեր Պալատեանը, شاهن.էն առած են, իբր նախատիպը եւ հնագոյնը։ Իսկ شاهن.ին հեղինակը, ինք, Ատրպատականցի լինելով ի հարկէ քաջ տեղեակ էր իւր երկրին եւ աշխարհին ամէն սովորութեանց եւ աւանդութեանց։ Ատրպատական աշխարհի յատուկ սովորութիւն մ'էր սա ուրեմն եւ հաւանականութենէ հեռի չէ կարծելը թէ Ուրմիոյ հայահոծ գաւառներուն մէջ թերեւս (Խոյ, Սալմաստ) սովորութեան հետ բառն ալ Հայերէն անցած լինի Պարսից։

Յաւե՛լ նաեւ որ պ.ի մէջ ստուգաբանութիւն ալ չունի բառը եւ պարսկական դրոշմ ալ չկրեր. քանզի, ինչպէս գիտենք, ձը օտար է պ. այբուբենի, եւ ոչ ալ ըը հարազատ ընդունուած է, թէ եւ մի քանի ցանցառ բառերուն մէջ կը տեսնուի։

Այսչափ խարխուլ հիման մը վրայ յենլով զրկել հայ ստեղծագործ միտքը իւր գեղեցիկ մէկ արտադրութենէն՝ պարզապէս անիրաւել է։

Զուտ հայկական է եւ կը մնայ, ըստ մեզ, բառը եւ քրիստոնէական նախնի դարուց դրոշմը կը կրէ եւ թարգմանութիւնն է թերեւս յն. εὐροσύνηին զոր եւ ինք Հ. Պ.ին կը յիշէ։

*Բարի-ք* զոր աւելի ճիշդ պիտի լինէր **Բար-էք** ուղղագրել զի արմատը "բար"է, պ. بار կամ ﺑ.:

Հյ.ի մէջ ալ արմատը բաւական փոփոխութիւններ կրած է. երբեմն **Բար** ձեւի տակ կը ներկայանայ եւ ճաճանչներ կ'արձակէ, ինչպէս.

**Բար-էք, Բար-ու-թե-նք, Բար-ու-նակ, Բար-ե-լից,** եւն.

Երբեմն **բեր**, ինչպէս.

**Բար-ե-բեր** = նպ. بارور (بار.ر) = պտղաբեր:
**Բեր-րի** = արգասաւոր, պտղատու:

Երբեմն **վար**՝ ինչպէս.

**Նո-վար** = պ. نو = նոր բերք:

Եւ աւելի սղուելով՝

**Նվար**, իբր **նու** կամ **նով** (= նոր), **վար** (բեր):

Երբեմն ալ **վն** կամ **բը -ի** փոխուած եւ բառին էութիւնը բոլորովին գաղտնի եւ թաքուն մնացած, ինչպէս.

**Նո-վէր**, յորում **նո** անդամը կրճատն է **նորի** կամ **նովի**, **վար** կամ **բեր**ը կը ներկայանայ **-վէր** ձեւով:

Ասոնց վրայ "Հանդ. Ամս."ի 1912, Թ.ին մէջ ալ առիթ ունեցած էինք խօսելու:

*Բար-ութիւն*
*Բար-ունակ* } տ. **Բարի-ք**:

*Բեր-րի* }
*Բեր-ք* } տ. Բարի-ք:

*Բարձ* — մնս. *barhis*, զն. *barəziš*, նպ. بالش (*r* = *l*):

*Բարձր* — զն. *bereza*, √*barez*, յորմէ պհլ. *burz* որ նպ.ի بلند դարձած է: Մեր մէջ ալ բառին բուն արմատը “բարձ„ է, ինչպէս հոլովներուն մէջ յերեւան կ'ելլէ (բարձ-ու, բարձ-անց, եւն), եւ ինչպէս ասկէ ծագած այլազանութիւնք ալ կը ցուցընեն.

Այն այս արմատն է որ տառական փոխակերպութիւններով եղած կը տեսնենք

[illegible] — բարձրաբերձ.
[illegible] — պարծիմ (հպարտանալ, գլուխն ի վեր ունել).
[illegible] — շքեղ, փառաւոր.
[illegible] (ամ).
[illegible] — հ-պարտ
[illegible] — ամ-բարտ-աւան, ամ-բարտ-ակ.
[illegible] — համ(ամ)-բառ-նամ որոյ կատարեալ եւ այլ ժամանակներուն մէջ բուն արմատը դարձեալ երեւան կու գայ (համ-բարձի, եւն):

*Բարսմունք* — Աւեստական բառ, զն. *baresma*, պհլ. *barsum*, նպ. برسم: Բարսմունքը զոր մենք ալ փարսիներուն ձեռքը տեսանք եւ շօշափեցինք, նուիրական տունկի մը ճիւղերէն կազմուած տրցակ մ'էր զոր կարեւոր հանդիսութեանց պահուն մոգպետը ձեռքը կը

բռնէր, ինչպէս նաեւ արքայն՝ ճաշի աղօթքի ժամանակ, եւ այս եղած է, կ'ըսեն, վերջին դժբաղդ Յազկերտին յայտնուելուն պատճառը, երբ Արաբաց արշաւանքով Պարսկաստանը իւր անկախութիւնը կորուսած եւ գահազուրկ փախստական արքայն աշխարհէ աշխարհ տեղ կը փնտռէր գլուխը դնելու, որ մը աղօրեպանի մը քով ապաստանած էր եւ ճաշի պահուն ձեռք առած էր բարսմունքը։ Ագահելով իւր արդ ու զարդուն, ականակուռ թրին, եւն. սպանած էր զինք աղօրեպանը։

Մազդեզնական արարողութեանց մէջ կարեւոր տեղ մը կը բռնէ բարսմունքի պատրաստութիւնը, պահպանութիւնը եւ կիրառութիւնը։

Յատուկ յ—ղեր (نز.), յ—ղ—եր (یشت) սահմանուած էին այս գործողութեանց համար, ինչպէս նաեւ յատուկ դանակներ, պահարաններ, եւն. այս ճիւղերը կտրտելու եւ պահպանելու համար (برسمچین.، برسمدان.)։

Այժմ, որովհետեւ դժուար է նոյն տունկը ձեռք անցընելը, մետաղեայ բարակ թելերով կը փոխանակեն։

Տրցակը կազմող ճիւղերուն թիւը 3էն մինչեւ 35 էր, այսինքն ոչ նուազ քան 3 եւ ոչ աւելի քան 35 եւ serviceին կարեւորութիւնը կ'որոշէր թէ քանի թելերէ կազմուելու էր տուեալ պարագային համեմատ[1]։

---

[1] كلدستهٔ آئين زرتشتی

**Բաց** — պ. باز որ եւ واز, եւ կրճատմամբ՝ وا, զի կ'ըսուի درراواكن (դուռը բաց), փոխ. وازكن ի։

Անկէց է մեր դարբաս կամ դարպասը՝ իբր դարբաց, պ. دروا‌ز կամ աւելի սովորաբար՝ دروازه։

**Բդեաշխ** — պհլ. patkhshâi, patkhshah, հպ. pati khshâiyathiya, նպ. پادشاه = պետ, իշխան, կամ լաւ եւս՝ իշխանապետ, զի երկրորդ անդամը պետութիւն իշխանութիւն կը նշ., եւ այս աւելի յարմար է քան khshatra որ աշխարհ կը նշ.։ Որով եւ բառը կը լինի ոչ թէ աշխարհաց պետ, այլ՝ իշխանութեան։

**Բեռն** — պ. بار, յորմէ

**Բեռնակիր** = بارکیر։

**Բերեմ** — զն. barāmi, յն. φέρω, լտ. fero, նպ. بر.ի բայէս بردن. որ ուղիղ ժամանակներուն մէջ կ'ըլլէ بر. (ی), եւն. թէեւ պ.ի մէջ նշանակութիւնը աւելի տանիլ է քան բերել։

**Բժիշկ** — զն. baèshaz, bishaz, պհլ. bîshajînîtan կը նշ. soigner, guérir (Hr.), յորմէ bishazak կամ bishazk, նպ. بزشك, որ پزشك ալ بجشك ալ կը գրուի։

**Բիժ** (աչաց) — պ. بیچ եւ پیچ։

**Բիւր** — զն. baèvare, պհլ. bêvar, նպ. بیور (biûr) զոր bièvre ալ կարդացող կայ, ինչպէս եւ հյ. հնագոյն ձեւն ալ բեւր է։

Անկէց է Մար Աժդահակին "բիւրասպ" մակդիրը, այն է՝ տասն հազար ձիու տէր։

**Բնակ** — տ. Բանակ։

*Բոք* = կողով, զէմպիլ, սէփէթ (Աբ.), պ. بو. որ անոնց մէջ աւելի ընդհանուր իմաստով՝ տան բոլոր կահուց կարասեաց կը տարածի։

*Բոզպայիտ* — Դժուարիմաց բառ որոյ կազմն ալ իմաստն ալ անորոշ մնացած է մինչեւ ցայսօր։

Hb.ը նպ. *baza* (وج. = մեղք), պհլ. *bajak* եւ զն. *paititi* (پتيت = քաւութիւն, զղջում) աղբիւրներէն ձգտուել իմաստը կը հանէ, այլ բոլորովին վստահ չէ։

Միք. Փորթ. Փաշա, Եղիշէի ծանօթագրութեանց մէջ, Justi-ի հետեւելով, զն. *avazba, upazba, upastu* (գովել) եւ *upastuiti* (գովութիւն) բառերը կը նշ. եւ ողջոյն եւ պաշտամունք կը մեկնէ, առանց բոլորովին հաստատելու։

Իմ սեփական հետազօտութեանս գալով, ք սկզբնատառով այսպիսի բառ մը չգտայ զն. պհլ. մատենագրութեան մէջ։ Կայ "Ուզբայիշն" որ գործածուած տեղերուն յարմարութեանը նայելով խնդրուածք, պաղատանք իմաստը կու տայ. ինչպէս որ կայ Ուզբայիդան (اوزبائيدن) բայ մ'ալ որ խնդրել, աղերս աղաչել կը նշ.։

Արտաշիր Բաբականի Կարնամակին մէջ կը կարդանք յիրաւի որ երբ Որդունեաց պատերազմէն պարտեալ կորագլուխ կը փախչէր Արտաշիր, Բուրզ եւ Բուրզ-Ատր երկու եղբարք որոց քով ասպնջականութիւն գտած էր, դաւ մը թելադրեցին իրեն եւ խոստիւ

պատուիրեցին որ Եզդանի եւ Ամշասպանդներու յաշտին եւ ուշխոյէշնը կատարելով, կամ իրենց իսկ բառով՝ բարձրացնելով գործէ, խորհուրդ զոր կէտ առ կէտ գործադրեցին. եւ մինչ ինքը Արտաշիր հալած արդյըը որդին բերանն ի վար կը թափէր, այն երկու եղբարքն ալ "Եզդանք յաշտն եւ Ուշխոյէշնը կը բարձրացընէին„ կ'ըսէ պատմութիւնը։

Ասկէց որոշակի յայտնի է որ Ուշխոյէշնը յաշտի տեսակէն մի մաղթանք կամ lithurgique լեզուաւ՝ մի կանոն էր որոշ ընթերցուածներով եւ արարողութիւններով եւ շատ անգամ ալ յաշտի զուգընթաց, ինչպէս վերի համարին մէջ։

Ուրեմն ճիշդ է Փաշային պաշտամունք, աղօթք իմացուածը, միայն թէ avazba, upazba ընթերցուածը auzbaի հետ կը փոխանակեմ եւ Husparamը բոլորովին կը մերժեմ. իբր անյարմար թէ՛ իմաստով եւ թէ՛ ձայնով։

Կը մնայ ուրեմն լոկ auzbaîti որ մասամբ մաղթողական, մասամբ գոհաբանական մի օրհներգութիւն կ'երեւի եւ փարսիներուն պաշտաման մէջ անանջատ կ'երթայ նոյնիմաստ շարքին հետ يزن ، يزشن ، يشت ، نيايش ، ستايش ، ازبايش։

*Բոյժ*, *բուժ* — գն. *buj*, փզ. եւ պհլ. *boxtan* (Hb.)։ Արմատներով որչափ ալ տարբերել կը թուին "բոյժ„ եւ "բժիշկ„, սակայն ձայներու եւ իմաստներու հանգիտութիւնը մ՜ն-

քան բռնադատիչ է որ չենք կրնար անջատ եւ անկախ ըմբռնել այդ բառերը։

Արմատներն ալ թերեւս իրարմէ այնչափ հեռու չըլլային որչափ կ'երեւի, եւ ամենուն հիմ ծառայած լինի bոյ կամ bուշ արմատ մը որ մեզ Բոյժ, Բուժ, Բոյծ, Բուփ գեղեցիկ շարքը տուած է։

Բոյր — զն. bavidi (Hb.), նպ. بوی կամ بو. յորմէ بویستان սղեալ ի بوستان. եւ հուսկ ի بستان = հյ. Բուրաստան։

Ասոր է նաեւ մեր "համ-բոյր„ը, պ. انبوی կամ աւելի ճիշդ هنبوی (զիրար հոտոտել), ի բայից بوییدن եւ انبوییدن։

Բու, Բուէճ, Բուիճակ } պ. بوم = ծանօթ թռչուն։

Բուիճենիկ (խնկեղէնի տեսակ մը) (Hb.) կը լուծէ

բու = բոյր = بوی.
ճենիկ = ճենա (Չինա)կան.

որով կ'իմացուի ճենական հոտաւէտ մի բոյս. պհլ. bōy i čēnik, նպ. بوی چینی։

Այս արմատով ունինք

Նայիբուակ, Հրբուակ, Գազերբուակ, Գոյիբուակ, Հոշիբուակ, Բովիճայք } որք բոլորն ալ խնկեղէնի տեսակներ են։

*Բուն* — զն. *buna*, պհլ. *bun*, նպ. بن. = հիմ, ծայր, հաւ, սկիզբն, յորմէ "բնակ" (بن), տ. եւ Բռնակ։

*Բուստ* — պ. بُسْد ، بُستام։

*Բուրգն* (աշտարակ) — Մեր բառը ար. بُرْج.ը կը շօշափէ աւելի, սակայն նոյն իսկ بُرج.ը արաբացեալը (معرب) կը համարին բուն պարսկական بُرْز.ին (բարձր) զոր ի վեր տեսանք։

*Բռշոպ* (խառնակ, շփոթ) — Թուի լինել ر. آشوب (տ. Ապշոպ)։

*Բր-եմ* (պեղել, փորել) — զն. *bhar*, յն. φαρόω (couper, tailler), պհլ. *burîdan*, նպ. بريدن. (Hr.)։

Ասոր հետ կը նոյնանայ նաեւ մեր "փորեմ"ը։

*Բրինձ* — պ. برنج.։

## Գ.

*Գազ* 1. (փուշ) — պ. گز։

2. (խէժ) — گز մանանայի տեսակ մը, տեղ տեղ, մանաւանդ Սպահանի կողմերը, ծառերուն տերեւներուն վրայ կը նստի որմէ մասնաւոր պատրաստութեամբ հրուշակ մը կը շինեն եւ տուփերու մէջ կը պահեն։

Մեր "Գազպէն"ն ալ որ گزانگبين է, ինչպէս լաւ դիտած է Աբ.ը, սոյն այս հիւթն է զոր Մշոյ կողմերը քաղ գիտեն եւ կը պատրաստեն։

3. (չափ տարածութեան) — گز։

Գազաղ (մոխիր) — Թուի լինել خزج որ կրակի կտորներ պարունակող տաք մոխիր կը նշ.։

Գազար — ար. ձեւով جزر = ստեպղին, բանջար, եւն։

Գազան — պ. کزان, զի کزیدن կը նշ. կծել, խածնել, յորմէ մեր շարքը՝

գազան,
խածան,
կծան,
կճան։

Գահ (աթոռ) — զն. gâtu, պհլ. gâç, նպ. گاه (siège, trône)։ Աստի են

Գահաւորակ (աթոռ, նստարան)։

Գահնամակ (իշխանական զեկոյց)։

Գահոյք եւ այլ բարդածանցութիւնք. եւս եւ կայ, կայք (կացք, կեցուածք) եւն։ Այլ է

Գահ (դարուվար, précipice) որ ձկէ զոր کوه (լեռ)ի մի սղումը կը համարի برهان։

Գաճ (մարած կիր) պ. گچ։

Գամ — զն. gam։ կայ նաեւ gâma = pas, allée նշանակութեամբ որ պհլ. gam է gâ արմատէն (Hr.), որու հանդէպ մենք ունինք թէ եւ "գնամ", իբրու գա+նամ, ըստ օրինակի Ըա+նամ, բա+նամ, բաա+նամի, բայց այս մօտք աւելի +այլ գործածուած է մեր մէջ որ կը պատասխանէ նպ. گام (pas)։

Բուն գամ ձեւով ալ գործածուած կայ սակայն, Հեթա+ ութին կամ +այլ նշանակութեամբ։

"Ոտք խեցգետնոյն ոչ կարեն գամս գտանել յողորկ եւ ի սեպ պատեանս զեռնոյն" (Վեցօր.)։

"Ոչինչ կարացին գամ եւ մուտ գտանել" (Ոսկ. Ես.)։

"Այնպիսի զօրութիւն ետ մեզ Աստուած, որում ոչինչ կարէ գամ գտանել չարութիւն նորա" (Անդ)։

Այս գեղեցիկ օրինակները Հպ.էն փոխ կ'առնենք, թէեւ ինք պ. գէամէն, տճ. գէ-մէ-էն մեկնելով՝ ապահովութեան, աներկեւանութեան իմաստները շօշափելու համար յառաջ բերած էր։

Նոյն "գամ"ը "կամ" ձեւով ալ կը ներկայանայ ռամիկ եւ աշխարհիկ կարծուած "կամաց"ին մէջ որ ասով գրական բարձրութեան կ'ելլէ։ Զի կամք (volonté) իմաստով մեկնութիւն անկարելի է "կամաց կամաց" ասութեան, այլ միայն դանդաղեցնել քայլը, ինչպէս գաղղիացին ալ կ'ըսէ au pas։

Գամ (անգամ) — պ. انكام, هنكام, ինչպէս գամ մի = միանգամ, եւն։

"Գամ քան զգամ" ոճը թէեւ ասով ալ կը մեկնուի, ինչպէս ըրած է Hb., բայց ինձ աւելի յարմար կը թուի վերի քայլ (pas) իմաստին հետ կապել եւ իմանալ ոտն առ ոտն, հետ զհետէ, քայլ առ քայլ, եւն։

Գամադեօրը, Քնդադեօր, Զօրադեօր նշանակութեամբ ասոնց հետ ձայնի նմանութենէն

զատ վերբերութիւն մը չցուցներ։ Հաւանականաբար գումապետ է, ինչպէս կը դիտէ Ար.։

Այլ է նաեւ գամօքէօրը ուր գամը պարզապէս կամ(ք)ը կը ներկայացնէ։

Գամ (Հեղոյս, բեւեռ) — Ճիշդ մեր բառին ուղղակի պատասխանող բառ չկայ պ., այլ պնդել, ամրացնել, զսպել ընդհանուր նշանակութեամբ لكام (լկամ)ը սովոր են բանաստեղծք շատ անգամ կրճատել եւ لک գործածել։ Թերեւս այս սղեալ لکن է որ ծնունդ տուած լինի մեր բառին, կամ թէ ինքն ալ մի եւ նոյն գործողութիւնը կրած լինի չէօմ ձեւէ մը։

Գայլ — սնս. vŗka, զն. vehrka, նպ. gurg (گرگ), յն. λύκος, լտ. lupus, եւ այլ այսպիսի զանազանեալ ձայներ կան ազգակից լեզուաց մէջ որոնց բոլորն ալ vrk, կամ grk, կամ vlk արմատէն սերեալ կ՚երեւին։

Դժուար պիտի լինէր այս արմատին հետ կապել մեր քօյլը, եթէ չլինէին fael, vails, անցման միջին եղերերը որք տարակոյս չեն ձգեր որ նոյն ընտանիքին մէջն է նաեւ մերինը։

Ասոր անժխտելի ապացոյց մը կու տայ միւս կողմէն նոյն گرگ արմատին անվթար պահուած ըլլալը քուրքուլուր (գայլի գլուխ) բառին մէջ զոր կը յիշէ Hb.։

Գան (ծեծ) — Hb. ghaná, սնս. արմատը ցոյց կու տայ, յիշելով նաեւ ǰainti եւ նպ. zanad ձեւերը եւ ջէհէննէմի ալ առնչութիւնը։

Casartelliի մէջ ալ[1] կարեւոր բացատրութիւններու կը հանդիպինք սոյն արմատին վրայ։

Մազդէութեան մէջ Ahura-Mazdaի հոմանիշ ընդունուած է Çpenak-Minôis, Աւեստական ձեւով՝ Çpenta mainyus (սուրբ հոգի), ինչպէս որ անոր հակառակորդին, Ահրիմանին, ալ՝ ganâk-Minôi (ապականիչ ոգի, esprit destructeur)։

Արդ՝ գիտուններէ ոմանք (Spiegel, West) այս երկու բառերը (Aharman եւ Ganâk-Minôi) մի եւ նոյն զն. Anro-Mainyusի յեղազանութիւնները կը համարին, մինչ ուրիշները (Harlez, Justi եւ Destour Peshotun) տարբեր կ'իմանան եւ տրուած ստուգաբանութիւնը Ահրիմանին միայն կը պատշաճեցնեն, յենլով Սասանեան արձանագրութեանց վրայ որ aharmani ունի։ Իսկ միւս ganâk-Minôiի համար ուրիշ արմատ մը կ'ընդունին *gan* = *ghan* = $\sqrt{jan}$ (frapper, tuer)։

Այս լուսաբանութիւնը թէ մեր գ՟ն եւ զէ՟ն արմատներուն նոյնութիւնը կը հաստատէ եւ թէ դատը ի նպաստ վերջնոց կը վճռէ։

Հ. Ս. Տ.ն ալ սոյն եզրակացութեան եկած է. Հպ.ին միայն կը խոտորի եւ յն. χαγγα (եղէգն)ով կը զբաղի։

1 La philos. relig. du Mazdéisme sous lu Sassanides — 14. 48.

Գանգուր = պ. کاکل:

Գանձ — սնս. gãnǰa (Hb.), պհլ. ganj, նպ. گنج եւ کنز:

Պհլ. մատենագրութեան մէջ անուանի գրուածք մը կայ Խոսրով-Անուշիրուանի խոր-հրրդական երեւելի Վզուրկ-Միհր (بزرك مهر) ի ընծայուած, որ պհլ. ձայնիւ کنج شایکان կը կոչուի, որոյ հյ. թարգմանութիւնը կու տանք ի մօտոյ, յորում անկարելի է չտեսնել հյ. "գանձ շայեկան„ը:

Գարշ (իմ, անք) — պ. کرش զոր ریم, چرك կը մեկնեն պ. բառագիրք, որ է աղտ, աղտեղիք: Սնս. hrš արմատ մը կը ցուցնէ Hb.:

Գաւազ (բազէի ձագ) — նպ. guvaz, guvaš (Hb. եւ Աբ.):

Գաւազան — զն. gavasna, $\sqrt{gao}$ = կով, ար-ջառ, + sna = ջիղ (Hr.), այն է արջառաջէլ: Սնս. go-aǰana, gav-ajana (Hb.), նպ. کواز, کوازه:

Այս աներկեւան աղբիւրներուն քով այլ եւս Հպ.ի کاوزن (կովահար) մեկնութիւնը աւելորդ կը մնայ:

Գաւառս = կորեկ դեղին, խոշոր (Աբ.) — պ. کاورس:

Գաւիթ — Աւեստական բառ gao yaoiti, ամ-փոփեալ ի gavyuti = lieu de séjour ou de pâturage des troupeaux (Hr.):

Այս է բուն նախնական իմաստը յորմէ տարածաբար քոչ կամ ռ եւ է քիչ շատ ըն-

*դարձակ եւ փակ տեղւոյ նշանակութիւն ա-լ առած է Հյ.ի մէջ. օր. եկեղեցւոյ գաւիթ, տան գաւիթ, եւն։*

*Անգիտանալով բուն այս հին աղբիւրը՝ Հպ.ին գօտի, պարեգօտ, շղեայ, կամար, եւն. մտացածին եւ յերիւրովի ենթադրութեանց մէջ ինկած է։*

*Գեհ — նպ. چاه, چه = փոս, վիհ։ Մեր բառը կը ցուցնէ որ چه ձայնը թերեւս ڪ ալ էր իսկզբան։*

*Գեր (գեր ի վեր, գեր քան, գեր ազանց, եւն) — պ. چير, چيره = յաղթող, գեր ի վեր, բարձր։ چيره زدن = յաղթող հանդիսանալ։*

*Գերեզման — պհլ. garôtmân = երկինք երկնից, չորրորդ եւ ամենաբարձր դստիկոնը Աhուրական արքայութեան զոր գիտունք կը տարրալուծեն*

garo = کر (*երգ*)
d, t, th (*զ*) = *մասնիկ*
man = مان (*տուն*)

*որով մեր "գերե-զ-ման"ը կը լինի* garô-dmân = گرثمان *զոր* رهان. *պարզապէս* کرزمان *կ'ուղղագրէ, որ է "տուն երգոց" (ցնծութեան վայր)։*

*Պիտի ըսուի թէ մեր "Գերեզման"ով այս երանութեան ցնծութեան վայրը չհասկցուիր, այլ մանաւանդ թէ դժոխք, ըստ որում գե-*

ըեղման եւ դժոխք շատ անգամ մի եւ նոյն հասկցուած են.

"կատարեցին ի բարութեան զկեանս իւրեանց, հանգստութեամբ ննջեցին ի դժոխս" (Յովբ. ԻԱ, 13)։

"Իջին ի դժոխս փառք քո" (Ես. Ե. 14)։ Եւ այլ շատ տեղեր։

— Գիտելի է սակայն որ այս ամենուն մէջ "դժոխք"ը այն իմաստով առնուած չէ ինչպէս սովոր ենք մենք այժմ քրիստոնէական ըմբռնմամբ իմանալ տեղի տանջանաց, այլ պարզապէս Հող, ծոց հողոյ եւ խաւարչտին վայր, հանգիստ։

Պարսից մէջ ալ բառը միշտ մի եւ նոյնը չնշանակեր, այլ "արգանդ" ալ կը նշ., ինչպէս կարն.ի մէջ տեսանք (Տես. 119), ներընակարան մանկան իմացուածով զոր եւ کرهٔن կը կոչեն եւ զոր մենք "արգանդ" հանեցինք, յենլով "արգանդ երկրի", "արգանդ հողոյ" բացատրութեանց վրայ։

Գէզ որ եւ գեզ (պատառուածք, ճեղք — պ. گز, արմատ گزند բային որ կճել, գծել կը նշ. (տ. եւ գազան)։

Գէս — զն. gaêça, նպ. گیسو եւ گیس։

Գէտ (գիտուն, իմաստուն, տեսանող, հարցուկ, եւն) — Զն. vaeda եւ vêd, լտ. videre, յն. εἴδω, հյ. գէտ, տառաշրջեալն գէտի։ Իրաւունք կար հյ. վէտ ալ սպասելու, սակայն գն ալ նոյն վը կը փոխանորդէ, գ = վ օրինօք, ինչպէս.

کشتاسپ = վշտասպ,
کراز = վարազ,
کناه = վնաս, եւն։

Այլուստ, է ձայնով ալ կայ պ.ի մէջ, օր. պհլ. kaid (գայտ) որոյ ամփոփումը կրնանք նկատել գէտը (կարն. ծան. 130)։

Յն. χοιτάζω (ննջել ընդ, մտանել ի քուն, ի կին) նշանակութիւնը զոր մեր "գիտեմ"ն ալ ունի ("քանզի զայր ոչ գիտեմ". "եւ ոչ գիտաց զնա", եւն) բաւական իրաւունք չտար մեր բառը յոյնէն բերելու, ինչպէս կը փորձէ Հպ.ին։ Կրնանք ըսել շատ շատ թէ մեր բառը յունական առումներով ալ ճոխացուցուած է։

Գէր (գիրուկ, պարարտ) — պ. کروت։

Գիժ որ Թուսահայոց լեզուին մէջ շատ գործածական դարձած է խենդ, ճախուռ եւ փախուռ նշանակութեամբ՝ է պ. کج (gij), նոյն իմաստով։

Գիծ — Գող, գեղ, գէղ, կէծ, կէճ ընտանիքին կը վերաբերի եւ պ. کز արմատին կը պատասխանէ։ Կ'ըսուի "վահան անգծելի" այսինքն այն զոր գզել, պատռել, վնասել, վտանգել կարելի չէ։

Գիւղ — Hr.ին ցուցցած զն. vis, հպ. vith, նպ. vîh օրինակներուն չեմ կրնար համաձայնութիւն յայտնել։ Նախ որ պ.ի մէջ գիւղ նշանակութեամբ օ͵ չկայ, այլ՝ օ͵͵. Թերեւս տպագրական սխալ մ'եղած լինի, մոռցուած



 

ուղղելու: Երկրորդ որ visէն պէտք էր գէօ-գար եւ ոչ թէ գիւղ որ տառադարձութեան հասարակ ընթացքէն կը շեղի:

Եւ արդէն Hb.ին տուած պ. کَ ը որ գիւղ կը նշ., ամէն ուրիշ մեկնութիւն աւելորդ կ'ընէ:

Հպ.ին ալ ճիշդ լուծում տուած է:

Գմբեթ — Նպ. گنبد:

Գշկուր (չոր քակոր, կտետ, փթեր) — Hb. մնս. gōçakrt, աֆղան γōšāk ը կը յիշէ որ արդարեւ ksk, kshk արմատ մը կը մատնանշեն:

Գոհար — պհլ. եւ Նպ. گوهر որոյ արաբաձեւն է جوهر:

Գոմ (անասնոց) — պ. گم:

Գոմէզ — զն. gaomeza, պհլ. gômêz, հպ. gumis, եւ առ մեզ տառաբար՝ կով-մէզ:

Հիմա այս նախնական նշանակութենէն հեռացած է բառը եւ Եւրոպացւոց ալ ծանօթացած՝ Koumis կամ Kéfir անուամբ որով թեթեւ՝ զովարար եւ դիւրահալ ըմպելի մը կ'իմանան:

Կովկասու լեռնականք մատակ ձիու կաթը խմորելով կը պատրաստեն զայս, իսկ արաբները ուղտու կաթէն, զոր قومس կամ قمس կը կոչեն: Սոյն այս قمسն է որ յետին դարերու մէջ նորէն լեզուին մէջ առնուելով՝ ղմուղ կամ խմղ ձեւերը տուած է:

Այլ ի հնումն, Զրադաշտեանց մէջ, բոլորովին տարբեր էր գոմէզի նշանակութիւնն ալ, գործածութիւնն ալ:

կովը արարչութեան մէջ ամենէն սուրբ, ամենէն պիտանի եւ օգտակար կենդանի համարուած էր եւ կովին մէզը հեղուկներու մէջ ամենէն մաքուրը։ Մաքրութեան տեսակէտէն, ջրով լուացուիլը երկբայելի կրնար ըլլալ, բայց կովու մէզով լուացուիլը այլ եւս ամէն կասկածէ վեր էր։ Անոր համար սովորութիւն եղած էր, բաւարարութիւնը կատարեալ ընելու համար ջրի մէջ քանի մը կաթիլ ալ կովու մէզ խառնել։ Մաքրագործական արարողութիւն չկայ Զրադաշտեանց մէջ ուր կովու մէզը, իբրեւ գերագոյն սրբաբար չգործածուի, վասն որոյ եւ միշտ կ'ունենան ի պահեստի։ Այս է որ Եղիշէին մէջ կը կարդանք թէ. “Ձեռք առանց գոմիզոյ մի լուասցին„։

Գոմէշ — զն. gao, նպ. کاو = կով, եւ զն. maēša, նպ. میش = ոչխար. որով کاومیش = կով-մէշ = գոմէշ, պհլ. gāvmēš։

Գոյզ(ըն) — պ. کوز, պ. ար. جوز։

Յայտնի է որ մեր բառին սկիզբի ընը (ընգոյզ) եկամուտ է, այլ թէ ընդի մնացորդն է (ըն, ըմ)՝ թէ մի այլ մասնիկ՝ խնդրական է։

Գոյն — զն. gaóna, պհլ. gûna(k), նպ. کون, کونه, աստի համապատասխան բարդութիւններ.

انکونه = այնգունակ,
ایدون = այդգոյն,
چکون, چه‌کونه = զի՞(նչ) գոյն,

کوناکون = գոյն գգոյն,
کل کون = վարդագոյն, եւն։

Գոռեխ (իշամեղու) — պ. خرك (برهان.)։

Գոռոզ — $\sqrt{khruç}$[1] որ ձայն բառնալ (crier) կը նշ., յորմէ պհլ. khruçitan։ Ասկէ առնուած է ծանօթ հաւին (աքաղաղ) անունը որ պ. خروس է, տճ. խօրօզ։

Բայց բառը մի ուրիշ ձեւ եւ իմաստ ալ առած է պ.ի մէջ՝ خروش որ չեմ կարծեր թէ մի տարբեր եւ անկախ արմատ լինի, քանզի ինչպէս ձայնիւ՝ նշանակութեամբ ալ վերի իմաստը կը շօշափէ եւ նորա մի փոխաբերական կրնայ համարուիլ։ Զի خرشيدن ը խա ֆալ, աղմկել, ֆօնօրկել, որով անշուշտ բօղօքել եւ ձայն բառնալ ալ է։ Կ'ըսուի خروش ، جوش = իրարանցում, յուզում։

Գլուխ վերցնել, ըմբոստանալու գաղափարին հետ կը զուգորդին նաեւ յողալ, սոնքալ, հպարտ ձեւեր առնել, տնկուիլ եւ այլ այսպիսի իմաստներ ալ որոնց աւելի յարած կ'երեւի մեր բառը, զի բարձրավիզ գոռոզութեան ի՞նչ աւելի նշանակ կամ տիպար կրնայ գալ քան պարծ եւ սիգաճեմ աքաղաղը։ Այս յայտնի աղբիւրը եւ իմաստը մինչեւ հիմա ալ պահուած կ'երեւի Թալուցւոց լեզուին մէջ ուր կ'ըսուի թէ "խօրոզին„ով սէգ եւ հպարտ կ'իմանան ("Հանդ. Ամս.„ 1903, փետր. 2)։

1 Darm. Et. Iran. I. 89.

Գոս (մեծ տաւիղ) — պ. کوس, ի բայէս کوسیدن որ ծեծել, զարնել կը նշ.: Կ'ըսուի նաեւ کوبیدن, کوفتن միշտ նոյն եւ մօտ նշանակութեամբ (فرهنك):

Գով — հպ. gub, պհլ. gup (ս[ել]), յորմէ guptano, նպ. کفتن, արմատ کو (gow), օր. راست کو [ռաստգով = ճշմարտախօս, խորենացիին ——————ը (راست سخن)], سخن کو (բանասաց), هرزه کو (ընդվայրախօս), եւն: Տ. եւ Ջատագով:

Գովողակ (խնկեղէնի տեսակ մը) — պ. کوالك:

Գործ — զն. verez յորմէ պհլ. բայդ varzitan, նպ. ورز. եւ ورز (բայ ورزیدن) = գործ, երկ, արդիւնք, արգասիք:

Կ'ըսուի ورزکر. կամ ورزکر՝ մշակ կամ երկրագործ նշանակութեամբ:

Յն. ἔργον եւ γεοργία (երկրագործութիւն) կրնան նոյն հին արիական ծագումով սերակից լինել հայուն այլ ոչ փոխառու, ինչպէս կը կարծէ Հ. Պ.ին, զի իրը եւ գաղափարը ոչ նոր են եւ ոչ վերացեալ:

Գորշապահանգ (ականջի օղ) զոր Hb. կը պարզէ کوش (ականջ) եւ apahang, upahanga, մնն. upa+sanga, նպ. pa-hang, պ. پاهنك = ապարանջան ոտից (برهان.). ինչպէս որ gaošavāra, նպ. کوشواره ալ ականջի օղ է:

Գուղճ = հողի կոշտ, մէկ բուռ հող (Աբ.) — պ. کلیچه կամ کلوخ:

Գուման — պ. کمان = կարծիք, շուշտ, տարակոյս: Հյ.ի մէջ սոսկ գործածութիւն չունի,

կ'ըսուի միայն անգուման, յանգումանէջ զոր կրնայինք նաեւ ըսել ողոգուման՝ ինչպէս որ կայ պ.ի մէջ کاوی ای کاو կամ کاوی։

Գունդ — Hr.ին տուած զն. vât'-va (acquérir) տիպը քիչ մը բռնազբօսիկ կ'երեւայ։ Բուն մեկնութիւնը Hb.ին տուածն է, զն. gunda, պհլ. gundak, նպ. gunda (گنده) որ թէ զօրաց կոյտ եւ թէ գնտակ, կլոր (sphère) կը նշ.։

Քաղ. կտրիճ, ռազմիկ նշանակութեամբ گندը պ.ի մէջ շատ գործածուած բառ մ'է։ Ֆիրդուսին յաճախ կ'ըսէ گند آور, իմա՛ գնդաւոր (համմտ. զօրավար, կառավար)։ Կ'ըսուի նաեւ گند سالار (գունդսալար) = սպասալար (سپهسالار)։

Հպ.ին կը ձախողի گروه (գրոհ)ի հետ համեմատելով որ մեր բառին հետ առնչութիւն չունի։

Գուշակ (տեսանող, կանխագէտ, կանխասաց)։ Սոյն ձայնով եւ իմաստով Կարն.ին մէջ ալ (ծան. 130) հանդիպեցանք այս բառին "գուշական" կամ "գուշկան" ձեւի տակ եւ գուշակ հանեցինք ի հայ, թօթափելով վերջի յոլովակերտ کان ածանցը։

Բառը կը մնայ ուրեմն գուշ զոր եւ Հ. Ս. Տ.ը կը մատնանշէ իբր արիական արմատ՝ ghus (հնչել, գոչել, լուր տալ) եւ որոյ պարզական ձեւը կ'ընդունի ghu՝ պահուած ի մեր "գոլ"։

Ghu կամ gu հին արմատին գոյութիւնը անժխտելի է, սա է որ b = v = p = f հի-

մամբ երբեմն gub եղած է, երբեմն guv, երբեմն guf եւ տուած է պհլ. gubtano եւ նպ. کفتن, کوئیدن ը։ Նոյն արմատն է որ երկրորդ-անդամը կը կազմէ Զրադաշտեան երրեակ cardinal առաքինութեանց՝

منشن = խորհուրդ,
کبشن կամ کوشن = սս = բան,
کنشن = գործ։

Այլ թէ սոյն այս ک արմատն է որ տուած է նաեւ gus ը թէ սա ինքնին մի այլ անկախ արմատ է, մի քիչ խորհել կու տայ։

Ցամենայն դէպս, gus ը ամէն հաւանակա-նութիւն կ'ընծայէ որ լինի մեր "գուշ"ը, ի նկատի ունենալով նաեւ յն. γόης ձայնը որ հաւահմայ, կախարդ, հարցուկ կը նշ. եւ զոր անկարելի է անջատ ըմբռնել մեր "կիւս" էն (Հ. Պ. Ի.)։

Կրնանք ուրիմն ստուգանման հաւանակա-նութեամբ ընդունիլ թէ կիւս, գուշ, γόης նախնի gus արիարմատի մը ցոլմունքն են այլ եւ այլ ճիւղերու մէջ։

Գումարտակ (զօրախումբ, բանակ) — պհլ. gumartak, նպ. کارده, ի բայէս کاردن եւ کاشته ի բայէս کاشتن = գործ մը յանձնել, պաշ-տօնի մը վրայ դնել, պաշտօնով առաքել ուրեք, եւն.։

Կարն.ի մէջ ալ տեսանք այս բառը.

"Բաբակ Փարսի մարզպան եւ շահապետ էր եւ Արտաւանի գումարտակէն էր" (էջ 4,

Հ. 3) ուր պհլ. բնագիրն ալ մերինին պէս ճիշտ "գումարտակ" ունի։

Գունդ — զն. *gunda*, պհլ. *gund*, *gundak*, նպ. كند, كنده, (կլոր), յն. σφαῖρα (sphère)։

Կը գրուի նաեւ "կունդն" (գնտաձեւ անիւ, ճախարակ) = كند։ Անշուշտ գոնջ (chauve) նշանակութեամբ կոնդ կամ կոնդն ալ աս է. հերազուրկ գլուխը ողորկ գնդի նմանցնելով։

"գունդ"ը կը նշ. նաեւ ոյժ, զօր, քաջութիւն, բանակ, թեւ բանակի. իմաստ զոր մեր բառն ալ լիովին ունի. գունդ զօրաց, գունդագունդ, գնդապետ, եւն ։

Սորա արաբաձեւն է جند ը։ Հ. Պ.ին պղակունդ (placenta)ի համեմատութիւնը հիմ չունի։

Գուսան — պ. كوسان որ թէ՛ գուսաներգութիւն կը նշ. եւ թէ՛ հուշակաւոր գուսաներգակի (ա՛շըգ) մը անունն է

فخر كركانى բանաստեղծը իւր Ռամին ու Վեյս (رامين و ويس) քերթուածին մէջ ըսած է.

شهنشه كفت با كوسان نائى
زهى شا يسته كوسان سرائى

"Շահնշահն ասաց նէյհար գուսանին. Արդարեւ գուսանութեան արժանի կերպով կը նուագես" (فرهنك)։

Կը փորձուիմ կարծել թէ այս "գուս" արմատն ալ մեր վերը տեսած գուշ եւ *gus*

ընտանիքին օտար չէ, թերեւս նոյն արմատն է տուէլ, Շնչէլ նշանակութեան մերձեցմամբ։

Գրապան (հագուստին ծայրերը, օձիք — պ. كريبان։

Գրապանակ (պահարան) — զն. *grîva pâna* = poche de bonnes œuvres (Darm.)։

Գրաւ — զն. *gerew*, հպ. *grab*, սնս. *grabh* (Hb.), նպ. كرو յորմէ كرفتن (ունել, առնուլ) եւ كرويدن (ընդունիլ, հաւատալ)։ Ասոր է նաեւ ֆր[illegible]ն = պ. كروكان, եւն։

Գրդանք (յորձանք, պտոյտք ջրոց) — պ. كرد (*gird*) կը նշ. պտոյտ, յորմէ كرداب ջրի պտոյտքը, յորձանք։ Նոյն արմատն է որ անք յոքնակերտ ածանցով կազմուած է, օր.

"Ցանդուգն ձի ածեալ անկանէր խառնիխուռն յԱրոնտէս գետ, եւ ի գրդանս գետոյն սաստակէր" (Եւս. կես.)[1]։

Գրիւ — նպ. *girīb* կը դնէ Hb., բայց բնաւ տեղ մը գործածուած չտեսայ. երեւի գործածութենէ ինկած է, քանզի կայ այժմու ընթացիկ չափ մը كروانكه (գրուանկայ) անուանով որ մեր ֆր[illegible]ն է անտարակոյս եւ որ *girib* կամ *giriv* արմատ մը կ'ենթադրէ ի հարկէ։

Գրոհ — պ. كروه = դաս, խումբ, այլ մանաւանդ Եբրամէկ (ռամիկ) յորմէ իմաստը տարածուելով փողոց հրապարակ ալ կը նշ.։

---

1 Հատընտիր ընթերցուածք Հ. Թ. Թոռնեանի. Ա. Հատ., էջ 365։

Ասոր այլազանութիւններն են գուէճ, գուէկ, գուէճէկ (ստորին ամբոխ, խուժան)։

*Գրտակ* — պ. کدک կամ ودک = տեսակ մը հաց՝ մէջը շաքար, պիստակ, եւն. դրած, ըստ պ. Բառագրոց. այլ ի գաւառս, որչափ կը յիշեմ, կարագով կամ պանիրի պարարտ ջրով թրմուած քէթէի կու տային այս անունը։

*Գօտի* — Անկարելի է ասոր մէջ Փարսի աշխարհին ծանօթ քուշթին (کشتی) չնշմարել։ Սա մի հիւսկէն գօտի է որ զուննար (زنار) ալ կ'ըսուի, զոր ամէն մազդէաքէշ պարտի անհրաժեշտաբար կրել ի մէջս։ Ապացոյց որ "գօտի"ն տարբեր չէ "քուշտի"էն՝ այս վերջին ձեւին ալ միանգամայն գոյակցութիւնն է առ մեզ քուշթընքէր կամ քուշթընգուր ձեւերու տակ որ պ. کشتی کیر եւ کشتی کر ին կը պատասխանեն ուղղակի, գօտէկռիւ, գօտէմարտ նշանակութեամբ։

Շատ լաւ նշմարած է այս յարնչութիւնը Հ. Աճառեանն ալ իւր լեզուաբանականին մէջ (Հանդ. Ամս. 1908, Ապր. Թ. 4)։

## Դ.

*Դաժան* — նպ. ژژد եւ دژژد որ նոյն չարամասնութիւնները կը նշ.են ինչ որ "դաժան"ը, այն է թունդ, բարկ, թթու, խիստ, անգութ, անողորմ։ Սորա հետ կը կապեմ նաեւ Ցաժան եւ Ցոբժանը, ինչպէս Աբ.ն ալ կ'ընդնշմարէ, զի նեղութիւն, տագնապ, տա-

ռապանք, եւն. այս ամէնը չարի մասունք են եւ հաճոյից եւ վայելից հակառակ կրելութիւնք։

Սոյն դասակարգին մէջ կ՚իմանամ նաեւ Դժնդ~կը՝ ըստ ամենայն առմանց եւ այս ամենուն իբր հիմ ծառայած կը տեսնեմ դժ որ եւ դ~ժ (ژد، زد، شد، جد) արմատը որ ինքն ալ աւելի հին եւ Աւեստական drujն է որ պհլ.ի ալ druj եւ նպ.ի جرد անցած է որ ապա ځورد (սուտ) եղած է զի ստութեան չաստուածն էր որ Դր~ժը։ Միւս բոլոր դժ, տժ, տաժ, եւն. ձեւերը սոյն արմատի սղում կամ յեղանակումներն են։

Ինչպէս Ահուրամազդա (Որմիզդ), իբրեւ բարւոյ արարիչ, իւր բարի արբանեակներն ունէր, հրեշտակներ այլ եւ այլ կարգի եւ դասու (ամշասպանդք եւ Եզդք կամ Եզդանք), նոյնպէս եւ Ահրիման (Արհմն) ունէր իւր աւագանին եւ ստորադասները։ Ասոնք էին Դեւեր (ديو), Պարիկներ (پری), Ջատուկներ (جادو) եւ Դրուժաններ (دروجان) որք ի նահանգս նահանգս, մասնաւորապէս ի Մազանդարան եւ ի Գելան կը պաշտուէին ալ։

Ջատուկները արու՝ Պարիկները էգ էին եւ հասարակ առմամբ դր~ժան կը կոչուէին էգ դեւերը որոնց պաշտօնն էր ստել, կեղծել, կերպարանել, խաբելու համար։

Այս արմատին եւ գաղափարին շուրջը կը յածին մեր եւ Պարսից բոլոր դժ ով, դ~ժ ով, դրժ ով բարդեալ եւ ածանցեալ բա-

ւերը տրժեմ, տրաժան, ախտատրաժ, տժղնէ, տժղատեհ, տժատր, եւն, եւն, մինչեւ իսկ Բշնամ զոր խանգարեալը կ'իմանամ Բշմանին այսինքն չարիմաց, Բշ = տշ (տժ) եւ ման (ի-√ման-ամ) կազմով։

Այս վերլուծութիւնը կը ցուցնէ որ մեր տժրան+, տժրեմ գրչութիւնը սխալ է. ուղիղն է տրժան+, տրժեմ։

Հ.Պ.ին ժանտն ալ այս ընտանիքին մէջ կ'իմանայ եւ իրաւամբ, միայն թէ կը սխալի տառերը տեղափոխելով, ուր պարզապէս دچدی սեղմումը տեսնել բաւական էր՝ վերջին տառին անկմամբ։

Դահամունք = ուտելու խմելու ընծայ, տուրք, կերակուր, կաշառք (Ա. Բ.)։ Այն նշանակութիւնները շօշափող ամենէն յարմար բառը պ.ի մէջ ده արմատը կը գտնեմ որոյ միւս բայարմատն է داد, մին ուղիղ՝ միւսը խոտոր ժամանակներու յատուկ՝ دهم, دهی (տամ, տաս) եւ دادام (دادم), داد (եւ տու, ետ)։

Hb.ին ցուցցած զն. dāϑra, հպ. dāϑ^ra, պհլ. dāhr յորմէ darhdah աղբիւրներն ալ զայս կը հաստատեն։

Մենք այս արմատը երկու ձեւի մէջ պահած ենք ուրեմն. մին՝ դահ (ամունք), միւսը տ(ամ), տ(ու)։

Դահանակ (ակն պատուական) — Նպ. دهنه որ պհլ. dah(a)nak մը կ'ենթադրէ։ Պ. բառագիրք Փրանկի քար կ'ըսեն (سنك فرنكى) որոյ արաբացեալն է دهنج։

Դահեկան — վիճելի բառ։ Երկու լուծում առաջարկուած է, մին, այն որ առաջին հայեցուածով նախ միտք կու գայ՝ այն է Դարեհական, իբր Դարեհ արքայի անուան կոխուած դրամ. միւսը՝ Դահական, դահ (ده = տաս) արմատէն, իբր տաս դրամ արժող ոսկի (Hb.)։

Ա. միտքը պաշտպանուած էր բանասէրէ մը (Տ.) Բազմավէպի 1908, Օգոստ. 8 թիւին մէջ, յենլով Հերոդոտոսի այն վկայութեանը վրայ թէ Դարեհ Ա.ը եղած է Պարսից մէջ դրամի գործածութիւնն ընդհանրացնողը։

Նոյն Հանդիսին Նոյ. (11) թուոյն մէջ, անդրադառնալով նոյն նիւթին վրայ, նոր փաստեր եւս յառաջ բերուած էր. նախ Նորայր Բիւզանդացիի՝ իր բառարանին թըղթատեալ օրինակին մէջ ըրած ձեռագիր դիտողութիւնը։

“Ոսկի դահեկան նախնի Պարսից, Դարեհական„. — „La darique d'or valait environ dix-huit francs cinquante quatre centimes de notre monnaie„։

Երկրորդ՝ Աղեքսանդրի պատմութեան հետեւեալ հատուածը Ն. Բիւզանդացիի ձեռագիր յաւելուածին մէջ.

“Արդ զամենայն զոսկի եւ զարծաթ հրամայեմ զի վարեալ լիցի ի ձեռն այնոցիկ՝ որ ի գաւառս եւ ի քաղաքս մեր բնակեալ իցեն եւ դահեկան զոր ունի ամենայն ոք պարգեւս

իւրաքանչիւր մարդոյ ի կիր ծախուց ըստ կամաց իւրոց արկանել„։

Այս վկայութիւններն իրենց կշիռն ունին անշուշտ, բայց համոզում բռնադատելու չափ զօրաւոր չեն։

Նախ որ պ.ի մէջ սոյն իմաստով դահկան կամ դահեկան (دهكان) բառ չկայ։ Կայ, այո՛ دهكان կամ արաբաձեւ دهقان, այլ սա՝ գիւղացի ազնուականութեան նշանակ է, ինչպէս Ֆիրդուսիի, Կարնամակի մէջ եւ այլուր յաճախ կը հանդիպինք եւ որ դրամի եւ համրանքի հետ գործ չունի։

Թուական իմաստով գործածուած բառը دهكانى, մանաւանդ دهكانه է, որու համար տաս դրամի արժողութիւն կը նշ.են պ. բառագիրք։ Այս կազմը՝ միա՛յն այս բառին յատուկ չէ, այլ կայ նաեւ دوكانه, سه كانه, մինչեւ իսկ پانصدكانه մը կը յիշէ فرهنك որ հինգ հարիւր դրամի արժողութիւն կը ներկայացնէ։

Այս կազմը մեր մէջ ալ կայ եան կամ ին ածանցով ձեւացած, օր. երկոքեան, երեքին, չորեքին, տասնեքեան, եւն.։

Եթէ բառը միայնակ լինէր, տարակուսելու տեղի կար, այլ քանի որ նոյն կազմով եւ մօքով ամբողջ շարք մը կայ, ընտրութիւնը անվարան է։

Հյ.ի մէջ գտնուած Եը այնչափ ալ կարեւոր եւ էական նշանակութիւն մը չունի,

*ինչպէս կարծուած է, եւ եթէ աւելի մօտէն նայուի, դա ինքնին խնդիր ալ չէ։ Կրնանք այդ գիրը պարզապէս իբրեւ զօդիչ տարր ընդունիլ, ինչպէս որ է ալ, թէ՛ հոս եւ թէ այլ նման տիպերու մէջ, օր. երեքեան, չորեքեան, վեցեքեան, տասնեքեան, բոլորեքեան, ամենեքեան, եւն։ Դարձեալ, օրինակներէն միոյն մէջ "դահեկան„ի տեղ "դարեհական„ գտնուիլն ալ վճռական բան մը չապացուցաներ. քանզի ընդօրինակողք շատ բան իրենց հասկցած կամ հասկընալ ուզած կերպով դրած են շատ տեղ։ Ո՛վ կրնայ երաշխաւորել որ Դարեհամէտ գրիչ մը այսպէս ուղղել արժան համարած չլինի։*

*Վերջապէս, այս երկար վերլուծութենէն այն եզրակացութեան կը հասնինք որ թուական մեկնութիւնը կայ եւ կը մնայ իւր բովանդակ զօրութեանը մէջ մինչեւ որ նոր եւ աւելի զօրաւոր ապացոյցներ հակառակը չհաստատեն։*

*Դահլիճ* — նպ. دهليز։

*Դահուճ* — նպ. دژخيم (տճ. չիլ թռչուն)։

*Դամ* (որոգայթ, խաբէութիւն) — նպ. دام։

*Դամ* (բամբ եւ դաշն ձայնակցութիւն) — նպ. دم (շունչ)։

*Դայեակ* — պ. دايه։

*Դանգ* — պհլ. եւ նպ. dang (دانگ) զոր մսխալի 1/6 մասը կը դնեն բառագիրք։

*Հ.Պ.ին յն. δανάχηէն [illegible]ը հանելէն ետքը, ասկէ ալ [illegible]ը կը բերէ։*

*Դանդան* (ակռայ, ատամ) — զն. *dandâna*, նպ. دندان: Անկէ ունինք աՀագին այլ բարեբաղդաբար միակ բառը՝ դանդանաւանդ, իբր դանդան + ւանդ (دندان بند):

*Դանկ* — տ. դանգ:

*Դաշոյն* — նպ. دشنه, զն. *dashan*: دشنه ի լծորդը կը կարծեմ զ دهنه (սուր բերան) յորմէ մերս դահճայ եւս եւ դանակ, սղեալն դահճակի, պ. دهنك մը յիշեցնելով:

*Դաշտ* — պՀլ. *dasht*, նպ. دشت:

*Դաշտան* — զն. *dakhshta*, $\sqrt{\overline{dakh}}$ = signe, marque (Hr.), նպ. دشتان: Հ.Պ.ին թէօրիանը կարծեմ գոյութիւն չունի:

*Դաստ* — պՀլ. *dast*, զն. *zasta*, նպ. دست: Ուրոյն գործածուած չէ թէեւ, բայց բարդութեանց մէջ կարեւոր դեր կը խաղայ: Ասոր են

*Դաստակ* = دستك:
*Դաստակերտ* = دستكرد:
*Դաստապան* = دستبان:
*Դաստառակ* = دستار ,دستارچه:
*Դաստաքար* = دستكار:

*Դաստիար(ակ)* — Այս բառին պարսկական համազօրին մասին կը տարաձայնինք Hb.ի հետ, ինչպէս Կարն.ի մէջ (ծան. 57) ընդարձակ խօսած ենք:

Նա նպ. *dastyar* (دستيار)էն կ'ուզէ բերել, մինչ մենք *dastubar* (دستوبر)ը աւելի յարմար կը տեսնենք որ دستور անցած է Նոր լեզուի:

Իրաւ է دستيارى օգնականութիւն, ձեռնտուութիւն կը նշ., բայց մեր բառը այս հասարակ ձեռնտուութենէն աւելի բան մը կը նշ.: Չերքէն բռնել առաջնորդելու, վարելու, խնամարկելու, tuteurի դեր կատարելու իմաստ մ'ունի զոր dastyarը չտար:

"Եւ շատք ի մանր մանկանց նախարարաց որդւոցն՝ դաստիարակօք եւ ծառայիւք" կը կարդանք Պ. Փարպեցիին մէջ ուր յայտնի է ակնարկութիւնը թէ մարզապետներու կամ հրահանգիչ վարժապետներու վրայ է խօսքը:

Հյ. կրնայինք դաստաւոր ըսել, ըստ օրինակի կառաւորի, զօրաւորի, եթէ արդէն դաստիարը ընդունուած չըլլիներ:

Դատ — Հին եւ նոր բառբառներուն մէջ առ հասարակ dâta կամ dât է, նպ. داد որ իրաւունք, արդարութիւն, դատ, դատաստան կը նշ.: Սովորական ոճ է այժմ ալ ըսել عدل وداد (ուղղութիւն, արդարութիւն):

Բառին մի այլ առումն ալ է արարչութիւն եւ այս մօզք փարսի մատենագրութեան մէջ մեծ կիրառութիւն ունի, دادار ձեւին տակ մանաւանդ՝ որ արարիչ ստեղծող կը նշ. որ մեր դատաւորը կը յիշեցնէ, քիչ մ'աւելի բարձր իմաստով:

Աշխատել, վաստակել, յոգնիլ նշանակութեամբ ռամկին բերանը յաճախեալ դատել (դատել)ը ոչ նուազ յարգի եւ վաւերական է, զի համապատասխան ձեւեր ունի պ.ի մէջ, զ.օ.

دادا = *վաստակաւոր աղախին.*
دادو = *ծառայ առհասարակ.*
دادك = *հին ծառայ, աշխատաւոր:*

*Այս* داد *արմատէն Թէ պ.ի եւ Թէ հյ.ի մէջ մի քանի գեղեցիկ կազմութիւններ ունինք, որ.*

*Դատախազ — բարդեալ ի* داد *եւ* خواست *(պահանջ, խնդիրք) արմատներէն, որով բառը կը լինի՝ դատ եւ իրաւունք պահանջող: Հ.Պ.իին դրած* دادخواه*ը սխալ չէ,* خواستن *(խնդրելի, պահանջել) բային երկրորդ* خواه *արմատէն է որ հիմամբ նոյն է ընդ* خواست*ի, այլ ձայնիւ սա աւելի մօտ է մեր բառին:*

*Դատաստան — Նպ.* دادستان: *Փարսի խորագէտներու* (casuiste) *ամենէն շատ գործածած բառն է սա:*

Եթէ . . . . . . دادستان چه
*դատաստանը ի՞նչ է:*
Եթէ . . . . دادستان چه بُوَد
*դատաստանն ինչ կրնայ ըլլալ:*

*Դատաւոր =* دادور *յորմէ* داور:
*Դար — Նպ.* دار = *ծառ:*

*Կ'ըսուի* دارودرخت *(դարուդրախտ), ծառ ծառաստան նշանակութեամբ.*

*«Դար»ը այս իմաստով առանձին գործածութիւն չունի մեր մէջ. միայն* **ջուրաափանը** *կը յիշեմ:*

*Դար* — պ. دار = *սար, գագաթ. յորմէ բար-
դութիւնքս*

Դարալէր = *մինչեւ թումբերը՝ եզերքը լե-
ցուած (ջուր).*

Դարահոս = *վերէն վար.*

Դարավէժ = *գահավէժ.*

Դարաւանդ = *տճ. ուչուրում:*

Դարափն = *գետեզերք եւն, եւն:*

*Աշխարհիկ* դարվար դարվէր *ասացուածքները որոնց գրականը՝ ազնուագոյնը համարած ենք* դարիվեր՝ դարիվայրը, *առանցմէ նուազ հին եւ ազնուական չեն, ինչպէս կը տեսնուի:*

*“*Դար*„ին սոյն իմաստովը կը մեկնուի նաեւ այն գեղեցիկ* դարէ-դարէ *ոճը որ ունինք, իբր դարալէր, ափերը ծածկելով: Առոր ի հաստատութիւն կուգայ այն ընթերցուածն ալ որ կը տեսնենք Մնացորդաց Նորագիւտ Թարգմանութեանը մէջ ուր կ՚ըսէ:*

*“...Յորդանան գայր լի ափամբ եւ ափամբ„* (էջ 25 — Հ. 15):

*Դար (դուռն)* — պ. در: *Աստի*

Դարապան (*դռնապան*) *պ.* دربان: *Նորագիւտ Մնացորդաց մէջ այս ձեւը աւելի գործածուած է քան* դռնապանը:

Դարապետ, *իբր* دربد = *աւագ դռնապան:*

Դարապաս *կամ* Դարպաս, *իբր դարբաց* = دروازه:

*Դար (զոյգ)* — պ. جوه (*Հ.Պ.Ի*):

*Դարան* — Հպ. *dārana*, սնս. *dhārana* (Hb.)։ Նպ. ալ կայ تاران (մութ, մթին), تار արմատէն՝ յորմէ تاريك եւ تيره։ Կ'ըսուի تار و تيره (մութ, խաւար)։ Դարան եւ դարանիլը անշուշտ ի տես եւ ի լոյս գալով չէր ըլլար, այլ հեռի յաչաց եւ գաղտ եւ մութ տեղեր կը պահանջէր եւ յայտ է որ մութի եւ ծածուկի գաղափարներն իրար կը շօշափեն։ Այս արմատէն ունինք

Դարանակալ, Դարանամուտ եւ այլ մի քանի այսպիսիք։

“Դարակ„ն ալ զոր տաճիկը րաֆ կ'ըսէ, ասկէ օտար չեմ համարիր, թերեւս كرتا պ. ձայն մը լինի, նման եւ համգէտ كارتاي, զի դարակն ալ մութ եւ գաղտ տեղ մ'է ուր ի պահ կը դրուին թաքչելի իրք։

Սոյն արմատով է դարձեալ Եղիշէի պատկանդարանը, լուծուելով ի պատկան, պհլ. *batkân*, նպ. پيكان = փքին. դարան = քսակ, գրպան, տոպրակ, եւն. որով ընդհանուր իմաստը կը լինի. փքին դնելու՝ պահելու աման, իմաստ որ տեղւոյն եւ դիտմանը շատ լաւ կը պատշաճի։

*Դարիճենիկ* որոյ պէսպիսութիւնքն են

Դարիսենի,
Դարսենի,
Դարսենիկ

մի եւ նոյն յօրինուածն ունին

دار (դար, տուն, դրախտ) եւ
چینی (ճենական, Չինու)

ինչպէս տճ.ն ալ կ'ըսէ տուրքին:

Դարման — պհլ. եւ նպ. darmân (درمان):

Դարշոյն — տ. դաշոյն:

Դաւ — զն. daiwi (Hr.), dab, սնս. dabh (Hb.) = խաբէութիւն, խարդախութիւն:

Հոս անկարելի է միտք չբերել նաեւ "դեւ„ը զն. daêva, արարածք Արհմնի որոց յատուկ պաշտօնն էր մարդ ազգը խաբել, պատրել, մոլորցնել:

Ինչպէս զն.ի, նոյն եւ հյ.ի մէջ պահուած են ուրեմն կրկին ձայները դաւ եւ դեւ:

Դաւաճան — դաւ եւ √ճան(աչ) = ճան = ճան արմատներով = դաւագէտ, դաւահնար: Համմտ. ճախաճան = գիջասէր:

Մէկ ուրիշ ոչ նուազ կարեւոր բառ մ'ալ միտքերնիս կու գայ այս առթիւ՝ խարդաւանք որ ժամանակին ալ Պոլիսէն Էջմիածին քաշուած հեռագրի մ'առթիւ, որչափ կը յիշեմ, մամուլի մէջ բաւական աղմուկ յարոյց "դաւ եւ խարդաւանանք„ յարասութեամբ: Այս բառին բուն իմաստը մի՛ միայն ստուգաբանութեամբը կրնայ ճշդուիլ:

Կը մերժեմ նախ Hr.ին տուած զն. t'anvana տիպը որ ոչ մի յարմարութիւն ունի մեր բառին հետ:

"Խարդաւանք„էն թօթափելով վերջին եկամուտ մասնիկը՝ յայտնապէս երեւան կու

գան երկու կացուցիչ արմատներ՝ խաղ եւ դաւ։ Վերջինը մեզ արդէն ծանօթ է։ Արդ՝ ինչ է խաղը։

Առանց միտքը երկար բարակ չարչրկելու եւ հեռաւոր եւ բռնազբօսիկ ենթադրութիւններ ընելու, խաղ արմատին մէջ պարզապէս պ. خوار կամ خورը կը տեսնեմ որ ուտել կը նշ.։ Որով խաղդաւը կը լինի նենգութիւն կամ դաւաճանութիւն ընդդէմ կամ փոխարէն հացի (պ. Նանքէօր)։

Գեղեցիկ ըսուած է

“Որ ուտէր զհաց իմ յաճախեաց առնել ինձ խաբէութիւն”։

Նոյնը գրեթէ ստուգաբանօրէն կը հաստատէ նաեւ Թուելեաց այն կտորը զոր Խորենացին Գողթնեցւոց բերնէն յառաջ կը բերէ

“Ճաշ գործեալ — Արգաւանայ
Ի պատիւ — Արտաշիսի
Խարդաւանակ — լեալ նըմին
Ի տաճարին — վիշապաց”։

Խոր. Ա. Լ.։

Ուր իմաստը բացայայտ է, հացի դէմ դաւ եւ դրժում։

Օրպելեանը բոլորովին կը վերցնէ վարագոյրը՝ խաղի տեղ իւր համազօր “նկան”ը գործածելով, “նկանախոր դաւաճանութիւն” բացատրութեամբ ուր խոր եւ դաւ մեկնաբանօրէն կը զուգադրուին, նկանախորը նշանակելով հացակեր։

գեղեցիկ է նոյնպէս Աստուածաշնչի մէջ գողողիայի բացագանչութիւնը՝ ի տես Յովաս մանկան զոր Թագաւորեցուց Յովիդայէ քահանայապետը։

"Դաւաճանութեա՛մբ խարդախեցէք„ (Բ. Մնաց, իգ. 14). ուր դարձեալ զոյգ առընթեր կը գործածուին խար (հաց) եւ դաւաճանութիւն։

Ճիշդ այս կազմով "խար„էն՝ ուրիշ բառ մ'ալ ունինք խարբանդակ զոր հարթեցող, ուտող խմող կը մեկնէ Աբ.ը, որոյ կացուցիչ տարերքն են

خوار = խոր, կեր
պհլ. *bandak*, بنده = ծառայ,

որով բառին նշանակութիւնը կը լինի ծառայ որովայնի։

Խարաբաթան բառ մ'ալ կը նշ. է Աբ.ը զոր պ. կը ճանչնայ, գինետուն մեկնութեամբ, այլ կը տարակուսիմ։ Թերեւս լինի սա՝ խարաբատան (خرابستان) պարսկարար ձեւ մը։

Դափ — ծանօթ երաժշտական գործի = دف։

Դղմաճ (աղտոր, սուտմաք) — նպ. تماج զոր սակայն Թըրքերէն կը համարի فرهنك եւ կը լուծէ آش + تتم ։

Դեհ (կողմ) — զն. *dańhu*, հպ. *dahyâus*, պհլ. *dahyu* = contrée, région formant un gouvernement (Hr.)։

Այս է մեր աշխարհիկ Դէհն որ անցեալ մօտաւոր դարերու գրուածոց մէջ տակաւին պահած էր իւր դէհ եւ դէհ ձայնը։

Աստի է նաեւ Դեհպետ (կողմնապետ, կուսակալ — պհլ. *dahyû pat*։

Աստի է եւ Նժդեհը, զն. *niždańhu*, հպ. *niždahyu* (Hb.) զոր Նիազդեհ կ'իմանամ نیاز եւ ده բարդութեամբ, իբր՝ բուն, բնակութիւն չունեցող, բնավայրէ զուրկ։

Դեհկան — պ. دهکان կամ دهقان, թէ պարզ շինական, գիւղացի կը նշ. եւ թէ մանաւանդ գիւղական մեծ եւ հին ազնուականութիւնը, գիւղից եւ դաստակերտից տէր, եւ աւանդապահ հին մատեաններու՝ զրոյցներու՝ վէպերու։ Ասոնք են որ իբր աղբիւր ծառայեցին Ֆիրդուսիի իւր հռչակաւոր Շահնամակը կազմելու։

Դեն — զն *daèna*, պհլ. եւ նպ. *dên* (دین), բուն Աւեստական բառ, բարդութեանց մէջ միայն գործածուած, ինչպէս

Դենպետ,
Դենիմազդեզն,
Նամակդեն,
Պարսկադեն, եւն։

Դենար — պ. دینار, հին դրամ զոր 10 նոր դահեկան կը կարծէ Աբ.ը։ Կ'ըսուի սովորաբար درم ودینار (դրամ ու դենար), նշանակելու համար ոսկի եւ արծաթ։

Դերճակ — զն. *derze* = fermeté (Hr.), որով Դերձ — ակ = պնդող, հաստատող, կարող, նպ. درزی։

Այս դերձ = درز արմատէն է նաեւ

Դերձան = պ. درزی որ անոնց մէջ ասեղ կը նշ., եւ

Հանտէրէյը իբր ژرده միասին բերուած պըն-դուած, կարուած։ Ցորմէ եւ Հանտէրէյեմ, — անք, Հանտէրէյճըլէր (զգեստեղինաց վերակացու) զոր պէտք չէ շփոթել Անտարէյ (اندرز) էն Անտարէյճըլէրի հետ որ աւագ խորհրդական, հազարապետ խորհրդոց, եւն. կը նշ.։

Դեւ — զն. *daèva*, յն. *δῖος*, լտ. *divus* = չար ոգի, այս պիղծ (esprit malin), տ. եւ Դաւ։

Ասկէ ունինք շատ մը բարդեր օր. Դէվքէտէ, իբր دیوکد, Դէվփարէսթ կամ — փարէսթ = دیورست, Դէվփէյքէր = دیوپیکر, եւն.։

Բայց դէ-ը միշտ սատանայ իմացուած չէ, մեր այժմու ըմբռնմամբ։ Այս միտքը ետքէն մտած է, Զրադաշտի երեւնալէն ի վեր, մինչ աւելի հին Նախնական ժամանակներու մէջ, երբ տակաւին Արիք իրարմէ բաժնուած չէին, մէկ մասը գաղթելով ի Հանդկաստան, դէ-ը կը նշանակէր բարի Աստուած = *θεός*, *deus*, Դէվ, եւ ամէնքն ալ Դեւեզն (دیویسن) = դիցապաշտ էին (իմա՛ Աստուածապաշտ)։

Ցետ այս մեծ պառակտման էր որ Զրադաշտեանք Հնդկաց Թողուցին դեւեզնութիւնը՝ յոռի մտօք, եւ իրենք Մազդեզն (مزدیسن) անունն առին, իմա՛ Մազդայի (Ահուրայ) եազն կամ եզն = պաշտօնատար։

Դէմ(ք) — զն. *daemań*, նպ. دیم։ Մեր յանդիմանն ալ ասոր հետ կը կապէ Hb., իբր պհլ. *andemānik* եւ փզ. *andemān*։

Հ. Պ.ին բոլոր ասոնք Բէմին ի հակառակէն կը բերէ, իր նախասիրական ոճով։

Դէտ — զն. dîd, նպ. دید, արմատ բայիս دیدن = դիտեմ։

Դժ — دش، دج، دز، دژ որ եւ առ մեզ պէսպիսացեալ ի դժ, դուժ, Դշ, եւն. (տ. Դաժան)։

Ինչպէս պարսկերէնի՝ նոյնպէս ալ հայերէնի մէջ շատ ընտիր եւ իմաստալից բարդութիւններ տուած է այս արմատը եւ ի հարկին կրնանք ալ նոր ստեղծումներ ընել, նոր պէտքեր գոհացնելու համար։

Թուենք հոս Աբ.ի տուածներէն մի քանին.

Դժբախտ = دش.بخت։

Դժգոյն = دشکون، دژکون։

Դժխեմ = دژخیم (չարաբարոյ), պհլ. հիմ, խիմ (բարք) արմատով։

Դժկամակ = دژکامه، دشکام، دژکام։

Դժմիտ — զն., փզ., եւ պհլ. մատենագրութեան մէջ ամենէն գործածական դարձած բառերէն մին է սա որ երրեակ անբաժանելեաց մասը կը կազմէ.

dûshmat, բարդեալ ի

dush = դժ (չար), եւ

mat = միտ(ք) է

dûshûkht = դժ-ուխտ (չար բան = mauvaise parole),

dushhûvarst = դժ-վարզ (չար գործ = mauvaise action),

որք կը հակադրուին

*hu mat* = բարի միտք
*hu ukht* = բարի բան
*hu varst* = բարի գործ ի։

Դժպարիշտ = دشپرست։
Դժպհի = دژپه կամ دژپیه (ոչ բարի)։
Դժոխք — Նպ. دوزاخ կամ دوزخ որոյ հիմն է պհլ. *dûsh* + *ahu* = mauvais lieu ըստ Hr.ի, եւ *duzh* — *ah* = mauvais monde՝ ըստ Darm.ի։ Տ. եւ Գերեզման։

Դժուար — "Դժ" բացասականի հարկաւոր շարքէն մին ալ այս բառն է, կազմեալ ի դժ է զն. *hvâ thra* է մեղմացեալ ի պհլ. *khvar* = դիւրին, եւ ուր ուրեմն h եւ *kh* ալ ինալով՝ Նպ.ի մէջ յանգած ի *var* (دش وار = ոչ դիւրին)։

Հաւանական է որ մեր բառին մէջ ալ խ կամ հ մը կար՝ ապա ինկած, որոյ նշմարանքը լինի -- ձայնախումբը, որոյ թերեւս տարբեր էր հնչումը մեր այժմու թաւ ժէն՝ -ի ան-հաստատութեան պատճառաւ։

Սոյն այս դժ----ը կը կարծեմ նաեւ Ռշ----ը՝ դժ = Ռշ փոխանակութեամբ, ինչպէս ի վեր անդր յիշեցինք. զի թշուառութիւնը չէ այլ ինչ քան դժուարութիւնք որ ընդ առաջ կ'ելլեն կեանքի մէջ եւ կը զգետնեն ենթակայն։

Այս պարզ իմացումով հարկ չմնար կարծեմ զն. *dušxᵛarənah*, հպ. *dušuvaϑʳa*, եւն. (Hb.) խրթին ձեւերու դիմելու, ուր՝ բառին

ժխտական եզրը նոյն մնալով հանդերձ՝ վերջին մասը (nah կամ $va\vartheta^{r}a$) միշտ անմեկնելի պիտի մնար։ Եւ միւս կողմէն, իմաստին ալ եթէ միտ դնենք՝ անճահութիւն կայ. զի թշուառութիւնը անպատճառ փառազրկութիւն չէ, ինչ որ կը յայտնեն վերի բառերը, ոչ ալ անպատուութիւն, այլ կեանքի դժբաղդ պայմաններէն մին որ ինչ կերպով ալ ներկայանայ՝ կեանքը միշտ կը դառնացնէ։

Մեր իմացած կերպին հաստատութիւն կու տայ չ——— կազմն ալ զոր Hb.ն ալ իրաւամբ Բշ———ին հետ կը նոյնացնէ, համարելով շ = Բշ։ Աւելի հաւանական կը թուի ինձ ենթադրել թէ կամ Գշ կամ Բշ էր թերեւս ժխտականն սկզբան, յետոյ Բն ինկած։

Զեմ կրնար այս դասակարգէն զատել նաեւ Շ———ը որ իմաստի նուրբ երանգով մը դարձեալ թշուառութեան չուառութեան կը յանգի՝ ելք չգտնելով վերահաս աղէտքի կամ տարակուսանաց։

Դիպակ — նպ. دیبا, պհ. dēpāk = ոսկեհուռ, ոսկեճամուկ հանդերձ։

Դիտ(եմ) — տ. Դէտ։

Դիրտ — նպ. دُرد։

Դիւան — պհլ. dēvān, նպ. دیوان։

Դիմակ — զն. dima; պհլ. dum, dumb, dumbak, նպ. دم, دنب, دنبه, ինչ որ կը ցուցնէ թէ այս b ձայնը (բ) մեր մէջ երբեմն կը պահուի (سم = սմբ-ակ), երբեմն կ'իյնայ (دنب = դմ-ակ)։

Դոճ (խէժ) — նպ. دوزه ։

Դոյլ — պհլ. dul կամ dol, նպ. دُل որոյ նուազականն է دلچه ։

Դու (դեր, եզ, 2դ դ.) — զն. tūm, հպ. tuvam, սնս. tuvam, նպ. تو ։

Դուար — զն. staora, sthûra, պհլ. stôr, նպ. ستور ։ Մերինին մէջ սկիզբի սն ինկած կ'երեւի, ինչպէս է նաեւ յոյնին ταῦροςը եւ լտ.ին taurusը։

Դուռն — տ. Դար։

Դուրգն (բրուտի անիւը)։ — Hb.ին տուած բացատրութիւնը քիչ մը ճապաղ է։ Պ բառարանները, թէեւ անոնցմէ ստուգաբանական ճշգրտութիւններ որոնելը աւելորդ է, քիչ շատ հիմ մը կ'ընծայեն դարձեալ՝ գաղափարները զօդելու։

ترکان چرخ կը կոչեն եօթ մոլորակները եւ ترك فلك ով կ'իմանան Հրատի եւ Արեգական ոլորակը (ծիր)։ Որչափ ալ անորոշ լինին այս ակնարկութիւնները, դժուար չէ նշմարելը որ ֆուռնոի, անիւի, ճախարակի գաղափարն է տիրողը։

Ուրեմն ترك կամ ترکանն է մեր բառին համապատասխանողը։

Դորակ (չափ մը, փարչ) — պհլ. dôrak, նպ. دوره ։

Դուխտ (դուստր) — զն. duγdar, պհլ. duxt (Hb.), նպ. دخت եւ دختر ։ Բարդութեանց մէջ միայն մուտ ունի, ինչպէս Խոսրովիդուխտ,

Ղահանդուխտ, եւն. մինչ իւր համազօրը (Դուստր) գործածուած է միշտ առանձինն:

*Դուր* (գործի հիւսանց) — պ. درای զօր مطرقه կը կոչեն արաբք:

*Դպիր* — պհլ. *dapîr*, նպ. دبير, յորմէ دبیرستان համառօտեալ ի دبستان (դպրաստան, դպրատուն):

*Դսրով* — զն. *déuś sravaṅh* = **mauvaise renommée** (Hr.), որով բառին իմաստը կը լինի վատահամբաւութիւն, անուանարկութիւն, եւն:

Այս դէպքին մէջ կը տեսնենք որ դժ, դժ, դշ, եւն. ժխտականը դս ձեւով ալ կը ներկայանայ, իբր թէ լինէր դժ-րով, վերջինը լինելով պհլ. *ruvîsh*, *rub*, *ruv* (respect, honneur), յորմէ դս-րով = ոչ գովելի, ոչ յարգելի:

Այս կազմով է ճիշդ խրօսը, պհլ. *khu*, *hu* արմատէն որ քորէ, գեղեցիկ կը նշ. եւ *çrau* կամ *çrow* էն որ քորն, քորոյն կը նշ. որով բառը կը լինի՝ քորէքորոյ ինչպէս հանդիպեցանք Ատրպատին մէջ (էջ 37):

*Դրախտ* — درخت, սա տարբերութեամբ որ մինչ մեր մէջ պարտէզ, ծառաստան կ'իմացուի, պարսից մէջ ծառ կը նշ.:

*Դրամ* — درم, արաբացեալ درهم յն. δραχμή:

*Դրաւշ* — զն. *drafsha*, պհլ. *drafsh*, նպ. درفش[1], յն. δράπων = drapeau, bannière: Այս

---

1 برهان ը. درُوش ալ կը նշանակէ ضمه ով:

իմաստով է նաեւ Դրօշք եւ դրօշակ հանդերձի, իբր ծածանող եւ տարուբերուող, հին տարազները միտք բերելով մանաւանդ։

Այլ է դրօշէմ, դրօշմեմը, որք, ինչպէս կը զանազանէ Հ. Պ.ին աւ. تراش արմատը կը մատնանշեն, ի բայէս تراشیدن (կոփել, տճ. եօնմաք)։

Նոյնն է նաեւ մեր Տաշ-եմը (= տրաշեմ) որմէ աւելի քան հաւանական է որ յաճախակի գործածութեամբ ր գիրը ինկած լինի։

*Դրժ-եմ* = Դրուժ-եմ (տ. Դաժան)։

*Դրուատ* — նպ. درود զոր այժմ *drûd* կը կարդան թէեւ, բայց բուն հնչումը մեր բառին տուածն է, ըստ որում զն. *drvatât*, *druvatât* է (Darm. Et. Ir. I. 91)։

*Դրուժ* — զն. *druj*, *druzh*, հպ. *duruj*, նպ دروج — տ. Դաժան։

## Ե.

*Եզ* (= մէկ), ինչպէս եզակ, եզակի, եզ — մ— եւ մի քանի այսպիսիք։ Աբ.ը կը հոլովէ աւ՝ եզոյ, յեզոջէ, եւն.։ Թերեւս այս լինի նաեւ չեզոքը իբր չ-եզ-ոք (ոչ մի ոք) (Հ.Պ.ի)։ Արիական ճիւղերուն մէջ ուղղակի ասոր պատասխանող տիպ մը չեմ տեսներ, զի 1 = սնս. *êka*, զն. *aèva*, պհլ. *âê(k)*, *âyuk*, նպ. يك։

Բայց մի յօրինուածք կայ պ.ի մէջ ուր եզ արմատ մը թաքչած կը տեսնեմ, ճիշդ մէկ նշանակութեամբ, որ թուական շարքին

մէջ ալ գտնուելով՝ իմաստին վրայ տարակոյս չմնար. այն է یازده ը = 11, իբր ده + یاز = 10 + 1 = եզտասան։ دوازده ին մէջ ալ աննշմար չէ նոյն یاز արմատը՝ ամփոփ از ձեւով, իբրեւ թէ լինէր ده + (یاز × دو) = 1 × 2 + 10 = երկիցս միութիւն՝ հանդերձ տասամբ։

Երանական գրականութիւնը մեզ ամբողջովին հասած չէ. թերեւս լինէր առ հինսն աւելի ազատ ձեւ մը կամ աւելի լայն կիրառութիւն։

*Եթէ* — զն. *yat'a*, հպ. *yathe* = comme, que, lorsque, &c. եւ *yedi*, *yezi* = si որոնց հետ Hr. կը յիշէ նաեւ մեր բառը։

*Եղբայր* — Հակառակ իւր առերեւոյթ անհաշտութեան, բանասէրք առ հասարակ համաձայն են ընդունելու որ հին *brâtar* (برادر)ի յեղաշրջութեան վերջին արդիւնքն է մեր բառը։

Ահա թէ ինչպէս.

Նախ *d* = *y* փոխանակութիւնը կու գայ հաստատել որ բառը Բրատ կամ աւելի ճիշդը՝ Բրատր էր ի սկզբան ուր ապա տը մեղմանալով փոխարկուած է յի ինչպէս որ եղած կը տեսնենք ընտանիքի միւս անդամներուն վրայ ալ, օր. *pitar* (پدر) = հայր, *mâtar* (مادر) = մայր։

Հոս տառերու կարգին մէջ շրջում մը կը նշմարուի, եւ սկզբնականը բր դարձած որ անշուշտ իւր լինելութեան պատճառն ունի հոլովոյթի օրէնքներուն մէջ։ Նոյն օրինք

ապա եւ լծորդութեան բերմամբ եւ մանաւանդ քի առընթերակցութեամբ չն ղի փոխուած = ղբայր։

„Cette dissimilation est limitée au cas de *r* devant *b*, կ'ըսէ Meillet, comme le montre le mot արդար qui conserve son *r* dans des conditions pareilles[1]."

Եւ որովհետեւ, ինչպէս գիտենք, մեր լեզուն բնական հեստում մ'ունի չ եւ ղ բաղաձայնները թրթռական հնչումներու, զօդիչի մը օժանդակութեան կը դիմէ արտաբերութիւնը մարթացնելու համար, զոր prothèse կ'անուանէ նոյն հեղինակը, զօդիչ որ հոս Ե գիրն է, որով վերջապէս բառը կը զգենու իր արդի հաստատուն կերպարանքը՝ Եղբայր։

Այսպիսի շրջանառութեամբ մը ձեւացած կը տեսնենք իր համահարզ աղբեւրն ալ, յն. φρέαρ որ եւ դիցաբանօրէն կու գայ գերկընդխառնուիլ ընդ եղբաւր, կրակը լինելով քոյր։

Եմ (էական բայ, եզ. 1. դ.) — կը պատասխանէ զն. *ahmi*, սնս. *âmi*[2] ձեւերուն որ պհլ. *am* կամ *em*-ի վերածուած է, յն. εἰμι, ἔσμι.

Ես (էակ. բ. 2. դ.) — սնս *asi* որ զն.-ին *ahi* կ'անցնի եւ պհլ.-ին *ai* եւ նպ.-ին *î* (ی), օր. توئی = դու ես։

---

1 Esquisse d'une grammaire comparée de l'arménien classique էջ 25.

2 Emile Burnouf & L. Leupol – Méthode pour étudier la langue sanscrite. Paris 1885, էջ 90.

Ես (դեր. եզ. 1. դ.) — զն. azem, սակայն emը եկամուտ է, բուն բառը az է, ինչպէս քրդերէն azն ալ զայս կը հաստատէ (Darm. Et. Ir. I. 158)։

Երազմոյն — տ. Նման։

Երակ — պհլ. rag, նպ. رگ զոր այլապէս չէր մարթ Հայոց հնչել, առանց օժանդակի, ինչպէս ըսած ենք։

Երամ — պհլ. ram, նպ. رم։

Երամակ — պհլ. ramak, նպ. رمه։

Երան — հնագոյն ձեւով aryana, զն. airyana որ պհլ.ի մէջ կը խտանայ ի ayran, նպ. ایران (տ. Արիք)։

Երան(գ) (մէջք եւ առականք) — զն. râna, պհլ. rân, նպ. ران, رانه։

Երանգ — սնս. ranga, նպ. رنگ։

Երաշխիք (աշխէտ) — նպ. رخش որ պէտք էր (ե)րախշ գար, այլ՝ տառերուն կարգը փոխուած է, ինչպէս եւ ի բաշխ = بخش. ալ կը տեսնենք։

Երաշխ(իք) — Հ. Ա. Տ.ը դրօշ արմատ մը կը ցուցնէ պաշտպանութեան նշանակութեամբ։ Եւրոպացի հայագէտները լռիւ անցած են։

Երասան — սնս. raçana, նպ. رسن. տ. եւ Ապերասան։

Երգ — սնս. arká եւ սղմամբ ṙk (Hb.) որ ի մեզ անշուշտ Եի յենլով Երգ պիտի դառնար։

Երեսուն — տ. Երեք։

*Տրեր* (դող, դողդղալ) — բոլոր Արիաբարբառներուն մէջ տիրող տարրը *tra*, *tre* կամ սոցա յեղանակութիւններն են, զ. օ. սնս. *tras* (*trásati*), հպ. *trsatiy*, նպ. ترس, յն. τρέω, τρήρων, լտ. *terreo* (Hb.)։ Մեր բառը այս ընտանիքէն չէր կրնար զատուիլ անշուշտ, բայց թէ ինչպէս սկզբնական *t*ն անյայտացեր եւ մնացեր է միայն Եր՝ որոյ կրկնումն է Երէրը՝ տես հետագայ բացատրութիւնը։

*Նրեք* — √Եր կամ Եռ, հաւասար իրաւամբ։

Արդ՝ ինչ է Երը։

Հեղինակք միաբան են զն. *t'ri*, սնս. *tri* արմատներուն վրայ եւ արդարեւ ասոնցմէ ալ յարմարագոյնը չկայ։ Պհլ.ը միայն կը խոտորի *sinվ*՝ յորմէ արդի سه։

Մեր բառին հանդէպ *tri* դնելով միայն կը գոհանայ Hb., առանց *t*ի եւ *e*ի փոխանակութիւնը մեկնելու որ սովորական կարգէն չէ։

Հ. Ա. Տ. ը, դժուարութիւնը բառնալու համար Թրէ-+ նախորդ մը կ՚ենթադրէ յորմէ նախատառ ատամնականը (Թ) իյնալով եւ Ե յենարանով Ե-րէ-+ ձեւացած լինի։

Ամենէն հաւանականն է այս մեկնութիւնը, յուշի ունելով մանաւանդ այն դժուարութիւնը որ կը ծագէր հայուն համար սկզբնական *tri*, *tre* մը հնչելու։ կամ ԹԵրէԵ մը ծնունդ առած էր անշուշտ կամ ԵԹրէԵ մը յորոց դիւրին էր Թին իյնալը (Տ. Անհաա)։

Գալով երեքտասնին, դա՝ երեք-տասն կամ պարզապէս երե-տասն է, կամ աւելի ճիշդը՝ եր-ե-տասն (եր նկատելով իբր զօդ), որով բառին մէջ երեւան կ'ելլէ բուն եր (= եռ) արմատը։

Իսկ տասնը դասին (գն. das), կամ սնս. daçanին յապաւումը գիտեմ = 10։ Յն. χοντα եւ սնս. կամ զն. satը որոնց հետ կ'ուզէ համեմատել Hb.ը՝ շատ հեռու կը մնան եւ բռնազբօսութեան գոյն կ'առնեն, մինչ դասը արդէն բառին մէջն է եւ ի յայտ գալու համար ճիգի ալ պէտք չունի։

Մեր այս հայեացքը կը հաստատուի նաեւ այն զարմանալի կանոնաւորութեամբ ալ որ մեր թուարկութեան մէջ կ'երեւի։ Յիրաւի կը տեսնենք որ երբ միաւորը կ'աւելնայ տասնաւորի վրայ, դասն կամ դասան ձեւով կը յօրինուի բառը, օր.

մետասան (= սնս. êkâ-daçan)
երկոտասան (= սնս. dwâ-daçan)
երեքտասան (= trayôdaçan)
չորեքտասան (= ċaturdaçan)
հնգետասան (= pañćadaçan)
վեշ(ց)տասան (= ṡôdaçan)

իսկ եւթն, ութ եւ ինն միաւորներու յաւելումը կը կատարուի դասն ով.

եւթնեւտասն = զն. hafta daça,
ութեւտասն,
իննեւտասն,

ուր շաղկապ ե–ը համարողական + ի դերը կը հատարէ։

Երբ սակայն միաւորը կը բազմապատկէ զտամնաւորը՝ ••–ն արմատն է որ յասպարէս կը մտնէ, միայնակ կամ զօդիչ տառով մը,

| | |
|---|---|
| եր-ե-սուն | $= 3 \times$ սուն, |
| քառ-ա-սուն | $= 4 \times$ սուն, |
| յի(հինգ)-սուն | $= 5 \times$ սուն, |
| վաթ(վեց)-սուն | $= 6 \times$ սուն, |
| եւթան-ա-սուն | $= 7 \times$ սուն, |
| ութ-սուն | $= 8 \times$ սուն, |
| ինն-սուն | $= 9 \times$ սուն։ |

Երիզ (կապ-շուան) պ. ورس ، رزه։

Երիվ(ւ)ար — նպ. راه (ուղ, ճանապարհ) եւ وار ածանցով راهوار։ Հոս ալ Եը պարզ օժանդակ է։

Երիտասարդ — զն. sareda (sard) = ամ տարի։ ՊՀԼ·ի մէջ ինկած է շչականը եւ նոյն բարբառի յատուկ սովորութեամբ –կ ածանց մը գալով ծայրը՝ ձեւացած է rêtak, նպ. ريدك = դեռահաս։

Մեր բառին սկիզբի Եը օժանդակ է, բառասկիզբ չի պահանջմամբ։

Հ·Ա·Տ· վերջին վանկը լաւ կը մեկնէ, այլ առաջինը լռութեամբ կ՚անցնի։

Հ·Պ·ին ––րչ–––ճի, –չ––––––չի, ––րջի, ջ–ֆ՟չի, պ–––––ի, եւն. շուրջը կը դեգերի վայրապար։

Եւ (շաղկապ) — սնս. ápi, զն. aipi, յն. ἐπί։ Հոս ալ մեր –ը pi հանդէպ ելած կը տեսնենք իբր $p = f = v$, եթէ բոլորովին ալ Սեմական չէ բառը (uau) որ թէ u եւ թէ au ալ է, ինչպէս եւ մերը որ –– ալ է։

Եւթն — զն. haptan, սնս. saptan, պհլ. եւ նպ haft (هفت)։ Այլ օրինակ $f =$ –ի որ կը ցուցնէ թէ թերեւս այս իսկ էր բուն նախնի հնչումը եւ յետոյ ուրեմն –– երուն օի փոխուելուն առթիւ է որ այս ––ի մօտ Ե–ն ալ նոյն ազդեցութիւնը կրած եւ Ե–Ըը ԵօԸի փոխուած է։

Բառին ծայրի –ն դիմորոշ չեմ կարծեր, այլ զն. եւ սնս. նախատիպերուն մէկ մնացորդը։

## Զ.

Զ (նախդիր) որ ըղ, միանգամայն ըզ ալ է որոյ հանգիտազօրը կը տեսնենք զն. usի եւ պհլ. uzի մէջ որ նպ.ի ز անցած է որ եւ սղմամբ բազում անգամ պարզ ز կը գործածուի։

Սա ինչպէս մեր մէջ, նոյնպէս ալ պ.ի մէջ բազում ուրեք հոլովակերտ է եւ ընդհանրապէս մեր բացառականին կը պատասխանէ, մինչ մերինը աւելի հայցական կը շինէ եւ անուններու եւ բայերու ալ վրայ գալով նշանակութեան մէջ պէսպիսութիւն կը մտցնէ, ինչպէս.

| | | |
|---|---|---|
| օրէն | = | զօրէն |
| արմանք | = | զարմանք |



 

*ընկենում = զընկենում*
*գնամ = զգնամ, եւն։*

*Զամբիւղ* — *Նպ. زنبيل, زنبير, այն բառերէն է որ Ասորւոյն մէջ ալ գտնուելով՝ փոխառութիւնը անորոշ կը մնայ թէ ով ուստի։*

*Զայր(անամ)* — *Բուդա-Բեշդի համալսարանին հայագէտ ուսուցչապետը, Պ. Դ. Բադրոսեանեան որ իր հմուտ ստուգաբանութիւններով երբեմն կ'երեւի ջանդէս Ամս.ին մէջ, այս բառն ալ իրեն ուշադրութեան առարկայ ընելով՝ ավ. ā-tar, հնդեւր. ā-tēr կամ աւելի հին āi-tēr որ է ատր(կրակ) արմատին հետ կը համեմատէ Հյ. շայըր, սորա արմատ ընդունելով թայըր[1]։ Իրաւ ալ կրակի գաղափարը զայրանալէն հեռու չէ, զի ռամկօրէն ալ կ'ըսենք "կրակ կտրիլ"։*

*Բայց ես կը կարծեմ որ ասկէ յարմարագոյնը կայ։ Նախ՝ շայըրին վրայի շն նախդիր չէ, այլ բառին մարմինէն է, եւ շայըրը մի յեղանակեալ ձեւն է ծայըրի որ ինքն ալ մի այլ յեղաշանութիւնն է սըր (سر)ի որ գլուխ, գագաթ, ուստի եւ ծայր կը նշ.։*

*Նոյն ծայրն է որ տուած է նաեւ ծայրը զոր կը հաստատէ զոյգ կիրառութիւնն ալ ծայրածայր բառին մէջ։*

*Ասոնք մէկ ամբողջ ընտանիք մը կը կազմեն, պարագլուխ ունենալով ծայրը, թէ իբրեւ*

[1] Հանդ. Ամս. 1904, Յունիս Թ. 6։

ծայր = գագաթ, եւ թէ սուր ծայր (effilé)։ Ասոր ի հաստատութիւն կու գայ միւս համատիպ եւ համազօր բառը, բօրչանամը որ բօրչ (իմա՛ բարակ) արմատէն՝ նեղնալ, բարակնալ, սրուիլ, ծայրանալ յորմէ եւ զայրանալ կը նշ.։

Բօրչ, սար, սայր, սուր, ծայր, շայր զիրար կատարելապէս կ'ընդգրկեն։

*Զանա(զան)* — Հպ. *zana* (տեսակ, ազգ)։ Այս արմատը առանձին գործածուած չէ, այլ միշտ կրկնութեամբ կամ բարդութեանց մէջ, օր. զանազան, բազմազան, գեղազան, զարմանազան, հրաշազան, սրբազան, եւն։

(Hb.)ը զանն ալ ասոր հետ կը նոյնացնէ (թագաւորազն, համազն), բայց չեմ կարծեր. զանը ազգի հետ աւելի վերբերութիւն կը ցուցնէ քան ասոր հետ։

*Զանգ(ակ, իկ)* — պ. زنگ։

*Զանգապան* — զն. *zangōpāna* որ կը լուծուի

սնս. *ǰaṅgha* } = ոսկր
զն. *zanga* }

զն. *pāna* = պահպանել (Hb.), որով կը ստուգուի Աբ.ին տուած մեկնութիւնը "ծունկը՝ ճիւը պահող մեծ գուլպայ„։

*Զանգիտեմ* (երկնչել) — Առաջին հայեցուածով "գիտեմ„ի մէկ յեղակերպութիւնը կը կարծուի, իբր անգիտեմ եւ զով՝ զանգիտեմ, բայց ոչ. գէտի՝ գիտեմի հետ գործ չունինք հոս։

Բուն բառը կ'երեւի շունչ, համապատասխանելով çankh, սնս. çankate, pratiçanka, çankanîya (երկնչել)[1]: Çankate տիպը կատարելապէս կ'ընդգրկէ մեր շունչերը յորմէ շունչերէն, եւն:

Զանդիկ — պհլ. zandîkîh, նպ. زندی, زندیك:
Մանի աղանդապետը որ Արտաշիր Ա.ին օրովը երեւցաւ 238ին (Յ—Ք), ծնունդ տուաւ նոր կրօնքի մը որ մի խառնուրդ էր հին եւ նոր ուսմանց, Մազդէականին եւ Քրիստոնէականին, զոր մեր Եզնիկն ալ կը յիշէ (Մանիքեցւոց աղանդ): Այս աղանդը եւ հետեւողները Զանդիկ կոչուեցան:

Զառամ — զն. zar կը նշ. vieillir որմէ կը հետեւի որ մեր բառին ծայրի -մը կամ տարի նշանակութեամբ բարդութիւն մ'է, կամ պարզ ածանց մը: Նոյն արմատն է որ նպ.ի ալ زر տուած է զոր پیروفرتوت կը մենէ برهان.ը՝ այսինքն ծեր եւ պառաւ:

Այս ծեր եւ زر աղերսը Պալատցի Գպիրն ալ նշանակած է:

Չար ոգիներուն մէկ չօկատը Aeshma, hashmakân (خشم، هیشم، خشمکان = հյ ցասմնական), պաշտօն ունէր ցաւ, ծերութիւն, ապականութիւն պատճառել որմէ zuârân անուանուեցան, zuâr արմատէն որ ծեր կը նշ.:

Մեր ձէք եւ շ——մը այս երկու ձայներն ալ կը պատկերացնեն:

---

1 Darm. Et. Iran. I. 94.

*Զառիկ* — զն. *zairi*, պհլ. եւ նպ. *zar* (زر = ոսկի)։

Մենք "զառիկ"ով մկնդեղ (սրչան օթու, տճ. զըռնըգ) կ'իմանանք, բայց զառ (ոսկի) արմատով բարդութիւններ ալ ունինք. զ. օ.

*Զառնաւուխտ* (ոսկեթել, ոսկեհուռ) — Առաջին անդամը զար՝ յայտնի է, زر = ոսկի։ Երկրորդ անդամին վրայ կը տարաձայնիմ Hb.էն։ Նա باف արմատով կը մեկնէ, ի բայէս بافتن որ բանել, հիւսել, գործել կը նշ. եւ տիպեր ալ ունի, զ. օ. زربافت կամ زربافته, ոսկեհիւս, ոսկեման նշանակութեամբ։ Քաջայարմար է իբր նշանակութիւն. սակայն بافը —ւխտ կամ —ւխտի յանգեցնելու համար բազում տաժանք պէտք է։ Ես կը նախընտրեմ آویخت արմատը որ նոյն նշանակութիւնը յայտնելով հանդերձ, ձայնիւ եւ կազմով համանման ըլլալու առաւելութիւնն ալ ունի։ Եւ արդէն زرآویخت տիպն ալ կայ։

*Զառքաշ* — պ. زركش (ոսկիով քաշուած բանուած)։

*Զատ* — պ. زاد, արմատ زادن (ծնանել)ի։ Մեր մէջ առանձին գործածութիւն չունի այս բառը, այլ մի քանի ցանցառ բարդութեանց մէջ աչքի կը զարնէ, Նորազատ, Կորճազատ, Պայազատ, եւն. մինչ պ.ի մէջ շատ աւելի է կիրառութիւնը. شهرازاد, دینارزاد, مادرزاد, شاهزاده, եւն։

*Զատ* (որիշ, տարբեր) — Շատ հաւանական է որ պ. جد կամ جدا է։ Փարսիները իրենց

կրօնքէն չեղողները جدا կը կոչեն, իբր զատէն (այլադէն)։

Մեր ան-զատին մէջ երեւցած զատն ալ ասկէ տարբեր չեմ ըմբռներ։

Զատիկ — Նայելով Ս. Գրոց մէջ՝ գործածուած տեղերուն եւ իմաստին եւ պ.ի մէջ գտնուող زن եւ زدن արմատներուն, անկարելի է չկապել միմեանց հետ մեր ալ զէն(ում)ը եւ զատ(իկ)ը, զոր շատ ճիշդ դիտած է Հ. Պ.ին, որոյ Ս. Գիրքէն բերած օրինակներն ալ շատ համոզկեր են։

"Առէք ձեզ ոչխար, եւ զենջիք ի զատիկ"։

"Ցառաջնում աւուր բաղարջակերացն յորժամ զզատիկն զենուին"։

"Զատիկ մեր զենաւ Քրիստոս"։ Հաւանական է որ մեր զատն ալ, արմատ զատաչեմի, նոյն ըլլայ զատի հետ ինչպէս կը կարծէ Հ. Պ.ին։

Զարդ (զարդարանք) = տ. Արդ։

Զարմ — տ. Սերմ։

Զարտ (դեղին) — պ. زرد, յորմէ զարզաճօյն = زردكونه։

Զբօս (անք, -նում) = յամել, ուրեք, դեգերել, խաղալ, զբաղել։ Այս ամէնը լիովին տուողը պ. سوز արմատն է որ թէ سوختن եւ թէ سوزيدن բայերը կուտայ եւ կը գրուի նաեւ سوز, ինչպէս եւ մենք ալ ունինք Սպօ-ժ. եմ = տնտնալ, ուշացնել (Աբ.)։

Զբօսանքին —չի+ նշանակութիւնն ալ, իբր խաղ եւ վէտվէտումն ջրոյ, այս իմաստներուն չհակառակիր։

*Զգենում* — զոր մերկացնելով իւր վերադիր-ներէն կ'ունենանք $\sqrt{\text{գէն}}$, բայց այս արմատը այս ձեւին մէջ շատ բան մը չըսեր, բուն բանալին տուողը գոյական զգէստին գէստ արմատն է, որոյ համեմատական տիպերն են սնս. vas, vaste, vastra, զն. vaňh (vaste) որոց նոր լեզուներուն vest, vêt ձեւերն ալ ի հաստատութիւն կուգան (Hb.):

Արդ՝ Գ-ի եւ Վ-ի սովորական փոխանակու-թիւնները առաջի աչաց բերելով դիւրին է ըմբռնել թէ ինչպէս vestը գէստ եղած է, vaňhը՝ գէն, յորմէ գէն-ում, իբր գէս-նում, հնդեւր. vés-nu-mi յարմարութեամբ[1], եւ վերադիր զ ով՝ զգէնում, իբր զգէսնում որ կրնար զգէծ-նում ալ ըլլալ քանի որ «զգեցուցանեմ» ի մօտք «զգածուցանեմ» կայ Ոսկ.ի մէջ (Հատ. Թոռնեան, եջ 120):

Յայտնի է ուրեմն որ գէստ արմատին վրայ են կատարուած բոլոր փոփոխութիւնները՝ տալով փոփոխակի՝ զգէն, զգէց, զգէծ, զգէստ, եւ պիտի ըսեմ նաեւ զգաստ որոյ նշան համարուած է Ս. Գրոց մէջ զգենուլ՝ զգաստաւորիլը, իբր խելքը գլուխը գալ: Ասոր է որ այս մօտք միշտ զոյգ կ'ընթանան այս բառերը:

«Եւ տեսանեն զդիւահարն զգեցեալ եւ զգաստացեալ» (Մարկ. Ե. 15 — Ղկ. Ը. 35):

Կարծեմ թէ «զգօն»ն ալ այս ընտանիքէն օտար ըմբռնելու չէ, իբրեւ մի այլ ձեւ զգէնի:

---

1 Ղ. Բագրուպանեան — Հանդ. Ամս. 1908 — Սեպտ.:

Ամփոփելով ուրեմն տարածեալ տիպերը կը տեսնենք որ գէն եւ գէօփ ձեւերն են որ իբր հիմ ծառայած են այս ամենուն եւ այս արմատներն են դարձեալ որ բայն ալ կը խոնարհեն, ուղիղ ժամանակներուն մէջ գէն, եւ խոտորներուն մէջ գէօփ ձեւով. օր.

| | | |
|---|---|---|
| Ա. | Սհմ. Ներկ. | զգեն-ում |
| | „ անկ. | զգեն-ուի |
| | Արգել. | (մի) զգեն-ուր |
| | Ստոր. | զգեն-ուցում |
| | Աներ. | զգեն-ուլ |
| Բ. | Կատ. | զգեց[1]-այ |
| | Ապ. | զգեց-այց |
| | Հր. | զգեց-ջիր |
| | Ընդ. անց. | զգեց-եալ |

*Զգոյշ* — Ասոր մէջ պ. كوش (ականջ)ի գոյութիւնն անտարակուսելի է, զոր եւ զն. *usgaoša* (Hb.) բարդութիւնը կը հաստատէ, ականջ դնել, մտիկ ընել նշանակութեամբ:

"Զգոյշ"ը հյ.ի մէջ, ինչպէս գիտենք, իրարու մօտ երկու տարբեր երանգով կ'առնուի. մին չափաւորութեան՝ միւսը պահպանութեան իմաստով: Այսպէս,

ԶԳՈՅՇ ԼԻՆԵԼԸ կը նշ. չխիզախել, չյանդգնել, չզանցանել, խոհականութեան եւ չափաւորութեան մէջ մնալ. մինչ

---

1 Սղեալն գէօփի:

զգուշանալը՝ արթուն աչալրջութեամբ հսկել, պահել պահպանել է։

“Զգոյշ լերուք ողորմութեան ձերում մի առնել առաջի մարդկան„ (Մատթ. Զ. 1)։

“Արդ հրամայեա զգուշանալ գերեզմանին մինչեւ ցերիս աւուրս„ (Անդ ԻԷ. 64)։

کوش մեկնակէտը այս երկու իմաստի ալ հաւասարապէս ընդունակ է, քանզի զգուշութիւն եւ զգուշաւորութիւն ի հարկէ շուրջը նայելով, դիտելով, ականջ դնելով կը կատարուի։

Զեան, զեն — զն. zyâna, պհլ. եւ նպ. زیان։ Սորա հետ իրաւամբ կը կապէ Hb.

Վիշէան եւ

Վիշենակն ալ

որ նոյնպէս զեն, վնաս կը նշանակեն եւ կը համապատասխանեն զն. vīsyanā-ին։

Զենում — տ. Զատիկ։

Զէն(ք) — զն. zaèna, պհլ. եւ նպ. زین = arme (Hr.)։

Զի (շաղկապ) — զն. zi, zî (donc, en effet)ի հետ կը համեմատէ Hr.։

Զմրուխտ — պ. زمرد։

Զնդան — زندان։

Զոհ — զն. zao, zu, պհլ. zôhar, zôhr յորմէ դիւրին էր չի իյնալը։

Զոպայ — նպ. زوفا։

Զուտ — պ. زدودن եւ زدائیدن աներեւոյթները եւ زدای հրամայականը (զտել, մաքրել

նշանակութեամբ), տարակոյս չեն թողուր որ زد կամ ازد արմատ մը կայ, որչափ ալ ուրոյն նշանակած չեն բառագիրք զոր սակայն բացորոշապէս կը մատնանշէ մեր բառը։

*Զուր* (փուճ) — նպ. زور։

*Զրահ* — պհլ. *zrēh*, նպ. زره, զն. *zrāda* (Hb.)։

*Զօր* (ոյժ) — պ. زور, յորմէ հ-զօր, զօր-եղ, զօր-աւոր (պ. زوراور) եւն։

Նոյնն է նաեւ զինուորական իմաստով զօր-ք (force militaire), զօր-ական եւն։

## Ը.

*Ըմբոշխնեմ* (ճաշակել) — թօթափելով յաւելեալ մասերը՝ կ'ունենանք բօշխ զոր կը գտնենք պն. *bakhsh* արմատին մէջ որ կը նշ. manger (Hr.)։

Ինչպէս բօշխը՝ նոյնպէս եւ նոյն տեղափոխութեամբ բօշխը տուած է պ. بخش արմատը եւ նշանակութիւններն ալ իրարու օտար չեն զի ըմբօշխնելին մէջ ալ գերակշռող իմաստը սեղանէ ճաշակել վայելելն է եւ աւելի բերնի մէջ, իբրեւ ճաշակարան, կատարուած գործողութիւնը կ'իմացուի, ատամամբք ծամքելով մանրելով բաժնելով, միով բանիւ բաշխելով բօշխելով պատառը (بخشيدن)։

*Ընդերք* (փորոտիք) — զն. *antara*, լտ. inter, նպ. اندر եւ սղաբար՝ در։

# Թ.

*Թագ* — նպ. تاج, յորմէ

*թագաւոր* = تاجور,
*թագակիր* = تاجکیر։

*Թազեմ* (*վազել*) — պ. تاز արմատ تاختن ի որ թէ Թաղէմ եւ թէ Հաղէմը տուած է, մի եւ նոյն նշանակութեամբ։

*Թակոյկ* — تکوك որ ըստ պ. բառագրոց՝ ոսկի, արծաթ կամ խեցեղէն սկաւառակ կը նշ. գինի խմելու, զոր սակայն vase à viande թարգմանած է Darm.։

Կարեւորութիւն չունի այս խտրութիւնը, մեզ աւելի պարունակողը կը հետաքրքրէ քան պարունակեալը եւ այս վերջինի մասին ալ եթէ ընտրութիւն հարկ լինէր, Պարսից կողմը պիտի հակէինք մտադիւր, քանզի, վերջապէս, պարսիկները իրենք աւելի լաւ գիտեն եւ կ'իմանան իրենց այս կարգի տնական բաները քան օտարները։ Եւ միւս կողմէն մեր բառին իմաստն ալ կատարելապէս կը հաստատէ պարսկականը, գինւոյ ամանին մեծութիւնը պզտիկութիւնը արգելք մը չէ։

*Թաղար* (խեցեղէն կաւեղէն անօթ, աման) — պ. تغار։ Ասոր ձեւէն առնուած է անշուշտ *Թաղկարն* ալ որ կանանց գլխարկ կը նշ.։

Տաղարն ալ նոյն կը համարի Hb.։

*Թաղ-ումն* — որոյ մէջ Թաղ արմատը աներկբայ է եւ սա ալ անտարակոյս ողեալ մնա-

ցորդն է √Դաղմի որ համազօրն է զն. dakhm, dakhmahի, պհլ. dakhm-ak, նպ. دخمه, دخم:

Աստվ կ'իմացուի այն բարձր աշտարակաձեւ շինուածքները[1], սարերու բլուրներու վրայ ուր փարսիները իրենց մեռելները կը դնեն, բաց օդին, ի կեր գիշատողաց, որպէս զի հողը չպղծուի: Երբ հոտելի մասունք բոլորովին սպառին եւ ոսկորները երկար արեգակնաւորութեամբ լաւ մը չորանան, յայնժամ ատոնք կեդրոնական ծակէ մը զառիվայր կը թափեն ներքեւի աշտարակին ընդունարանին մէջ զոր استودان կը կոչեն այսինքն استخواندان (ոսկերատուն, ոսկերաստան):

Թանգ, Թանկ (սուղ, ծանրագին, եւս եւ ձիուն թամբին վրայէն անցուցուած գօտին, տճ. քօլան) — պ. تنگ որ թէ այս գօտին եւ թէ ամէն ինչ հազուագիւտ եւ դժուարստաց կը նշ., նաեւ նեղ եւ անձուկ իրեր եւ վայրեր, օր. կիրճ լերանց եւն: Չեմ գիտեր այս միտք ալ գործածուած է մեր մէջ. յամենայն դէպս գործածելի է:

Թանգար = վաճառական, պանդոկապետ կը նշ. Աբ.ը: Այս նշանակութիւնը բոլորովին չպատասխաներ պարսկականին որ تنکارով ոսկիէ արծաթէ պղինձէ եւն. խառնուրդ դեղ մը կ'իմանայ: Մերը բառին սուղ եւ հազուագիւտ իմաստէն աւելի առնուած կ'երեւի, իբր թանկարժէք իրի կամ վաճառքի հետ գործ ունեցող: Զայս կը հաստատէ նաեւ

1 Լռութեան աշտարակ, tower of silence:

*Թանզարանը զոր գանձարան կամ ընտիր հաւաքածոյից վայր իմաստով կը գործածենք։*

*Թանզուզեմ = քաշուիլ, սկրդիլ ըլլալ (Աբ.), տճ. սիվիշմէք։*

*Գրեթէ մոռցուած, այլ սակայն ընտիր բառ զոր թերեւս պ. تنگریز յօրինուածով մը մեկնել յարմարաւոր լինի, իբր تن (մարմին, անձ) եւ گریز, արմատ բայիս گریختن (փախչիլ, խոյս տալ)։*

*Թանճր — զն.* tânja, *նպ.* tanč, *նպ.* تنج, *բայ՝* تنجیدن *որ շաղուել, միասին խառնել, գալարել, փաթթել կը նշ., եւ իբր այս՝ տուած է նաեւ*

*Թանչ(ք)ը որ գելում գալարումն է աղեաց (տճ. սանճը = պ. زنجه)։*

*Այս արմատը (تنج)ը կը տեսնեմ նաեւ մեր*

**Տանչի եւ**
**Տէնչ(Լ)ի**

*մէջ որ արդարեւ* souffrir *է թէ ֆիզիքական եւ թէ բարոյական իմաստով։*

*Թաս(ամ) = հեւքը բռնուիլ, շնչարգելք ըլլալ (Աբ.), յորմէ "թասել ոգւոց" ըսուածքը։ Պ. համազօրն է* تاس, تاسا, تاسه *(վիշտ, նեղութիւն, անդոհ, անձուկ)։*

*Թարմ — զն.* taruna = tendre (Hr ), *նպ.* تر *ի վերածեալ։*

*Թարշամ — զն.* taršna, *սնս.* tršyati (Hb.)։ *Այս է թերեւս Տառամն ալ, չի կորստեամբ եւ ր = ռ փոխանակութեամբ։*

**Թաց** — պ. تازه ի սղումն է ز = ց փոխանակութեամբ: Խոնարհմանց մէջ այս արմատը աւելի եւս կը սղի եւ ուղիղ ժամանակներու մէջ պարզ Թ—ի կը վերածուի, ճիշդ ինչպէս Բ—ցը, օր.

Բ—-նամ = բա-նամ,
Թաց-ի = բաց-ի եւն:

**Թափ** (ցնցել, Թափ տալ, զարնել, բախել) — պ. تپ, تپيدن, յորմէ

Թափթափեմ,
Թօթափեմ = Թաւ (= Թափ) Թափեմ,
Թաթաւեմ = Թաւթաւեմ, եւ Ս. Գրոց
Թ—ֆէն (blanchisseur)ը

"Եւ ձորձք նորա եղեն փայլուն սպիտակ յոյժ, որպէս Թափիչք երկրի ոչ կարեն այնպէս սպիտակացուցանել„ (Մարկ. Թ. 2):

զի լուացքի այս գործողութիւնը կը կատարուի լաթը դիմացկուն յատակի մը վրայ փռել եւ Թակերով ծեծելով:

**Թափ(եմ)** = կորզել, փրցնել: Այս առմամբ կը պատասխանէ պ. تافتن ի √تاف որ ի մէջ այլոց կը նշ. նաեւ ետ դառնալ կամ դարձնել (برگشتن. برگردانیدن.): Այսպէս կը մեկնուի "Թափել զաւար„ (աւարը ետ դարձնել), "Թափիմ յիմէքէ„ (ազատիլ) եւն. ասացուածները:

*Թափ(ուր)* = պարապ, դատարկ։ Այս մտօք կ'ըսենք

Թափել զինի = գինիի ազդեցութեան անհետանալը,
Թափիմ ի մտաց = խելքը կորսնցնել.
Թափել զոյժ = ոյժը սպառել եւն.

որոնց ամենուն մէջ տիրող ընդհանուր գաղափարն է սպառում, ոչնչացում եւն։ Պ.ի մէջ այս իմաստը եւ ձայնը տուող բառը تباه է, բայց تباهيدن որ նուազել, պակսիլ, ջնջել, բառնալ կը նշ., որ تبار ալ կը գործածուի, մանաւանդ բանաստեղծութեան մէջ։

*Թիզ* (սուր, aigu) — հին բառ, զն. tizh, նպ. تيز։

*Թիզ* (Թզաչափ) — պ. شست ի ամփոփումը կ'երեւայ։

*Թմբուկ* — պ. تنبك։

*Թշնամ(անք)* — պ. دشنام, այն է

دش = Թշ (= դժ, տժ, եւն)
نام = անուն

պհլ. dush-nâm, ինչպէս կայ بد نام = վատանունն։ Այլ է

*Թշնամի* որ թէեւ պատկերով վերինին հետ նոյն ըլլալ կը թուի, բայց արմատները տարբեր են։

Թշնամանքին մէջ տեսանք որ Թշ եւ Նամն են բաղկացուցիչ տարրերը, իսկ հոս, նոյն բացասականին հետ եկեր է ման արմատը, զն. maynya, պհլ. man որ իմաստ եւ իմաց կու գայ հայերէն եւ միանգամայն ման ար-

մատը կու տայ (ի-ման-ամ)։ Այս է, ինչպէս ուրիշ առթիւ ալ տեսանք Վեհդեննեան (ودهن) երրորդութեան առաջին եզրն ալ՝ منشن (խորհուրդ, միտք)։

Բառն է ուրեմն dush-man, պ. دشمن = չարիմաց, չարամիտ, դժմիտ, միով բանիւ Դուշ-ման, ինչպէս կը պահանջէր ուղիղ իմաստը որ սակայն աղաւաղութեամբ Դուշ-նամի փոխուած է մեր մէջ (Տես եւ դժ)։

Թշուառ — տ. դժ։

Թոհ = تهی։

Թոնիր = تنور։

Թոշակ = توشه։

Թութ = توت։

Թուք = Հաւանական է պ. تُف ը լինի, զի գարշանքի, զզուանքի, անէծքի պարագաներուն՝ միշտ այս բառը կը գործածուի, Թութ-ու-մաչ ըմ. բացատրութեան պէս։

Թօշ-նիմ — արմ. Թօշ, կամ տալով իւր նախնի ձեւը՝ Թաշ որ կը պատասխանէ պ. تفش ի (= տօթ, տապ, ջերմութիւն)։ Ասոր կը համարիմ պ. تشنه եւ تشنگی ձեւերը որ ծարաւի եւ ծարաւ կը նշանակեն, ակնարկելով մանաւանդ բուսոց որ ի չգոյէ ջրոյ կը չորնան կը թօռմին։

## Ժ.

Ժաժ (խռիւ, տճ. չալը չըրփը) — պ. ژاژ։

Ժահր — պհլ. եւ նպ. ژهر։ Սորա յապաւումը կը կարծեմ

ժառը (աղտեղութիւն, աւլուք, եւն), յորմէ
ժախ եւ
ժեխ, թերեւս եւ
ցեխ, բոլորն ալ աղտ եւ աղբ իմաստներով:

Ժամ
Ժաման
Ժամանակ } = زمان ، زمانه:

Այս վերջինին թերատն է "Ամանակ„ը:

Ժանգ = ژنگ:
Ժանգառ = ژنکار ، زنکار:
Ժանիք = شنك (կնճիթ փղի):
Ժանու
Ժանուար } եւս եւ ժանուար = գահաւորակ՝ փղի կամ ձիու վրայ (تخت روان) — Հպ. ǰani-wara (Hb.), Նպ. زنبر:

Ժանտ — տ. Դաժան:
Ժիպակ = ژیوه ، جیوه:
Ժիր — զն. եւ սնս. ǰira, Նպ. ژیر ، اژیر ، اژیرك ، յորմէ زیرك (برهان):
Ժխոր = ژغار ، ژغاره:
Ժպիրհ — Hb. բնաւ առած չէ այս բառը: Ինծ կը թուի թէ սա՝ պհլ. մատենագրութեան մէջ խիստ գործածական shapîr-ն է որ գեղեցիկ, լաւ, ընտիր նշանակութեանց հետ՝ յանդուգն, խիզախ, չքնաղ, անվեհեր իմաստներն ալ ունի:

Ս. Գրոց մէջ լիրբ եւ ժպիրհ բառերուն յաճախ կից առ կից գործածուելէն խաբուելով, Հ. Պ.-ին՝ շղթայի հետ բաղդատելը ուղիղ չէ:

# Ի.

*Իժ* — տ. Օձ։

*Իմաստ* — √մաստ = զն. *masti*, որ եւ մազդ = իմաստութիւն (sagesse), յորմէ Ահուրա-Մազդա (գերագոյն իմաստութիւն)։

Մի եւ նոյն նախնական արմատի ցոլացումներն են, ինչպէս վերն ալ ակնարկեցինք, ամբողջ շարք մը

ման = ի)ման(ամ,
մազդ = Արա)մազդ,
մազդ(եզն,
մաստ = ի)մաստ,
մաց = ի)մաց

Այս ընտանիքէն[1] դուրս չեմ սեպեր նաեւ միտ(ք)ը = պ. مه։

*Ինն* — սնս. *navan*, զն. *nava*, նպ. نُه եւ ծիւղակից *envn*, *enan*, *enu*, յն. ἐννέα միջինները տարակոյս չեն ձգեր որ մերն ալ նոյն յեղակերպութեանց մին է։

*Իշխան* — զն. *k'shi* = régner, gouverner որոյ հետ Hr. կը յիշէ նաեւ մեր էշխել. եւ *îsha* = désir, souhait, force, որով

*îshâk'shatra* = dominant, commandant à son gré, maître puissant (ինքնագօր, ինքնակալ, ինքնիշխան)։

Իշաքշատրա տիպն է ուրեմն որ յապաւելով ամփոփուելով, էշ(-) արմատին հետ ուր

1 Hr. Man. de l'Avesta, pp. 315, 332.

ուրեմն յանգած կը տեսնենք Իշխանին. ինչպէս որ միւս կողմէն ալ փափէշտանը եւ Ֆրեաշէը որ դարձեալ նոյն արմատի ծնունդներն են։

Իշտրմուղ (Ջայլամ Թռչունը) — Բառ առ բառ պէտք էր ուղտահաւ լսուէր, զի

իշտր = պ. اشتر կամ شتر = ուղտ, եւ
մուղ = պ. مرغ = հաւ։

Մեր բառէն ր մը ինկած է։ Աբ.ը շատ լաւ դիտած է այս ծագումը։

Ի վեր | զն. upairi, յն. ὑπειρ, լտ. super ....
Ի վերոյ | պհլ. apar, awar, նպ. بر، ب ձեւերուն նայելով մեր բառին վրայի էն աւելի արմատական համարել կը միտիմ քան նախդիր։

Իվերային վրայ նախդիր է, այո, զի հոն տարբեր արմատի կը պատասխանէ. զն. pra, fra եւ հնդգ. միւս ճիւղերուն մէջ para, pro, πρὸ եւ պհլ. fraz, նպ. فراز եւ կարճօրէն فرا։

Այս فرا (= վերայ)ին կը հակառակի պ. فرو (ի ներքոյ, ներքս), իսկ بر կամ برին՝ زير (ստոր, ստորեւ). մինչ հյ.ի մէջ ամէնքն ալ “վեր„ արմատին շուրջը բոլորուած են։

## Լ.

Լախտ (բիր, գունտ) — նպ. لخت։
Լական որ եւ “լկան„ եւ “ղեկան„ — պ. لكن։ Հ. Պ.ին յն. λεχάνηէն ծագեալ կը համարի։
Լայքա (բացագոյն կարմիր ներկ) — պ. لك կամ

Ճ: Պ. բառագրոց տուած բացատրութեանը նայելով՝ Հնդկաստան կը պատրաստեն այս ներկը, գիշերը ծառերուն վրայ իջած մանանայէ մը, չորցնելով եւ ծեծելով:

Սա է թերեւս Խորենացիին “լայքա կարմիր„ը:

Լաշկար — պ. اشکر, √ لشك որ անշուշտ տուած է նաեւ Ղըֆէշը որ անցած ըլլալու է ուղիղ ղըշֆ կամ լըշֆ տիպէն, աղաւաղուելու համար ի ղըֆէշ:

Լաչակ = لچك:

Լաստ = لست = ամրութիւն, պնդութիւն: Սոյն գաղափարէն մեկնելով է անշուշտ մեր մէջ լօսթին նաեւ տապան նշանակելը, իրարու հետ ամրապինդ հաստատուած փայտեայ մասունքներու ակնարկելով:

Լափ(եմ, լափլիզեմ), √լափ = պ. لب = ափ, շրթունք, օր. لب دريا (ծով-ափն):

Այս հիմէն եւ իմաստէն մեկնելով բազում պէսպիսութիւններ առած է մեր մէջ բառը:

1. Բուն այս լըֆը (լափեմ, լափլիզեմ), այսինքն շրթնալիր ուտել.

2. Լէֆ (ի լեփ, առ լեփ = խոր եւ դառուվար).

3. Լէղ (շեղ), յորմէ ըղըլէղ: Ռամկօրէն գործածուած լէֆն ալ (լեփլեցուն) այս թուարկութենէն դուրս չէ անշուշտ, իբր ճիշդ համազօրը պ. لبالب ին որ մինչեւ բերանը (շուրթն) լեցուն կը նշ.:

*Լեզու* — Օտար հեղինակներուն ցուցցած զն. *hizva*, հպ. *izâva*, սնս. *ǰihvā*, պհլ. *huzvan*, նպ. زبان, լտ. *lingua*, եւն. մեր բառին հետ բնաւ յարնչութիւն չեն ցուցներ, որչափ ալ բարի կամեցողութիւն դրուի։

Ցարմարագոյն արմատն է, ըստ իս, պ. لس կամ لیس ը յորմէ բայքս لستن կամ لشتن կամ لیسیدن, պհլ. *listan*, որք լոսել, լեսուլ, մանրել, եւն. կը նշանակեն, ճիշդ այնպէս ինչպէս որ լեզուն բերնին մէջ կ'ընէ պատառը՝ հոլովելով շրջելով եւ ադօրեաց տակ բերելով շարունակ, ինչպէս տոռը սանդի մէջ։

Այս է լեզու—մը, լեզունեմը, լեռու—մը, բոլորը լեզուին միջոցաւ կատարուած գործողութիւններ թէ appréhensionի, թէ masticationի։

Ասոր են լեռան, լեռու—ըք եւ այլ յօրինուածութիւնք զորս շատ լաւ դրոած են հայ բառաներք Հ. Ա. Տ. եւ Հ. Պ.ի։

*Լեշկ*, *լեաշկ*, *լաշկ* (մաշկի պէս լերկ, մաշած) — նպ. لشك որ պատառիկ, հատած կը նշ.։

Կ'ըսուի اشك لشك = պատառ պատառ։

*Լի* — Ակնարկ մը նետելով հեռաւոր եւ մերձաւոր պատկերներուն վրայ, օր. զն. *perena*, յն. πλήρις, լտ. *plenus*, կը տեսնենք որ *pr* = *pl* արմատ մը կայ հիմ այս ամենուն զոր աւելի բացայայտ կը ցուցադրէ լտ. *impleo* ձեւը։ Սոյն արմատին քն է որ մեղմացած կ'երեւի

առ մեզ ի h (հ) եւ յեղեալ ի ՚յ՛ յորմէ յղի, իբր յլի։ Անկէց ՚ջի՛ անկումը եթէ անխուսափելի ալ չէր, ամենասովորական ընթացքն էր լեզուաաաՀութեան։

Սոյն կարծիքէն են նաեւ մեր ազգ. բանասէրք։

Լիւղ, լուղ — տ. Լոգ։

Լկամ = لكام զոր արաբք لجام ըրած են։

Լոգ(անամ) — Որով այժմ մենք [illegible] [illegible] [illegible] [illegible] կը հասկնանք, բայց կ'երեւի որ սկզբնակէտը այս եղած չէ այլ [illegible] (հագուստները հանել), զի մեր բառին դիմացը կը տեսնեմ պ. ڃوڵ ը որ մերկ, լերկ կը նշ.։ Եւ որովհետեւ լուացուիլը ուրիշ կերպով կարելի չէ, բայց եթէ մերկանալով, սկզբնական գաղափարը ձուլուեր է երկրորդին մէջ։

Այս [illegible] արմատը մեզ բաւական պէսպիսութիւններ տուած է։ Եղած է, զ. օ. [illegible] = սոսկ, պարզ (իմա՛ մերկ).

[illegible], [illegible], [illegible], [illegible], [illegible] (իմ),

եւ եթէ մօտէն դիտուի, նոյն իսկ [illegible] արմատը [illegible] (= [illegible]) ուր [illegible] ը [illegible] ը փոխանակած կը տեսնենք, այս վերջինը ինքն ալ լինելով փոխանակը Գ-ի, ըստ ընթացիկ սովորութեան ([illegible] = [illegible] = [illegible])։

Լոյս — Ասոր նախատիպը զն. raχsh, raûshn, հպ. raôsh կը տեսնենք որ նոր رخش, روشن եւ

ռոյ ձեւերու յանգած է, տալով միանգամայն յն. λύχνος եւ լտ. luxը՝ r = l փոխանակութեամբ։ Մեր բառին մէջ, այս փոխանակութեամբ հանդերձ, խշ կամ ք կարծր խումբերու մեղմացում մ'ալ կայ յ կիսաձայնով (ռուխս = լուխս = լոյս)։

Լուս(ն), լուսունք, լսանամ — ոչ թէ լոյսին հակառակէն են, ինչպէս կը կարծէ Հ. Պ.ին, այլ ճիշդ լոյսի փայլին պատճառաւ որոշուած կ'երեւին նշանակել աչքի այն խօթութիւնը զոր leucome կը ճանչնանք (յն. λεύχομα) որ անօսր ամպի նման բիծ կամ կեղեւ մ'է եղջերեւակի (cornée) վրայ։ Հաւանական է որ ոսպնեակի (cristallin) բիւրեղացումն ալ (cataracte) նոյն անուամբ կ'իմացուէր։ Եթէ մին եւ եթէ միւսը, սա ճշմարիտ է որ երկու դէպքին մէջ ալ կ'ակնարկուի այն ճերմակ եւ շողուն բիծը որ լուսոյ ճառագայթները անդրադարձնելով, իբրեւ ընդդիմահար մարմին, տեսողութիւնը կը խափանէ եւ որ հետեւելով ակնագնտին բոլորական շարժման՝ այս ու այն կողմ շարունակ կը լողայ, կամ բուն Եզնիկին բառը գործածելով՝ կը շողայ, եւ ոչ թէ կը լողայ, ինչպէս առաջարկուեցաւ, զի լողալը հեղանիւթի մէջ կը լինի, ոչ թէ կարծր մարմնոց մէջ ուր կը տեսնենք թէ ամրացած է լուսնը։

Լուց(անեմ) — որուն մէջ յայտնի է լոյց արմատը որ է լոյս՝ ս եւ ց փոխանակութեամբ։

# Խ.

**Խաբ(եմ)** — պ. خاب կը նշ. յետ ինկած, վրիպած, մոլորած (زمان.), առումներ որ շատ լաւ կ'ընդգրկեն մեր բառին ալ իմաստը, զի առ մեզ ալ խաբելը նենգել դաւել չէ տիրապէս, այլ ճշմարտութիւնը ծածկել, վրիպեցնել, մոլորցնել է զոր շատ լաւ կը բացատրէ մեր այժմու յուսախաբն ալ որ վրիպելի յուսոյ է։

**Խաթուն** — պրսկար. خاتون, յետին դարերու բառ որ հաւանական է արաբական շրջանի մէջ մտած լինի։

**Խալ** (բնական նիշ մարմնոյ վրայ) — պ. خال։

**Խահ**, որոյ պէսպիսութիւններն են խոհ, խուր, խոր, կը պատասխանէ զն. x°arəϑa, հպ. uvarϑa, պհլ. x°arh եւ x°alh (Hb.) տիպերուն որք նպ.ի տուած են خواه، خوار، خوال[1] եւ خور ձեւերը որք բոլորն ալ ուտելու եւ ուտեստի գաղափարին շուրջը կը յածին։

Այս արմատներէն ունինք շատ մը բարդութիւններ

**Խահագործեմ** = կերակուր եփել։

**Խահակեր**, -նոց (տճ. աշխանէ)։

Այս տեղ "կեր"ը ուտեմ ին 2դ բայարմատը չէ եւ ուտելու հետ գործ չունի, այլ պ. کر ածանցական մասնիկն է որ գործողու-

1 Այս արմատը կ'երեւի մեր ռմկ. խոլչէնին մէջ, իբր خوالكير կամ خواركير (կերակուր եփելու աման)։

Թեան մը հեղինակը արարիչը (فعل) կը յայտնէ՝ խահակեր = խահարար, ինչպէս որ կայ ալ

Խահամոզ } նոյն նշանակութեամբ։
Խահարար }

Ասոնք խոհ ձեւով ալ կան, որ.

խոհակեր
խոհանոց
խոհարար, եւն.

Կայ նաեւ ումկ.

Խահրեմ (եփածը աւրել, խանգարել) — "խահաւերեմ„ի ամփոփումը կ'երեւի սա ինչպէս Աբ.ն ալ յոյժ քաջադիպաբար "աւրել„ կը մեկնէ։

Զարմանք որ Հ.Պ.ին այսքան յայտնի աղբիւրները անտեսելով խաղողէն խոհ եւ սորա հակառակէն ալ խոհ եւ խոհը բերել կը ճգնի։

Խամ (տհաս, անվարժ) պ. خام։

Խամքայ (զուգընթաց) — գեղեցիկ բառ եթէ խն հով գործածենք ինչպէս որ է իւր պ. համազօրը همپا։ Հեղինակաց մէջ չտեսայ այս բառը։

Խան (մեծ ափսէ, տճ. սինի) — պ. خان։

Խանդակ (խրամ, փոս) — յետնոց բառ որ թերեւս արաբացուցմէ անցած լինի, خندق, որ բուն ար. բառ չէ, այլ արաբացեալն է պ. كند մանաւանդ كندك ի զոր այլապէս ունինք մենք ի քանդակ (փորուած, քանդուած)։

Խառ (փշոտ թուփ) — պ. خار:

Ասոր ծնունդները կը թուին

խառամանեմ
խառմանեմ
խառան
խառանեմ

որք չուան կամ չուանով կապել կը նշանակեն: Թերեւս այս թուփն ալ, ինչպէս կանեփը, կը ծառայէր տեսակ մը չուան պատրաստելու, ոլորելով՝ պրկելով, եւն. յորմէ եւ

խառեմ = ոլորել
խառխառոտ = ոլորած (սիւն):

Խարազան — خر (էշ) եւ زن (զարնել) արմատներէն = էշ քշելու գործիք (خرزن):

Խարակ (ապառաժ, կարծր քար) — պ. خارا որ պհլ. خاراك մը կ'ենթադրէ:

Խարբանդակ — տ. Դաւ եւ խարդաւանք:

Խարբուզ (էշայծեամն) — բարդեալ ի պ. خر (էշ) եւ بز (այծ, այծեամն) բառերէ:

Խարդախ
Խարդաւանք } տ. Դաւաճան:

Խարխար = 1. խարխլել, խախտել, աւրել, 2. քերմշտկել, խառմշտկել (Աբ.): — Պ. خار կը նշ. քերել, յորմէ خارش = քերուըտուք, خاريدن = քերել, քորել, خارانيدن = տալ քերել: Եւ նոյն արմատի կրկնութեամբ՝ خارخار որ այլ եւ այլ տարազներով եւ գոյներով կարեւոր շարք մը տուած է մեզ:

Նաև այս խօչխօչը, կրկնակն խօչի, յորմէ խարխարեմ = քերմշտկել, աւրել, շփոթել, խռովել, եւն։

Յետոյ խօչխօլ (եմ), նոյն իմաստով, աստի նաեւ խօչխօլ (խախուտ, անհաստատ), նոյնպէս եւ խօչխօլ (իմ) = ճեղքուիլ, պատռիլ, փորուիլ։

Գիտելի է որ բոլոր այս շարքը կրկնակ է, պարզ արմատը գործածուած չէ։

Խարտ (խորտուք, մանրուք) — պ. خرده ,خُرد։
Այս արմատէ են

խարտածոյ
խարտեմ
խարտոց, եւն։

Խաւար — տ. Ապախտարք։

Խեշերանք (խոշրտուք, մանրուք) — خشاره, خشاوه (պլտ. դպ.)։

Խեց
Խեցի } պ. خشت որ խամ կամ եփած ագուռ կը նշ. (برهان)։

Խիշտ (Նիզակ) — պ. خشت։

Խիստ — պ. خست = վշտացնել, չարչարել կը նշ.։ Հյ. խիստ եւ խստութիւնն ալ վիրաւորելէ վշտացնելէ տարբեր բան մը չէ։

Խլիկ(ք)
Խլինք } (քթէն վազած հիւթ) — պ. خیل կամ خل որոյ բուն հիմ կը ճանչնան պ. բառագիրք՝ خلم կամ خلن ը։

Խնձոյք — Մեր մէջ աւելի խրախճանութիւն իմացուած է մինչ պ.ի մէջ համազօր خوانچه ի

որ Նուազականն է خاہ, սեղան կամ խան կ'իմացուի։

Խշտի(ք) = պառկելու տեղ (գետնի վրայ) — Այս բառին եւ իմաստին աղբիւրը այն սովորութիւնն է որ գետինը սովորաբար خشت ով (եփած աղիւս) կը յատակէին ուստի եւ خشتی կ'ըսուէր պառկելու լերկ գետինը, ինչպէս մենք ալ գետնախշտի կ'ըսենք։

Խոզ — Նպ. خوك որ քրդերէնի ալ կ'երեւի խօղ անցած է (Hb.)։

Բարդութեանց մէջ փոփոխութիւն կը կրէ այս արմատը, յորմէ եղած է

խոճկոր կամ
խոչքոր որ կը լուծուի
խոճ }
խոչ } = խոզ
եւ կոր }
քոր } = քուռակ, պ. کره։

Խոհ (արան, արար, եւն) — տ. խաՀ։

Խոհեմ — բարդեալ երկու հին բառերէ, خو (= حو = هو) = բարի, եւ خیم (هیم) = բարք, բնոյթ. որով խօ-հէմ կը նշ. բարեբարոյ, ինչպէս որ նոյն կազմով ունինք դըժ-խէմ (دژخیم)։

Խոհեր = հոտած ցեխ, 2. որ եւ է գանելու բան (Աբ.). յորմէ

խօնէրաքան (աղտոտ, գարշելի),
խօնէրքինաց (միտքը գէշ) եւ այլ այսպիսի բացատրութիւններ։

Բուն Աւեստական բառ մ'է *hikhra*, փզ. *hihir*, պհլ. *êhêr*, *hêhîr* = ամէն տեսակ գարշելիք որք մանրամասնուած եւ ճշտուած են Զրադաշտեանց մէջ։

Նպ.ի մէջ, զանազան փուլերէ անցնելէն ետքը օ՜ի յանգած է բառը զոր ապաւառք իմաստով կը գործածեն եւ որ առ մեզ թէ չօյ դարձած է, ինչպէս կօյանոց, կօյաջուր, կօյուղի, եւ թէ չօ՝ (աղբ արջառոց, կովու՝ եզան)։

Հոս նոր օրինակ մի եւս կը ներկայանայ մեր -ին անհատատութեան եւ նոր ապացոյց թէ չօհ էր նախնի հնչումը, ինչպէս կը պահանջէ ստուգաբանութիւնը եւ ոչ *ս* կամ *օս*, ինչպէս այժմ կը հնչենք։

Ուրեմն, ամփոփելով, կը տեսնենք որ թէ հին եւ թէ նոր պ. ձայներուն համապատասխաններն ունինք մենք մեր խօհ(եր), չօյ եւ չօհ ձեւերով։

Հայ անհմուտ գրիչներէ շատ անգամ շփոթուած է խօհ (արմ. խոհեմի) եւ խօհեր։

**Խոյզ** — տ. Ցոյզ։

**Խոյր** — զն. *xaoda* (Hb.), նպ. خود، خوی։
Հյ.ի մէջ ր.ի մը գոյութիւնը այնպէս ենթադրել կու տայ որ թերեւս պ. հնագոյն ձեւերուն մէջ ալ կար, ինչպէս զն. خور ը (ջուր) որ երթալով خوی եւ خو (գետ) եղած է։

**Խոնաստան** — պհլ. խանաստան, զի خان = خانه որ յածանցման ձգած է վերջին ձայաւորը։

Խոնաւ = պ. خنك (khonak)։

Խոշտանգեմ — √խոշ, պ. خست զոր տեսանք "խիստ"ի առթիւ, յորմէ եւ բայս خستن = տանջել, ցաւցնել։

Խոշտար — տ. Խոստակ։

Խոռապետ = "կուրապաղատ, տճ. սարայ աղասը, րիճալ" կը դնէ Աբ.ը։

Իրաւ ալ գործածուած տեղւոյն պահանջին նայելով բարձր գահ, պատիւ եւ պաշտօն կը վայելէ. զի ի Ս. Գիրս, յիշելով Դաւթին աւագ պաշտօնակալները, իւր երկու որդւոց, Քերեթին եւ Ոփելեթինի, համար ալ կ'ըսէ "խոռապետք էին" (Բ. Թագ. Ը. 18)։

Ի հարկէ բարձր պաշտօն մ'էր սա եւ արքայորդւոց արժանաւոր քան զախոռապետութիւն զոր ենթադրեր են ոմանք, խաբուելով անշուշտ ձայներէն։

Hb. հարցականով մը կ'անցնի բառիս պարսկականութեանը վրայ. եւ սակայն պ. خور եւ خورا շատ լաւ կրնան մեկնել բառին իմաստը, նշանակելով բարձր արժանիք, վեհութիւն, վսեմութիւն, ինչպէս կը բացատրեն պ. բառագիրք։

Այս արմատով է նաեւ առ նոսա درخور = արժանի, արժանաւոր եւ այլ ասացուածք։ Հոս եթէ պաշտօնի բարձրութիւնը ուղղակի յայտնուած չէ, արժանեաց բարձրութիւնը զայն բաւականապէս կ'ակնարկէ եւ շատ վայելչապէս կ'որոշէ արքայազատաց դիրքը

զոր chief ministers կը հանէ անգղ. Նորագոյն Թարգմանութիւնը:

Խոստակ = տղայ, զաւակ, սան (Աբ.)։ Հոս կարծեմ թէ ժառանգ իմաստով առնելու է աւելի, ինչպէս եւ ետեւի բառը կը հաստատէ:

Խոստակդարք — պ. خواسته دار = ազգականներ, ժառանգք (Աբ.)։

Պարսկերէնը աւելի ժառանգութեան մատնանիշ է քան ժառանգի, զի պհլ. [Avestan], նպ. خواسته ինչք, արարք, հարստութիւն կը նշ.։

Խոստովան, √[Avestan], յորմէ եւ [Avestan], կը համապատասխանէ հպ. خستو եւ خستوان ին, մի եւ նոյն մտօք:

Պհլ.ի մէջ ս մը կը տեսնենք

*$x^v$astui, $x^v$astuhik*

որ նորին մէջ անցած չէ եւ որ տեղակալ եւ յուշարարը կը թուի նախկին աւելի թաւ ծի մը, ինչպէս կայ

*âçtôbân, √çtu*

որ կը նշ. = qui loue, confesse, professe (Hr.)

Նոյն եւ ի զն. *astavana* եւ *$x^v$astavana* = հաւատացեալ, հաւատաւոր, խոստովանող:

Սա միանգամ եւս կու գայ հաստատել իմ համոզումս թէ մեր "հաւատ„ին հիմն է

“Հաւաստ„ ուր զն.ին եւ պՀլ.ին ս գիրը, ինչպէս կը տեսնուի, անեղծ եւ անկորուստ պահպանուած է (տես կարն. ծան. 100)։

Խորան — պ. خورن յորմէ خورنكاه կամ خورنگ որ Վահրամ-Գոռ (بهرام گور)ի պալատին ըսուած է մասնաւորապէս, այլ առ հասարակ տան ճակատ ալ կը նշ., զոր հայացի կրնայինք “խորանգահ„ ըսել։ Աստի եւ խորանորդ, զոր քիւի կամ քուէի նմանութենէն խաբուելով ար. غرفة էն բերել կը ջանայ Հ. Պ.ին, պարզապէս այս خورن արմատն է՝ որդ գոյականով բարդեալ։

“Խորան„ին մի այլազանութիւնը կը համարիմ Վրանն ալ որ արդարեւ խորան ալ կը կոչուի Ս. Գրոց մէջ, բազում ուրեք.

“Եւ երեւեցաւ նմա (Աբրամու) Աստուած առ կաղնեաւն Մամբրէի, մինչդեռ նստէր առ դուրս խորանի իւրոյ ի միջօրէի„ (Ծննդ. ժա. 1)։

Գիտենք որ Աբրահամ, իբրեւ ցեղապետ (օպայի շէյխ) տուն տեղ շինած չէր հոն, այլ իւր ժամանակին եւ ցեղին սովորութեան համեմատ վրանի տակ կը բնակէր ուր որ չուէր։ Հետեւաբար վրանէ շատ ուրիշ մեկնութիւն տալ կարելի չէ հոս խորանին։

Եւ արդէն, շատ տեղեր ուր խորան կը գնէ Եօթանասնիցը, նոյնը “վրան ժամուն„ կը կարդանք Նորագիւտ Մնացորդաց Ասորական Թարգմանութեանը մէջ։

*Նւթ.*

“Եւ փեննէես որդի Եղիազարու իշխան էր ի վերայ նոցա առաջի Տեառն, եւ նոքա ընդ նմա։ Զաքարիաս որդի Մասեղամեայ՝ դռնապան դրան խորանին վկայութեան։”

*Ասոր.*

“Եւ փենահեզ որդի Եղիազարու իշխան էր ի վերայ նոցա առաջի Տեառն, եւ յետ այսորիկ որդի Մոսողամի դարապան դրան վրան ժամուն։”

(Ա. Մն. Թ. 20, 21։)

Նորագիւտին մէջ ուրիշ բացատրութեան մ’ալ կը հանդիպինք այս առթիւ — “Մաշկ” — խորան նշանակութեամբ.

*Նւթ.*

“Այսոքիկ են դրունք բանակաց որդւոցն Ղեւեայ։ Եւ Սաղղում որդի Կովրեայ . . . որք պահէին զպահպանութիւնս խորանին՝ ինքեանք եւ հարք իւրեանց ի բանակին Տեառն, եւ պահէին զմուտն։”

*Ասոր.*

“Սոքա են դարապանք բանակացն որդւոցն Ղեւեայ։ Եւ Սեղովմ որդի Կորեա . . . որ պահեն զդահղիճ մաշկին, եւ հարք իւրեանց ի բանակս Տեառն որ պահեն ըդմուտ մաշկին։”

(Անդ 19։)

Հոս ալ խորան կամ վրան նշանակութիւնը ակներեւ է, նորագոյն թարգմանութիւններով ալ հաստատեալ որ միահամուռ tent կ’իմանան։

Մնացորդաց հին ասոր. թարգմանութիւնը աւելի եւս կը ճշդէ բառին իմաստը՝ “մաշկ” բառն ալ իբրեւ համարժէք գործածելով,

զի ի բազում մասունս, ինչպէս այժմ ալ, կաշեպատ կը լինէին վրանք զոր մեր Մաշկա-պատճեան (-ճէն), Մաշկապերճան, Մաշկատորդան բառերն ալ լաւ կը բացատրեն, զորս պ. ڤ.ژ.ژ.چشم ի պէսպիսութիւնները կ'իմանամ:

Նոյնը կը հաստատէ եւ Խորենացին

"Իսկ Արտաշիսի հասեալ Երուանդայ, ընդ շրջապատեալ առագաստն ի կաշոյ եւ ի կտաւէ պարսպին էջ եւ ի խորանս նորա բնա-կեցաւ զայն գիշեր„ (Բ. խզ):

Խորտակեմ — Vխորդ = պ. خرد ، خرده ، պհլ. khordak = փշրանք, մանրուք, եւն (տ. խարտ):

Խորտիկ — Vխոր, խորդ, զն. h<sup>v</sup>aret'a, Vh<sup>v</sup>ar (+ta), նպ. خورد ، خوار ، خور (տ. խար եւ խոր):

Խուճապ (տագնապ, շփոթութիւն) — պ. خجاو կը նշ. գոչիւն, աղմուկ, աղաղակ որ ան-շուշտ տագնապի եւ իրարանցման յայտարար-ներն են:

Հ Պ.ին ճեղ եւ Հաղճեղն ալ ասոր հետ կը դասէ: — Թ.երեւս:

Խում (արմատ խմեմ ի) — պ. خم կը նշ. մեծ աման, կարաս որու մէջ ջուր՝ գինի՝ քացախ, եւն. կը դրուի:

Այս գաղափարէն ծագում առած է մեր բառը որ թէ ըմպելին եւ թէ ըմպելու գոր-ծողութիւնը (խմելը) միահաղոյն կը նշ.:

Վերլուծութիւնը կը ցուցնէ որ մեր Խում արմատն ալ օտար եւ տարբեր եղը մը չէ այլ

մի եւ նոյն բառը։ Զի պ.ի մէջ خُب եւ خنب ձեւեր ալ կան որք անշուշտ աւելի հին են քան خم որ անոնց կրճատն է անտարակոյս, شُمّ եւ سنب ի (սմբակ) տեսակէն։ Զայս կը հաստատեն եւ خُبره եւ خنبره անվթար հին արմատներն ալ որ թեթեւնալով خُره տուած են նպ.ի, որ է թակոյկ կամ կարաս փոքր։

Նոյն خم արմատէն ունինք պ. خمخانه եւ خمكده (գինետուն կամ աւելի ճիշդը՝ խմատուն)։

Ուրեմն մեր բառերը երկու որոշ շրջաններ միանգամայն կը ներկայացնեն.

հին خُب, خنب = (խ)ումպ
նոր خم = խում(պ)։

Խունաւագ — Շիտակ կը գտնեմ Հ. Պ.իի մեկնութիւնը որ պ. خوان (= հյ. խան, խոն, խուն) արմատէն կը բերէ, իբրեւ խահապետ, տաճարապետ, սեղանապետ = պ. خوان سالار (Խան Սալար)։

Խրախ յորմէ խրախճան, եւս եւ ուրախ եւ երախ մէկ ընտանիք կը կազմեն եւ կը համապատասխանեն պ. فُرّخ եւ فراخ ի։ Առաջինը երջանկութիւն՝ բախտաւորութիւն կը նշ., յորմէ فرخنده մաղթողական ձեւը, օր. فرخنده باد (բարեբաստ լիցի), զոր պ. բառագիրք կը տարրալուծին ի

رُخ = երես, դէմք
եւ فر = փառք

իբր թէ ըսէր երեսդ փառաւոր լինի, այսինքն զուարթերես մնաս։

Իսկ երկրորդը (خراف) ընդարձակութիւն, լայնութիւն, ազատութիւն կը նշ., այսինքն բացակայութիւն նեղութեան՝ անձկութեան եւ այլ այս կարգի որ եւ է տրտմութիւն պարագաներու. որով դարձեալ զերար կը շօշափեն ուրախութեան հասարակ գաղափարին մէջ։

Հ. Գ.իին համաձայն եմ Էրախանէն ալ այս խումբին մէջ իմանալու զի ան ալ խմբական խրախճանութիւն իմաստով է, գործածուած տեղերուն եթէ միտ դրուի.

“Եւ հրամայեաց նոցա բազմել երախանս երախանս ի վերայ դալար խոտոյ„ (Մարկ. Զ. 39)։

այսինքն՝ խումբ խումբ (groupe), կերուխումի, խրախճանութեան համար։

Խրասախ որ եւ Հրասախ, Փարասախ — պ. خرفس։

Խրատ — Այս բառը պ. հին մատենագրութեան մէջ ամենէն շատ գործածուածներէն է, բայց ոչ իբրեւ յորդոր եւ պատուէր, ինչպէս մենք այժմ կ'իմանանք, այլ իբրեւ հոգի, միտք, հանճար, խելամտութիւն, իմաստութիւն, ինչպէս մեր դասական ոճին մէջ կը տեսնենք։

Համազօրներն են

զն. khratu,

պհլ. khrat զոր ոմանք khart ալ կը կարդան,

նպ. خرد։

Պհլ.ը կ'ըսէ a-khrat = նպ. بی‌خرد որ է անխրատ, անհանճար, անհրահանգ։

*Խօս(ք) կամ աւելի ճիշդը՝ խաւսոն, պհլ.* çakhun = mot, parole, discours, sentence (Hr.), *նպ.* سخن *որ սախէն ալ սէխուն ալ կը հնչուի։ Երկրորդը աւելի դասական է եւ պահլաւաձայն եւ Ֆիրդուսին ալ ըստ այսմ կը յօրինէ իւր յանգերը։ Խորենացիին ստափսհսնն ալ կը ցուցնէ որ տիրող ձայնը սա էր, Թէեւ այժմ պարսից մէջ առաջինը յաճախեալ։ Բանաստեղծք սակայն գիտեն երկուքն ալ ըստ տեղւոյն եւ հարկին վարել։*

*Մեր բառին մէջ տառերու տեղաշրջութիւն կայ քիչ մը, խօսն փոխանակ սախնի որ կը սպասուէր, այլ այս շեղումը դարմանուած է եւ ունինք "սոխակ" զոյգ ընդ "խօսնակ"ի որք մի եւ նոյն են։*

*Հ. Պ.ին կը սխալի նշանել (նշանտուք) իմացուածով խօսիլը խէ-սէր, խէ-սսսսըի, եւն. ի հետ կապելով։ Այն մի եւ նոյն "խաւսն" (խօս) արմատն է որ միանգամայն նշանելու միտքն ալ կու տայ, ինչպէս այսօր ալ սովորական լեզուի մէջ խօսք եւ խօսք-կապ մի եւ նոյն են։*

## Ծ.

*Ծազ* — Casartelli *Դինկերտէն*[1] *կոչում մը կ'ընէ*[2] *ուր երկու տեղ* ham zâk *եւ* Çpenâk-

---

1 Մազդեզանց կանոնական գիրքերէն մին Dinkart (دینکرد)։

2 Philos. rel. du Mazdéisme sous les Sassanides, էջ 67.

Minôi zâk բացատրութիւնները կը գտնուի զորս կը թարգմանէ „nés ensemble“ եւ „nés du Çp.-M.“ որմէ կը հետեւի թէ գիտունք zakը ծնունդ՝ սերունդ իմացած են որոյ ստուգութեանը սակայն տարակոյս չձգեր մեր բառը որ ասով թէ՛ կը լուսաբանէ պհլ. texteը եւ թէ՛ կը հաստատէ, իւր կարգին, իւր իսկ բուն իմաստը։

Ի՛նչ աւելի մեծ ապացոյց քան գոյութիւնը միւս եւս հայ բառին՝ յ~ֆ որ նոր ծնունդ նշանակութեամբ կու գայ ամրապնդել առաջինը։

Այս գեղեցիկ շարքը լրացնելու համար յիշենք նաեւ պ. چاك բառը որ برهان.ի մէջ صبح دميدن (ծագումն առաւօտու) բացատրուած է։ Ո՞վ չտեսներ հոս դարձեալ մեր "ծագ„ը իւր իսկական առման մէջ։

Նոյն պ. چاكը մի ուրիշ նշանակութիւն եւս ունի — պատառուածք, ճեղք, պ. شكاف (= հյ. շկապ) զոր գեղեցկապէս կու տայ մեր ծ~կը եւ թերեւս նոյն իսկ ծեղ+ը։

Ահա ճոխ ընտանիք մը մի եւ նոյն նախահայրէն սերած։

Հ. Պ.ին ծ~ֆի եւ յ~ֆի առնչութիւնը տեսած է, բայց ծ~խ+ի, ծղչ+ի, եւն. ի հետ զբաղելով կը ճապաղէ։

**ծայր** — տ. Սայր։

**ծան** որ եւ ծ~ն, ինչպէս հայերէնի՝ նոյն եւ հնագոյն պ.ի մէջ զոյգ եւ անբաժան կ'երթան. զարմանք չէ ուրեմն որ մի եւ նոյն խտ-

նարհման մէջ զերար փոփոխակի կը լրացնեն, ուղիղ ժամանակները ճ-ն-ին եւ խոտորները ձ-ն-ին բաժին իյնալով

| | |
|---|---|
| ճան աչեմ | ծան եայ |
| — աչէի | — եայց, եւն։ |

Հին պ. մատենագրութեան մէջ բաւական մեծ եւ կարեւոր դեր խաղացած են այս արմատները եւ ոչ սակաւ յօգնեցուցած եւրոպացի գիտնոց միտքը։

Զն. ձայնն է zânta, √zan. Նոյնը սնս.ի մէջ կը գտնենք jñâ որ յոյնին (γι) γνώ (σχω) անցած է եւ լտ.ին gno (sco)։

Պահլաւական շրջանէն սկսեալ՝ միջին եւ նպ.ի մէջ دان ձայնը տիրող հանդիսացած է, պհլ. dânâk, նպ. دانا (գիտուն) եւ պհլ. دانشن = նպ. دانش (գիտութիւն, ծանօթութիւն)։

Սակայն հին zan ձայնն ալ բոլորովին խափանուած չէ, անկէ ունինք فرزانه եւ فرزانکی, պհլ. farzânakîh որ տառացի “վերաճան(աչումն)„ կամ “վերածան(ութիւն)„ կրնայ անցնիլ հյ.ի։

Զարմանալի չէ՞ յունական դպրոցին “վերծանութիւն„ բառին այս հին եւ պարսկական հանգամանքը։

Նոյն իսկ “զանդ„ (زند) բառն ալ որ ամենէն ծանօթ եւ ընթացիկներէն է, գիտունք փորձեր են ան ալ ձ-ն կամ ճ-ն արմատով լուսաբանել եւ այս փորձը մեզ հայոցս հա-

մար մասնաւորապէս մի նոր եւ կարեւոր յայտնութիւն կը բերէ, այն է այժմու ռամկօրէն համարուած ձեւի մը հին շրջաններու եւ հին ցեղակից ճիւղերու մէջ գոյութիւնը։

Դաստուր Darab զոր թարգմանաբար յառաջ կը բերէ Hovelacque[1], իւր Աւեստական մեկնաբանութեանը մէջ ըսած է.

„Je tire maintenant le mot *zend* de la racine *zan-jñâ*, savoir; *zanti* équivaudrait donc à *γνῶσις*.“

Այս տեսութեամբ՝ մեր ճանչ-նալ աշխարհիկ ասութիւնը դասական ճանաչել ի աղաւաղութիւնը ընդունելէն աւելի՝ էակից եւ ժամանակակից համարիլը բանաւոր կ'երեւայ, ինչպէս բոլոր այս տարազն ունեցողները, գիտ-նալ, տես-նալ, եւն։

ծարեր — պ. زرز։

ծեր — տ. Ջառամ։

ծնանիմ — √ծին որ կը նոյնանայ զն. *zan* ի հետ որոյ անց. ընդ.ը կը լինի *zâta*, յորմէ պհլ. *zâtano*, նպ. زادن = ծնանիլ։ Այս երկրորդ արմատը հյ.ի մէջ հազիւ կը նշմարուի հայրադար, հօրադար, պայադարի մէջ։

ծնաւտ (ծնօտ) — հնդեւր. *kinn*, *gin*, *hann*, եւն. ձեւերէ ژ դարձած է նպ.ի, իսկ առ մեզ ծին որ աւտ (օտ) մասնիկով աճած է, ինչպէս ծղ-օտ, չար-օտ, ծան-օն, եւն։

1 L'Avesta, Paris 1880, էջ 109.

*Ծորակ* — պհլ. *çûrak*, նպ. سوراخ, V *çuhr*, որ կը նշ. ծակ, սնամէջ, փապ։

*Ծունգ* }
*Ծունկ* } Զն. *zhnu*, սնս. *jânu*, պհլ *zânuk*, յն. γόνυ, γνύξ, լտ. genu են, բաւականապէս կը յայտնեն մեր բառին ալ
*Ծունր* }
իրաւունքը դասակցաց մէջ։

Հ. Պ.ին կը սխալի տարբեր ըմբռնելով ծունկ եւ ծունրը, առաջինը շիտակ կապելով պ. زانو ին հետ, իսկ երկրորդը համեմատելով ծունրի հետ որ, բացի ձայնական նմանութենէ, ուրիշ ոչ մի աղերս չցուցներ։

## Կ.

*Կաթել* — արմատ "կաթ" = պ. كات որ կաթիլ՝ շիթ կը նշ. (زمان)։

Հոս ալ Հ. Պ ին կը մոլորի կաթ եւ կաթէ-ներու մէջ փնտռելով։

*Կախարդ* — զն. *kaxarəδa* (Hb.)։

Հ. Պ.ին, հաճելի հնարամտութեամբ մը, "ախտարք"ին տառերը կը տեղափոխէ "կախարդ"ը հանելու։

*Կաղամբ* — նպ. كلم (*kalam*) որ եւ *karan*, *karamb*. ձայնի Բի յօդակցութիւնը սահողական (euphonie) պահանջներէն է Մի քով, ինչպէս տեսանք سم = սումբ (սմբակ) եւ خم = ումպ, ըմպակ են։

Այս բառը ուղղակի ժեչէմ ալ լսած եմ գաւառացւոց բերնէն։

Կաղապար — պհլ. kālput, նպ. kalbud (کالبد), յն. καλοπόδιον, տճ. քալըպ: Այս է մեր "գաղափար„ն ալ է = կ փոխանակութեամբ:

Մենք այս վերջինով վերացեալ պատկերը կ'իմանանք իրերու, մինչ առաջինը թանձրացեալ իմաստով կը գործածենք: Մազդեզանց մէջ ըմբռնումը տարբեր է: Անոնք کالبدով կ'իմանան էից եւ գոյից այն ոգեղէն կամ ուրուական տիպը զոր ունէին նախ քան զթանձրանալն՝ Ահուրամազդայի մտքին մէջ. Թէպէտ եւ յետոյ տարածուելով ամէն նիւթեղէն մարմնոց վրայ ալ առնուեցաւ:

Կաճ, կայծ — նպ. کج (kaj):

Կամար — նպ. کمر:

Կամուրջ | Կամրջակ = պ. کرچه:

Կամք — զն. kam, kama, պհլ. kâmak, նպ. کام, کامه:

Ասկէ ունինք՝

Կամակար = պհլ. kâmak-kâr որ նպ.ի մէջ եղած է کامه‌کار կամ աւելի կարճ՝ کامکار kâmkâr = qui accomplit son désir, heureux (Darm.):

Կամապաշտ (կամապարիշտ) = նպ. کام‌پرست:

Կամիմ = պհլ. kam-içtan, նպ. کامیدن:

Անկամայ = նպ. ناکامه:

Կամայ ակամայ = کام ناکام:

Դժկամակ = دژکامه, دژکام, պհլ. دشکام:

Կամսար (գլուխը պակաս) որոյ Խորենացին ինքն ալ տուած է լուծումը Կամսարական Տոհմին առթիւ. այն է

کم = պակաս
سر = գլուխ

Ճիշդ այս կազմութեամբ է այսօր ալ Ռուսահայոց մէջ շատ սովորական "քամբախտ"ը որ կատարեալ դժբախտութիւն չէ, այլ բախտի ժլատ տուչութիւն։

Կայ<br>Կայանք<br>Կայք } = պ. کاه (*gâh*), օր. ایستکاه (կայարան), کذرکاه = անցք, ճանապարհ։

Կանափ որ եւ կանեփ — նպ. *kanab*, *kanav*, յն. κάνναβις (Hb.)։

Կանգառ որ եւ կանկառ = պ. کنکر։

Կանգուն — նպ. كنك (*kang*) զոր ձեռքի մատերուն ծայրէն մինչեւ կուրծքի միջին ուղղաձիգ գիծը երկայնութեան չափ կը սահմանեն բառագիրք։

Կապան — զն. *jafnu*, *jabh*, *jafan* = profondeur ouverte, gorge de montagne (Hr.)։

Կապար = նպ. آبار (*âbâr*) = հալած արճիճ կամ կապար (برهان.)։

Կապէն(ք) — նպ. کابین որ մահմետականաց մէջ, նշանխօսութեան ժամանակ, մանչուն կողմանէ աղջկան տրուելիք դրամը կը նշ., լուծման պարագային (مهر مؤجل), մինչ առ մեզ՝ օրինաւորութենէ դուրս միաւորութեանց գին եւ սակ կը հասկցուի։

Կապիկ — Հին բառ, պհլ. kapîk, Նպ. کپی։
Կապիճ (աման, չափ, շինիկ) — պ. کویژ (gavîj), պհլ. kapîč, որոյ արաբաձեւն է قفیز։ Կրակատուններու մէջ գոյացած աճագին քանակութեամբ մոխիրը դուրս թափելու համար որոշուած չափը կապիճ կը կոչուէր, յորմէ կապ-ճանք կամ կապճակամար որ կը յիշուի մեր մատենագրաց քով։

Սոյն չափու նմանութեամբն է որ ըսուած է նաեւ աչքի խոռոչին համար՝ կապիճ աչաց եւ կօշկին համար կապիճ կօշկաց, մինչեւ ծունկը եղող մասին։

Հ. Պ.ին բառ եբրայեցի կը գնէ պարզապէս. קפיזא (qabīṣā) զոր եւ Hb. կը յիշէ։
Կապոյտ — Նպ. کبود, սնս. kapôta, պհլ. kapôt։
Կապուտ (կողոպուտ), √կապ (کپ) յորմէ բայս کپیدن = կորզել, շորթել, յափշտակել, կապտել, ինչպէս գեղեցիկ բացատրուած է բանաստեղծին հետեւեալ տողերուն մէջ զոր յառաջ կը բերէ فرهنك

در خون جکر بسی تپیدم
تا بوسهٔ از لبش کپیدم

(լերդահոս արեան մէջ բաւական տարուբերուեցայ մինչեւ որ շրթներէն համբոյր մը կապտեցի)։
Կասեմ, իմ, եցուցանեմ = ետ կենալ, կեցընել եւն, եւս եւ կապուած, այն է՝ մանրել, կասել, կամնել, երկուքն ալ մի եւ նոյն կաարմատի հարկատուներն են, զն. kasu (petit,

mince), պհլ. *kas*, *kah*, նպ. که (*kih*) եւ کاستن եւ کاهیدن = կարճել, նուազել։ Տիրող գաղափարը առ հասարակ կարճութեան, նուազութեան, փոքրութեան, մանրութեան գաղափարն է։ Աստի է առ մեզ չասամը այն է մանրել, կտրտել. եւ չաւիշը այն է՝ յետս ընկրկել, նահանջել, նուազել։

Վասն որոյ Հ. Պ.ին՝ այս բառերը իրարմէ տարբեր ընդունելով՝ ուրոյն եւ անջատ արմատներ որոնելը բոլորովին անտեղի կը նկատեմ։

Կասկ — կեղեւած մաքուր գարիով կամ ցորենով եփած հերիսայ կամ թոփած խառնուրդ (կարն. ծան. 111)։

Կատապան (կողմնապետ, կուսակալ) — նպ. کدبان, կազմեալ ի

کد (պհլ. *katak*) = տուն, քատակ,
եւ بان ածանցէ = պան։

Ըստ այսմ է եւ պ. کدخدا կամ کتخدا, պհլ. *katak-khotai* = տանուտէր, գիւղապետ։ Նա եւ كدبانو = տանտիկին։

Կար (գործ) — զն. եւ պհլ. եւ նպ. *kâr* (کار)։ Օր. պհլ. *kârnâmak* = նպ. کارنامه = կարնամակ (իմա՛ պատմութիւն անցից)։

کاردان = գործ գիտցող, զոր սովորաբար Նորէն հուրճան կամ հուրձան պիտի ըսէինք։
کاراگاه = կարակահ։



 

كاربرداز = կարպարտաս (տ. Պարտասիմ)։
بیکار = անգործ (անկար, տկար, ապիկար)։

"կար„ը գործ նշանակութեամբ մեր մէջ առանձին եւ բացայայտ գործածուած չէ, անոր համար ալ դժուարութիւն կու տայ ճանաչելու թէ բարդութեանց մէջ տեսնուածը բուն ինքը գոյական անունն է թէ ածանցական կօր մասնիկը։ Այս դժուարութիւնը աստիճան մը եւս կ'աւելնայ երբ մանաւանդ տարբեր իմաստներու եւ առումներու ալ հանդէպ գտնուինք, զ. օ. կօր, կօրօղլու-Բէ-ն, կամ կօրել (coudre) եւն։ Ասոր համար է որ հեղինակաց մէջ ալ համաձայնութիւնը կը պակսի։

Հ. Ա. Տ. զ. օ. կօրօղ ընել, կռնալ նշանակութեանը համար պ. كار է անկախ զուտ հայ արմատ մը կ'ընդունի։

Հ. Պ.ին կօր կօրել, աղան, դերձան նշանակութիւններուն համար خر անգոյ արմատի մը կը դիմէ որ չեմ կարծեր թէ ծանօթ երկայնականջէն զատ ուրիշ բան մը նշանակէ։

Իսկ կօրէք պէտք եւն. նշանակութեանը համար յն. χρεία եւ լտ. careo ձեւերը համեմատութեան կ'առնէ։

Нb. այս ճղճիմ զանազանութիւնները գրեթէ զանց ընելով պարզապէս كار արմատը միայն կու տայ եւ կարծեմ իրաւունք ալ ունի, քանզի տարբեր առումները, որչափ ալ իրարմէ հեռացած երեւին՝ մարթ է դարձեալ սկզբնական գաղափարի մը շուրջը բոլորել։

Այսպէս, զ. օ. "վնասակար"ին մէջ տես-
նուած "կար"ը ապահովապէս կրնանք ընդու-
նիլ թէ նոյն ինքն գոյականն է գործ նշանա-
կութեամբ, զի համապատասխանող պ. կազմը,
زیانکار ը کار արմատով յօրինուած է, մինչդեռ
հակառակ դէպքին մէջ, այսինքն՝ եթէ ա-
ծանցական մասնիկ լինէր կ-ըր՝ պ. گر պիտի
գար, ինչպէս օրինակները կ'ապացուցանեն.

زرگر = ոսկերիչ,
آهنگر = երկաթագործ, դարբին,
دادگر = դատարար, իրաւարար, եւ այլն:

آموزکار (համոզկեր)ը այս կանոնէն շեղիլ կը
թուի, բայց երեւութական է այս շեղումը,
հոս ալ کار ը گر է եւ յայտ անտի է որ խստօ-
րէն kar չհնչուիր, այլ՝ gar: Այսպէս ունինք
նաեւ آمرزکار (ներող մեղաց), پروردکار (սնու-
ցիչ, տածիչ) եւն:

Ըստ ծննիս աւելի ցայտուն կերպով կը
հաստատէ گر կار ը (գործունեայ) յորում պար-
սիկը որոշակի կը ցուցնէ թէ ինչպէս գիտէ
զանազանել کار գոյականը گر մասնիկէն:

Առնենք ուրիշ բառ մը, "կամակար"ը,
զ. օ.: Սորա պ. համազօրը کامکار ն է, ոչ
թէ کامگر որով կ'որոշուի թէ գործի գա-
ղափարն է հոս ալ տիրողը, զի کامکار ը այն
է որ ամէն կերպով կարող է իւր կամքը
կատարել, անձնիշխան, ինքնիշխան, ազա-
տաբար ըստ կամս գործող, فاعل مطلق, ինչպէս
կ'ըսուի:

Այնպէս է եւ քարաւանին եւ քարաղերին մէջ տեսնուած ճորը ուր առաջինը պ. كاربان ն է որ թէ بان ածանցով՝ գործիատակ գիտակ կը մեկնուի, ինչպէս կը նշանակեն բառագիրք, եւ թէ بان (بانو = տուն, բնակարան) գոյականով՝ = մարդոց՝ կենդանեաց՝ աղխից եւ կարասեաց հաւաքոյթ կը նշանակէ, այսինքն տնական եւ ուղեւորական պիտոյք եւ յարմարութիւնք (caravane)։

Եւ այս հաւաքոյթի իմաստով է որ քարաւան՝ հրապարակ ալ հասկցուած է, այսինքն՝ ուր հասարակաց գործերը կը տնօրինուին, ինչպէս կը տեսնենք Եղիշէի եւ Փարպեցւոյ մէջ։

Իսկ "կարապետ"ը որ այժմ պարզ առաջնորդ իմաստով կ'առնուի, վերլուծաբար՝ = գործի պետ, գործի գլուխ կը նշ., զոր եթէ պ. ձայնիւ տալ ուզէինք՝ كاربد պիտի ըսէինք, քանի որ հպ. *karapaiti* ալ ունինք։

Կարել = pouvoir նշանակութեանը գալով, աս ալ գործի գաղափարէն դուրս չէ, քանի որ կարող լինելը՝ ձեռքէն գործ գալ, գործի ատակ լինել կը նշ.։

Նոյնպէս է նաեւ կարել դերձակելը (coudre) որ պարզապէս գործել է, ինչպէս մինչեւ հիմա ալ արհեստական լեզուի մէջ կ'ըսուի կտաւ գործել, բան բանել, տճ. իշ իշլէմէք, իշլէնմէի, եւ ասոր նման ոճեր։ Կ'ըսենք, զ. օ. խորանակար, կօշկակար[1], կար-

[1] Ըսենք անցողակի որ տառը քօշքար ամփոփ ձեւը որ գաւառներուն մէջ լսած ենք՝ աւելի ճիշդ ըլլալով հան-

կատեմ, կարան, եւն: Արդ՝ որչափ անհեթեթ պիտի լինէր եթէ այս բառերը նոր մասնիկով խորանակեր, կօշկակեր, եւն. իմանայինք, մինչդեռ իրենց կազմին մէջ յայտնի կը ցոլացնեն բուն իմաստը՝ խորան գործող, կօշիկ գործող, եւն:

Նոյնպէս իմանալի է նաեւ չօքէ+ (պէտք, հարկաւորութիւն)ը զոր հասարակ լեզուի մէջ ալ արդէն շատ հեղ եւ շատ տեղեր գործով կը փոխանակեն:

Աւարտելու համար այս երկար թուարկութիւնը՝ աւելցնենք որ նոյն իսկ չօքէ մակբայն ալ (կարի յոյժ, եւն.) կրնայ գործի գաղափարով մեկնուիլ, իբր բանի գործի եկող, արդիւնաւէտ, գեր ի վեր (important, sérieux): Այս վերջին առումը գերակշիռ գալով կիրառութեան մէջ՝ մոռցուցեր կամ նսեմացուցեր է բառին բուն նշանակէտը:

“Գործ„ գաղափարին թելը ձեռքէ չձգելով կը հանդիպինք ուրիշ շարքի մը որ նոյնպէս, փոքր ինչ յեղազանութեամբ, “կար„ին միջնոլորտին մէջ կ'իյնան:

Օր. կէր (ի կիր արկանեմ) զոր եթէ բառ առ բառ պ. թարգմանէինք بکار بردن պիտի ըսէինք, այն է՝ բանի գործի բերել, ի պէտս առնուլ (se servir de, utiliser) որ մի շատ գործածական ոճ է Պարսից մէջ:

---

գերձ, զի պ. کفش کار կամ کفش گر ին կը պատասխանէ (կաւշ-կար), վանկ մը պակաս համրելու առաւելութիւնն ալ ունի:

Տարբեր արմատ չէ, սոյն բնտանիքէն է նաեւ Պահլաւը, պ. کرد, բայ کردن (պհլ. kartan), որոյ մէջ յայտնի է ողեալ کرը։ Իսկ کردը սորա մի տարբերակն է, որ Իբր բայարմատ կամ անց. ընդ.՝ բային խոտոր ժամանակները կը վարէ եւ բարդութեանց մէջ կը մտնէ, ինչպէս մեր ալ Պահլաւը։

Այսպէս ունինք

Դաստակերտ (دستکرد) = ձեռագործ.
Տիգրանակերտ = Տ.ին բրած՝ շինածը, եւն։

Այս շարքին մէջ կ'իմանամ Hb.ի հետ, նոյն իսկ Պահլաւմը՝ իւր սարքը, որ կերտում, կերտուածք մ'է արդարեւ, շինուածք, արարք, արարչութիւն. Թէպէտ եւ Պահլաւմ, Պահլաւմի հետ ալ կապելու յարմարութիւն կայ։

Այս հատուածիս շարագրութենէն շատ վերջը պատահմամբ աչքիս ինկաւ Նորագիւտ Մնացորդաց մէջ "կար„ բառին գործածութիւնը իւր բուն փոյծ իմաստով որ ամէն տարակոյս կը բառնայ։

Հաստատութեան համար յառաջ կը բերեմ նոյն տունն ամբողջ թէ հին տպարանէն եւ թէ նոր Եւթանասնիցէն.

| Հինը։ | Նորը։ |
|---|---|
| "Ահաւասիկ գաղք գաղք բաժանիցն. շաբաթաւոր քահանայիցն ստրապարիկ Ղեւտացւոցն յամե- | "Եւ օրամեկց քահանայիցն եւ Ղեւտացւոց, յամենայն ի պաշտամունս տանն Աստուծոյ, եւ ընդ |

| Հինը: | Նորը: |
| --- | --- |
| նայն գործ կարգի տան Տեառն, եւ ընդ քեզ աւադիկ յամենայն ի գործս քո, ամենայն յօժարամիտ, յամենայն կոչօ կամակարութեան իմաստութեան ըստ ամենայն ճարտարութեան, եւ իշխանք եւ ամենայն ժողովք զաւրացն ամենեքին ըստ բանի քում:» | քեզ եղիցի յամենայն էրօ ամենայն ոք որ յօժարեսցէ իմաստութեամբ ըստ համօրէն արուեստից, իշխանքն եւ ամենայն ժողովուրդ յամենայն ի բանս քո:» Ա. Մն. ԻԸ, 21: |

Ամբողջ Հայ մատենագրութեան մէջ, այս միակ տեղն է, կարծեմ, որ կոչը առանձին՝ բացարձակ եւ ազատօրէն գործածուած է, որոյ եւ նշանակութիւնը աներկբայապէս ճշդուած դարձեալ նոյն իսկ բուն Թարգմանչաց ձեռքով՝ "իր" համազօրով որ անտարակոյս ուրդէ֊ն+, ուրգոօէ+, գործ կը նշանակէ, ինչպէս Նոր Թարգմանութիւնք ալ բացայայտ կը դնեն.

Գղղ. „pour tout cet ouvrage".
Անգլ. „in all maner of work":

Այս միակ այլ հզօր վկայութիւնը ինքնին բաւական է "կար"ին շուրջը յածող ամէն մթութիւն փարատելու:

Կարդամ — Hr. "կարդ" արմատը կը համեմատէ զն. *garez*, *garz*ին հետ զոր murmurer, se lamenter à haute voix կը

Թարգմանէ։ Պհլ. եւ Նպ. garzidan (کرزیدن) յորմէ եւ کرزش = ողք, կոծ (برهان.)։

Կարժ (մանածը որ իլիկէն վիլակին վրայ կ՚անցնի) — պ. کژ (կաժ) զոր قز արաբացուցեր են։

Կարկեհան — Ասոր. qarkeðnā, յն. χαλχηδών եւ պ. Արշակունեաց շրջանին՝ karkaðan (Hb.)։

Կարմիր — Եբր. כרמיל (karmîl), ար. եւ տճ. قرمز, որով մեր սահմանէն դուրս պիտի համարէինք, սակայն فرهنك ը աս ալ յատկապէս այն բառերուն կարգը դասած է որ վաղուց պարսիկէն արաբի անցած եւ անհետ եւ անյայտ եղած են գրեթէ։

Ըստ այս հեղինակութեան, ի սկզբան کرمی եղած է բառը, այն է ջերին՝ ջերմին՝ տորաշէկ՝ տորորակ՝ (آتشی) որ աղճատաբար قرمز դարձած է։

Կարոս — պ. کرفس = լախուր կամ նեխուր (տճ. մայտանոս)։ Ցառական ճշդութեամբ մեր բառը պէտք էր որ կարօս (կարաւս) գար, կամ թէ էր, եւ ապա տառաշփոթեալ։

Կաքաւ — պ. كبك զոր տաճկահայոցս առոգանութեամբ +էղ+ կը հնչեն այժմ պարսիկք եւ ըստ Արեւելեայց՝ կոքկ։ Ո՛րն ալ լինի՝ մեր բառը չի տար։ Կամ մերը աղաւաղութիւն մ՚է եւ պէտք էր, ըստ պ. ձայնի՝ կաաա+ լինէր, ենթադրելով յայնժամ թէ պարսիկն ալ kabak կամ kavak կը կարդացուէր ի սկզբան, եւ կամ պարսկինը աղաւաղեալ է եւ ککب (kakab) կամ ککو (kakav) էր եւ յետոյ كبك ի յանգած։

Այս վերջին ենթադրութիւնը ինձ ուղիղ կ'երեւի այնու մանաւանդ որ կայ պ.ի մէջ ككو բառ մը որ վազել՝ վազվզելու՝ թռչտելու՝ ցատքտելու խաղ մ'է։ Ի՞նչ անտեղութիւն կայ որ այս խաղին անունով ծանօթ թռչունը նշանակած ըլլան որ արդարեւ տիպարն է ցատքտուքի, եւ կամ թռչունի անունը յարմարցուցած ըլլան խաղին որով كبك ի առեղծուածն ալ ըստ ինքեան լուծուած կ'ըլլայ, հնագոյն անունը (ككو) երեւան ելլելով։

Կեանք — զն. gaya, √gvi, gi որ կը նշ. կեանք, յորմէ պհլ. gan եւ նպ. جان։ Մեր բառին մէջէն ալ ծայրի ածանցը ձգելով կը մնայ կե կամ կի որ ճիշդ նոյն gi արմատն է որ եւ زی յորմէ բայդ زیستن (ապրիլ, կեալ)։

Սոյն արմատի կերտութիւնք են

Կենդանի — պ. زنده.

Կենդանութիւն = زندگی.

Կենցաղ = زندگانی։

Մեր այս “կենդ„ արմատին բարձր կարեւորութիւնը շեշտելու համար միանգամ եւս հարկ կը համարիմ կրկնել Պարսից հին կրօնագիրքին “Զենդ Աւեստայ„ի, անուան շուրջը կատարուած փորձերը։

“Ճան„ եւ “Ծան„ արմատներու առթիւ յիշեցինք թէ ինչպէս ոմանք ի գիտնոց սոյն Արիահայ բնով մեկնել առաջարկեցին զենդ բառը, իբր ստոյգ կամ ճշմարիտ ծանօթու-

թիւն Աստուծոյ կամ թէ ըսենք Աստուածգիտութիւն։

Ուրիշներն ալ վերի "կենդ„ նոյնպէս Արիահայ արմատը չուկէտ ընտրեցին, յենլով մանաւանդ նոյն իսկ Աւեստայի վկայութեանը վրայ ուր aziantem յորմէ կը բղխի ziant (zend)՝ vivant նշանակութեամբ գործածուած է (Hovelacque, Անդ 107)։

Մեզ համար, եթէ կենդ եւ եթէ ձան, երկուքն ալ հայաբարբառ են, ընտրութիւնը մեր դիտման չհակառակեր։

Նոյն վարանումները եւ տատանումները տեղի ունեցած են նաեւ բառին երկրորդեզրին, avestaին համար՝ զոր ոմանք vesta (հուր) ըմբռնած են, ոմանք verbum (բան) եւն։

Մենք Հաւաստ արմատէն մեկնելով՝ "Հաւաստ„, "Աւաստ„ եւ վերջապէս "Աւեստ„ին կանգ առած էինք կարնամակին մէջ (ծան. 100)։

Մեր ետքի խուզարկութիւնները աւելի եւս ոյժ տուին մեր այս գաղափարին, մանաւանդ այն պարագայն որ Մանի, աղանդապետն Մանիքեցւոց՝ որ հին Զանդիկ կեշտը քրիստոնէութեան հետ հաշտեցընելու դրութիւն մ'ընդունած էր եւ որոյ դէմ այնչափ ուժով կը բաղխի Եզնիկ, իւր հռչակաւոր Գիրքը անուանած է évangile vivant. τὸ ζῶν εὐαγγέλιον, այն է Աւետիք կենաց, կամ կենդանի Աւետարան (Casartelli)։

Չեմ կարծեր թէ ասկէց աւելի յարմար եւ ճիշդ եւ արժանընտիր բառ գտնուի Աւեստայն եւ Աւետարանը արժանապէս մեկնող (Տ. եւ Հաւատ)։

Կեշտ — Եղիշէի այս բառը կամ իւր ժամանակի աղաւաղութիւնն է կամ ետքի ընդօրինակողաց սխալանքը, զի այս բառին, այս կազմով եւ իմաստով, Մազդէական գրոց մէջ, տեղ մը չհանդիպեցանք եւ փարսի գիտնականաց ալ անծանօթ է։

Կայ "քէշ", ինչպէս ճիշդ կը տեսնենք Եզնիկի եւ Եղիշէի մէջ, որ նպ. كيش ն է՝ ծագեալ ի զն. tkaêsha-է։ Ուրեմն նոյնանիշ աւելորդ բառ մ'է որ ստացեր ենք զոր սակայն դարերու կիրառութիւնը նուիրագործած լինելով՝ չեմ առաջարկեր վտարել։

Հ. Պ.ին کشتن եւ کشت (սպանանել) տիպերու հետ խաղալը անճարակ բանազբօսութիւններ են պարզապէս։

Կեր (ուտել) — զն. gara յորմէ բարդութիւնդ aspôgara (ասպակեր, ձիակեր)։

Սորա այլազանութիւններն են

[illegible] — կերակուր,
[illegible] — կլանեմ, ընկլնում (ընդ կլնում), ընկլանիմ (ընդ-), ընկլուզանեմ (ընդ կլուցանեմ)։

Նոյն է նաեւ [illegible], իբր ընդ կղանիմ յորում Նի եւ Մի փոխանակութիւն մը մտեր է։

*Ամենն ալ կեր եւ կուլ լինելու գաղափարով միացած։*

*Կերպ* — *զն. kehrp* = forme (Hr.), *պհլ. kerf* = kerp։

*Հ. Պ.ին տառախաղերով պոռչկէրէն կը ճգնի բերել։*

*Կերպաս* — *Սնս. karpāsa, նպ.* کرباس *որ շատ մ'ուրիշ լեզուներու մէջ ալ անցած է նոյն նշանակութեամբ եւ նոյն եւ մօտիկ ձեւերով։*

*Կերտեմ* — *տ.* Կարեմ։

*Կին* — *Սնս. gna, զն. g'ena, նպ.* زن, *յն. γυνή եւն։*

*Կինճ* — *նպ.* کنج *(ginj), սա տարբերութեամբ որ մեր մէջ վայրի խոզ, իսկ Պարսից մէջ՝ Հնկայ, յաղթանդամ փիղ կը նշ.։*

*Կիր* (*տճ. քիրէճ*) — *պ.* کل *(gil)*։

*Կիր* (*կրել*) — *պ* کیر, *օր.* بارکیر (*բեռնակիր*), تاجکیر (*թագակիր*) *եւն։*

*Կծանեմ* / *Կծեմ* } *արմ. կէծ* = *պ.* کز *յորմէ* کزیدن (*կճել, խայթել*)։

*Ասոնց հետ մէկ ընտանիք կը կազմեն* Գզեմ, Կճեմ, Կրճեմ, Կրծեմ (Տ. Գազան եւ Խածան)։

*Կկու* (*թռչուն*) — *նմանաձայնութեամբ տրուած, պ. ալ* کوکو։

*Կնդրուկ* — کندر *(kundur)*, کندرك *(kundurak* — برهان.)։

*Կնճիթ* — کنجد, *տճ. քիւնճիւ* (sésame)։

*Կշտապանակ* — զն. *angušta-pāna*, պհլ. *gušt-pānak*, նպ. *anguštvana* (Hb.), այն է انکشتبان կամ انکشتوان:

*Կոզի* — Սնս. *gávia*, զն. *gāvia*, եւ յայլս *govio*:

*Կոհակ* — զն. *kaofa*, պհլ. *kôfak*, հպ. *kaofa*, փզ. *kōh* եւ նպ کوه: Այս ամենը նուազականն է کوه արմատին (պհլ. *kof*, *kop*) որ լեռ եւ ամէն տեսակ բարձրութիւն կը նշ.:

Աստի է Կովկաս, իբր *koh-i-kas* կամ *kaf* (տճ. քաֆ տաղը): Մեր մէջ Խ–ն–ցով ալիք իմացուիլն ալ ջուրերուն լեռնանման բարձրանալէն առնուած է, ըստ այնմ թէ "Ելանեն լեռնանան եւ իջանեն դաշտանան" (Սաղմ.):

Բուն իւր (լեռ) նշանակութեամբն ալ սակայն գործածուած է: Ս. Օրպելեանի մէջ կը կարդանք:

"Եւ ժողով անթիւ արարեալ Ղապհոյ Պարսից արքայի ասորւոց, ...եւ երկոտասան լեզուաց խուժադուժ ազգաց լերինն Կովկասու բարձրաբերձ կոհակացն սառնամանեաց, եւ գնաց...":

Եւ Մագիստրոսի թուղթերուն մէջ՝ քանի տեղեր

"յաղագս քոհական լեռնայնոցն"
"անկցի ի ձեռն լեռնականացն քոհական"
"չորքաւ ի վերայ քոհականացն" եւն.

զորս քաջապէս լեռ եւ լեռնական կը մեկնէ բազմահմուտն Ալիշան (Հայապատում էջ 24):

*Կոյս* (vierge) — պհլ. *khûshak* (Casartelli) — La phil. rel. du Mazd. 89)։

Հ. Գ.ին տճ. قز (քըզ)ը նախատիպ կ'առնէ, մինչդեռ Հոլգէր-Պեդերսըն հակառակին համոզուած է թէ Թուրքերը մեզմէ առած ըլլան (Հ. Ամ. 1906, Յուլ., թ. 7)։

Այդ երկու ձայներուն մերձաւորութիւնը շօշափելի է արդարեւ, բայց քանի որ մեր բուն աղբիւրը, պահլաւը, նոյն բառը նոյն նշանակութեամբ ունի՝ Տուրանականին երթալու հարկ չեմ տեսներ։

*Կոյս* (կողմ) — Կարնամակին մէջ ալ շատ հանդիպեցանք այս բառին, պհլ. kustak, արմ. kust զոր միշտ կոյս թարգմանեցինք որ էր ճիշդ դիտեալ նշանակութիւնը, թէեւ եւ մ'աւելադրութիւն կայ հոն որ մերինին կը պակսի։ kustak kustak ոճը պհլ.ի մէջ շատ յաճախադէպ է եւ մեր "կողմանց կողմանց„ը կը յիշեցնէ։ Միջին պ.ի մէջ ալ առնուած է كستة ձեւով զոր եւ Hb. կը յիշէ կուստա ձեւի տակ։

*Կոյտ* (դէզ) — պ. كود (*gud*)։

*Կոյր* — كور (*kor*)։ Կ'ըսուի كوركورانه = կոյր զկուրայն կամ կուրօրէն։

*Կով* — զն. *gâo*, պհլ. *gô*, նպ. كاو, كو, յորմէ գոմէշ = կովմէզ (կովու մէզ) եւ գոմէշ = كاوميش (կով ոչխար)։

*Կոտակ* (հասակաւ փոքր) — նպ. كودك, զն. *kutaka*, պհլ. *kotak*։

*Կու* որ եւ կոյ (աղբ) — كوه (*goh*)։

Կուզ (սապատողն) — کوز (*kuz*)։

Կուզ (սամոյր) — کوز (*guz*)։

Կուժ (սափոր) — کوزه (*kuza*)։

Կուլ որ եւ կուր — տ. կեր։

Կունդղն — տ. գունդ։

Կուշտ (կող) — պ. کشت (*kusht*)։ Փարսիններուն մէջք կապած յայտնի գօտին զոր նոքա کشتی (*koshti*) կը կոչեն եւ զոր մենք երբեմն գօտի եւ երբեմն ալ կօշտի ձեւերով ունինք՝ կարծեմ թէ սոյն կօշտը արմատէն է, իբր կշտի։

Կոփեմ (զարնել, տաշել, ջարդել) — պհլ. (*koptano*), նպ. کوپیدن (*kupidan*), کوفتن (*kuftan*)։ Ասկէ է տճ. քօֆթէ ծանօթ կերակուրին անունը որ ծեծած միս կը նշ.։

Կռունկ (խորդ, տճ. թուրնա) — պ. کلنك (*kulunk* կամ *kulank*)։

Կրպակ — նպ. کربه, کلبه = պզտի տնակ, խրճիթ, տճ. քուլիպա։

Կօշիկ որ իսկապէս "կաշ-իկ" է, զն. *gaosh* արմատէն որ մորթ կը նշ., յորմէ եւ կաշի, իբր կաշի, նպ. کفش (կաւշ)։

## Հ.

Հազար (1000) — զն. *hazańrem*, պհլ. եւ նպ هزار։

Հալուէ — պ. الوا = aloès։

Հակ (opposé) — պհլ. գրոց մէջ adversaire նշանակութեամբ գործածուած է *ag-i-dat* = attaque de l'adversaire (Casartelli)։ Ազգ-

դէականք իրենք զիրենք وهدين (վեհ դեն) կամ شيردين (գերագոյն դեն), կ՚անուանեն, իսկ այլադեններըՙ جُددين (զատ դեն կամ ջատ դեն) եւ آكدين, այսինքն հակադեն (آك = հակ)։

Աւելորդ է ըսել թէ մեր “հակառակ„ը արմատի պարզ կրկնութիւնն է հակ — հակ։

Համ — կցող մասնիկ, նպ. هم, զն. hama եւ ham, սնս. sam։

Համաբուն = همبن (hambun)։

Համագահ = همگاه (hamgāh)։

Համագոյն որ եւ Համգոյն = همگون (hamgun)։

Համագունակ = همگونه (պհլ. hamgunak)։

Համադամ = همدم (hamdam) = զուգայար-մար, ներդաշնակ։

Համադատ = همداد (hamdad)։

Համազօր = همزور ,هازور (hamazôr, hamzôr)։

Համախոհ = همخواه (hamkhâh)։

Համակ — պհլ. hamak, նպ. همه։

Համակամ = همكام, همكامه։

Համակար կամ համքար, եւս եւ համէքար զոր ռուսահայք շատ կը գործածեն արհեստակից (էսնաֆ) նշանակութեամբ, շատ հին եւ շատ ընտիր բառ որոյ արմատը կը խրի մինչեւ Աւեստայն ուր կը տեսնենք. hama-kāra, փզ. ham-kar, նոյնպէս եւ պհլ եւ նպ. همكار։

Սոյն կազմով եւ նշանակութեամբՙ պհլ. ուրիշ բառ մըն ալ ունինք ham-bastak, ham եւ bast արմատներէ կազմեալ, bast նշանա-կելով բանի մը կապուիլ, զբաղիլ, պարապիլ

(بستکی ، بسته ، بست) դերբայարմատ ձ.ի (բանտ, վանդ):

Նոյն բայարմատն է որ vast անցնելով տուած է մեզ վատ-ան՝ յորմէ համավատան, համազօր համշահրի: Այլ է

Համակարի(ք) (մէկ սիրտ, մէկ հոգի, մի եւ նոյն զգացումը կրող) — որ کیر (կիր) արմատը կը մատնանշէ եւ պիտի պատասխանէր همکیر բարդութեան մը, եթէ լինէր, զոր մենք ունինք ի բառին համակէր (sympathique) որ գրեթէ կը նոյնանայ համակրութեի հետ:

Համահարզ, համհարզ — Hb.ը որոշ բան մը չըսեր, Հ. Ս. Տ.ը բնաւ չյիշեր, իսկ Հ. Պ.ին ադահարզանի հակառակներով կը զբաղի:

Ինծ կը թուի թէ սա պարզապէս պ. همورز (hamvarz)ն է զոր այլապէս՝ համավարզ, համավարժ պիտի ըսէինք, իբր մնդակից՝ վարժակից, ինչպէս կայ همزاد (hamzad) = համազատ կամ համածին = տարեկից, հասակակից:

Պալաթցի դպիր همراز (hamraz) կը դնէ (խորհրդակից) որ խոտելի ալ չէ, միայն թէ քիչ մ'աւելի խախտած կը լինին տառերը իրենց կարգէն եւ դիրքէն:

Համայն — պհլ. hamak եւ hamoyn, ինչպէս հանդիպեցանք կարն.ի մէջ, նպ. հմ:

Մենք ասոնք ուրիշ ձայնով մ'ալ շրջած ենք՝ ամէն եւ ամենայն որ յն. ἀμὴνի հետ գործ չունին, համայն՝ համակ (هم)ի պարզ

պլպլումներն են։ Այս յարմարութեամբ է որ պ. همکان (*hamakân*)ին դէմ կը հանենք "ամէնքեան„ը եւ همکی (*hamakî*)ին՝ "ամէնքին„։ Կրնայինք հաւասարազօր ճշդութեամբ Համաքեան եւ Համաքին ալ ըսել։

Համապատիւ — همپایه, همپا (*hampayé, hampâ*)։ Հոս մեր բառն է որ կը պահէ "պատիւ„ին մէջ հին արքայիկ ձեւը, եւ պ.ը կը հեռանայ dը փոխելով ի y (տ. Պատիւ)։

Համառօտ — Հայ կամ օտարազգի ոչ մի հեղինակ յիշած է այս բառը, եւ սակայն յայտնի նշաններ կան վրան որ պ. լինի։ Եթէ լաւ միտ դնենք իւր առումներուն՝ կը տեսնենք որ ամփոփել, կարճել, սղել իմաստներուն հետ հասկնալ, հասկցնել գաղափարն ալ զուգընթաց է, ինչպէս կ'ըսուի "ուղիղ համառօտել„ այսինքն շիտակ մեկնել (ոչ թէ կարճեցնել)։

Ճիշդ սոյն կազմը եւ իմաստը տուող բառի մը հանդիպեցանք برهانին մէջ — همرافته (*hamraftah*) — որ լաւ հասկնալ եւ հասկցնել կը նշ. եւ որոյ կազմական կրկնութիւնն է մեր "համառաւտ„ը։ Ամփոփել, կարճել, քաղել նշանակութիւնը հասկնալ խելամտելու հակառակ չելլեր, մանաւանդ կը հաստատէ ալ, զի լաւ խելամտելու միջոցներէն մին ալ քաղուածօրէն ամփոփել, եղրափակել, համառօտելն է։

Համասպրամ | Անուշահոտ ծաղիկ մը կամ
Համասպրան | ծաղիկներ։

Բարդեալ ի հու մասնիկէ եւ spram կամ sparam գոյ. է որ անուշահոտ կը նշ.։

Այս կազմով ունինք նաեւ շահսպրամը ուր շահը արքայ նշանակելէն աւելի՝ ընտիր, բարձր եւ ազնիւ իմաստը կու տայ, ինչպէս ուրիշ շատ անուններու մէջ ալ կը տեսնենք, օր.

շահրուտ = մեծ, երեւելի գետ
շահրակ = (շահերակ), մեծ երակ (տճ. շահ տամար).
շահրահ = մեծ պողոտայ զոր մենք ալ կրնայինք շահան ըսել.

"Սպրամ"ի բարդութիւններէն պհլ. nānūk spram (անանուխ սպրամ), ƶāt-sparam եւ նպ. mur-sparam (մրտա սպարամ) բառերն ալ կը յիշէ Hb. որ մի եւ նոյն կարգի յօրինուածութիւններ են։

Համասփիռ | պ. همه (համայն, համ)ի հետ
Համասփիւռ | բարդութիւն (տ. Սփիւռ)։

Համավար — هموار ,همواره = կենակից, համապազորդ, մէկ տեղ դրած, խառնած։

Համատոհմ — همتخم ,همتخمه։

Համար — զն. mar, սնս. smar, պհլ. hâmar կամ amâr, նպ. شمار (shumâr) յորմէ պհլ. ashmortan, նպ. شمردن կամ شماریدن = համրել, համարել, թուել։

Ասկէ ունինք պհլ. amâr purcîh ոճը (համրիւ համար պահանջել) զոր կրնայինք ամե-

նայն հարազատութեամբ Համարափորձ յեղուլ ի հայ։

Նոյնպէս եւ amarak, ahamar = անհամար։

Պալաթցի դպիրը "ամարէկկիր" ընտիր բառ մըն ալ կը նշ. որու դէմ իրաւամբ կը հանէ մեր Համարակալը զոր նոյնչափ իրաւամբ կրնայինք "Համարակիր" կոչել, եթէ չլինէր արդէն ընտրելագոյն պհլ. բառը amâr-gar, ինչպէս կ'ուղղագրէ Darm., եւ hamār-kār, ինչպէս կը կարդայ Hb., որ նոյն իսկ մեր "Համարակալ"ն է կամ նոյն ինքն "Համարակար" բուն եւ դասական բառ, ինչպէս կը հանդիպինք Մնացորդաց թէ հին ասորական եւ թէ նոր, Եւթանասնից, թարգմանութեանցը մէջ։

Բուն հին "մար" ձեւն ալ անգոյ չէ հայերէնի մէջ, միայն թէ բարդ ձեւի տակ.

Ասոր.:

| | |
|---|---|
| "Եւ Յովաբ որդի Շարուհեա սկսաւ աշխարհամար առնել ժողովրդեանն ։" | "Եւ Յովաբ որդի Շարուհեայ սկսաւ թուել զժողովուրդն։" |

Ա. Մն. ԻԷ, 24։

Եւ ուրիշ տեղ մը Եւթ.նից մէջ ալ գործածուած կը գտնենք նոյն կազմը.

"Եւ գրեցաւ (հրովարտակն) որպէս եւ ետ հրաման (թագաւորն) աշխարհամար դպրացն"։

Եսթ. Ը. 9։

Համբակ — «1. Նոր ծնած, նոր ոտք ելած երախայ, 2. աշկերտ, փոքրաւոր» կը մեկնէ Աբ.ը: Հասարակ ըմբռնմամբ՝ անփորձ, խակ, անվարժ, հետեւակ եւ այս վերջին առմամբ կրնայ պատշաճապէս պատասխանել պ. همپا ին, այն է ընթացակից, հետեւող:

Համբառնամ — هم (ham) եւ بار (bâr)ի բարդութիւն է, համօրէն, ամբողջ ի վեր առնուլ նշանակութեամբ, իբր هم կամ همبردن:

Համբար — Վերինին մի այլ ձեւն է, միայն – եւ չի զանազանութեամբ, նպ. انبار (anbâr), ի բայէս انباشتن (anbashtan) = լնուլ, ի մի ժողովել:

Աստի են

Համբարակ = պաշար, պահարան, շտեմարան:

Համբարական } որ նմանութեամբ արգանդ
Համբարան } ալ կը նշանակեն:

Համբարանոց = շտեմարան:

Համբարապան = շտեմարանի պահապան:

Համբարտակ որ եւ ամբարտակ = բարձր տնկած բուրգ (Աբ.):

Համբոյր — զն. hambuy, նպ. همبوی, բայ՝ همبوئیدن (hambuyîdan) կամ همبوسیدن (hambûcîdan) = իրար հոտուըտալ՝ բառ առ բառ, որ հարկաւ քթի բերնի մերձեցմամբ կը կատարուէր, ինչպէս մինչեւ հիմա ալ ինչ ինչ բարբարոս ցեղերու մէջ կը տեսնուի:

Համեմատ — Hb.ի մէջ ham-mat (mat, լտ. modus) այսինքն՝ համաչափ, համաձեւ մեկնու-

*թիւնը կը տեսնենք, այլ հեղինակը ինքն ալ վստահելի չնկատեր, եւ իրաւամբ։*

*Հ. Պ.ին* دانا *մը կը յօրինէ՝* [illegible]*, *[illegible] *նշանակութեամբ որ գոյութիւն չունի. իսկ* [illegible] *“համեմատ„ին անցումը, զոր միանգամայն կը գնէ՝ դժուար եւ անհամոզկեր է։*

*Ամենէն յարմար եւ բառին ճիշդ իմաստին պատասխանող լուծումը ես կը տեսնեմ սնս.* *mêdhâ* (*միտք*)*ի* (Hovelacque), *եւ զն. maitiի մէջ զոր* disposition de l’esprit *կը թարգմանէ* Hr., *նշանակելով առնթեր եւ հյ.* [illegible]*ը։*

*Գիտենք որ Աւեստական երրեակ սկզբանց առաջինը կը կազմէ matը.*

| | | | |
|---|---|---|---|
| | *mat* | = | *խորհուրդ, միտք* |
| | (*h*) *ukht* | = | *բան* |
| | *varzd* | = | *գործ* |
| *յորմէ* | *humat* | = | *բարի միտք եւ* |
| | *dushmat* | = | *դժմիտ։* |

*Ուրեմն արգելք մը չկայ որ կազմական նոյն օրինօք ham-mat մ’ընդունունի՝ նշանակելով մտքի եւ խորհրդի միաբանութիւն, ինչպէս արդէն ունինք, նոյն յօրինուածութեամբ՝* [illegible]*, եւ աւելի եւս՝* [illegible]*, զոր կրնայինք* [illegible] *ալ ըսել* [illegible]*ը օտար չլինելով* [illegible]*էն, այլ երկուքին եւս նոյն mat արմատի բղխմունք, ինչպէս որ ունինք ալ* [illegible] *որ իր հոլ երկդիմի արմատով այն-*

չափ ալ առողջ չէ որչափ պիտի լլնէր հա-մեմատը[1]:

“Համեմատ„ին սովորական ըմբռնումը եւ կիրառութիւնն ալ կը հաստատէ արդէն թէ նմանութիւն՝ հանգիտութիւն՝ միաբանութիւն կը փնտռուի:

Համեստ — Ահա ընտիր բառ մ'ալ որ բարձր հնութեան հետ պատմա-կրօնական խորին իմաստ կը պարունակէ:

Պարզելու համար այս կէտը պէտք է յիշենք որ Մազդէականաց մէջ անդրաստեան աշխարհը երեք որոշ բաժանումներէ կը բաղկանար, նախ արքայութիւնը, երանելեաց կայան. ապա դժոխքը՝ դատապարտելոց տանջանավայր, եւ երկուքին մէջ տեղ չէզոք տարածութիւն մը որ եթէ բախտաւորելոց վայելքը չունէր՝ թշուառներուն չարչարանքէն ալ ազատ էր եւ թեթեւ մեղքերով չուած հոգիները այս տեղ ժամանակ մը մնալէն յետոյ՝ կ'երթային կը միանային արդարներուն: Մէկ խօսքով՝ Քաւարան, ինչպէս քրիստոնեայ աշխարհին մէկ մասն ալ կ'ընդունի:

Այս միջին վայրը գացող հոգիներուն hamêstâgan անունը կը տրուի այն նկատմամբ որ իրենց բարի եւ չար գործերը զիրար կը հաւասարակշռեն:

---

1 “Եւ էր ձին . . . անուանի եւ հոյակապ . . . որ համեմատ նմա այլ ոչ գտանէր„ (Բուզանդ, 50):

Ահա այս բառին վրայ է որ մեծ վէճեր եղած է գիտնոց մէջ, ոմանք կարդալով *hamyaçtakan* (√*yaç*), ոմանք՝ *hamhaçtakân* կամ *hamaçtakan* (առանց շեշտի) եւ մեկնելով

*hamîh* = harmonie
*açto* = est (է)

այսինքն՝ est avec կամ en harmonie avec։

Մեզ, ասոնց մէջ, Casartelliին առաջարկած լուծումը ամենէն յարմարը կը թուի, *hamî+çtak*, √*çta* = նպ. ایست (արմ. ایستادن ի, հյ. աստ, աստի, աստիք, հաստ, հաստատեն)։ Որով բառին զօրութիւնը կը լինի. կալ ի յաստուոջ, յամրի, ի կշիռ, առանց յայս կամ յայնկոյս դեդեւելոյ, en équilibre, ինչպէս կ'ըսէ մեկնիչը։

Այս իմացմամբ ոչ մի բառ այնչափ յստակ եւ հարազատ կու տայ իմաստը որչափ մեր "Համեստ"ը որ եթէ հմուտ Երանագէտին միտքը եկած լինէր, անտարակոյս եմ որ, իբր յաղթական փաստ, չպիտի վարանէր արժեցնել։

Ցիրաւի, հիմա ալ մենք "Համեստ"ով կ'իմանանք պարկեշտութիւն, բարեխառնութիւն, կշռութիւն եւ չափաւորութիւն ըղձից եւ աղցից։

Համերամ — همرمه (երամովին, խմբովին)։
Համնշան — همنشان (համանշան)։
Համշիրակ — همشیره (միասին կաթ կերած մի եւ նոյն ստինքէ)։



 

Համոզեմ — آموزیدن ,آموختن յորմէ آموزکار (համոզկեր)։

Հայհուչ — هیاهوی յորմէ

Հայհոյեմ իբր հայահոյ ըսել, անպատեհս եւ անպատշաճս խօսել։

Հայր — Այս բառին փոխակերպութիւնը գեղեցիկ օրինակը կ'ընծայէ թէ ինչպէս նախնական pն կը փոխանակուի hով եւ tն եւ dն՝ մեր յով։

Արդարեւ բառին բուն հնագոյն վիճակն է զն.ի մէջ pitar, սնս. եւ հպ.ի մէջ՝ pita, պհլ. pitar որ կ'ամփոփուի ի pit։ Նպ.ի անցած ժամանակը, նախնական tն արդէն մեղմացած է ի d (پدر), իսկ հյ.ի մէջ՝ բոլորովին թուլցած եւ լուծուած ի յ, անցնելով ժամանակ մ'անշուշտ dական շրջանէ մը։

Նոյնը տեղի ունեցած է նաեւ pի համար ալ որ hի յանգած է մեր մէջ։

Ուրեմն, հետեւելով բառին շրջանական հոլովոյթին, եւ առաջնորդուելով տիպ օրինակներէ, կրնանք եւ պարտինք ընդունել որ ի սկզբան մեր բառն ալ patar կամ patr էր որուն յաջորդեց padrի եւ զուգահեռաբար կամ քիչ յետոյ hadrի շրջան մը, յանգելու համար հուսկ ուրեմն ի հայր։

Նոյն խորհրդածութիւնը նաեւ մայրի համար որ նոյն սկզբնակէտէն մեկնած (զն. mitar, պհլ. mit, նպ. مادر) եւ մի եւ նոյն փուլերէ անցնելով վերջին մայր ձեւը առած է։

Նոյն փուլերէ անցած են, ինչպէս տեսանք, եւ եղբ–յր եւ –ղբի–րը:

*Հանապազ* — Միակ ընդունելի մեկնութիւնը որ կարելի ըլլայ տրուիլ այս բառին՝ պ. همباز բարդութիւնն է: هم արդէն յայտնի է որ մեր հ–մն է որ երբեմն հ–ն ալ կու գայ, օր. հան-գոյն (համագոյն), հանդերձ (համ-դերձ = همدرز), եւն:

باز ը պ. ուրիշ առումներով հանդերձ, կը նշ. նաեւ գործողութիւն մը կրկնել, վերադառնալ բանի մը, տեղ մը, օր.

بازآمدن = կրկին ետ դառնալ գալ.
بازگفتن = խօսքը նորէն կրկնել.
بازدید = փոխ այցելութեան երթալ, այսինքն վերստին տեսնուիլ:

Այս իմացուածով կայ ալ արդէն բառ մը همباز որ աղաւաղութեամբ انباز կը գործածուի, որ կը նշ. ընկեր, զօրող, այսինքն՝ միշտ իրար տեսնող, միշտ հաղորդակցութեան մէջ, միշտ իրարու յաճախող, եւն, որուն ի դէպ կը մերձեցնէ Հ. Պ.ին Ս. Գրոց այն համարը յորում ըսուած է

"Եւ էին հանապազորդեալք վարդապետութեան առաքելոցն եւ հաղորդութեան եւ բեկանելոյ հացին„ եւն. այսինքն՝ նոյն գործողութեան շարունակեալ վերակրկնութիւնը:

Հ. Ս. Տ.ը յաջող չէ "վեդական սանսկրիտ *sana*՝ հին, լտ. senex„ին յարելով: Նախ որ

sana հնօրեայ կամ հինաւուրց է, այսինքն ծեր, այլ ոչ թէ հին։

Այդ "հին"ը հոն նոտր գրով դրուած է իբր կամուրջ "նոր"ին անցնելու համար, ինչպէս յետոյ ալ քովէ քով կը տեսնուին։ Եւ յետոյ, հինին առընթեր. եւ իբր անոր համազօր՝ մշտնջենաւոր բառն ալ անտեղի եւ աւիպէտս է, զի հինը մշտնջենաւոր ըսել չէ, կրնայ ժամանակաւ եղծանիլ եւ ապականիլ։

Hb.ը խոհեմութիւն համարած է որոշ բան մը չըսել։ Ծայրագոյն եւ երկչոտ վերապահութիւն։

Հանգաման(ք) — Ասոր աղբիւրը տարակոյս չունիմ որ զն. hañjamanak որ պհլ. hanjaman եւ նպ. انجمن (anjaman)ը տուած է, սակայն նշանակութիւնները բաւական հեռացած ըլլալով, միութեան կապը առաջին հայեցուածով աչքի զարնելու չափ զգալի չէ, վերլուծութեամբ որոնելի է։ Պ.ի մէջ انجمن ը կը նշ. հաւաքոյթ, համախմբում, ակումբ, ժողով են։

Հյ.ի մէջ թէեւ այսչափ որոշ չէ բացատրութիւնը, բայց դարձեալ հոն կը յանգի. "Պարագայք, վիճակ, եղանակ, պատճառք, թէութիւն, քննութիւն, կերպ, որպիսութիւն" կը դնէ Աբ.ը. այսինքն այն ամէն ներքին եւ արտաքին պարագաներ որք համախուռն ընթացակցելով գործողութիւն մը կ'որակին, կը պայմանաւորին։ Անոր համար է որ կ'ըսուի սովորական լեզուի մէջ "բան մը հանգամա-

նորէն քննել", այսինքն՝ վերլուծաբար, անջատելով իւրաքանչիւր բաղկացուցիչ տարրը, պարզելով եւ վերածելով խառնուած խճողումը։

Հոս է, այս խառնման՝ հաւաքման գաղափարին մէջ է որ հայ բառն ալ կ'երթայ իւր պ. համազօրը կ'ընդգրկէ։

Նոր եւ աւելի բացայայտ ապացոյց կու գայ յաւելուլ ասոր՝ հետեւեալ իւր լծորդ եւ զուգորդը։

Հանգանակ որ իսկապէս վերինն է՝ մի քիչ յեղաշրջանեալ։ Գիտենք որ հանգանակները մաս մաս ժողովել է աստի եւ անտի, յօդ սակս եւ կ'ըսուի "Հանգանակ հաւատոյ" եւ "հանգանակակից" = "սեղանի ընկեր, այսինքն՝ բազմակից, "հանգանակապետ" = սեղանի ընկերներուն գլխաւորը։

Հ. Պ.ին ճիշդ նկատած է այս կապակցութիւնները, թէպէտեւ բացատրութիւնը ճապաղ։

Հանդէս — սնս Sandēça, զն. handaesa (Hb.)։

Հանճար — هنجار, յորմէ ناهنجار = անհանճար։

Հանդուրժեմ — զն. drâjañh, $\sqrt{draj}$ (tenir) = action de supporter, de maintenir, սնս. drâghishta (Hr.)։

Հան կցականով ուրեմն (= համ) եւ դուրժ արմատով (draj) բարդութիւն մ'է որ համբերել, կրել, տանիլ կը նշ.։

Հաշտ — զն. akhshti, պհլ. եւ նպ. ashti (آشتی) = հաշտութիւն եւ anakhshti = անհաշտութիւն։

Հապճեպ — Hb. եւ Հ. Ս. Տ. ընաւ չեն յիշած, իսկ Հ. Պ.ին چابک-ը հիմ կը բռնէ, չմոռնալով "չափղուն"ն ալ։

چابک-ը կրնայ արդարեւ ուշադրութիւն գրաւել եւ տուած ալ է արդէն ճապուկը, սակայն այս պարագային մէջ պէտք է որ աւելի յարմարագոյնին տեղի տայ։

Աւելի լուսաբանութեան համար կարդալ հետեւեալը։

Հապշտապ որոյ մի այլ ձեւն է

Հապստէպ — մի եւ նոյն արմատը կը մատնանշեն شتاب (*shitâp*) որ տուած է մեզ թէ շտապ եւ թէ շտապով ձեւերը՝ իրենց բայերովը, շտապեմ եւ շութափեմ (شتافتن = *shitâftan*)։

Այս վերջինն ալ تافتن (*tâftan*)ի ծնունդ կը համարի Darm. եւ կը յօդէ *abish-tap* որ արդարեւ բառին բուն պահլաւիկ ձեւն է, զոր եւ կը կարդայ *ôshtâp* յորմէ բայս *ôshtâftan*։

Որչափ ալ *ô*ով զգալի ընել ջանացած է պհլ. ուղղագրութիւնը, բայց կը գտնեմ որ դարձեալ բուն ձայնը տալ յաջողած չէ։ Պէտք էր *au*, կամ *av* դնել, ինչպէս որ իսկապէս է պահլաւերէնի մէջ, այն է *aushtaft* կամ *avshtap*։ Եւ որովհետեւ սկզբնագիրը բացարձակ *a* չէ, այլ ն ալ է, ես, յենլով միւս կողմանէ համազօր հայ բառին գոյութեան վրայ, մտադիւր *havshtâp* կը կարդամ, որ *v* = *b* փոխանակութեամբ ճիշդ

հողշփոպը կու տայ որ բուն եւ իրական ձայնն է պհլ.ին։

Արդ՝ "հաշտապ„ կամ մանաւանդ "հապստէպ„ը եթէ փորձէ ոք արագ արագ արտասանել անընդմիջաբար, պիտի տեսնէ որ զգալի ձայնը այլ եւս ոչ թէ հապստէպ՝ այլ հողշնող է։

Ահա ինչպէս կ'իմանամ ես թէ ծնունդ առած է այդ բառը։

Հասանեմ — Ոչ Hb.ին սնս. aç (açnōti), զն. ašnaoiti (= գալ) աղբիւրները, ոչ ալ Հ. Ս. Տ.ին ak (aç) արմատները որք վերիններէն չեն տարբերիր եւ զորս անցնել, թափանցել, հասնել, սրանալ կը մեկնէ՝ կը լուսաբանեն մեր բառը։ Ձայնի եւ չափով մըն ալ նշանակութեան մերձեցում կայ իրաւ, սակայն հյ.ի սկզբնատառ Հն բնաւ հաշիւի առնուած չէ, որ սակայն աւագ կարեւորութիւն ունի հոս եւ գրեթէ բանալին է լուծման։

Ուստի՞ է այս Հն որ ցուցուած արմատներուն ոչ միոյն մէջ գոյութիւն ունի, այլ միայն հայերէնի յատուկ է։ — Պատճառը այն է որ բուն արմատը ոչ ak, ոչ aç եւ ոչ այլ ինչ է, այլ raç (ر س), բայ رسیدن = հասանել, ժամանել, գալ, եւն։

Եւ որովհետեւ բառսկիզբ Ռ կամ Ր հայ շրթանց անսովոր էր, ինչպէս բազում աւիթներով ապացուցինք, հարկ էր օժանդակ մ'անոր կցել՝ Ե, Ա, այլ մանաւանդ Հ որ աւելի սովորականն է, օր.

رم، رمه = *երամ (րամ)*,
رنگ = *երանգ*,
رسن = *երասան, առասան*,
روم = *Հռովմ*,
روزه = *Հռոզ (ռոճիկ), եւն, եւն.*

*որով կ'ենթադրեմ թէ Հայէն առաջ ունեցած ենք թերեւս Հրոսի շրջան մ'ալ որմէ ապա յաճախ կիրառութեան բերմամբ ինկած լինի ր։*

*Մեր այս տեսութիւնը կը հաստատեն նաեւ այն բարդութիւններն եւ ածանցները որ երկուստեք մի եւ նոյն տարրներով եւ կազմով յօրինուած են, մի եւ նոյն իմաստի նշանակ, զ. օր.*

*պ.* نورس *(նովրաս) = Հյ. նորահաս*[1],
„ نارس *(նարաս) = „ անհաս, տհաս,*
„ دسترس *(դաստրաս) = Հյ. ձեռնհաս,*
*զոր կրնայինք ամենայն հարազատութեամբ փոխարէն ալ ըսել։*

*Այս "ձեռնհաս„ին համատիպ կրնանք ընդունիլ մեր "ձեռներէց„ն ալ որ թէեւ տարբեր աղբիւրէ, այլ յօրինուածական նոյնութեան հետ նշանակութեան ալ ակնայայտ նմանութեամբ մի եւ նոյն ընտանիքի պատկանելու ամէն հաւանականութիւն կը ցուցնէ։*

---

1 Սոյն կազմով են դիտահաս եւ մաքտաղահասը որ հուսկ ուրեմն ռմկ. մաքղուղի յանգած է։

“Երէց„ին վրայ կարծիքները տարբերած են. Բուգգէ հայագէտը զայն յն. πρέσβυς, լտ. priscusի հետ համեմատած է. իսկ Meillet զուտ հայերէն բառ համարած, քահանայ նշանակութիւնը presbyter բառէն փոխ առնելով։

Այս վերջին կարծիքէն է նաեւ Հ. Մենեվիշեանը որ կ'ենթադրէ թէ *araits-a կամ *eraitsa հնագոյն ձեւեր մ'ալ գոյութիւն ունեցած ըլլալու են որ ամփոփուելով ու փոխուելով տուած լինին Երէցը եւ որուն քրիստոնէական դարերու մէջ “քահանայ„ նշանակութիւնն աւելցուած է[1]։

Չեմ կրնար ընդունիլ որ “Երէց„ը զուտ հայ բառ մը եղած լինի, մինչ ամէն ինչ իւր վրայ օտարութիւն կը բուրէ։ Հ. Պ.ին տուած յն. ἱερεύς (մեծ, ծեր, քահանայ) ձեւը յիրաւի հրապուրիչ է թէ՛ ձայնի եւ թէ՛ իմաստի կողմանէ, սակայն քահանայ նշանակութեամբ երբէք առանձին գործածուած չտեսայ, միշտ բարդութեամբ է ἀρχιερεῖς (քահանայապետք), իսկ երիցու համար միշտ πρεσβύτεροι, ὁ πρεσβύτερος։ Մինչեւ իսկ ուր քահանայի իմաստ չկայ, այլ պարզ տարիքի երիցութեան, անդրանկութեան, դարձեալ յոյնը presbyter կը գործածէ.

“Եւ էր Երէց որդին Նորա յագարակի„
„ἦν δὲ ὁ υἱὸς αὐτοῦ ὁ πρεσβύτερος ἐν ἀγρῷ“ (Ղկ. ԺԵ, 25)։

---

[1] Արդի Լեզուագիտութիւնը, էջ 167—178։

Ուրեմն ἱερεύςն ալ պարզ պատահականութենէն աւելի հիմ չունի։

Ինձ համար ամէն տարակոյս փարատող մեկնութիւնը رأس (ր••) Սեմական ձայնի և prothèseով հայացումը կ'երեւի, ճիշդ այն օրինօք ինչ որ կը տեսնենք բոլոր Rով սկսող բառերու մէջ։ Ուղղակի րէ• չկրնալով ըսել, և օժանդակի դիմած ենք։ Այլ թէ ինչու Ց փոխանակ Սի, օրինակները այնչափ շատ են որ սա մի բացառութիւն չկազմեր։

Ուրեմն պարզ رأսն է որ մեզ եղած է ե-րէց, ինչպէս մնսկ. ravin՝ ա-րեւ, պ. رس կամ رزه՝ ե-րիշ, رسن՝ ե-րասան եւն. եւն։

Գալով նշանակութեանը, գիտենք որ Սեմական լեզուաց մէջ որոց գլխաւոր ներկայացուցիչներէն մին է նաեւ Արաբականը, رأսը կը նշ. գլուխ, մեծ, գլխաւոր. սա է իւր տիրական իմաստը, այնպէս որ Ս. Գրոց նոր Թարգմանութեանց մէջ, ուր ուրեք որ պարզ քահանայի վրայ է խօսքը كاهن կամ كهنه աստուածաբանական բառով տրուած է, իսկ երբ աւագութեան մեծութեան երիցութեան վրայ եկած է՝ رئيس կամ رؤساء ըսուած է, իսկ հասարակ մեծութեանց համար, որպէս են չափու, անդրանկութեան եւն. كبير գործածուած է։

Հայերէն բառը այս ամէն իմաստը յինքեան կը պարունակէ։

Մէկ կողմանէ Բիբլական երէցն է, ինչպէս տեսանք, միւս կողմանէ հասարակ համեմատական մեծութիւն է (երէց որդի, եւն), իսկ

միւս կողմանէ՝ կարողութիւն, զօրութիւն, իշխանութիւն, յանդգնութիւն, հաստատութիւն եւ այլ այս կարգի գերագոյն իմաստներ եւ այս վերջին առմամբ է որ կու գայ կը միաբանի իւր համատիպ եւ համազօր "ձեռնհաս„ին հետ, նոյն կազմական եւ տարրական բարդութեամբ։ Միակ տարբերութիւնը որ կը տեսնեմ այն է որ [illegible]ը աւելի ընդհանուր մտօք կարողութիւն, ատակութիւն կը յայտնէ, ինչպէս دسترس ը պարսկերէնի մէջ։ Կ'ըսուի գ. օ. دستم رسید (չեղէ ձեռնհաս, ձեռքս չհասաւ, այսինքն չկարողացայ)։ Իսկ [illegible]ին մէջ նոյն կարողութեան հաստատութեան հետ նախաւորութեան յառաջարձակութեան գաղափար մ'ալ կայ որ բառը իւր ծագումէն կ'ընդունի։

| Նոր Մն. | Նւթ. |
| --- | --- |
| "Ամենայն այր որ յարձակեալ ձեռներեց լիցի ստանալ զայր Ցերբուսացի։„ | "Ամենայն որ հարցէ զՑեբուսացին յառաջագոյն։„ |
| "Անդէն վաղվաղակի յարձակեալ նախաձեռն ձեռներեց լինէր Յովաբ... վանել զՅեբուսացին ձեռներեց ի ներքս անկանէր։„ | "Եւ ել յառաջ ի վերայ նորա Յովաբ ....։„ |

Ա. Մն. ԺԱ. 5—6։

Այս ամէն դէպքերուն մէջ, ինչպէս կը տեսնուի, նախաձեռնութեան, այսինքն յառաջ նետուելու, իշխելու, յանդգնելու վրայ

կը դառնայ խօսքը, այսինքն ձեռքէն գալ, կարենալ, աջողելու վրայ, ինչ որ յեանհաային ալ դիտումն է։

Եւ որովհետեւ յեանհաաը արդէն կար, ճիշդ թարգմանութիւն պ. ستاده ի, երբ որ հարկը ծագեցաւ՝ յեանեբեցն ալ ճիշդ անոր վրայ չափուեցաւ ձեւուեցաւ, իբր նորին համազօր մի այլակերպութիւնը. եթէ ոչ ինչ առնչութիւն կար յեանի եւ եբեշի մէջ, եթէ նախատիպ մը առաջի աչաց չըլլինէր։

Գալով «հասանել»ին եէլամէկ, փեփկէ-նալ, է վէրայ կալ առումներուն, ասոնք արդէն պարսկերէնի մէջ ալ կան.

رسيدن ը ոչ միայն հասանել (ժամանել) կը նշ., այլ եւ իմանալ, ակահ եւ խելամուտ լինել։

رسيدكى = խելամտութիւն, իրազեկութիւն։

بررسيدن
وارسيدن } = վերահասու լինել։

Հաստ(ատ) — ինչպէս գիտենք հյ.ի մէջ աստ, հաստ, աստի, աստիք մի եւ նոյն նշանակութիւնն ունին — ամրութիւն, հաստատութիւն, պնդութիւն եւ մի եւ նոյն արմատի ծնունդն են՝ զն. sta, ինչպէս տեսանք։ Ստեղծել նշանակութիւնն ալ որ ունի հաւթելը՝ դարձեալ հաստատելու մօզ է, այսինքն՝ թանձրացնել, խտացնել, զգալի եւ շօշափելի ընծայել։

Հատ(անեմ, -ուած, -որ, եւն) — Աւեստայի երեք ծանօթ մասունքը (Vendidad, Vispered, Yaçna) գլխակարգութեանց ուրոյն անուններ ունին. 1. Fargard (فرگرد), 2. Gard (گرد), 3. Hâ (ها)։ Այս վերջինին համար Hovelacqueը կը կարծէ թէ հնագոյն hat ձեւէ մը կու գայ եւ զն. hâitiի հետ կը կապուի՝ որ section, chapitre կը նշ.։

Տարակոյսի տեղի չկայ որ սա ճիշդ մեր հատ արմատն է որ ասով ամենաբարձր հնութեան կ'ելլէ։

Նոյն այս արմատն է որ պէսպիսանալով տուած է նաեւ յատ եւ յօտ ձեւերը, յորոց յատանեմ եւ յօտեմ եւն։

Նոյն դասակարգին մէջ իմանալ աւելի յարմար է նաեւ "զատ"ը (զատանեմ = բաժնել, կտրել, հեռացնել)։

Հատ(իկ) — պհլ. *hadîh*, *hadâh* = un, quelqu'un, quelque, chacun (Hr.)։

Քաղդէապարսիկ ծագում կը ցուցնէ הדא (*hadâ*) որ ար. احد եւ حد ը կը յիշեցնէ։

Կ'ըսուի *kolâ hadîh*, որ ար. كلّ واحدٌ կամ احدٌ պիտի գար = ամենայն ոք, իւրաքանչիւր ոք։

Նոյն արմատն է անշուշտ որ կը տեսնենք յատ-—-կին մէջ ալ։

Հարազատ — Hb.ը զն. *hadōzāta* (եղբայր) նախատիպ մը կու տայ. բայց սա՝ նշանակութեան աւելի մօտենալու ջանք եւ զիջում մը կ'երեւի ինձ. եթէ ոչ՝ զն. աւելի յարմարա-

գոյնը կայ զոր Hr.ն ալ կը նշանակէ, առընթեր յիշելով նաեւ մերը։

Frazaiñti, $\sqrt{fra+zan}$, լտ. progenius պհլ. *frazand*, նպ. فرزند։

*Zan* եւ *zad* արմատներուն համար տարակոյս չկրնար լինել թէ մեր ծին եւ զադ(էկ)ն են, ինչպէս տեսանք, — Ի՞նչ է հուրը որ նպ. ալ *fur* (فر) անցած է։

Սա, ըստ ամէնայն հաւանականութեան, *fraç* կամ *frazն* է (فرا, فراز) որ յառաջ, վերայ, ի վերոյ իմաստները կու տայ ըստ տեղւոյն։ Հոս անշուշտ յառաջ խաղացում պիտի նշ., ըստ վկայելոյ լտ. pro նախդիրին, որով բառին ստուգաբանական իմաստը կը լինի՝ յառաջբերում, յառաջգոյութիւն, provenir իմաստով, այն է ծագել, բղխել, արտադրութիւն, ծնունդ, descendance ինչպէս կ՚ըսէ Darm.։

Իրաւ է ասոր մէջ եղծոյր իմաստը որոշ չէ, պարզ ծնունդ է, այլ դիտելի է որ հայերէնի մէջ ալ եղծոյրը երկրորդական է, ծնունդ գաղափարէն բղխած, իբր մի եւ նոյն ծնունդ եւ ծագումն ունեցող, եւ այս այնքան ճշմարիտ է որ բանի մը իսկութիւնը՝ նոյնամերձ նմանութիւնը յայտնելու համար ալ "հարազատ„ին կը դիմենք, իբր բուն յայտարար اصل ի։

"Հայրազատ„ ըմբռնումն ալ չեմ մերժեր թէեւ, իբր մի եւ նոյն հօրմէ ծնած, սակայն քիչ մը ենթադրական կը մնայ սա, մինչդեռ

վերինը աւելի հարազատ եւ բանաւոր ըլլա-
լու ապացուցութիւնն ունի։

Հարսն — Գրուածները աչքէ անցընելով կը տեսնեմ որ համոզիչ բան մ'ըսուած չէ այս ամենագործածական բառին համար։

Hb.ը פרס, פרש, פרץ պարզապէս կը շարէ, մնս. prken, զն. pərəsի քով. առանց ի վեր հանելու թէ ինչ աղերսներով կապուած են։

Հ. Պ.ին, ինչպէս կ'սպասուէր, ար. سؤال ը տիպ կ'առնէ։ Իրաւ ալ ասկէ յարմարագոյնը ես ալ չեմ տեսներ, միայն թէ փոխանակ արաբական փոխառութիւն ըսելու, որ anachronisme պիտի ըլլար, Սեմական կամ Արամական համարելու է։

Հարց — սա յայտնի զն. feres, հպ. pars եւ պհլ. եւ Նպ. پرس (pers կամ purs)ն է։ Զն. feresâ = interrogation (Hr.)։ Մեր բառը ժամանակաւ յետնագոյն է քան զն.ը ուր տակաւին թն պահուած է, մինչդեռ մերինին մէջ hի փոխարկութիւնն արդէն կատարուած։ Հնագոյն տիպն ալ ունինք սակայն "փորձ"ի մէջ որ פרס-ի մի ուրիշ ձեւն է, կամ սա անոր։ Այս երկու տիպերն ալ շատ գեղեցիկ, կարծես թէ խորհրդաւորապէս, խտացած են "հարցափորձ"ին մէջ որ կրկնակներու կարգէն է, իբր "հարցահարց" կամ "փորձուփորձ", այն է երկար եւ մանր քննութեամբ "փուրսիշ" (پرسش)։

Այս վերջին ձեւին մէջ, բառը իր բուն պարսկական հանգամանքովն է։

*Հաց* — Դժուար է ընտրութիւն ընել Hb.ի ցուցցած սնս. *sasya*, զն. *habyni* եւ Հ. Պ իի "Հայս„ին մէջ։ Երկուքն ալ խոտելի չեն։

*Հաւասար* — պ. افشار կը նշ. ընկեր, զօվող. կ'ըսուի دزد افشار = գողակից (برهان.)։ Ա՞յս է արդեօք մեր բառը, թէ ոչ همسر (*ham-sar*)ը, ինչպէս Հ. Պ.ին կ'ընդունի։

Նկատելով սակայն -ի գոյութիւնը մեր բառին մէջ եւ գիտնալով թէ վայրապար չդրուիր այս գունայեղ տառը մեր բառերուն մէջ, այլ միշտ Ռի կամ ֆի կամ ղի, եւն. կը հակադրուի, կը յարիմ առաջին վարկածին ուր արդարեւ *f* մը կայ մեր -ին դիմացը։

*Հաւաստ* — Կարնամակին մէջ արդէն առիթ ունեցանք պարզել մեր տեսութիւնը (ծան. 100) այս բառին վրայ զոր հիմը կը համարինք գեղեցիկ խումբի մը՝

Հաւաստ

աւաստ

աւէտ

իրենց ոչ նուազ գեղեցիկ ծնունդներով

Հաւաստարիմ

աւէտարան

աւէտ(իք, էմ, եւն)։

Նոյն իսկ Աւէստայի, ինչպէս յիշեցինք (տ. Կենդանի), կրնայ բանաւորապէս հիմ ընդունուիլ մեր բառը։

Ցիրաւի, պհլ. havishtը կը նշ. աշակերտող, ընդունող, հետեւող, հաւատացող, եւս եւ անձնուրաց, հաւատարիմ, եւ այս կարգի իմաստներ։

Մեր հաւատք, հաւատ եւ հաւատալիմը ասկէ տարբեր միտք մը չեն յայտներ։ Երթալով հարկաւ կը պէսպիսանայ այս նշանակութիւնը եւ երանգներ եւ առումներ կը մտնեն, ինչպէս հաւատ, հաւտ եւն։ Սկզբնական մայր-գաղափարը սակայն կայ եւ կը մնայ իբր միութեան կապ որոյ շուրջը կը բոլորին ամէնքն ալ։

"Հաւաստ„ կամ havishtն ալ տակաւին պարզ չէ։ Avestaէն vaèd արմատ մը կ'ելուզանէ Hr.՝ √a-vaèd-aya (annoncé, offert)։ Այս տեսութեամբ հնդիկ væda եւ զն. avesta կը միաբանին ուրեմն տի մը թափառմամբ որ մերթ կ'երեւի՝ մերթ կ'անհետի։

Ցամենայն դէպս, սա բացորոշ եւ ակներեւ է որ av կամ hav արմատ մը կայ անխախտ որ ամենուն ալ իբր հիմ կը ծառայէ։ Հ. Ա. Տ. ալ կը մատնանշէ այս av հնդկ. արմատը՝ հաւծել, հաւատնել նշանակութեամբ։

Մեր հաւ արմատը արդէն (հաւ-անիմ) ասոր տարակոյս չձգեր։

Հաւատ — տ. Հաւաստ։

Եհծան (գերան) — պ. هیزم (խոշոր եւ հաստ փայտ)։ Հ. Պ.ի-ին դրած հէյզում կամ հէյզէմը գոյութիւն չունի, թերեւս տպագրական սխալ լինի։

Հեշմակ — "Հեշմակապատ" ձեւի տակ գործածուած է զոր "Հեշմակապաշտ" կ'ուղղէ Աբ.ը եւ իրաւամբ, քանզի 𐬀𐬉𐬱𐬨-կը (պհլ. aêshma, որ եւ khêshma) ստորակարգ դիւաց դասէն մասնաւոր դեւի մ'անունն է որ բարկութեան եւ խստութեան Ոգի ճանչցուած է եւ դէպ յայնս կը սադրէ զմարդիկ։ Aêshm կամ hêshmը خشم անցած է Նպ.ի, իսկ մեր մէջ վերի 𐬀𐬉𐬱𐬨-ի հետ մէկ տեղ ուրիշ կերպարանք մ'ալ առած է ցասմ (ցասումն, ցասնում) որուն ասկէ զատ ուրիշ ո՛ եւ է տարբեր աղբիւր փնտռելն ըստ իս անտեղի է։

Հ. Պ.ին մեծապէս կը սխալի "ցածնում"ին հակառակէն բերել փորձելով, աւելի բանաւոր պիտի լինէր թերեւս "ցասնում"ին հակառակէն բերել "ցածնում"ը։

Հեռ (ատելութիւն, քէն) — զն. haret'a = ennemi, hared'i = inimitié, որոնց կարգին կը շարէ Hr. մեր բառն ալ։ Յոյն ձայնն ալ ἔρις, սեռ. ἔριδος նոյնը կը շօշափէ։

Հեռի — սնս. pára, զն. parō (Hb.), որոնց կ'աւելցնենք նաեւ պհլ. arik կամ harikը որոյ վերջին բաղաձայնը որ պհլ. լեզուին յատուկ է՝ ձգելով կը մնայ hari (փակ -ով) կամ վերջապէս [illegible] (կարն. ծան. 77)։

Հետ — զն. pâd'a, √pad = pied (Hr.)։ Միւս հնդեւր. ազգակցաց մէջ ալ քիչ կամ շատ յեղաշրջութեամբ նոյն արմատը կը գտնենք. Օսէն՝ fad, յն. πεζός, լտ. peda, նպ. پای (Hb.)։

Սոյն *pat* արմատը, իւր հին եւ նոր փուլե-րուն համապատասխանող բոլոր ներկայացու-ցիչներն ունի Հ.յ.ի մէջ, միշտ օօէ նշանա-կութիւնն ունենալով հիմ. օր.

Հէօ(+) — *p* = *h* փոխանակութեամբ։
Պօյէկ (ոտքի վրայ պահապան), ուր *p* պա-հուած եւ *d*ը արդէն *y* շրջանի մտած (*pad*)։ Նոյնպէս
Փօյէկ (ոտքով վազող) = پيك։
Պօտօւանտօն = պ. پيوند (پاى بند) ուր *p* եւ *d* անփոփոխ պահուած են, մինչ պ.ի մէջ ձն արդէն մեղմացած ի *y*։
Պօտօւսօտ = պ. پيوست (پاى بست)։

Ասկէ կը կարծեմ նաեւ մեր “դօօ-է„ը իբր յառաջադեմ, նախոտն, տճ. قدملى։

Ասոփ են մեր կարգի մը բարդութիւններն Հեօէ, Հեօէօօն, Հեօ ըն՞ Հեօ, Հեօ զՀեօէ, Հե-օաղջօ (= հետ զհետ), Հեօամօօ, եւս եւ եօ, յեօ, յեօօյ, յեօէն, եւն. եւ նոյն իսկ օօ (Ն—ք)։

Հերիսայ — պ. هريسه։

Հերկ — հնդեւր. *perk* արմատ մը կը նշ. Hb., յն. ἔργον որ զն.ի մէջ *varez* կը լսուի, նպ.ի մէջ՝ ورز (*varz*) կամ بَرز (*barz, burz*) եւ որ առ մեզ Եէէ (գործ, վաստակ) եւ Հեէէ (մշա-կութիւն) անցած է։

Հ. Ս. Տ.ին ցուցցած հնդ. *varg* արմատն ալ որ “ազդել, գործել„ կը նշ., նոյն վերի

*perk*֊ին մի այլ ընթերցուածը կ'երեւի եւ նոյնանիշ։

Հերու (անցեալ տարի) — Նպ. پار, օր. پارسال = անցեալ տարի։ Կայ նաեւ پریر (*parîr*) որ երկու օր կամ երկու գիշեր կը նշ., եւ կ'ըսուի համառօտապէս پرروز կամ پرشب փոխանակ پریروز եւ پریشب = անցեալ օր կամ գիշեր։ Հին աղբիւր, տես. *parut* (Hb.)։

Հզօր (հզաւր) — զն. *zavr* կամ *zavar*, Նպ. زور = Հյ. զաւր (ոյժ), բարդեալ ընդ զն. *hu*ի (= բարի, գեղեցիկ), յորմէ *hu*+*zavr* (հ+զաւր) = քաջակորով, ուժեղ, եւն։

Այս ընթերցուածը եւ մեկնութիւնը կը փարատէ նաեւ այն տարակոյսը որ Դենկերտի[1] մի բառին վրայ (اوچ) ծագած է զոր ոմանք կ'ուզեն *huâzar* կարդալ (très-fort կամ patient) ար. ازر֊էն բերելով, ոմանք *hûâpar*, Աւեստական *qâpara*ին մերձեցնելով որ ինքն ալ մութ է, ինչպէս կ'ըսէ Casartelli[2], որ կը մեկնէ „qui produit des biens“ կամ „qui protège par soi-même“։ Westը կարդացած է *khvâpar* (persistant ou se soutenant par soi-même)։

Կը մերժեմ նախ patient բացատրութիւնը որ textեին պահանջած իմաստին հակառակը (հլութիւն, խոնարհութիւն) կը յայտնէ, մինչ գիտումը իշխանութեան զօրութեան վրայ է

[1] Արդագան մատեաններէն մին Dinkart (دين كرد)։
[2] La phil. rel. du Mazdéisme sous les Sassanides. Paris 1884, էջ 20։

(khôtâ-i- . . . pânak va . . . = Աստուած . . . ապաւէն [պաշտպան] եւ . . .)։

Կը մերժեմ նաեւ միւս մեկնութիւններըը՝ իբր անաչըող կամ անյարմար, շատ հեռուներէն առնուած։

Միակ հաւանաբար մեկնութիւնը հայ բառին տուածն է զօրաւոր չարքող հզօր իմաստով եւ ընթերցուածով։

Արաբական (ازر) ծագումն ալ մերժելի է իբր ոչինչ մեկնող եւ ոչ ալ պատշաճող պհլ. լեզուի ոգւոյն, զոր արդէն հայ զաւր ընթերցուածը բաւական է վտարելու իբր օտար։

Կը մնայ ուրեմն բառը իւր հարազատ եւ բնիկ տարերաց մէջ

զաւր (զօր) = زور·
հու(հ) = քաջ, գեղեցիկ, եւն.

որով առաջարկեալներէն առաջինը միայն հաստատութիւն կ'առնէր, ուղղելով սակայն huâzar ընթերցումը hû(a)zavrով՝ v նշանագրին պատճառաւ որ թէ րէ, թէ f եւ թէ v միանգամայն։

Այն կազմով են, ինչպէս Hb.ն ալ կը յիշէ՝

Հ + լու = քաջ անսացող, լսող.
Հ + պատուէ = լաւ հետեւող (pad = پای = ոտք).
Հ + մատ = լաւ թափանցող (միտ, մուտ).
Հ + պարտ = յոյժ պարծ կամ պերճ, եւն։

Հէն — զն. *haèna*, հպ. *haina*, պհլ. *hen* (Hr.) եւ *hayun*, *hin* (Phl. Engl. Dict.) = բանակ (armée)։

Մեր մէջ աւելի ասպատակ կամ աւազակ նշանակութեամբ է ծովու կամ ցամաքի (Աբ.)։

Հին — սնս. *sána*, զն. *hanō*, պհլ. *hān*, յն. ἕνος, լտ. sen-ex (Hb.)։

Որչափ հնութեան կը բարձրանայ ուրեմն մեր ռամիկ «հանի»ն որ հօր կամ մօր մայրը կը նշ. եւ *han* հին արմատը կը մատնէ՝ իբր հին աւուրց։

Հինգ — զն. *pânça*, պհլ. *pānj*, նպ. جْ, ուր կատարուած փոխանակութիւններն են *p* = *h* եւ *j* կամ ج = գ։

Հիւթ — պ. ثفه (Գ. Դ. Պալաթցի)։

Հիւղ — պ. کوخ (նոյն)։

Հմայք յորմէ հմայեակ, հմայեմ, եւն. — սնս. *su-māya*, զն. *humaya* (Hb.)։

Հնար — զն. *hu-nare*, *su-nara*, հպ., պհլ. եւ նպ. *hunar* (هنر) = vertu, qualité, habileté (Hr.)։

Այսկէ գեղեցիկ յօրինուածներ ունինք թէ պ. եւ թէ հյ., օր.

զն. *hunaravant* զոր կրնանք հնարաւէտ հայացնել.

պհլ. *a-hônar* = հյ. անհնար.

նպ. هنرور = հնարաւոր, եւն։

Հոտ — զն. *baoid'hi*, $\sqrt{bud}$, պհլ. *bôd* յորմէ նպ. بوى (*d* = *y*), կամ պարզապէս بو։ Հայերէնը

բ — ե օրինօք կը պատասխանէ հին bôdին, իսկ ՏՅ. Նորագոյնին համազօր ունի քոյր ալ պարզ օժանդակ չի մ'աւելագրութիւն կայ, oŭ ձայնով ոյ վերջաւորանք չգտնուելուն հ.յ.ի մէջ (տ. եւ բայր)։

**Հում** — մնս. âma եւ յն. ὠμός տիպերը տարակոյս չեն ձգեր որ մերն այլ նոյն ընտանիքէն է։

**Հուր** — պ. հին մատենագրութեան մէջ յոյժ կարեւոր տեղ բռնած բառ մ'է որ թէ կրակ կը նշ., թէ արեւ եւ թէ որ եւ իցէ լոյս կամ պայծառութիւն։

Զն. hvara, պհլ. hur, նպ. خور ,حور ,هور, յորմէ خورشيد (արեւ), Խորենացւոյն "Խորաշետ"ը, կազմեալ ի

خور = արեւ, եւ
شيد = լոյս, պայծառութիւն արմատներէ։

Այն Խոր (Հուր) արմատով են դարձեալ՝

خراسان (khorâsân) = արեւելք,
خرداد (զն. haurvatât) զոր Հրադատ կրնանք հայացնել։

Հուրբակը որ առ Նախնի Հայս կրակատուն կը նշանակէր, զոր ապա քրիստոնէութիւնը փոխչարակ ըրաւ, aturfrubag կրակատունն էր թերեւս, ինչպէս հարց կը գնէ Hb. (տ. Նպքն., եր 5, հ. 13)։

"Հուր"ի մէ համառօտութիւնը կը համարիմ "Հնոց"ը, երբ Հրանոց կամ Հրնոց։

Հպատակ — Հայ լեզուի ամենէն գործածական եւ միանգամայն պարսկաբոյր բառերէն մին որ սակայն գոհացուցիչ մեկնութիւն մը ստացած չէ մինչեւ ցայժմ։

Hb.ը բնաւ չյիշատակեր. իսկ Հ. Պ.ին իւր "ի հակառակէն"ներու մեթոտով յն. "հիւպատոս" (ὕπατος)էն կը բերէ։

Հ. Ա. Տ.ը կ'ըսէ.

"Upa նախադրութիւն ընդ գործիական խնդրով եւ իբրեւ նախդիր հուպ նշանակութեամբ, հնդկերէն եւ զանդկերեն ուպա, Յուն. ὑπό, Գոթ. uf եւ Լատ. sub որուն հետ աւելի մերձաւորութիւն ունի հուպ որմէ նաեւ հպատակ"։ (Հնդեւր. Նախ. էջ 118, 119).

Այս ցուցմունքը ինձ հիմնովին խախուտ կ'երեւայ։ Նախ զայն հաստատելու էր թէ upa իսկապէս մեր հուպն է, ինչ որ ենթադրական է եւ բառին իմաստէն ալ հեռու, զի ὑπό, upa, sub, ի ներքոյ (տակը) կը նշանակեն, մինչ հուպը՝ մերձ, մօտ։

Եւ այդ հուպ անջատումն ալ կամայական է, առ ի պէտս, եւ ոչ նախկին ձեւէ մը յառաջ եկած։

Եւ յետոյ, եթէ ստոյգ ալ լինէր, բառին առաջին մասը (հուպ կամ հպ) միայն բացատրած պիտի ըլլար, մինչդեռ երկրորդ անդամը, տակը բաց կը մնայ որոյ վրայ բան մ'ըսուած չէ։

Չեմ կարծեր թէ մեր այժմու աշխարհիկ իմացուածով տակը հոս dessous նշանակէ,

զի յայնժամ երկու նոյնանիշ բառ ի միասին, յօդուած պիտի լինէր [illegible] եւ [illegible] որ ուղիղ բանի կը հակառակի։ Իսկ հին հ․յ․ի մէջ [illegible]ը աւելի [illegible] առմամբ գործածուած է (տակուի, իք) քան կողմնացուցաբար ի [illegible], [illegible], եւն։

Մենք ուրիշ աղբիւրի մը հանդիպեցանք որ ասոնցմէ շատ աւելի զօրաւոր եւ հաստատուն է եւ թերեւս բուն իսկ մեր խնդրածը։

Դինկերտ (Dinkart)էն որ պահլաւիկ մատենագրութեան մէջ, ինչպէս յայտնի է, շատ նշանաւոր տեղ մը բռնած է, պարբերութիւն մը յառաջ կը բերէ Casartelliն[1], ներբող մ'ի պատիւ Ահուրամազդայ յօրինուած, յորում բանահիւսը շարք մը ստորոգելիք իրարու հակադրելով կ'ըսէ.

| | |
|---|---|
| „Khütai la bandik. | Souverain, non serviteur. |
| Abu la farzand. | Père et non enfant. |
| Peshîk la khvêsnik. | Antérieur et non dépendant. |
| Ahuo la aîrmâno. | Maître et non obéissant. |
| Rato la ratvad. | Chef et non ayant un chef. |
| Patokhshâhî la ahûâçtak. | Seigneur et non soumis à un maître. |
| Pânak la pâtak. | Protecteur et non protégé. |
| . . . . . . . . . . . . | . . . . . . . . . . . . |

---

1 La phil. rel., 20.

յորում յայտ յանդիման կը ցոլայ pâtakի եւ հովարուկի ձայնակցութիւնը, մանաւանդ նշանակութեան հիանալի յարմարութիւնը, protecteurի, protégéի աղերսով, զի մինչեւ հիմա ալ քաղաքական լեզուի մէջ sous quelle protection? չհարցուիր, որ տէրութեան հպատակն (sujet) ես ըսելու համար։

Ետո հաստատելոյ ուրեմն այս նոյնութիւնը pâtakի եւ հովարուկի մէջ, որոնենք հիմա թէ ինքը pâtakը ինչ է վերլուծաբար։

Արդ akը ձգելով իբր պահլաւայատուկ ածանց, որ եւ հայերէնի հասարակ է, կը մնայ pat կամ աւելի ճիշդը pad զոր "Հետ(ք)"ի առթիւ տեսանք թէ ոտք կամ հետք կը նշանակէ։ Ուրեմն նոյն padն է որ հոս մեր բառին մէջ ալ "պատ" կերպարանքով կը ներկայանայ, ինչպէս որ پی = պայիկ ի օրինակն ալ ունինք։ Եւ արմատին ծայրի dն ալ պահուած է հոս, ինչպէս պահուած է պատուաստ, պատուանդ կերտուածքներուն մէջ, ինչպէս տեսանք։

Pâtakին առաջին վանկին վրայի շեշտն ալ արդէն կը վկայէ թէ բաց եւ երկար ա՛ է զոր միայն پای գրչութիւնը կրնայ տալ։ Կայ پ ալ իրաւ, հետք նշանակութեամբ, ինչպէս զ. օ. پیاپی կամ پدرپ (հետ զհետէ), եւն, այլ սա առանձին բառ մը չէ. Նոյն پایին կրճատն է, ինչպէս երբեմն ծայրի یն ալ ջնջուելով պարզ پا կը մնայ։

կրնանք ուրեմն ամենայն հաւատարմօք դնել

pâdak = պատակ

զոր նոյնանիշ կը նկատեմ Եղու–ակին եւ նոյն աղբիւրէ բղխած։

Իսկ բառակիզը Հն պարզ յաւելուած մը կը համարիմ, իմաստին սաստ եւ կորով տալու համար որ պհլ. hušin կը պատասխանէ, ինչպէս ուրիշ բառերու մէջ ալ կը ստուգուի, օր. խոհեմ = هوخيم, Խոսրով = هوسروب կամ هوسرو (hu çrow) = յոյժ գովելի, եւն։

Որով մեր բառը կը լինի, խ = Եի օրինօք Եօ կամ Եօռ–պատոյ եւ սղմամբ Ե–պատոյ, իբր քաջ եւ հաւատարմաբար հետեւող։

Հրաժար(իմ) — զն. frajarāmi, frajărayemi, պհլ. frajărem, նպ. guδaštā (Hb.) = ետ կենալ, ձեռ անցնիլ։

Վերլուծաբար կը տեսնենք որ fra (فرا) որ "վերայ" է, հոս մեզ Եըռ անցած է, բազմաթիւ ուրիշ օրինակներու համաձայն, f = h օրինօք. եւ ǰar ը յորմէ սկզբնական g կամ v մը ինկած կ'երեւի, քանի որ նպ.ը کذر (guzar) է, մեզ ուղղակի ժառ անցած է։

Նպ.ի մէջ բառը կը ներկայանայ برکذر (bar guzar) ձեւի տակ յորմէ բայս برکذشتن (ետ կենալ, յետս դառնալ, տճ. վազ կէլմէք կամ կէչմէք)։

Նոյն کذشتن է որ ապահովապէս տուած է պհ. کشت (gesht) ձեւը, յորմէ برکشتن նոյն ընդ برکذشتن.ի։

Եւ այս كشتն է որ տուած կը կարծեմ մեր “ժեշտ„ը, օր. [Pahlavi] = պ. frazēšt (վերադարձ). ինչպէս նաեւ միւս ընտիր արմատ “կեշտ„ը յորմէ “պարկեշտ„ (بركشت), այսինքն հրաժարող աւելորդ տենչերէ, պիտոյքներէ եւն, այս է չափաւորութիւն, բարեխառնութիւն որ երբեմն մինչեւ ժլատութեան կը զառածի, ինչպէս Փարսի գրուածքի մը մէջ այս օրեր աչքիս հանդիպեցաւ ուր հին մատենից կորուստը ողբալով կ'ըսէ

از بركشتكى زمان

“Ժամանակի ժլատութենէն„։

Շատ գեղեցիկ, հեշտալուր եւ միանգամայն բեղմնաւոր արմատներ են ասոնք, մանաւանդ ժեշտը յորմէ կրնանք ընտիր շարք մը կազմել ախորժ եւ կիրթ ճաշակով, օր.

[Pahlavi] = աշխարհի հրաժեշտ տուած։
[Pahlavi], [Pahlavi], [Pahlavi], [Pahlavi],
[Pahlavi], [Pahlavi], [Pahlavi], [Pahlavi],
[Pahlavi], [Pahlavi], [Pahlavi],
[Pahlavi] եւն, եւն. եւն։

Հրահանգ — պհլ. prahang կամ parhang, նպ. فرهنك, արաբաձեւ فرهنج յորմէ فرهنجيدن որ եւ فرهيختن (ուսուցանել, հրահանգել), ասոր եւ դերբայքս فراهيخته, فراخته եւ فرهيخته (ուսեալ, վարժեալ, հրահանգեալ)։

Վերլուծաբար

فر = վեր, վերայ = հրա,
هنك = ուշ, խրատ, հանճար, ըստ միաբան վկայութեան պ. բառագրոց։

Որով բառը բուն հայացի կազմով պիտի լինէր “վերահանգ„, իբր վերահասութիւն, վերաճանութիւն կամ վերծանութիւն եւն։ Այլ արդի ձեւին մէջն ալ կանոնազանցութիւն չկայ, քանի որ f = h սովորական ընթացքն է փոխանակութեան (fra = հրա)։

Հրաման — պհլ. framân, հպ. framâna, նպ. فرمان, բայ فرمودن (հրամայել), فرمايم (ی) = հրամայեմ եւ բարդութիւնքդ فرماندار (հրամանատար, կամ պահլաւօրէն՝ հրամատար), որ եւ فرمانده (farmandah) = հրամանատու, فرمان.بردار = ընդ հրամանաւ, հրամանատար (կրաւորաբար)։

Հրապարակ — պհլ. parvar, farvar, fravar, նպ. فروار կամ فرواره որուն հետ կը համեմատէ Հ. Պ.ին։

Վերլուծաբար

Far (فر) որ եւ فرا (fara) մի կրճատ ձեւն է فراز ի եւ մեր “վերայ„ կամ “վերոյ„ին կը պատասխանէ՝ ըստ պարագային։ Կ՚ըսուի, զ. օ. فرارسيدن = ի վերայ հասանել, فرارفتن = ի վերայ գալ, հասանել, մերձենալ եւն։

Var ը բուն արմատ եւ կը նշ. շուրջ փակեալ ընդարձակ վայր, հոյակապ ընդարձակ սրահ, վերնատուն, ժողովատեղի, ատեան,

*ճիշդ ինչպէս մեր մէջ “հրապարակ”ին յայտնած միտքերը.*

*“Եւ զինուորքն տարան զնա ի ներքս ի գաւիթն ուր հրապարակն էր”* (*Մարկ.* *ԺԵ*, 16)։

*“կամ արարէք բան առ բան նամակիւ պատասխանի, եւ կամ արկէք ի դուռն եկայք, յանդիմանն լերուք մեծի հրապարակին”* (*Եղ.*)։

*Մեր բառին ծայրի -ակը ածանց մ'է որ բառին արմատին հետ գործ չունի, ուրեմն բուն բառը կը ներկայանայ՝ հրա-վար = fra-var, կրելով սովորական փոխանակութիւնները*

$p = f = h$ *եւ* $b = v$։

*“Հրապարակ”ը միակ բառը չէ ուր պահուած լինի պհլ.* var (= *պար*) *արմատը, “պարակ”ն ալ ճիշդ նոյնն է, ինչպէս նաեւ “փարախ”ը։*

*Աւեստայի մէջ* (Vendidad, Fargart II) *Ահուրամազդա Եիմային*[1] *կը պատուիրէ կենդանեաց համար յատուկ տեղեր պատրաստել զոր* *fravâr pîrâmûn fravâr* *կը կարդանք, այն է “հրապար(ակ) շուրջ զհրապար(ակ)աւ”, իմա՛ գաւիթ շուրջանակի փակեալ,* enceinte close de toutes parts (Hr.)։

*Ի՞նչ է պարակ եւ փարախը եթէ ոչ տեղի ուր հօտը կը մակաղուի, այսինքն կը փարախի*

---

[1] Եիմա կամ Յիմա Արիա-Երանեանց նախաստեղծ մարդը՝ Ադամն է։

եւ կը հանգչէ՝ այսինքն կը դադրի (պառկիլ)։ Աբ.ը որոյ բնագրաց ճշդութիւնը շատ տեղեր դիտեր եմ, հոս ալ հիանալի մերձեցում մը կ'ընէ. "ուշխուրթ բակ, փարախ" սահմանելով "պառակ"ը։

Նպ. خراف ալ կայ որ ընդարձակ, արձակ, համարձակ կը նշ. որ ինքն ալ պհլ. varakի մի այլազանութիւնը կ'երեւի։

Հ. Պ.ին համեմատած فراهم ը հոս հիմ չունի, քանզի ժողովել տաւաղել չնշանակեր, այլ միմեանց վրայ դիզել, բարդել.

فرا = ի վերայ
هم = համ (տառաբար)

բայց հոս միմեանց նշանակութեամբ առնուած, ըստ այսմ կ'ըսուի باهم (ի միասին), روهم (միմեանց վրայ), եւն։

Չեմ ալ կարծեր Պ. Հ. Աճառեանի հետ թէ կովկասեան փոխառութիւն մ'եղած ըլնի մեր բառը վրաց "փարա"ի հօտ նշանակելուն հիմամբ, զի փարախը հօտը չէ, այլ տեղին, հանգրուանը ուր հօտը կը մակաղի, զոր خراف ը միայն կու տայ իւր բովանդակ ընդարձակութեամբ իմաստի։

Կրնանք շատ շատ ընդունիլ որ կովկասեանն ալ մի եւ նոյն Արիական աղբիւրէ բղխած ըլնի։

Հրասախ որ եւ հրասխ կամ հրասանգ — պհլ. frasang, նպ. فرسنگ կամ فرسخ։

Հրեշտակ որ հրեշտակ ալ կը տեսնուի գրչագրաց

մէջ — հպ. *fraišta*, պհլ. *frēštak*, սնս. *prēšayati* (Hb.), նպ فرشته։

Հոս միանգամ եւս տեղն է յիշելու որ մեր բառերը նոր արդի պարսկերէնի հետ համեմատելը, ինչպէս սովորաբար կ'ընեն, սխալ է, քանզի յետ Սասանեան շրջանի յորում տիրապետող էր պհլ.ը, լեզուին յետսագոյն փուլերուն մենք այնքան ստիպողականութեամբ հետեւած չենք։ Թարգմանչաց դարուն մէջ ինչ որ հաստատուած (fixé) է լեզուին մէջ՝ այն մնացած է, համապատասխան ճիշդ պհլ.ին կամ զն.ին կամ հնագոյն պարսկերէնին։ Յետին դարերու մէջ երեւցած հայապարսիկ բառերն ալ դարձեալ հին շրջաններու ցոլացումներն են։ Անոր համար է որ նորագոյն համեմատութիւնները այնքան շեղումներ հեռացումներ կը ցուցնեն, մինչդեռ հին ձեւերը ուղղակի եւ գրեթէ տառ առ տառ կը գրկեն հայ համազօրները։ Այսպէս՝ կը տեսնենք որ մեր “հրեշտակ„էն բաւական հեռու է նպ. فرشته, մինչ պհլ. freshtakը բացարձակապէս նոյն։

Գալով բառին կազմին, իրաւացի կը գտնեմ فرهنگին այն դիտողութիւնը թէ فرشته եւ فرسته մի եւ նոյն բառերն են եւ առաքեալ կը նշանակեն, յորմէ فرستاده, ի բայէս فرستادن = առաքել, կամ ճիշդ համարժէքով՝ հրեշտակել։

Այս մտօք է որ թէ՛ պարսից եւ թէ՛ մեր մէջ “հրեշտակ„ը իբր յԱստուածուստ պատ-

գամաբեր, առաքեալ Նշանակութիւններն առած է։

دبستانի մէջ կը կարդանք որ մինչ Զարադուշտ զԳուշդասպ (Վշտասպ) արքայն իւր դենին կը հրաւիրէր, չորս հրեշտակներ, Բահման, Արտաւահեշտ, Խորդատ եւ Ատր Գուշասպ, սպառազինեալ եւ ձիաւոր երեւցան Արքային եւ ըսին

ما فرشته وفرستهٔ یزدانیم

"Մենք յԱստուածուստ հրեշտակեալ հրեշտակներ ենք"։

Պարսիկ գրագէտներէն ոմանք ուզած են هشته پر մեկնել,

پر = փետուր
هشته = ձգած, ի բայէս هشتن

իբր՝ թեւ կամ փետուր ձգած, բայց անիմաստ եւ անտեղի է։ Մեր Հ. Պ.ին ալ ասոնց հետ մոլորած է پر (փետուր)ով մեկնելով։

Ամենէն լաւ մեկնութիւնն ինձ կը թուի պհլ. كتاس پر յօրինուածութիւն մը իբր դուշտակ, դուրշտակ, այսինքն Ահուրամազդայի առջեւ հանապազ ի սպասու կեցող Ոգիք. գաղափար որ հրեշտակութեան պաշտօնին հետ շատ քաջ կը յարմարի եւ միւս կողմէն հրէշտ, դուրէշտ եւ դուշտ ձեւերն ալ կը կապակցէ։

Հրովարտակ — պհլ. fravartak։

Հրուշակ — պհլ. *frôshak*, նպ. فروشه , افروشه, ար. حلوا ։

Հրպետ — զն. *aδt'ra-paiti*, պհլ. *aîrpat*, նպ. هیربد որ է Հրպետ կամ ատրպետ կամ ատրպատ. զի *aδt'ra* Աւեստական լեզուով հուր կը նշ. եւ տէրը նորա ադեակն է։

Իսկ *paiti* նախադրիւն է *pati* եւ նպ. بد որ մեր պետն է։

Որով Հրպետը կը նշ. պաշտօնեայ հրոյ, եւս եւ ուսուցիչ եւ վարդապետ։

Ոմանք վերջերս "Հայրապետ"ին հետ նոյնացնել փորձեցին "Հրպետ"ը, սակայն հաստատուն հիմ մը չտեսանք մենք այդ փորձին մէջ, զի հուրի եւ հայրի մէջ աղերս մը չերեւիր եւ բառին կրօնական իմաստն ալ կ'ընդվզէ, ինչպէս ուրիշ առթիւ ալ ըսած ենք։

Հօրան — Աւեստական բառ, *ûra* = troupeau (Hr.), ինչպէս եւ առ մեզ այծի կովու եւ ոչխարի երամակ։

# Ձ.

Ձագ — տ. ծագ։

Ձաղկ — հին արմատ որոյ ցոլացումները կը կը տեսնենք Լիթ. *žalga* եւ գոթ. *galga*ին մէջ (Hb.)։

Հ. Պ.ին "Ծաղիկ"ին վրայ կը բռնանայ "ի հակառակէն" յոգնը տալու։

Ձետ (պոչ) — մնս. *had* եւ զն. *zaδah* (Hb.)։

Ձերբազատ — հեղինակաց մէջ լաւութիւնը

բացարձակ է այս բառին վրայ, չեմ գիտեր ուշադրութիւն գրաւած չէ, թէ ոչ յարմար մեկնութիւն մը գտնուած չէ։

Նոյնպէս չեմ գիտեր թէ ինչ թելադրութեամբ մեր մէջ միշտ “ազատագրուած գերի„ի իմաստով առնուած է ամենէն ծանր եւ զգուշաւոր գրիչներէն անգամ։

Կարծեմ թէ “Հերբ„ին եւ “Հեռք„ին մէջ տեսնուած նմանութենէն է այս շփոթութիւնը, որպէս թէ ըսուէր “Հեռքէ ազատ թողուած գերի„. բայց ուղիղ չերեւիր ինձ այդ հայեացքը։ Ես աւելի բանաւոր կը գտնեմ “Հերբ„ին մէջ պ. سرو ը տեսնել (Նոճի) որ պ.ի մէջ միշտ آزاد ին հետ մէկ տեղ կը գործածուի (سرو آزاد) եւ ազատ անձնան եւ արձակման օրինակ կ'առնուի։

Եւ այս բարդութեան տեղի տուողը Նոճիին ուղղաբերձ դէպ ի վեր գլուխ քաշել եւ պտղաբերական փոփոխմունքներէ զերծ լինելն է, ինչպէս մի եւ նոյն միտքը Սօսի համար ալ կ'ըսուի سوسن آزاد կամ Ազատ Սօս։

Բանաստեղծութեան մէջ մանաւանդ, չկայ բարձր հասակի եւ անկախ նկարագրի պատկեր մը ուր անմիջապէս առընթեր չտեսնուի ազատ Նոճիի նմանութիւնը։

Հաֆըզը գրեթէ մեկնաբանօրէն կ'ըսէ.

سر بآزادکی ازخلق بدارم چو سرو

“Գլուխս ազատ համարձակ ամբոխէն վեր կը բռնեմ որպէս ազատ Նոճի„։

Եւ Ֆերդուսի՝

بسي برنيامد بدين روزكار
كه آزاد سرواندر آمد ببار

“Այն ժամանակէն յետոյ շատ չանցաւ որ այն ազնւո նոճին պտուղ տալ սկսաւ„։

Այնչափ միաբան եւ միահամուռ է համաձայնութիւնը պ. հեղինակաց մէջ այս մասին որ երկմտել տարակուսիլ կարելի չէ։

Շատ մեծ գոհունակութեամբ տեսայ որ Աբ.ը միակ պարզ “ինքնագլուխ„ մեկնութեամբ բաւանակացեր է առանց ուրիշ տարտամ եւ երկբայելի աւելադրութեանց, ինչ որ նոր ապացոյց մի եւս կու գայ յաւելուլ նոյն ընտիր աշխատութեան մէջ տիրող ընդհանուր ողջմտութեան։

Վերջացնելու համար աւելցնենք որ “ձերբազատ„ը միակը չէ իւր տեսակին մէջ, կան ուրիշ բառեր ալ որ նոյն դիտումով նոյն կազմը կ’ընծային՝ ի հաստատութիւն մեր բացատրութեան։

Մ. Կաղանկայտուացիի մէջ, զ. օ. կը տեսնենք “ბეცდაღაფ„ որ յայտնի պ. آزادمرد է (ազնւո մարդ)։

Ունինք դարձեալ “ჯეღოღაფ„ կամ “ჯე-ლოღაფ„ = արու ձի՝ կապէ ազատ եւ ընտիր, տճ. քէօհէյլան (Աբ.)։

Ասոնք տարակոյս չեն թողուր որ “ձերբազատ„ին վրայ շփոթութիւն մը եղած է, աղբիւրը ծածկուելով որ, ինչպէս են ազատ

մարդ եւ ազատ գել (քի-հէյլ-ան), նոյնպէս ալ է սէրվ-ազադ կամ ազադ-սէրվ (آزادسرو)։

Տառադարձութեան մէջ բուն հայացի Յ եւ Բ տառերուն համդիպակացութիւնը ՏԻ եւ ՍԻ քիչ օգնած ըլլալու չէ այս շփոթութեան, այլ սակայն ուրիշ շատ տեղեր ականատես ենք նոյն օրինակ համդիպադրութեանց (دراز = տարած, شاخ = ցախ, باز = բաց, azi = այծ, եւն)։

Ձի — Ձայնիւ եւ գրչութեամբ որչափ որ իրարմէ տարբեր երեւան, վերլուծութիւնը կը ցուցնէ որ "ասպ" եւ "ձի" իրարու հետ կը նոյնանան։ Եւ ահա ինչպէս.

Զն. aspa կը նշ. ասպ = ձի, նոյն եւ հպ.ի մէջ որ կարճելով եղած է պհլ. asp, այն է՝ նպ. اسب։

Դիտելի է որ սկզբնատառը հաստատուն չէ, կրնայ ալ ինալ, ինչպէս շատ անգամ կը պատահի, եւ կ'ըսուի հաւասար իրաւամբ اسپهبد ալ سپهبد ալ, ինչպէս եւ առ մեզ՝ ասպահապետ եւ սպայապետ։

Արմատին քն ալ էական եւ անշարժ չէ. կրնայ սի փոխուիլ, ինչպէս շատ պարագաներու մէջ եղած է, եւ այս ձեւը, կրնանք ըսել, աւելի յաճախադէպ է քան քովը։

Հին açbabaraն տուած է նախ açvabara եւ սա խտանալով՝ açvar ձեւն առած է պհլ.ի մէջ, որ ապա նպ.ի մէջ բառասկիզբ aն ալ ձգելով կը վերածուի պարզ çvar (سوار)ին որ մեր "ձիաւոր"ն է։

Թօթափենք հիմա ասկէց ալ իւր ծայրի ar ածանցը՝ կը մնայ պարզապէս չա (سو), միակ հաստատուն կմախքը բառին։ Ասկէ մեր "ձի"ին անցնելու, ինչպէս կը տեսնուի, մեծ դժուարութիւն մը չմնար, պարզ բարակ կամուրջ մը, միջին եզր մը պէտք է։ Այս միջին եզրը կ'ընձեռէ մեզ ահա պհլ. "սուսիա" տիպը զոր Կառնամակին մէջ տեսանք եւ ծանօթագրեցինք (ծան. 38), եւ որ ուրիշ բան չէ, բայց եթէ խտացումն աւելի սաստկութեամբ նոյն س ձայնի, կամ նորա կրկնակը։ Արդարեւ եթէ փորձուի ոք արագ արտաբերել այս պհլ. կազմը՝ պիտի տեսնէ որ արգելիչ տարրերքն ինքնին կը թօթափին եւ մի միայն ••ւ ձայնը լսելի կը մնայ։

Ահա այս վերջին հանգրուանն է որ կը ներկայացնէ մեր բառը, կրկին ••ի ոյժը տալ փորձած ըլլալով նախապէս կրկին տառերով ք եւ ղ, ըստ որում "դղի" կերպ մ'ալ ունինք, նոյն տիպէն, եւ յետոյ միացուցած միակ ձ հայ տառին մէջ՝ ձի։

Մեր այս ցուցմունքին մէջ, ինչպէս ուշադիր ընթերցողը կը տեսնէ, կամայականի՝ ենթադրականի ձգուած բան մը չկայ, այլ բոլորն ալ դրական եւ իրական փաստերու վրայ հաստատուած է։

Ձիւն-որու հետ կապել պարտաւոր ենք նաեւ Ձմեռնը զի մի եւ նոյն արմատէ բղխած կ'երեւին երկուքն ալ, այն է մնս. hêman, զն. zimaէն որ յոյնին χιών եւ χειμών անցած է (Hb.)։

Արդի պ.ի մէջ ալ زم (zim)է այս արմատը յորմէ زمستان (zimistan) = ձմեռն։

Zimի եւ "ձիմ"ի նոյնութեանը մասին խօսք չկրնար ըլլալ, այլ թէ ինչ է մեր "եռն" վերջաւորութիւնը որուն մէջ Եր էական ալ չերեւիր, այլ ըստ տեղւոյն եւ դիւրաձայնութեան՝ կրնայ —ի ալ փոխուիլ, օր. ամ-առն։

Յունական χειμερι՝ ազդեցութեամբ արդեօք Հայ Ե—նը գոյութիւն առած է թէ زمهرير (zemherîr) պարսկականին որ կարի ցուրտ ըսել է, ըստ պ. բառագրոց,

زم (zem, zim) = ցուրտ
هرير (herîr) = կարի յոյժ։

Եթէ ընդունինք որ յունականէն ազդուած է Հայ բառը, ապա հարց կը ծագի թէ ինչ կ'ըսէին ուրեմն մեր նախնիք այս փոխառութենէն առաջ։

Հաւանականութիւնը կը մնայ ուրեմն هريرزին զոր եւ թարգմանաբար ալ ունինք ի "կարաձմեռն" որ յոյժ եւ սաստիկ ձմեռ ըսել է։

Մեր, ձեր, զեր, ծեր, ծոյլ, զէմիյն, եւն. եւն չեղջումներով այնպիսի լաբիւրինթոս մը շինած է Հ. Պ.ին որ հետեւիլ կարելի չէ։

Հ. Ս. Տ.ը բառին արմատը ուղիղ կը մեկնէ ըստ եւրոպացւոց (զիմ, զիմա, հիմա, եւն), այլ կը լռէ բոլորովին վերջին մասին վրայ։

## Ղ.

Ղենջակ որ եւ Ղանջեակ — Թուփ լինել պ. لنكك (longag) զոր առջեւնին կը կապեն արհեստաւորները։

Ղող(եմ) — տ. Լող։

## Ճ.

Ճախր — զն. ċakhra որ պհլ.ի մէջ ալ կը պահէ իւր կազմը անխանգար, իսկ նպ.ի անցած ժամանակը տառերուն կարգը կ'այլայլէ եւ կը ծագի ċarkh (چرخ)։ Մեր բառը հին ուղիղը պահած է անվթար։

Ճախարակ<br>Ճախրակ } պ. چرخك (ċarkhak)։

Ճակատ — նպ. چكاد։

Ճակնդեղ — چكندر։

Ճահ — جا ، جاى ، جاه = տեղի, դիրք, յորմէ

بجا = իճահ,

بيجا<br>نابجا } = անճահ, անտեղի։

Ճահիճ, ճախիճ, ճախճախուտ — պ. چاه = խոր, փոս, եւն. (Հ. Պ.ի)։

Ճամբար (բոլորակ, շրջանակ) — چنبر։ Երեւի սոյն այս բոլորշի ձեւին պատճառաւ է որ բառը մեր մէջ “բանակ„ իմաստը առած է, զի պայտաձեւ կազմածը ճակատամարտի tactique ներէն մի կարեւոր ձեւը համարուած է։

Ճամուկ — պհլ. jâmak, նպ. جامه = բանուածք, կիտուածք, զարդ, զարդարանք։

Ճանապարհ — Մազդէական հաւատալեաց մէջ կամուրջ մը կայ յերկրէ յերկինս ձգուած որոյ վրայէն պիտի անցնին մեռելոց հոգիները (Մահմետականաց صراطը)։

Խեղճ մեղաւորներուն համար ածելիի շեղփին պէս սուր է, իսկ արդար հոգւոց համար լայն եւ հանգստաւէտ։ Սորա վերի ծայրը անդրաշխարհեան սահմաններուն մէջն է, իսկ վարինը հաստատուած է Ալբուրզ լերանց ամենաբարձր կատարին վրայ զոր *ċakâdi-Dâitîk* կը կոչեն զոր pic du jugement կը թարգմանէ Casartelli։

Մենք թարգմանելու պէտք չունինք, բաւ է արտագրել "Գագաթ դատի"։ Այս սոսկալի կամուրջն է միակ ռահը որմէ պիտի անցնին հոգիք՝ հասնելու համար իւրաքանչիւրն իրեն կայանը, ըստ իւր աստի կենաց քրտարին։

Այս կամուրջին *ċinvar* անունը կու տան որ պհլ. ընթերցուածով *ċinavar* ալ է, *ċanavar* ալ։ Պ. Բառագիրք جینهور կը դնեն։ Անտարակոյս մեր "Ճանապարհ"ն է սա։

Հ. Պ.իին ցուցցած جیرը բոլորովին անյարմար է եւ պողոտայ եւ տրանզիտ ալ չնշանակեր, այլ՝ պարտէզ։ Զգիտեմ ուստի առած է այս նշանակութիւնը որ ես չգտայ։ Մի գուցէ چنورի մի խանգարումը լինի կամ թէ տպագրական սխալ։

Ճանգ, ճանկ — պ. چنك:

Ճանդան } (հոտաւէտ մի խոտ (սանտալ) —
Ճանդի } սնս. čandana, նպ. چندان:

Ճաշ — սնս. ċash, նպ. چاشت:

Ճաշակ — սնս. čašaka, պհլ. čašak (Hb.), նպ. چشنی (ċashni), յորմէ چشیدن = ճաշակել:

Ճապատիմ — Սողնոց՝ ճճեաց՝ որդուց կծկիլ եւ ձգուելու շարժումներուն կ՚ըսուի մեր մէջ.

"Իսկ մայրն նայեցեալ տեսանէր աչօք իւրովք օձք սպիտակք զի պատեալք էին զգահոյիցն ոտամբք, եւ ճապատէին ի վերայ պատանեկին Պապայ։ ...գիտաց թէ նոքա են որ ի կերպարանս օձիցն ճապատէին զորդովն իւրով" (Բուզ. ԽԳ):

Պ. چپیدن ը կը թուի սա որ սակայն սողնոց միայն յատուկ չէ, այլ ամէն տեսակ եւ ամէն ուղղութեամբ շարժում կը նշանակէ, թէպէտ եւ սկզբնաբար աջէն դէպի ձախ (چپ)ը մեկնակէտ եղած է ինչպէս կ՚ըսեն պ. բառագիրք:

Ճապուկ — چابك:

Ճատրակ — պհլ. ċatrang որ շատրինջ, սատրինջ ալ կը լսուի զոր արաբը شطرنج ըրած է:

Ճար (հնար, ելք, դեղ, դարման) — պհլ. ċârak, նպ. چاره, յորմէ ناچار = անճար, a-ċarak = անճարակ:

Ճարակ (ուտելու խոտ եւ արօտավայր) — զն. ċâr, յորմէ պհլ. ċartano (ճարակել), նպ. چرا եւ բայ چریدن:

Ճարպ — պհլ. եւ նպ. چرب:

Ճարտար — զն. ċarətar (Hb.), նպ. چاره‌دار = ճարահնար։

Ճարտուկ (բծաւոր ճերմակ ձի) — նպ. چرده (ċardəh) կամ چرد կը նշ. Թխորակ առ հասարակ, մանաւանդ կենդանեաց եւ ի մասնաւորի ձիու եւ ջորիի համար կը գործածուի։

Ճեղանակ — چلنك (ċalank)։

Ճեմ — նպ. چم (ċem), բայ چمیدن = ճեմել սէգ եւ պարծ քալուածքով։

Ճեմիշ — Պ. բառագիրք چمش (ċemsh) եւ چشم (ċeshm)ը նոյնանիշ կը դնեն, հետեւաբար եւ چمشه եւ چشمه ուստի ջուր կը բղխէ։ Նոյնպէս եւ առ մեզ՝ այն Թէ աչք եւ Թէ աղբերակ կը նշ.։

چمش ի եւ چشمه ի սոյն դաշնակցութիւնը, ջրոյ գաղափարը միացնելով բնական պէտքի մը հետ, կը ցուցնէ որ, հին ատեններ, երբ դեռ արդի յարմարութիւնները չկային, ջրեզերքները աւելի կ'ընտրուէին ի պէտս, ինչպէս ցայսօր ալ կը տեսնուի բացաբնակներու մէջ։

Ճետ — Առաջին բառը որ մտքի կը ներկայանայ՝ ար. جن է, ըստ ձայնական նմանութեան, սակայն մեր բառը ասոր հետ բնաւ առնչութիւն մը չունի եւ չէր ալ կրնար ունենալ։

“Ճետ„ը մի տարբեր ձեւն է “զատ„ի զոր տեսանք ծան, ծն, ծին եւ զատ (պայազատ, հարազատ) բառերու առթիւ, եւ կը նշ. պարզապէս՝ ծնունդ, սերունդ, եւն. եւ աղ-

բիւրն է զն. zât'a, պհլ. zâta, √zan = ծին։ Նպ.ի մէջ ալ շատ գործածական է زاد ար-մատը՝ ծնունդ նշանակութեամբ։ Ուստի երբ հյ. կ'ըսենք՝ "անազատ", իմանալի է ոչ թէ այն որ ազատ՝ անկախ չէ, այլ նա որ անազգի, վատատոհմիկ է (بدتخمه = վատ տոհմակ). ինչպէս եւ հակառակը՝ زاده = ազգի, տոհ-միկ, ազնուական. ուստի եւ شاهزاده, بكزاده, اصلزاده, եւն։ Կամ յոռեգոյն մտօք حرامزاده, بدزاد զոր հ——ղ—— պիտի ըսէինք՝ հ——-——ղ—— տրոհութեամբ, որուն համար սակայն "ան-ձետ" արդէն յօրինեալ բառն ունինք = ցածազգի, վատ ծնունդ։

Այս ամենուն մէջ, ինչպէս կ'երեւայ, ծէ— եւ ղ— զոյգ կ'ընթանան եւ ազգ, ցեղ, ծնունդ, սերունդ նշանակութեամբ, ինչպէս "անձիտեմ"ն ալ կը վկայէ, որ ազգաւ ցեղով ընջել բառնալ կը նշ.։

Ճերմակ — Նպ. چرمه (ċermah)։ Պ. բառագիրք ասով ձի կը հասկնան ընդհանրապէս եւ ի մասնաւորի՝ սպիտակ ձի։ Մեր մէջ ալ "ճեր-մակ"ը ձիու համար մասնաւորութիւն մ'ու-նեցած է միշտ։

Ճանճաճերմակ
Ճանճկէն } սեւ ու ճերմակ։

Ճիւղ — Նպ. چوغ, چيغ։

Ճնճղուկ — چغك (ċuγuk) — Գ. Դ.։

Ճոպան — Փոկ կամ պարան զոր ի հեռուստ նետելով թշնամւոյն՝ կը փաթթեն եւ կը քաշեն։ Այս էր թերեւս Ալանաց փափուկ

օրիորդին մէջքը այնչափ ցաւցնող "շիկափոկ պարան„ը արի Արտաշէսէն նետուած (Խոր.)։

"Ճոպան„ին մի այլ ձեւն է նաեւ "չուան„ իբր "չօ-ւան„ յօրում -ը կը տեսնենք դարձեալ թաւացած եւ ղի դիմացը ելած։

*Ծուռակ* } — պ. چرّه (ċurra) = կենդանեաց
*Ծուրակ* } եւ թռչնոց, մասնաւորապէս բազէի արուն։ Կ'ըսուի باز چرّه = արու բազէ։

*Ծրագ* — նպ. چراغ։

*Ծօշ, Ճօշան, Ճաւշ, Ջաւշ* — նպ. جوشن (jaushan) = կուրծքի զրահ, լանջապանակ։

## Մ.

*Մազոգ* (ռմկ.) — պ. مکوك։

*Մազդեզն* — զն. *mazdayaçna* զոր արդիացընելով Փարսիները՝ مازديسن կամ مزديشن կը գրեն

Եւրոպացիք քիչ յօգնած չեն մեկնելու այս բառը։ Ոմանք կը տրոհեն

*maz* = մեծ
*da* = տուիչ, արարիչ,
*Yaçn* = (եզն) պաշտօն։

Այլք կը բաժանեն

*mazda* = intelligence suprême,
*Yaçn* = culte.

Կը զարմանամ թէ ինչպէս Հյ. "մաստ„ը յիշած չեն որ վճռողաբար կը կտրէ դատը յօգուտ վերջնոց։

Գործածականը թէեւ ձևոք չէ "իմաստ" է, սակայն ին բառին էութենէն չէ, վերադիր է եւ ող խումբն ալ փոխանակելի է ցով, ինչպէս ձևոց տիպը կը ցուցնէ։ Արդ՝ ձևոցը գիտենք որ երկրորդ բայարմատն է ձևանամին որոյ առաջին եւ ուղիղ ժամանակներուն արմատն է "իման", այսպէս

| | |
|---|---|
| իման-ամ | իմաց-այ |
| — -այի | — -այց |
| — -ալի | — -եալ |
| եւն։ | եւն։ |

Իսկ ինքը ձևանը ուրիշ բան չէ, եթէ ոչ խոլ աճած "ման", համազօրը զն. manyaḟ (√man) որ կը նշ. խորհուրդ, միտք, իմացում, եւն. եւ, ինչպէս գիտենք, առաջին օղակը կը կազմէ Աւեստական եռօղ շղթայի

| | | | |
|---|---|---|---|
| | man, | gub, | varz |
| յորմէ | منش، | کبش، | ورزش |
| | խորհուրդ, | բան, | գործ։ |

„Man“ը համազօրդ մի եւս ունի „mat“ (مت) որ մեր "միտ(ք)"ը կ'ընդգրկէ եւ նոյնպէս առաջին կը բազմի երեակի ակումբին մէջ։

Matի եւ manի շուրջը բոլորուած են ուրեմն բոլոր միւս պէսպիսութիւնները, իմաստ, իմաց, իման(ամ), միտ(ք), մուտ (խելամուտ, հ-մուտ), եւն։

Գալով Yaçnի, սա թէ եասն կամ եանէ եւ թէ եզն, զի կ'ըսուի یزن، یسن، یشن (եզն, եսն, եզեշն) որ պաշտօն կը նշ.։

«Եզն»ը բուն հին նախնեաց օրինօք տառաշրջելով պէտք էր յազն կամ յասն ըսել. աս ձայնը նախնիք յաղով տուած են, եզն ը բարդութեանց պահելով, «մազդեզն»ի հաւատարմութիւնը չկորսնցնելու համար։

Այս یشتէն պ.ի մէջ երկրորդ բայարմատ մ'ունինք یشت որ բուն արմատ է եւ բային Բ. պատկերը կը խոնարհէ, ինչպէս այս ընդհանուր օրէնք է եւ առ մեզ։ Բայն է ուրեմն یشتن = պաշտել։ Այս երկրորդ տիպը նախնիք «յաշտ»ով տուած են, բայց «յաշտեմ»։

Սխալ է ուրեմն Աշոյշտ ընթերցուածը, ինչպէս ուրիշ առթիւ ալ մատնանիշ ըրած ենք, այլ պէտք է յաշոյշտ, զի Ցն նախդիր չէ, այլ էութենէն է բառին։

«Մազդեզն» ուրեմն կը նշ. պաշտօն կամ պաշտող գերագոյն իմաստութեան։ Այսպէս կ'ըսուի

دینمازدیسنان = դենիմազդեզն կամ Մազդեզանց դեն։

*Մաւզկաւալ* — Պալաթցի Դպիրը Թեղեկ մը կը դնէ զոր սակայն կարելի չեղաւ ինձ գտնել։ Մերժելու ալ իրաւունք չեմ տեսներ, քանզի պ. բառագիրք այնչափ թերի եւ ռիշդ են որ անոնց լռութիւնը բառին չգոյութեան ապացոյց չկրնար համարուիլ։

*Մալ(եմ)* — պ. مالیدن, √مال, յորմէ مالش = տրորում, մածում։ Անկէց է ծեփիչներուն այն ծանօթ գործիքին անունը ماله (mâlah)։

*Մած* — սնս. mastu, նպ. ماست։ Հոս ալ (st) խումբ մը բուն Հայ տառի մը (ծ)ի մէջ խտացած mast = մած, յորմէ մած-ուն, մած-նում, մած-անիմ, եւս եւ

*Մաճառակ* իբր [illegible], ինչպէս ուղիղ նկատած է Հ. Պ.ին։

*Մակոյկ* (Նաւակ) — Ջուլհակի կկոցին եւ նաւակին ձեւական նմանութիւնը Հ. Պ.ին կը թելադրէ մագոգին հետ համեմատել (պ. مکوک)։ Հաւանական է։

*Մահ* — զն. maret'ra, √mar, սնս. mroya (Hb.)։ R = H փոխանակութիւնը հազուագիւտ չէ, ինչպէս ուրիշ առիթներով ալ պիտի տեսնենք, ուստի mar = մահ։

Բաց աստի, առանց փոփոխութեան ալ պահուած կայ նոյն արմատը "մեռ"ին մէջ, օր. մեռանիմ եւ իւր բղխումները։

*Մահ(իկ)* — տ. Ամիս։
*Մաղ* — զն. maγa = ծակ։
*Մաճ* — պ. آماج = երկաթ որով հողը կը պատռեն, կը հերկեն։ Յաճախակի գործածութեամբ սկիզբի (ա)ն ինկած է մեր բառէն։

*Մամ* (մեծ մայր) — պ. مام։
*Մանանեխ* — տես Անանուխ։
*Մանուշակ* — պհլ. vanushak, նպ. بنفشه։
*Մայր* — տ. Հայր։

*Մանգ*, *մանկ* — Նպ. منگ կը նշ. խարդախութիւն, դաւ կամ աւելի ճիշդը ըսելով՝ նենգութիւն, զի նենգն ալ մանգէն տարբեր չէ, ինչպէս լաւ դիտած են Hb. եւ Հ. Պ.ին ալ, որ Վեցօրէից մէջէն օրինակ մ'ալ կը բերէ

"Որ ընդ միամիտ ընկերին նենգաւ եւ մանկաւ գնայցէ":

Նոյնութիւնը հոս բացորոշ է երկու ընթերցուածոց մէջ, Նով եւ Մով միայն զանազանեալ:

Նոյն արմատն է որ կը տեսնուի նաեւ խորամանգ(կ)ին մէջ

"Մանկաւորել" եւ "մանկաւորապէս"

ձեւեր ալ յայտնած է Հր. Աճառեան Տիմոթէոս Կուզի Հակաճառութեան մէջէն (Հանդ. Ամս. 1909, փետր., էջ 44..):

*Մաշ* — Նպ. ماش (մանր ոլոռ, տճ. պուրչաք):

*Մաշկ* — պ. مشك, յորմէ

*Մաշկապատճեան* | *Մաշկապերճան* | *Մաշկաւարզան* = մաշկով պատած վրաններ, *maškā parzēn* կամ — *čēn* (Hb.) որ Նպ. պիտի գար مشك پرزين (*mashk parzîn*) կամ — پرچين (— *parčîn*): Տ. եւ Խորան:

*Մատակ* (էգ ձի, զամբիկ, ճակ, ճայիկ) — պհլ. *mâtak*, Նպ. ماده ماده եւ مادیان: Ա՞յս է արդեօք Եղիշէի եւ Փարպեցւոյ մէջ յիշուած "Մատեան գունդ"ը:

*Մատիտակ* | *Մատուտակ* = մարախ կամ մարուխ ըսուած բոյսը:

Զարմանալի զուգադիպութեամբ պարսիկն ալ երկու նոյնահունչ բառ ունի, مهك (mahak) որ սօսի (سوسن) կը նշ., եւ ميك (mayak) որ ماخ (malaχ) կամ ملخك (malχak) կը նշ. որ է ժարախ (միջատը)։

*Մար* — պհլ. mar = չափ (mesure)։

*Մար* (օձ) — պ. مار, օր. Մարք եւ Մարասպան, իբր՝ օձք եւ օձաստան, զահրամար (ժահր օձի), բառ որ Պարսկահայոց մէջ շատ գործածական է հետեւողութեամբ պ. زهرمار յին։ Այս կարգէն կ՚իմանամ նաեւ հռչակաւոր բամբիշ Շամիրամը, զոր՝ չնայելով պատմական մթութեանց՝

Շահ-Մարան

կը վերլուծեմ՝ (Արքայ կամ Թագուհի օձից), որուն վրայ յատուկ վէպեր ալ կան Արեւելեայց մէջ։

Շատ նշանակալից են աս օձի վրայ յօրինուած զրոյցները՝ վէպերը եւ շատ մութ եւ շատ ճապաղ։ Մեծ Մեդիան (Médie) կը կոչուի առ մեզ Մարք (օձաստան)։ Մարաց թագաւոր կը լինի Աժդահակ ոմն որոյ անուանին մէջ կը գտնենք օձը (աժ, աժի), Աժդահակայ զարմը կը լինի "վիշապազունք„ (վիշապ = օձ), եւ մի Անոյշ Տիկին՝ մայրն վիշապաց։

Միւս կողմէն Պարսից Դահակ (ضحاك) արաբասեր իշխանին համար կը զրուցեն թէ երկու օձեր կը կրէր երկու ուսերուն վրայ,

առասպելաբար նշանակելով անշուշտ երկումսամոլներ կամ խղխայթեալ օձանման ելունդներ որոց ի դարման հանապազօր երկումարդկային զոհեր կը մատուցուէին, եւն. եւն։

Օձի պաշտաման արդիւնքն էին այս ամէն զրոյցներն առասպելներն (կենդանական fétichisme) թէ այլ պատմա-վիպական պարագաներ կան դեռ եւս անծանօթ, չեմ գիտեր։

Սա յայտնի է որ օձին շուրջը կը դառնայ այս ամէնը, Աստուածաշնչի դրախտէն սկսեալ։

Մարգ — նպ. مرغ (*margh*), յորմէ "մարգագետին" = պ. مرغزار (*marghazâr*), իբր چمنزار (*ċimenzâr*) = սիզաւէտ, դալարագեղ վայր։

Հայաստանցւոց բերանը յաճախեալ "մարագ"ն ալ որ չոր խոտ եւ յարդ պահելու տեղ կը նշ., սոյն այս "մարգ"ի մի այլ տարազը կ'երեւի։

Տեսնելով ար. مرج (*marj*) եւ syr. מרגא (*margã*) նմոյշները, հաւանականութիւն կը ծագի թէ սեմական լինի բառը, նա զի ճով է պ.ի մէջ ալ եւ ոչ ձով, սակայն զն. *mareγā* (Hb.) տիպը կը ցրէ այս ենթադրութիւնը, ի նպաստ պարսկին վճռելով։

Փոխառութիւնը հակառակ ուղղութեամբ եղած էր ուրեմն Արիականէն դէպ ի Սեմականը ինչպէս շատ ուրիշ օրինակներուն մէջ ալ կը ստուգուի։

Մարգարիտ — նպ. مروارید, յն. μαργαρίτης։
գժուար է հաւատալ որ պարսիկները իրենց իսկ ծովածոցին յատուկ մէկ արտադրութիւնը անուանելու համար Յունաց դիմած լինէին, մինչ հակառակն է բնականը։ Աւելի քան հաւանական է որ հին պարսկականին մէջ ալ գոյ էր բառը (margarid) եւ յետոյ սի փոխուած։

Մարդ — զն. mareta, հպ. martya, նպ. مرد (mard)։

Մարզ (գետին) — նպ. مرز (marz), յորմէ "մարզպան" (مرزبان) եւ "մարզպետ" = սահմանապահ։

Մարզ (կրթութիւն, վարժութիւն) — զն. marez։
Այն "մարզ"ին տարբերակները կրնան սեպուիլ "Մարձ" (մարձեմ) եւ "մուրց" (մրցիմ)։

Մարզանգոշ
Մարզանկոշ
Մարզանոն
Մարզգոշ
= Ականջ բուսած խոտը, բարդեալ ի մարզան (مرزن) = մուկ եւ գոշ, կոշ (كوش) = ականջ բառերէ։

Մաքի (էգ ոչխար) որ պ.ի մէջ ընտանի հաւուն սեփական է ماكیان։

Մաքս — مكاس (makâs)։

Մեխակ (ծաղիկ) — պ. میخك այսինքն փոքրիկ میخ (գամ) որոյ նմանութիւնն ունի արդարեւ ծաղիկը։

Մեծ — զն. mas եւ maz, պհլ. maç. նպ.ի անցած ժամանակը տը արդէն մեղմացած է ի հ՝



 

նա (մեհ), մինչ առ մեզ ծ միջինով փոխանակեալ։

Մեհեան — Միհր դից նուիրեալ տաճար, Միհրական (مهرکان), բայց իմաստը ընդհանրանալով՝ հիմա دار مهر (dar-i-mihr) կը կոչեն առհասարակ ամէն կրակատուն։

Շատ ձախող է Հ. Գ.ին ներշնչութիւնը երբ [illegible]ին կը դիմէ մեկնելու Մեհեանը։

Մեհեկան } — مهر արմատէն مهرکان այսինքն
Մեհեկի } Միհրական զոր مهرجان ըրած են Արաբք։

Սա 7րդ ամիսն է տարւոյն թէ Հայոց եւ թէ հին Պարսից, Միհր Դից նուիրեալ եւ յետ Նովրուզի յորում ի Խոյ աստեղատունն կը մտնէ արեգակն զոր եւ առաջին եւ մեծագոյն աշխարհախմբութեամբ կը տօնեն պարսիկք, սա երկրորդը կու գայ յորում ի Կշիռ կը մտնէ արեգակն եւ երկրորդ գիշերահաւասարը տեղի կ'ունենայ։

Մեհեւանդ — պ. مهوند (mahvand) այն է مهبند (mahband), կրճատը ماه بند (mâhband)ի = մահիկի ձեւեր ունեցող կանացի զարդեր. զոր "մահիկ" ալ կ'ըսենք։

Մեռ(անել) — տ. Մահ։

Մէգ — զն. maèg'a, √mig, պհլ. miznak, նպ. میغ (mêgh)։

Մէզ — զն. maeza, նպ. میز (mêz), میزیدن (միզել), میزگرو (mêz-grau) = միզագրաւ (մէզկապ)։ Տ. եւ Կոմէզ։

*Մէջ* — զն. *maidya*, պհլ. եւ նպ. میان, յն. *μέσος*, լտ. medius, —um, եւն: Շատ ճիշդ թարգմանութիւններ են ուրեմն méditerranée = միջերկրական, mésentère = միջընդերք, midi = միջօր(եայ), եւն:

*Մժեղ* | *Մժղուկ* } նպ. ի մէջ مكس (*magas*) կը նշ. ճանճ, զն. *mak'shi* որոնց հետ Hr. մեր բառն ալ կը յիշէ: Եթէ ստոյգ է, շատ չարչարուած ըլլալու է բառը մինչեւ այս ձեւը առնելը:

*Մի՛* (արգելական) — զն. *mâ*, յն. *μή*, պհլ. *ma*, նպ. مه (*mè*) որ սուղ م ալ կը գրուի եւ կը փոխանակէ շատ անգամ نه (*nè*) կամ ن, օր. مبند (*meband*) = نبند (*neband*) = մի՛ վանդեր (բանտեր): Նոյնպէս میازار (*meyâzâr*) = نیازار (*neâyzâr*) = մի՛ նեղեր, — مکش (*mekash*) = մի՛ քաշեր, եւն:

*Միհր* — զն. եւ հպ. *mithra*, պհլ. *mitro*, նպ. مهر = արեգակ, եւս եւ հաւատարմութիւն (ուխտի, խօսքի, եւն.), յորմէ զն. բարդութիւնդ *mithro-druj* զոր "միհրդրուժ" կրնանք հայացնել, իբր՝ ուխտադրուժ, ուխտազանց:

*Միշտ* — զն. *mishti*:

*Միտք* — զն. *maiti*, √*man*, *mati*, յն. *μῆτις*, պհլ. *mat* (տ. Մազդեզն):

*Մն-ամ* — զն. արմատ *man*, հպ. նոյնպէս յն. *μένω*, պհլ. եւ նպ. ماندن (√مان):

*Մոգ* — Աւեստական լեզուով *môg'u*, պհլ. *mag* կամ *magu*, նպ. مغ, որ *g* = *v* ի փոխանակութեամբ կը լինի նաեւ մով, օր. "մովան ան-

դարձապետ», ծովլեր, ծովլերան ծովլեր = մոգպետ։ Արաբացիք موجی դարձուցած են։

*Մոյգ* | = պհլ. եւ փզ. *mók* որոյ նուազա-
*Մոյկ* | կանն է

*Մուճակ* — պհլ. *môčak*, նպ. موزه (իբր մուկան)։

*Մուլթ* — Hr.ը զն. *mût'ra* ի հետ կը համեմատէ զոր liquide sale, impureté կը մեկնէ։ Եւրոպացիք երբեմն այսպէս տարօրինակ գիւտեր կը դնեն մէջ տեղ. ինչ վերբերութիւն կայ մեր մուլթ (խաւար)ի եւ sale liquideի մէջ։ Հ. Պ.իին համեմատութիւնը աւելի բանաւոր չէ՞ «մուտ»ին հետ, զի յայնժամ կը տիրէ մուլթը երբ արեւն ի մուտ կը խոնարհի։

Բայց անկէց ալ աւելի ճիշդ կը գտնեմ «մուղտ»ը որ مغ (մէգ)ի մի աճումն է *ձով* եւ թերեւս «միղտ» ալ էր ի սկզբան, զի ծոադէն ծոաբ կու գայ, բայց ծոաբէն ծոադ չի գար, ըստ պարզական օրինաց։

*Մուխ* — «Մէգ»ին եւ «մուխ»ին մէջ Հ. Պ.իին տեսած աղերսը խոտելի չէ քանի որ հնդեւր. ազգակցաց մէջ *smūkā*, *smoach*, *smūg*, σμύχω օրինակները կան (Hb.)։ Մեր բառին մէջ սկզբնական *s*ը ինկած կ'երեւի։

*Մուկն* — նպ. موش. բոլոր համազգի ճիւղերուն մէջ ալ գրեթէ նոյն ձայնը կը լսուի, *mūšk*, *mist*, *mūs*, μῦς, եւն։ Այս արմատներու փոխակերպութեանց կը պարտինք մու, ծոան, ծոանոան, ժանոան, եւն։

*Մուն* (մանր մժեխ) — Բոլոր ցեղակից լեզուաց

մէջ ալ muso, mun եւ ասոնց մօտ ձայներ են (Hb.)։

Մուշկ — նպ. مشك, յորմէ «բեշկ մշկոյ», պհլ. beš mešk, բէշ (پيش) արմատէն որ դեղթափ կը կարծուի թիւրակէի = پيش موش (بر هان.)։

Մուրհակ — աղճատեալն «մուհրակ»ի (مهرك), այն է مهر (մոհր)ով կնքեալ վաւերաթուղթ։

Մուրտ (մրտենի) — պ. مورد։

Մուրտաստան — مرداستان։

Մտանեմ — զն. maèt'ana, √mit (տ. Միտ[ք])։

Մրջիմն
Մրջիւն — مورچه ،مور։

Մօրուք — սնս. çmaçru, լիթ. smakrà, smakrú, եւն. (Hb.) տիպերուն մէջն է մեր բառն ալ որոյ ազգակցութիւնը աւելի դիւրաւ ըմբռնելու համար պէտք է ծայրի յոլովակերտ +ն վերցնել եւ բառը ըստ հնոց ուղղագրել [illegible], բառասկիզբ sի կորստեամբ եւ k = - փոխանակութեամբ։

Մօր
Մօրական
Մօրատ
Մօրուտ
Մօրտ — Այս ամենուն հանդիպակաց պ. տիպն է مرداب այսինքն مرده آب = մեռեալ ջուր, տղմուտ, լճացեալ (տճ. պալչըք, պաթաք)։ Morasse

## Ց.

Ցազ — տ. Մազդեղն։

Ցակինթ — նպ. ياكند (yâkind), արաբաձեւ ياقوت։

Յաղթ(եմ) — պ. یاخت, اخت: Սովորական յաղթուիլ պարտուիլը այս akht կամ yakht արմատին վրայ նի մ'աւելադրութեամբ ձեւացած է باخت որ կրճատն է անշուշտ ab կամ abi բացառականի մը, իբր آباخت կամ آواخت = ապ. յաղթել (չյաղթել):

Յամուր (վայրի այծ) — պ. یعور (yamûr):

Յայտ — զն. hait'ya որոյ պէսպիսութիւններն են هويدا (huaïdâ), եւ h = p փոխանակութեամբ՝ پيدا, պհլ. pîtak = յայտնի, նպ. پديدار (padîdâr) եւ բացասաբար՝ ناپيدا (անյայտ):

Յաշտ — զն. yashta, √yaz, նպ. یشت, բայ՝ یشتن (յաշտել) — տ. Մազդեզն:

Յառաջ — զն. frasha, √pra, պհլ. fraz, նպ. فراز, յն. πρόσω = յառաջխաղացութիւն, դէպ յառաջ (en avant — Hr.):

Յասմիկ — یاسمين:

Յասպիս — պ یشم (yashm): Հոս ծի եւ տի փոխանակութիւն մը կայ. Թերեւս հնագոյն ձեւը պ.ի մէջ ալ ծով էր զի հին ձայները աւելի մեր մէջ անաղարտ պահպանուած են, քարացած լինելով, մինչ պարսից մէջ, խօսուն լեզու, շարունակ փոփոխուելու եւ մաշելու ենթակայ:

Յատակ — նպ. تك (tak) = հոր, խոր, հուն, բուն, եւն: Սոյն այս "յատակ"ին կրճատը կը համարիմ նաեւ "տակ"ը որ ներքին խորքը, հունը, ներքեւը կը նշ., ինչպէս որ "ատակ"ն ալ:

*Յատուկ* — պհլ. *hadû* եւ *khadûk* կը նշանակեն մի (1)։ Hr. սոյն ընթերցուածներուն համար „lecture et origine incertaines“ կ'ըսէ եւ ուրիշ ընթերցուածի մը հաւանականութիւնը կ'ընդունի՝ *ayû* ($\sqrt{aèva}$ եւ *ayum*։

Որոշումը իրաւ ալ դժուար է, քանզի այս վերջինէն ալ ունինք *ayûkânak*, որուն հանդիպեցանք Կարն.ի մէջ զոր պ. یکانکی հանած էր Փարսի թարգմանիչը։ Սակայն վճռողականը չէ այս ընթերցուածը զի Hr. աս ալ *hadûkânakîh* կը կարդայ, որով այս ընթերցուածին հաւանականութիւնը մի աստիճան եւս կը զօրանայ։

Եւ այս հաւանականութիւնը գրեթէ ստուգութեան կը փոխուի եթէ նկատի առնենք նոյնակազմ միւս բառը որոյ վրայ տարաձայնութիւն չկայ եւ կը կարդացուի *hadûmûk* որ կը նշ. ըստ Hr.ի՝ n'ayant qu'un soulier զոր հայապէս կրնանք միամոյկ[1] կամ եզամոյկ ըսել, կամ իւր իսկ կազմով, եւ մերն ալ թեթեւցնելով կէն՝ յատումոյկ (յատուկմոյկ)։

*Յար* — նպ. يار = ընկեր, ձեռնտու, օգնական, նման, եւն։ Այս հիման վրայ կրնան մեկնուիլ բառին զանազան առումները՝ յոչէմ,

---

1 "Իսկ Կամսարականն Արշաւիր . . . ի բաց ձգեալ զերիվարն ի սաստիկ խոր տղմոյն ուր եւ մոյկ մի զերծեալ յոտանէն թափեալ մնայր անդէն ի մօրին եւ ինքն . . . միամոյկ աղմաթաթաւ հանդերձ ամենայն զինուն հանեալ զերիվարն ի ցամաք, անվեհեր քաջաբար նման թռչնոց յերիվարն հեծանէր" Ղ. Փարպ.։

ყოფაჲ, ყოფაჩუობჲაჲ, ყოფელობჲაჲ, ყოფნჩო-ბჲაჲ, եւն․, որոնց ամենուն մէջ ալ տիրող մայր գաղափարն է յարում կցում։ Մ:չ. եւ ჰანდოგოღ իմաստն ալ այս սահմանէն դուրս չէ, շարունակութիւն, յարակցութիւն, կցորդութիւն իմացուածով։

*Յարգ* — տ. Արգ։

*Յարմար* — պ. هموار ըստ Պալաթցի Գպրի, զի համավարէլն ալ (կենակցիլ) պատշաճելով յարմարելով կարելի է։

*Յաւանակ*, յովանակ, աւանակ, մի եւ նոյն տիպի՝ զն. yuvanի հարկաւոր են, որ جوان (jeune) անցած է նպ.ի։

*Յաւէտ* — զն. yavat, նպ. جاوید եւ "յաւիտեան" = جاویدان։ Սորա պէսպիսութիւններն են ყა-ეძ, ყა-ერძ, ყა-ერძ։

*Յեսան* — պ. فسان որ կրճատն է افسان կամ ایسان ի։

*Յետ*, յետոյ — զն. at (= or, ensuite՝ ին համեմատութիւնը (Hr.) ինձ այնչափ ալ համոզկեր չթուիր։ Տ. եւ Հետ(ք)։

*Յետկար* — պհլ ayātkār, նպ. یادکار (yadkar)։ Այս իմաստով է անշուշտ Նամակի ჯეჯილ բացատրութիւնը, իբր ետքէն յիշուած մաս։

*Յիմար* — տ. Ախմար։

*Յիսուն* — Սորա կազմին վրայ Ըրեանն ի առթիւ բաւական խօսուած է արդէն, հոս սա մասնաւորութիւնը միայն պէտք դիտել տալ որ մեր Յն միշտ եւ անվրէպ կերպիւ մեզ Yի համդիպակաց չէ, այլ, մանաւանդ Արիա-

կան բառերուն մէջ փի, Հի, եւ ֆի ալ կը փոխանորդէ, ինչպէս օրինակները տեսանք ի յայտ = هويدا = پيدا եւ յեսան = فسان ، پسان։

Յիսունն ալ մի նոր ապացոյց կու գայ յաւելուլ անոնց վրայ։ Գիտենք որ յէ այս տեղ Հընգի տեղ է եւ ըստ օրինի պէտք էր Հիսուն լինէր եւ ոչ յիսուն, այսինքն 5 × սուն (տասն)։ Գիտենք նաեւ որ յին նախատիպը Հոս ոչ թէ թոյլ չէ, այլ թաւ փ, փ, panca։ Ուստի չեմ կրնար ընդունիլ Հոլգէր Պեդերսընի այն վարդապետութիւնը թէ “բնիկ Հայկական բառի մը սկզբնատառ յ ձայնն ընդՀանրապէս միշտ ի նախադրութիւնն է„, որուն եւ օրինակ կու տայ յօգն, յաճախ եւ նոյն իսկ յիսունը (Հ. Ամս. 1905, Սեպտ., թ. 9)։

Ոչ ալ Հետեւաբար Hb.ին գրչութեանը կրնամ Հաւանիլ որ իւր առաջարկած տառադարձական սիստեմին Հաւատարիմ մնալու Համար, այսպիսի դէպքերուն մէջ ալ յն չի կը փոխարկէ։

Սեմա-յունականներուն մէջ այս տառադարձութիւնը Հաստատ եւ միօրինակ է, այո, այլ ոչ զուտ Արիականներուն մէջ ուր շատ անգամ թաւերու Հանդէպ ալ յին երեւնալը այնչափ ալ ցանցառ երեւոյթներէն չէ։ Յօսեմ, յօսում ի մէջ, զ. օ. որ թուլաձայն չի դէմ ելած է յն, ուր Հակառակը կը Հաստատէ Համազօր Հիւսէմը։

Ասկէց սա phonétique կարեւոր եզրակացութեան կը Հասնինք որ նման օրինակ դէպ-

քերուն մէջ նախնիք այլապէս կը հնչէին քան ինչ որ մենք այժմ. միջին հագագաւ մը թերեւս զոր ապա մենք թաւացնելով մեղմ ցերն ալ ձի փոխած ենք։

**Յոյզ** — զն. yaozaiti, $\sqrt{yaoz}$, նպ. یوز եւ یوش։ Կ'ըսուի رزمیوز = ռազմայոյզ = جنكجو։

Նոյնն է նաեւ խոյս (խուզել, որոնել, փնտռել, խուզարկել)։

**Յովազ** — ջդ. որ այժմ yûz կամ yôz կ'արտասանուի, բայց و (waw)ին առանձգութեան պատճառաւ տեղի կայ կարծելու թէ ի հնումն ալ թերեւս բաղաձայն կը կարդացուէր այս գիրը, ինչպէս Hb.ին նշանակած Հյ. յ——ղ տարբերակն ալ կը ցուցնէ։ Պարսից բերնին մէջ արդէն ու ը երբեք բաղաձայն չհնչեր, բացի երբ բառասկիզբ է, միւս բոլոր դէպքերուն մէջ միշտ ô կամ ûէ, օր. now (نو) զոր նէվ կը հնչեն Թուրքերը.

girow (گرو) = գրաւ,
drow (درو) = հունձք, քաղ,
drûd (درود) = դրուատ, եւն, եւն։

**Յովանակ** — տ. Յաւանակ։

**Յուշկապարիկ** — Երկրորդ մասը յայտնի է "պարիկ" պ. پری (pari), պհլ. parik, իսկ առաջին մասին համար ինչ որ ալ ըսած են՝ ենթադրական է։ Միակ խելքի մօտը "էշն" կամ "էշ——ն"ն է, ինչպէս կը կարծէ de Lagarde։ Հ. Պ.ին յաջողապէս յառաջ կը

բերէ, ի հաստատութիւն, Եզնիկին այն նշանաւոր պարբերութիւնն յորում կ'ըսէ

"Յուշկապարկաց ասեն լինել յաւերակսն զոր յոյն լեզու [illegible] ասէ"։

Նոյնպէս եւ Ոսկեբերան.

"Յուշկապարիկք բնակեսցին զոր յոյնն [illegible] ասիցէ. եւ արդարեւ [illegible] իսկ են ոմանք ի մարդկանէ որք իբրեւ յանապատի կեան"։

## Ն.

Նազ — պ. ناز, բայ՝ نازيدن = Նազիմ, Նազամ։
Նախ — պհլ. nakhû·t որ [illegible] ածանցականով մեր [illegible] է, որով պհլ.ի մէջ ալ կը մնայ զուտ արմատ nakh, բայց զատ չգործածուիր, այլ միշտ ածանցով, ինչպէս Նպ.ի մէջ نخست որ կը լինի նաեւ نخستين որ մեր վերստին, անդրստին, եւն. յօրինուածքները կը շօշափէ եւ [illegible] մ'ալ կ'օրինաւորէ՝ եթէ հարկ լինի։

Այն արմատէն է նաեւ "[illegible]"ը, իբրեւ առաջին պետ եւ գլուխ (Նախապետ)։

Հ. Պ.ին, անտեսելով այս պարզ եւ անբռնազբօս մեկնութիւնը՝ կ'երթայ "Նուպէ"ի մը հետ կապելու, [illegible] եւ [illegible] [illegible] իմաստներ ընծայելով այդ բառին որ մեր [illegible] հետ կցուելով, փոխաբերաբար, կ'ըսէ, "զնախահայր ազգատոհմի միոյ" կը նշանակէ "իբրեւ զբուն ծառոյ"։

Այս արդէն Ճապաղ մեկնութիւնը հեր-քելու համար բաւ լիցի ըսել որ պարսկերէնի մէջ այդ նշանակութեամբ բառ չկայ։ Սխալ ընթերցուած մը կը նշմարեմ հոս կամ իր եւ կամ իր հետեւած բառարանին կողմանէ, կէտերը շփոթուած ն. եւ ն̣. պիտի լինի սա, որ արդարեւ բուն եւ հիմ կը նշ.։

Եւ այլուստ, եթէ Նահադ մը գոյութիւն ալ ունենար, իրաւունք չպիտի տեսնէինք ի հաշիւ առնելու այդքան հաշմ եւ խեղ կեր-պարանքով ներկայացող տիպ մը որ մեր բա-ուին հետ ո եւ է շօշափման կէտ չցուցներ։

Այս Նահ հանգիտութեամբ ուրիշ բառ մ'ալ ունինք՝ Նահապետ որ ըստ երեւութին "Նախ"ին հարկաւոր կը թուի, ինչպէս Hb.ն ալ կ'ընդունի, յն.՝ πρωταγωνιστής ին հա-կադրելով՝ ըստ Մակաբայեցւոց Թարգմանու-թեան, սակայն ընդունելի չեմ գտներ այս մեկնութիւնը, զի ենթադրելով ալ թէ Նահը Նախ լինի (πρωτα), կը մնայ տակաւին մեկնել թէ պետը ինչ է։

Եթէ ըսենք ածանց մ'է, — օրինակը չկայ. չեմ տեսներ ուրիշ բառ մը որ պետ մասնիկ մ'ունենայ՝ զերծ ամէն ուրիշ մեկնութենէ։

Ես կը կարծեմ որ "Նահապետ"ին մէջը փնտռելու ենք "Նահատակ"ին ալ ճիշդ լու-ծումը. չէ՞ որ շատ անգամ ալ միասին կը գործածուին կամ զիրար կը փոխանակեն։

"Նահատակ"ը գիտենք թէ ինչ կը նշա-նակէ — համարձակ, յառաջ վազող, դի-

մագրաւող, եւն. — Արդ՝ նոյնն է նաեւ “նահատակ„ը զոր “կտրիճ առաջ նետուող„ կը դնէ Ա.Բ.ը՝ առաջին նշանակութեամբ եւ երկրորդաբար կը բերէ մեռնելու (մարտիրոսութեան) իմաստը։

Եւ շատ իրաւամբ, քանզի նահատակիլը միշտ մեռնիլ ըսել չէ. շահատակութեան այն է խիզախ յարձակման հաւանական եւ պատահական ելքն է մահը, այլ ոչ անվրէպ վախճանը։

Շահատակութիւնը նահատակութիւն է եւ նահատակութիւնը՝ շահատակութիւն՝ փոխադարձաբար։

Արդ՝ ի՞նչ է շահատակը։

Արիական ճիւղերը գոհացուցիչ աղբիւր մը չեն ցուցներ, յայտնի Սեմական փոխանցութիւն մը կ՚երեւի شهد (shahd) արմատէն որ կը պէսպիսանայ ի شهيد (shahîd), شهدا (shohudâ , شهادة (shahadat), եւն. որ, ինչպէս գիտենք, վկայ, վկայութիւն կը նշ.։ Թուրք եւ Թրքախօս ժողովուրդներուն մինչեւ հիմա գործածական բառն է “շահատ„ ըսել վկայ նշանակութեամբ։

Եւ արդէն յն. մարտիրոսն ալ վկայ թարգմանուած չէ՞ հայերէն, իսլամն ալ մինչեւ հիմա, պատերազմի դաշտին վրայ մեռնողներուն شهيد կ՚ըսէ։

Ուրեմն շահատակութիւնը պարզ شهادة է (վկայութիւն), ինչպէս նաեւ իւր լծորդը՝ նահատակութիւն։

Սա տարբերութեամբ որ Հյ. առումներուն մէջ եւրքէն մասնաւորում մը մտած է, զի հիմա մենք շահատակով քաջ ռազմիկը, իսկ նահա-տակով՝ պատերազմի մէջ մեռնողը կ'իմանանք։

Բայց բառին բուն հին գաղափարը այս եղած չէ, այլ միշտ մի եւ նոյն ըմբռնուած է.

„կասեցին նահատակքն Բաբելոնի ի պատերազմէ„ (Երեմ. ծա. 30)։

ուր անշուշտ մեռելոց վրայ չէ խօսքը։

Նախճիր — պհլ. եւ նպ. نخچیر (naχcîr) որ պ.ի մէջ միշտ որս նշանակութեամբ կը գործածուի։ Մենք աւելի արիւնհեղութեան գաղափարին յարած ենք որ հասարակ մեկնակէտն է։

Նամ (թաց, գէջ) — պ. نم։ Աստի՝

Նամէտ, Նայամէտ } = թաց, ջրոտ։

Նամիմ = ջրոտիլ, տամկանալ։

Նայ (naï) — թերեւս չինի նայմ = տամուկ։

Նամակ — պհլ. nâmak, նպ. نامه, ինչպէս պհլ. kârnâmak = նպ کارنامه = հյ. կար-նամակ. shahnâmak (شاهنامه) = Շահնամակ. gahnâmak (کاهنامه) = գահնամակ, եւն։

Նարգէս (ծաղիկ) — պ. نرگس (nargis)։

Նարդ, Նարդան, Նարդեան, Նարդէս, Նարդիս, Նարդին, Նարդոս } նպ. ناردین (nardên) որու համար سنبل روی Ռումական կամ արեւ-մըտեան սնբուլ կ'ըսեն բառա-գիրք։

Նարինջ — Մեր բառը աւելի արաբահունչ ձեւը կը շօշափէ մինչ բուն պարսկականն է نارنك (nâring) զոր պահած են ի نارنكی (nâringi) == փոքր՝ նարինջ (նարնջակ) == mandarine:

Նարտ — نرد (nard:

Նարօտ (գոյնզգոյն թել, հիւսուածք) — պ. نارو (nârô) (برهان.):

Նաւ — պ. ناو (naw) յորմէ ناخدا (nâkhodâ) որ է ناوخدا (նաւուն տէրը, նաւապետ):

Ինչ գեղեցիկ ըսուած է

بَرَد انجا کشتی که خواهد خدای.
اگر جامه بر تن دَرَدَ ناخدای

“Աստուած հօն կը տանի
Զնաւ ուր դըրաւ կէտ,
Որչափ ալ շորերը
պատռէ նաւապետ„:

Նաւակատիք — Նորակառոյց շէնքերու առթիւ եղած տօն, հանդէս. որ կը պարզուի

now (نو = նոր)
զն. kata, պհլ. katak, նպ. ک = հյ. կատ
որ երբեմն +ատ ալ է (աղքատ) == տուն, շէնք, բնակարան:

Թօթափելով ուրեմն ծայրի ի+ յոլովակերտը՝ կ'ունենանք նաւակատ == նորակերտ:

Դիտելի է որ պ. نو ը որ մեզ միշտ “նոր„ դարձած է, հոս “նաւ„ ձեւի տակ կը ներ-

կայանայ, ինչ որ կը հաստատէ թէ բառին բուն հին հնչումը nau կամ nawē, ոչ nov եւ ոչ nô. մեր -ը յայտնի վկայ է ասոր։ Ուստի սխալ է, ուրիշ շատ նմանօրինակ սխալներու հետ, մեր այժմու միշտ վ հնչումը -ին՝ որ հոս --ի տեղ կը բռնէ՝ իբր ն-----կատիք եւ ոչ ն-վ-կատիք։

Հ. Պ.ին համեմատած յն. χατοιχιά (բնակութիւն, հաստատութիւն), առանց սխալ ըլլալու՝ երկրորդական ձեռք կը մնայ վերի բուն աղբիւրներուն քով։

*Նաւասարդ* — նոյն "նաւ" = նոր եւ սնս. sareda եւ զն. çaradէն որ ամ, տարի կը նշ., նպ. سال, ինչպէս կ'ըսուի نوروز։

Նաւասարդը հին Պարսից եւ Հայոց մէջ սկիզբն էր տարւոյն օր նոր տոմարով Օգ. 11 կամ 12ին կ'իյնայ։

*Նաւթ* — պ. نفت։

*Նենգ* — տ. Ման, մանկ։

*Նետ* — սնս. nada որ d = y փոխանակութեամբ նպ.ի نی (nay, ney) անցած է. մինչ մերը հնոյն հաւատարիմ կը մնայ։

*Ներ* (belle sœur) — Հնդեւր. Yanterը թէեւ շատ հեռուէն կը հնչէ, այլ հաւանական աղբիւրը կ'երեւայ մեր բառին՝ ընդունելով ն--ր, ն--ր վերջապէս ն-յր միջինները, ինչպէս կը դնէ Հ. Ա. Տ.։

Հ. Պ.ին տճ չէլէն (եկող), չէլին (նոր հարս)ին հետ կը մանուածապատէ։

*Ներկ* — Հաստատ մեկնութեան մը չհասայ։ Հ. Գ.ին պ. نرگ տեղափոխութիւնը կը կարծէ։

Հ. Ա. Տ.ին տուած ն-երգ, նէ-որգ օրինակները ալ համոզիչ չգտայ, ոչ ալ առաջարկած arg արմատը որոյ վաւերականութիւնը արդէն ինքնին ապացոյցի կարօտ է քանի որ հյ. որկ եւ ործ խնդրական արմատներով պիտի հաստատուի։

Իրաւամբ զգուշաւոր լռութիւն կը պահէ Hb.ը։

*Նզար* (վտիտ, լղար) — պ. نزار (nezâr) որ եւ نهار (nehâr) յորմէ եւ մերս նէհար։

*Նժդեհ, Նշդեհ* — հպ. *nižlahya* եւ զն. *niž-dan'ha* (Hb.), նոյն նշանակութեամբ։ Մեր բառին ամփոփումը յետնագոյն շրջաններ կը յայտնէ։

*Նիազ* — պ. نیاز, յորմէ աննէազ (بی‌نیاز) = ան-կարօտ, անթերի։

Սորա պէսպիսութիւնները թուին լինել նուաղ, նուաստ եւ նոյն իսկ նուաճ զի նուաճելը նուազել է իսկապէս այսինքն տկարացնել, զօրութիւնը կտրել, խորտակել, միով բանիւ՝ նկուն ընել։

*Նիզակ* — պհլ. *nêzak*, նպ. نیزه։

*Նիհ* (տէրութեան դրած գինը՝ ածելու բաներու վրայ — Աբ ) — պ. نه (*nih*), բայ՝ نهادن (*nihâdan*) որ դնել, կարգել, սահմանել կը նշանակէ

*Նիհար* — տ. Նզար։

Նիստ — սնս. nišidati, զն. nišhiδaiti, նպ. نشست (nishast)։

Երկու շչականներու անախորժ խճողումը մեր բառին մէջ դարմանուած է՝ միոյն անկմամբ (շին)։

Նկան — Հին ձեւերը nagan, naγan, nikanի շուրջը կը դառնան որոնց թեթեւցած վերջին պարզականը կ'երեւի արդի պ.ի نان ը։

Հ. Պ.ին հոս ալ կը ձախողի ննկնի հետ զբաղելով։

Նկատ — նպ. نکاه (nikâh) որ պհլ. nikâd մը կը մատնանշէ ապահովաբար։

Նկար — պ نکار, բայ نکاشتن։

Նկուն — զն. nighna, նպ. نکون։ Կ'ըսուի سرنکون = գլուխն ի խոնարհ, կամ նշունոր որք որչափ պարսիկ նոյնչափ ալ հայ են։

Նհանգ (ծովու կամ գետերու մէջ գտնուող անհեդեդ կենդանիներ, ինչպէս կոկորդիլոս, եւն.)։ — Պ. نهنک։

Նման — սնս. nimāna, հպ. եւ պհլ. nimān, նպ. نما (numâ), բայ نمودن = ցուցնել, օրինակել, նմանցնել կամ նմանիլ։

Պ. այս ձեւին մէջ բառին ծայրի ՚ն ը ինկած է, կայ սակայն ուրիշ տիպ մ'ալ, նոյնանիշ, յորում վերջի ՚ն ը պահուած՝ այլ սկիզբինը ինկած է — مان (mân) յորմէ բայս مانستن։

Այս տեսակէտով մեր բառը աւելի կատարեալ է երկու եզերական ՚ն երն ալ ողջ պահելով։

Ունինք սակայն ուրիշ տիպ մը յորմէ բառականիզը որ ինկած է եւ բառն ալ պ. نوِنْ գին աւելի մօտեցած, այն է մոյն որ առանձնակի գործածուած չէ Թէեւ այլ բարդութեանց մէջ իւր նման նշանակութիւնը աներկբայ է,

օր. Հօրամոյն = Հօրը նման,
Բոլէմոյն = բարի, ազնիւ տիպ եւ կերպարանք,
փմոյն = այլայլած, կերպափոխուած։

Նոյն այս արմատը կը տեսնեմ նաեւ Եր-գ-մոյնի մէջ, իբր երազ(ն)մուն (نوِن) = երազի իմաստը ցուցընող, մեկնող։

Այս արմատի հարկաւոր է նոյնպէս նմոյշը որ իրաւամբ կը հակադրի պ. نَوِن ին, իբր նմոնակ = օրինակ եւ հայելի իսկականին։

Այլ է սակայն ծովամոյնին եւ ֆէրամոյնին մէջ երեւցած մոյնը որ աւելի ամ արմատին հետ յարնչութիւն կը ցուցնեն (ամ-ամ = վաթեմ)։

Նշան — Հ. եւ Նպ. نشان, յորմէ

Նշանակ — պհլ. nishânak, Նպ. نشانه։

Նշխար — Մի միայն Հ.Պ.ին կը յիշէ եւ "խնշերանք„ի "խերեւէշ„ի, "խուշպ„ի հակառակներուն մէջ կը դեգերի։

Այլ սակայն յայտնի համազօր մ'ունի պ. نشخار ը որ եւ نشخوار եւ نشخور որ առիւծու՝ կովու՝ ոչխարի եւն կերածին աւելցուկ կտորները՝ մնացորդը կը նշ.։

Այս մասնաւորութիւնը ինքնին կարեւորութիւն չունի, եականը բառին ընդհանուր իմաստն է — կտրուանք, խեղերանք — զոր մեր բառը կը պահէ, մինչեւ իսկ ի սրբազանս։

Նշմար — սնս. smar, հպ. niśmāra, նպ. شمار (որմէ սկզբնական ու ը ինկած կ'երեւի), կը նշանակեն համարիլ, հաշուիլ, բայց թուաբանական միտք չէ միայն, այլ՝ գիտել, դիտել, գուշակել նշանակութեամբ ալ, ինչպէս اختر شمار = աստղագէտ կամ ճշգագոյնը՝ աստղաբաշխ, բաշխելը իւր համարողական արժէքով առնելով։

Այս գիտութիւնը կամ տեսութիւնը յըստակ եւ պայծառ չէ անշուշտ, այլ՝ գուշակաբար, ընդ աղօտ, լոյսի եւ մութի մէջ, այս իսկ է ահա մեր բառին ալ ճիշդ իմաստը, զի նշմարելը որոշակի տեսնել չէ, այլ՝ ընդ խոյս, հարեւանցի։

Նշտիր
Նշտրակ } պ. نشتر որ կը լուծուի ի نیش = սուր ծայր
تر = գերադրական մասնիկ այսինքն սրածայր գործի։

Նոխազ — պհլ. nuhâzek, նպ. نهاز։

Նոճ
Նոճի } պ. نوج, نوچ որով کاج կամ صنوبر ըսուած ծառը կ'իմանան պ. բառագիրք, մինչ մեր բառը լտ. pinusին աւելի համեմատուած է որ թուի լինել سرو, յորմէ سرو آزاد = ազատ նոճի = ձերբազատ (տ. Սարոյ)։

Նոր — սնս. եւ զն. nava, նպ. نو որ ինչպէս տեսանք Նաւ- ալ է (Նաւասարդ, Նաւակատիք)։

*Նու* — սնս. *snušaէն* սկսեալ գրեթէ բոլոր ճիւղերուն մէջ nurus, snura, snoru, schnur եւ ասոնց մօտ ձայներ են, յն. νυός։

*Նուազ* |
*Նուաճ* | = տ. Նիազ։

*Նուարտան* (քօղ. ծածկոց) — Նպ. نورده (*navardah*)։

*Նուէր* — տ. Բարիք։

*Նուիկ* |
*Նուիճ* | = պ. نویچ։

*Նուիրակ*։

*Նունուֆար* — نلوفر։

*Նուպար* — տ. Բարիք։

*Նուռն* — نار, انار։

*Նպատակ* — գն. *nivatk*ը նշ. lancer, chasser (Hr.)։ Այս տեսութեամբ տեղի կայ թերեւս կարծելու թէ نبادكاه (Նպատկահ) լինի բառը իբրեւ տեղի, թիրախ կամ կէտ ուր կ՚ուղղուի կամ կ՚արձակուի թուիչը (նետ, քար, ռումբ եւն)։

*Նպար* |
*Նպարակ* | = տ. Բարիք։

*Նպերտ* (Հպարտ) — Նպ. نبرد կամ نورد որ կը նշ. արի, խրոխտ, սէգ։

*Նսեմ* — պ. نژم (*nezem*), نژم (*nejem*) = խաւար, մառախուղ։

*Նստ(իմ)* — տ. Նիստ։

# Շ.

Շահապ — հպ. xšaϑ$^{r}$apā, սնս. kšatrapa (Hb.) յորմէ satrap (սատրապ) = նախարար, իշխան, կուսակալ եւն: «Շահ»ը թեթեւացեալ պարզ ձեւն է հպ. χshathriyaին, √χshathr, որոյ վրայ եկած է ap (ապ) ածանցը:

Շահասպրամ (ռահան [ريحان] ծաղիկը) — պ. شاه اسپرم

شاه اسفرهم
اسپرغم —
سپرغم —
سپرهم — եւն.

որոնց բոլորն ալ اسپرم կամ سپرمին զանազանութիւններն են, նոյն է ոզբամ որ կը նշ. հոտաւէտ, անուշաբոյր ծաղիկ, որ شاهի հետ բարդուելով գերագոյն աստիճանի կը բարձրանայ:

Շահաստան — պ. شهرستان (shahristan) = քաղաքներ, զի պհլ. shatur = նպ. شهر (տ. եւ Աշխարհ):

Շահդանակ որ եւ

Աշահդանակ
Շահնդակ
Շաղդանակ

պհլ. š(a)hdānak (Hb.), նպ. شاهدانه: Աբ.ը անորոշ կը ձգէ, «պտուղ մը» ըսելով, բայց շատ որոշ եւ հաստատ է նշանակութիւնը.

*կանեփի հունտն է որ ցորենի, ոլոռի եւ այլ այսպիսի հնտեղէններու հետ խառնել եւ բոհրելով աղանձ կը շինեն եւ կուտեն, ինչպէս ի մանկութեան շատ տեսեր եւ վայելեր ենք: Իրաւամբ* semen cannabis *կը դնէ* Hb.:

*Նոյնը չէ՞ արդեօք «շագանակ»ն ալ Գի եւ Դի սխալ ընթերցմամբ, ինչ կ'արգիլէր որ նա ալ, իբրեւ ընտիր պտուղ իւր սեռին մէջ, արժանացած չըլլար նոյն ընտիր եւ արքայավայել (շահ) կոչման:*

*Շահեկան, շայեկան* — *Տարապարտ կը գտնեմ* Hb.*ին վարանումը այս բառերուն նոյնութեան մասին, ամենեւին նոյն են թէ՛ ծագմամբ, թէ կազմով եւ թէ նշանակութեամբ, ինչպէս իրաւամբ, այլ կարի երկիւղածաբար կը ջանար հաստատել Հ. Կ. Տ. Սահակեան՝* 1911 *տարւոյ Բազմավէպներէն միոյն մէջ:*

*Շփոթութիւն տուողը Հի եւ Ցի զանազանութիւնը կ'երեւի, բայց ա՞յնչափ շատ են այս հ = յ փոխանակութիւնները որ մասնաւոր կարեւորութիւն կամ նշանակութիւն մը չունին: Հայ ուղղագրութեան նախաշրջաններու տակաւին անորոշ եւ անհաստատ տատանումներն են անոնք:*

*Թէ ինչ է շահեկան կամ շայեկան անուանակոչութիւնը՝ հետեւեալ գրոյցը քաղուածօրէն պ. Բառարաններէն յառաջ բերել արժան կը համարիմ:*

*Պարսից Բահրամ կամ Վահրամ Գոռ* (بهرام گور) *մականուանեալ Խոսրով Փարվէզ*

արքայն ութ գանձ ունէր, իւրաքանչիւրը իր յատուկ անուամբ որոշեալ։

1. *Ganj-i arus* (كنج عروس) = Գանձ Հարսին՝ զոր ինք էր հաւաքած։

2. *Ganj-i shayekan* (كنج شايكان) = Գանձ շայեկան որ *ganj-i bad* (كنج باد) կամ كنج باد آورد (*ganj-i bad avard*) ալ կ'ըսուի, զոր Գանձ հողմոյ, կամ հողմաբեր կամ հողմավար կրնանք հայացնել։

Այս անուանակոչութեան պատճառը այն է որ, կ'ըսեն, երբ Բիւզանդիոնի կայսրը որուն կը պատկանէր այս գանձը, անհամեմատ ճոխութեամբ ոսկի եւ գոհարեղէնէ բաղկացած, կղզիներէն մէկուն կ'ուղարկէր զայն՝ ի պահ, յանկարծ ահագին փոթորիկ մը կը փրթի եւ կը քշէ կը տանի նաւը ուր որ Պարսից բանակատեղին էր եւ Պարսից ձեռքը կ'իյնայ։

3. *Ganj-i dîba* (كنج ديبا) = Գանձ դիպակաց. երեւի թանկանգին ընտիր կերպերու, դիպակներու, թաւիշներու եւն։

4. *Ganj-i Afrasyab* (كنج افراسياب) որ Տուրանի հռչակաւոր թագաւորին Աֆրասիաբի թաքուցածը կը համարին որ Խոսրովին ձեռքը անցած լինի։

5. *Ganj-i sukhta* (كنج سوخته) զոր այրած իմանալու չէ سوختن էն՝ այլ կշռեալ سخته (*sakhta*) էն։

6. *Ganj-i χδr* (كنج خضر)։

7. *Ganj-i shâd-avoird* (كنج شاد آورد) = զուարթաբեր, ուրախառիթ։

8. *Ganj-i bar* (گنج بار) որ *ganj-i gaw* (گنج گاو), *gan-i gaw mîsh* (گنج گاو میش) ալ կ'ըսուի այն է՝ գանձ բեռին կամ կովու կամ գոմշոյ։

Կը պատմեն թէ գեղացի մը արտը ջրած պահուն գետնէն հանած ըլլայ այս գանձը որ երկու ձոյլ եզներէ կը բաղկանար որոնց աչքերը յակինթ եւ փորին մէջ ձոյլ ոսկի պտուղներ կային, նուռ, տանձ, խնձոր եւն, մէջերնին ընտիր մարգարիտներ եւ այլ ազնիւ քարեր լեցուն։

Եւ որովհետեւ այս գանձերուն մէջ ամենէն ճոխը երկրորդն էր, Փարվիզ արքայն զայն միւսներէն զանազանելու համար گنج شاهگان անուանեց զայն, այն է Շահական, Շահավայել կամ Շահին սեփական գանձը։ Յետ այնորիկ սովորութիւնն ընդհանրացաւ եւ ամէն ճոխ եւ հարուստ եւ թանկարժէք բան Շահական կամ Շայեկան (شایگان) ըսուեցաւ, բառին h գիրն ալ մեղմանալով ի y (ه = ی)։

Բաց աստի, պհլ. գրականութեան մէջ "գանձ շայեկան" (گنج شایگان) անունով մատենիկ մ'ալ կայ, զանազան եւրոպական լեզուաց ալ թարգմանուած որոյ հայ թարգմանութիւնն ալ պատրաստած եմ, թերեւս օր մը լոյս տեսնէ։

Շահէն — شاهین։

Շահպալուտ, շահբլութ — شاهبلوط = Նուշ, ընկոյզ, շագանակ։

Շաղ — պ. ژال, ژاله։ Աստ հետ կ'ըմբռնեմ

*նաեւ "ցօղ„ը, չնայելով իւր ց հայատառին. օրինակները շատ են ծ, ձ, ց բուն հայատառերուն չ, ծ, - շշականներուն դէմ հանուելուն, ինչպէս ուրիշ առիթներով ալ ըսած ենք։*

*Ճաղգամ* — *պ.-ար.* شلغم։

*Ճաղիղ* (*հում միս մեռած մարմին կենդանեաց, սատակ* — *Աբ.*)։ *Սնս.* *ċarīra*, *հնդեւ.* *k'alilo* (Hb.)։

*Ճամբուշ* — *պ* شمی, شمید, *բայ* شمیدن = *տուփանքէն ցնորիլ*։

*Մեր բառին մէջի բը կը մատնանշէ որ պարսկերէնի մէջ ալ b մը կար, ինչպէս կը դնէ* Hb. (*šamb*) *որ յետոյ ինկած լինի։ Մեր բն ալ արդէն շատ հաստատուն չէ, զի առանց անոր ալ ունինք շ‑ոշ եւ շ‑մշ‑ց* (= *պ.* شمش)։

*Ճանթ* — *Սնս.* *candra*, *յն.* *χάνδαρος*, *լտ.* *candeo* (Hb.) *օրինակները տարակոյս չեն ձգեր որ նոյն ընտանիքին կը պատկանի մեր բառն ալ*։

*Հ. Պ.ին շշ̃ջէմ, շ̃րեմը տիպ առած է*։

*Հ. Ս. Տ.ին հետեւել կարելի չէ, այնչափ որ ճապաղ է*։

*Ճապիկ* — *զն.* *khsap* *եւ հպ.* *xšapa* (Hb.) *կը նշանակեն գիշեր, նպ.* شب, *յորմէ* شي = *գիշերնոց*։

*Ճատ* (*բաւական*) — *զն.* *shaiti*, $\sqrt{\textit{sha}}$, *հպ.* *shiyati*, *պհլ.* *shâtîh*, *նպ.* شادی $\sqrt{}$شاد *կը նշանակեն ուրախութիւն, գոհունակութիւն։ Այս վերջին առումը մեր մէջ տիրական է շատանամ* (*գոհ ըլլալ*)։

**Շատ** (*քաղաք*) — պհլ. *shatr* ին կը պատասխանէ վերջին *R*ը ձգելով։ Ի բարդութիւնս միայն գործածուած, օր. Արտաշատ, Երուանդաշատ, Վասակաշատ, Վարդանաշատ, Յաշտիշատ, Զարիշատ ևն։

Պհլ. տիպէն (*shatr*) նպ.ը *T*ն ձգելով նոր ձեւ մ'ալ կը հանէ شار համազօրը شهر ի, որմէ شارستان = առ մեզ շահաստան (քաղաքանի)։

**Շատ** (*բազում*) — شاد, օր. شاداب = ժողով կամ բազմութիւն ջրոց. شادخوار կամ شادخور = շատախօր (շատակեր), պ. շատ արբեցողներուն աւելի կը գործածուի։

**Շատրուան** — պ. شادروان. Աբ.ը կը մեկնէ "1 գետնի եւ պատի ծածկոց. 2. (պ) աղբիւր՝ ջուր ցրցքնող"։ Այս 2. նշանակութիւնը պ. բառագրոց մէջ չկայ։

Թերեւս լինի սա բարդութիւն մը شاروان, կազմեալ ի شار եւ روان բառերէ։

شار = վերուստ ի վայր վազող, հոսող, յորմէ آبشار = ջրվէժ.

روان նոյնպէս վազող, ընթացող գնացող, رفتن էն դերբայ։

**Շաւար** (*ընտիր մարգարիտ*) — պ شاهوار։ Մեր բառին մէջ հին փոխանակողը մեր անգոյն կամ բազմագոյն -ն է։ Կազմն է شاه արմատը وار ածանցով որ նման, պէս, հանգոյն կը նշ. որով բառին վերլուծական իմաստը կը լինի արքայանման, կամ արքայավայել։

**Շաւաշ**<br>**Շաւարշարիւն** = բոյս եւ ցաւ՝ օձի պէս պուտ պուտ, նուիկ, տճ. երլան խաստըղը (Աբ.)։

Բայց թէ ուրկից այս բոյսը այս անունը ստացեր է, ահա թէ ինչ կ'աւանդէ վէպը։

Երբ Տուրանի արքայն Աֆրասիաբ (افراسياب) Պարսից Քէյ-Քաւուսի (کی کاوس) որդին Սեաւուշը (سياوش) սպաննեց, այն նոյն տեղը ուր նորա արիւնը թափեցաւ՝ բոյս մը բուսաւ որ ի յիշատակ նոյն եղերան Շաւարշարիւն ըսուեցաւ, իբր Սեաւուշի արիւն (خون سياوش)։

Ահա գեղեցիկ ծագում մը որ միանգամայն Շաւարշին եւ Սեաւուշին նոյնութիւնը կը լուսաբանէ։

Աւելի հանգէտ լինելու համար մեր բառը պէտք էր Շաւաշ լինէր եւ էր իսկ թերեւս։

**Շեղ** (թեք, ծուռ) — Hb.ը վայրապար կը փորձէ սնս. skhal, յն. σχολιός եւ հյ. սխալին հանդէպ հանելու ճիգը. սա ոչ սխալ է, ոչ թիւր է, այլ՝ ծուռ, բառին նիւթական իմաստով, այսինքն մէկ կամ միւս կողմը ծռելու գաղափարով։ Բոլոր ուրիշ ենթադրութիւն քմածին եւ բռնազբօսիկ է։

“Շեղ„ը պարզապէս մի տարբերակն է ծռ-ի զոր հասարակ լեզուի մէջ ամէն օր կը գործածենք, իսկ սա ինքն ալ մի այլ տարբերակն է բուն բառին որ է։

**Շեպ** — պ. شيب = զառիվայր, վայրահակ, էջ (հակառակ ելքի)։

Ասոր մի տարբերակն ալ է դարձեալ “Սեպ„, ինչպէս “ուշուրում, չեպ տեղ„ իրաւամբ կը մեկնաբանէ Աբ.։

*Շերէշ, շրէշ, շրէզ, շրէժ* — բոլորն ալ նոյն եւ մի բառն է, պ. سریشت (*sirisht*), տճ. չերիշ բուսած մածուցիկ հիւթը։

*Շերտ* — հոս ալ չեմ կրնար համաձայնիլ Hb.ի հետ որոյ կարի ճապաղ եւ անհամոզկեր կը գտնեմ ցուցմունքները։

Չեմ յիշատակեր Հ. Պ.ին որ ըէդի, ըէդ-է-դիւի, դիւէմի վրայ խաղեր կը դարձնէ։

Բոլոր այս բռնազբօսութիւնները կը դադրին, եթէ բառը դնենք իր բուն տեղը, իւր պատկանեալ ընտանիքին մէջ որ է շերտ

չիրտ (շրտնում)
սարտ (սարտնում)

որք բոլորն ալ կը միաբանին մէկ մայր գաղափարի մը շուրջը որ է բաժանում, անջատում, պառակտում, օձտում եւն։

*Շէն* — զն. *šayanaի* խտացումը կ'երեւի (Hb.)։

*Շիլ* — պ. شیل, شیلا։

*Շիճուկ* (զտուած քամուած հիւթ) — պ. شجك (*shijuk*)։

*Շիշ* — պհլ. *shishak*, նպ. شیشه։

*Շիւանք* — նպ. شیوان, զն. *zšaevan* (Hb.) = լաց, վայնասուն, ռմկ. ճուալ (իմա՛ [illegible])։

*Շկահ* (նետ եւ կապարճ) — պ. شکا (*shik'a*)։

*Շկապ* — ոչ մին հեղինակաց յիշած է այս բառը եւ զարմանք ալ չէ վկի ցարդ անծանօթ

եւ անմեկնելի մնացած բառ մ՚է, մի անգամ եւեթ Խորենացիէն գործածուած զոր առաջին անգամ ըլլալով մեկնել յաջողեցաւ մեզ, ինչպէս վկայեցին կարող բանասէրք (կարն., ծան. 106)։ Արդ շէ—դը որ արմատն է շէ—դեմին՝ համազօր ունի պ.ի մէջ شکاف (*shikâf*) կամ բուն հինին ըլլելով՝ شکاب, բայց سکاپتن կամ سکافتن որ կը նշ. զատել, մեկնել, անջատել, հատուածել եւն, ինչ որ Խորենացին ալ դիտեալ պարբերութեան ճիշտ իմաստն է։

Շնորհ — Hb. եւ Hr. զն. *khshnaotra* կ՚իմանան զոր մեր՝ կարնամակին մէջ հանդիպած *avishnohar* (ապաշնորհ) ձեւն ալ կը հաստատէ։

Շոմին (ծմել, սպանախ) — պ. شومین։

Շոյտ, շուտ — նպ. زود։

Շոնիզ որ եւ Սոնիճ (արջնդեղ) — պ شونیز։

Շորիկ — նպ. شوریده = խելքը ժուռ եկած, պարապ ժուռ եկող (Աբ.)։ Տարակոյս չկայ որ նոյն է նաեւ "ժուռ"ը։

Շուար(իմ) — վերի شور արմատն է տարբեր ընթերցումով։

Շուկայ — պ. شوك որոյ արաբաձեւն է سوق։

Շուն — զն. *çpan*[1], սնս. *çvan*, յն. κύων, նպ. سك (*çak*)։ Զն. բառը հոլովման մէջ կ՚ըլլէ *çuno*, *çunam* եւն. եւ այս կերպափոխութեամբ կը մեկնուի մեր ու—ն, համապատասխան յոյն υի։

1 Այս ձայնը մինչեւ հիմա պահուած է Պարսկաստանի Թուլէշ գաւառին մէջ, ինչպէս պատեհութիւն ունեցայ բուն Թալիշցիէ մը ստուգելու։

*Շուշան* — պ. سوسن։

*Շուշտակ* (թաշկինակ, մազկապ) — պ. شسته (*shusta*), բայ شستن (*shustan*) = լուալ, մաքրել։

*Շուք* (պատիւ) — զն. *sûka*, √*sûk* = brillant (Hr.), նպ. شکوه կամ اشکوه։

*Շպար* — թերեւս լինի سپر (*sipar*), ինչպէս կը կարծէ Հ. Գ.ին, իբրեւ դիմակ, ապար կամ սպար երեսի։

*Շպետ* (Հովիւ) — զն. *fšupaiti* (Hb.), պհլ. *shapân*, նպ. شبان (*shupan*), տճ. چوبان։

*Շտապ* — պ. شتاب որ եւ شتاو, բայ՝ شتافتن = շտապել։

Այսր մի տարբերակն է "Ստէպ" յորմէ ստիպել, իմա՛ շտապաւ։

Նոյն թուի լինել եւ "Ճեպ"ը, թէեւ "Ճապուկ"ի (چابك) հետ ալ յարմարութիւն կը ցուցնէ (տ. Հապճեպ)։

*Շտրպաշանք* զոր իրաւամբ շտրպաղանգք կ'ուղղէ Hb. եւ կը մեկնէ

اشتر شتر (*ushtur*) = ուղտ
پلنگ (*palang*) = ինձ

որով բառը կը լինի՝ ընձուղտ։ Արք.ի մէջ չկայ։

# Ո.

*Ոգեմ* — զն. *aoj* = dire, parler որու քով մեր բառն ալ կը յիշէ Hr.։

*Ոյժ* — զն. *aojaṅh*, *aojah* = force, vigueur, puis-

sance (Darm. եւ Hr.). փզլ. եւ պհլ. ōǰ, ōž, սնս. ōǰas (Hb.)։

Ոստան — նպ. آستان (astân), استن (astan) = մեծ քաղաք, շքեղ բնակարան։ Աստի

Ոստիկան — պհլ. ōstigān (Hb.)։

Ոտն — տ. հետ(ք)։

Որդ (ճճի, ver) — Արտաշրի պատմութեան մէջ (կարն.) տեսանք որ Որդունի Հաւթուատի դէմ Սասանեան հերոսը պատերազմ մղելով յաղթեց անոր եւ իւր առաջին գրաւած այս քաղաքին անունը եղաւ Կրման (արդի Քերմանը, كرمان)։

Nöldeke եւ Darmsteter այս զրոյցին մէջ առասպելախառն վէպ մը կը տեսնեն յարմարցուած Արտաշրի պատմութեան։

Վիշապի մը դէմ պատերազմ շատ ազգերու աւանդութեան մէջ կայ, օր. Vṛtra (Որդրա) եւ Indra հնդկականին, Ապողոն եւ Հիդրայ՝ Յունականին, եւն։

Արդ այս Vṛtraի բուն համապատասխանող տիպն է մեր "Որդ„ը որ եւ Արտաշրի պատմութեան մէջ կատարած դերով կը հաստատուի։

Vṛtraի համազօր կը հանէ Darm.՝ Azhi-Dahâka (Աժ-Դահակ) վիշապը որ Հրուդենի (فريدون) դէմ մարտ մղեց Բատաշխար (Padashkvâr) լեռնաշղթային վրայ։

Ասկէց է որ ոմանք Vṛtraի եւ Indraի պատերազմը որ միթական շրջանի մէջ երկինքը

(*Varuna* = Ούρανός) տեղի կ'ունենար, վիպապատմականին մէջ Թատաշխար փոխադրած են:

Ուրիշներն ալ, Արտաշրի անցքերէն ներշնչուելով, Քերմանը կը դնեն իբրեւ մարտի դաշտ, ապացոյց առնելով նաեւ անուան յորջորջումը որ

کرم (*kirm*) = որդ
آن = տեղի, սեփականութիւն

այն է սեփական տեղի որդոյ:

Խորենացին ալ, ինչպէս գիտենք, Մարաց Թագաւորին կ'այլաբանէ զրոյցը եւ Հայկազն Տիգրանը կը հանէ Աժդահակայ դէմ:

Ինչ որ ալ լինի պատմական ստուգութիւնը, սա աներկեւան է որ մեր բառը (Որդ) ամենաբարձր հնութեան մը կ'ելլէ եւ ամպածրար հին զրոյցի մը յիշատակը կը հասցնէ մեզ:

Որդի — Hr. մեր բառը կը համեմատէ զն. *put'ra*, պհլ. եւ նպ. پسر (*pusar*) եւ پور հետ:

Եթէ ստոյգ է այս բաղդատութիւնը, ինչպէս որ կ'երեւի, սա յեղաշրջումներէն պէտք է որ անցած լինի բառը:

1 *P* = *V* որ հյ. Վ կը պահանջէր, բայց հոս Ոն արդէն նոյն հնչումը տալուն՝ առանձին գրի մը հարկ չձգեր:

2. կարգափոխութիւն *T*ի եւ *R*ի:

3. փոխանակութիւն *A*ի Իով, ըստ հարկեւ հայկական լեզուիս որ Աով վերջաւորութիւն չընդունիր, բաց ի հրամայականներէ եւ օտար բառերէ:

*Ութ* — Հաստատ է որ զն. *asthan* եւ սնս. *aštān*, պհլ. *asht* ձիպերն են որ նպ. هشت յանգած են, տալով կողմնակի յն. ՚ὀκτώ եւ լտ. octo ցեղակիցները։

Արդ մեր արդի *u* (—) հնչումով մեր բառը չենք կրնար համեմատութեան դնել վերի շարքին հետ, կը պարտաւորինք ուրեմն հոս ալ մեր -ին տարբեր արժէք տալ, ե, ինչպէս տեղը կը պահանջէ եւ հնչել -ըւ որ ըստ կարի կը մերձենայ անոնց։ Hb.ը կուզէ *uvt* կամ *ovt* կարդալ, բայց հիմ չեմ տեսներ ասոր։

*Ուխտ* — զն. *uxti*, սնս *ukti*, յորոց Թերեւս եւ Սեմական عهد։

*Ունայն* — սնս. եւ զն. *ūna* (Hb.)։

*Ուշ* — զն. *ushki*, *ushi*, պհլ *hôsh*, նպ. هوش = mémoire, intelligence, խելք, միտք, յիշողութիւն։ Այս վերջինս կը ցուցնէ որ յիշեմ յիշատակ, եւն. ին մէջ երեւցած յէշ արմատն ալ հարկաւոր է -շին, յորմէ եւ ուշիմ, ուշեղ, ուշաթափ եւ այլ ծնունդք, եւս եւ հռչակաւոր բերդն խուժաստանի՝ Անուշ (կարն., ծան. 59)։

*Ուս անիմ* — √ուս, սնս *ucyati* ըստ Hb.ի, սակայն Հ. Պ.ին՝ Ու-շ արմատին հետ բաղդատելն ալ արհամարհելի չէ։

*Ուստր* — որու հետ զոյգ կ՚ընթանայ նաեւ դուստր։ Տարօրինակ չէ ուրեմն որ Գերմանացի գիտնական մը առաջինը երկրորդին աղաւաղումը կարծած լինի որու դէմ կը

զինին մեր երկու համազգի բանաստեղծը Հ. Ս. Տ. եւ Հ. Պ. ի, առանց սակայն իրենց կողմանէ գոհացուցիչ բան մը յայտնելու։ Նոյնպէս Hb.ը կը շատանայ պարզապէս հոլովները՝ առումները յիշելով, առանց աւելի լոյս մը տալու։

Ամենէն յարմար մեկնութիւնը որուն ես յանգած եմ իմ կողմանէս՝ սա է թէ ուստր:ը դուստրէն ծագած չէ, այլ անոր նմանողութեամբ յօրինուած է անկախաբար։

Քննենք հիմա այս վերջինը։

Գիտենք որ սորա համազօրը Նպ.ի մէջ دختر (duχtar)է, զն. duγδar որ պհլ.ի մէջ duχt (دخت) մնացած է։ Մենք այս վերջինն ալ ունինք դուխտ, ինչպէս եւ Նպ.ն ալ է دخت, մինչեւ իսկ دخ (duχ)։

Մեր բառը հին զն.ը կը շօշափէ, սա տարբերութեամբ որ անոր γ ձայնը որ պհլ.ի խ անցած է՝ մեզ ս եղած է, կամ թերեւս իսկզբան ալ, աւելի վաղնջական ժամանակներուն, ս էր, յետոյ խ ի փոխուած։

Ցամենայն դէպս, երկու տիպի ներկայացուցիչներն ալ ունինք մենք ի դուստր եւ ի դուխտ։

Նոյնը կը փորձուիմ ըսել նաեւ ուստր:ի համար որ այս ձեւի տակ կը պատասխանէ դուստրին, այլ դուխտին համապատասխանող ալ ունի ի ուխտ (وخت) որ ինքն ալ մի տարբերակն է բուխտ (بخت)ի որ մանչ զաւակ կը՝նշանակէ, օր. Սեբուխտ, Եւթանբուխտ =

երեք ուստերգ, եւթն ուստերք (կարն., ծան. 80)։

Ուրախ — տ. Խրախ։

## Չ.

Չանչ (խաղողի թիթն կամ կորիզը) — պ. چنجه (ċanja — Հ. Պ.ի)։

Չար — պհլ. ċaryâ (mauvais), յորմէ գերադրաբար caryâtum = չարաչար։

Չորք — սնս. ċatur կամ ċatwar, զն. ċat'ware որ պհլ. եւ նպ.ի چهار եւ چار եղած է եւ մեզ չոր(ք) եւ յուն լտ. quattuor։

Չու — Արիաբուն շատ մը տիպեր կը համրէ Hb., ինչպէս սնս. čyuti, զն. šuta, հպ. ašiavam, նպ. šavam, քրդ. čun, եւն. որք կը ցուցնեն թէ նոյն ընտանիքին կը պատկանի նաեւ մերը։

Չուան — տ. Ճոպան։

Չուառ — տ. Դժուար։

## Պ.

Պահ — զն. patar, պհլ. paç, նպ پاس, S = H փոխանակութեամբ մեզ ալ դարձած, յորմէ پاسبان = պահապան։

Կայ նաեւ ուրիշ որ պհլ. پهر (pahr)ի մի շրջումն է, նոյն նշանակութեամբ։

Պահանգ — պատին միջի բռնող՝ պահող կապերը (Աբ.) — պ. وهنك (vahank) = փայտեայ օղակ կամ շրջանակ զոր բեռներուն վրայ կ'անցընեն ամրապնդելու համար։

Պահակ — ի հնումն օրը ութ մասի կը բաժնէին, 4ը ցերեկուան եւ 4ը գիշերուան զոր պահ կամ պահր (پهر) կը կոչէին այն է پاس = օپهر որ պհլ. پهرك (pahrak) մը ենթադրել կու տայ, հաւասար մեր պահու կամ պահուին:

Աստի են պահակներ (پاسكر), պահախոյզ, պահոյոյզ, պահանորդ, եւն.:

Պաճար — Բնաւ չպիտի յիշէի այս բառը Արիաբուն շարքին մէջ եթէ կարեւորութիւն ստացած չըլլինէր իբրեւ չքնաղ մի գիւտ Հ. Պ.իի, մինչ Գարագաշի պէս հայագէտի մը հռչակել թէ նոր բան մը սորվեցաւ անոր ստուգաբանութենէն:

Արդ՝ ըստ Հ. Պ.իի՝ պաճար պ. چارپا (չորքոտանի) է հակադարձ ընթերցմամբ վանկերու՝ այսպէս پاچار: Եւ որովհետեւ Հ. Պ ին յամենայնի խաղ եւ դիտում կը տեսնէր, ոչ միայն անկարելի չէր այս շրջումը, այլ կրնար ալ յանկուցիչ եւ հրապուրիչ գալ մինչեւ աստիճան մը, այլ սակայն բոլորովին մտացածին եւ տղայական է:

Թարգմանիչք շատ բան, այո, առած՝ կերտած՝ կերպաւորած են, ինչպէս ամէն լեզուի ճարտարաց յատուկ է այս, սակայն հետքը կորսնցնելու եւ խաղը ծածկելու դիտմամբ այսպէս վանկերու կարգը շրջելը տղայամտութիւն մ'է որուն երբէք չպիտի զիջանէին:

Իրողութիւնն այս է որ պաճար սեմական بقر (bagar)ն է, արջառ, երինջ նշանակութեամբ եւ Կուրանին մէջ յատուկ գլուխ մը

կայ سورهٔ بقره (sura-i baqara) յորում երինջի մը վրայ կը խօսուի։

Նոյն بقر կամ Հայացի՝ պաքառն է որ ք = ճ օրինօք պաճառ եղած է եւ ուրիշ փոխակերպութեամբ ալ պախրէ, մինչեւ իսկ պաքառ եւ պաքառայք[1]։

Զարմանք որ Հ. Պ.ին պախրէին ծնունդը նշմարելով հանդերձ պաճառին ծագմանը չէ խելամուտ։

Պաճար (պաճարանք, հեթեթանք, ապրուստ) — կը նոյնանայ վաճառ եւ վճառի հետ (տ. Վաճառ)։

Պայազատ — առաջին հրապուրիչ բառը որ մտքի առջեւ կը ներկայանայ՝ بگزاده (պէյզադէ) է, սակայն بگը, պ. բառագրոց իսկ վկայութեամբ, աւելի թրքերէն է քան պարսկերէն, որով խառն ծնունդ մը յառաջ կու գայ։

Ունանք աւելի հին եւ վսեմ եւ միանգամայն բուն պարսիկ հարազատ արմատ մ՚ընտրել, այն է պարիկ որ պայ ալ կը համառօտի որ է նպ. پری (parî), pairîka ըստ Աւեստայի, պհլ. parîk։

Զրադաշտեան վարդապետութեամբ գերմարդկային Ոգիք երկու կարգ բաժնուած էին Yazata (ایزد = یزد = Եզդ), Որմզդի արա-

[1] Այս կարգէն ուրիշ բառ մ՚ալ ունինք՝ «զուարակ», նոյնպէս սեմական, ասոր. אובּרכא (ezwarχā), ար. ذرخ (Hb.)։

րածք, եւ Daèva (div = دیو = Դեւ)՝ Արհմնի։ Այս վերջինները հանապազ ի մարտի էին առաջնոց հետ եւ շարունակ մարդիկը մոլորեցնել եւ Որմզդի բարի արարածները խանգարել ապականելու պաշտօն ունէին։ Այս կարգէն էին պարիկները, սեռով էգ (Ուրհիք, Հուրիք)։ Այն է որ ռամկին բերնին մէջ մինչեւ այսօր ալ Հուրի եւ փէրի անբաժան կը գործածուի։ Անհնարին քաջութիւն կը վերագրուի ասոնց եւ իրենց անունն ալ (Par) որ քաջ կը նշ., այս պատճառաւ տրուած է կ'ըսուի։

Վարդապետութեան Աւեստական իմացումը մեզ չհետաքրքրեր, մեզ համար էականը այն է որ դ–յ+ կամ դ–րէկ+ գերմարդկային Ոգիներ են, արի եւ քաջ մարտիկներ։ Այս գաղափարին ինքնին կը ծորդին անշուշտ վեհութեան՝ բարձրութեան՝ իշխանութեան, եւ այլ այս կարգի ըմբռնմունք։ Զարմանք չէ ուրեմն որ մեր մէջ "պայազատ„ը այսչափ բարձր նշանակութիւն առած ըլլայ։ Ճիշդ մեր բառին համազօրն է պ.ի մէջ ալ دیوزاد, բաց աստի կայ նաեւ دیودخت զոր կրնայինք դ–յ–դ––խ– ըսել հետեւելով դ–յ–ղ–փի կազմութեան։

Դեռ ուրիշ գեղեցիկ յօրինուածութիւններ կան պ.ի մէջ այս արմատով, զ. օ.

پری‌پیکر = պարկադէմ = պայապատկեր։
پری رخسار = „

ریوش. = պարկապէս, պայապէս թերեւս եւ "Պայապիս" որուն յաղթեց Արամ ըստ Խորենացւոյ:

ریور. (parîvar) = պարկահանգոյն: Սա չէ՞ արդեօք "Պարոյր"ն ալ: — Ամէն հաւանականութիւն կայ, թէ կազմով թէ իմաստի պատշաճութեամբ:

Պայազն — ըստ վերնոյն, զոր իրաւամբ "մեծ ցեղէ եւ իշխան" կը մեկնէ Աբ. ը:

Պայակ | — Նպ. پیك (païk) = պահակ, սպա-
Պայիկ | սաւոր ոտքի վրայ, پای (ոտք) արմատէն: Հօս ալ Հի եւ Յի անխտրութիւն:

Պայման — Նպ. پیمان (païman), պհլ. patman, եւ բացասաբար apatman = անպայման (d = y օրինօք):

Պայքար — Նպ. پیکار (païkar), պհլ. patkar:

Պանիր — پنیر (panîr):

Պաշար — տ. Վաճառ:

Պաշտ(եմ) որ եւ պարիշտ — پرست. (տ. եւ Ամբարիշտ):

Պաշտատ (պռոյգ, օժիտ) — թուի լինել پیش داد = նախընծայ:

Պաշտպան — Նպ. parštipana, պհլ. puštikpan, նպ. پشتیبان (pushtipan) որ եւ پشتوان (pushtuvan) որ կը լուծէ նաեւ զմեր "փուշտիպան":

Պատակ — տ. Հրապարակ:

Պառակտ(եմ) = բաժան բաժան լինել — պհլ. pârak, նպ. پاره:

Ասոր այլազանութիւններն են "փեռնել" եւ "փեռնելկտ":

Պառաւ — զն. *paouruvya* = situé en avant, ancien, primitif (Hr.). Նպ. پاراو (*pâraw*), پارو (*pârow*), پاروب (*pârub*) = Նախընթաց, յառաջընթաց, ար. مقدم (տճ. قدملى) = ամենէն առաջաւորը հնութեամբ եւ աստիճանաւ: Այս զն. *paouruvya* արմատն է որ միանալով *tkaèsha* (թէշ = كيش) ի հետ՝ տուած է մեր դարթաշը (տ. Ամպարտաքաշ):

Պասուք — պ. Բառագրոց մէջ կայ բառ մը پاسك (*paçuk*) որ սակայն ուղղակի ծարաւ չնշանակեր, այլ խոնջութիւն, պարտասում, թուլացում: Նոյն է թերեւս մեր բառին հետ, զի նօթութեան եւ ծարաւի ալ վախճանը վերջապէս նուաղում է.

" . . . արձակել զդոսա նօթիս չկամիմ, գուցէ նքթիցեն զճանապարհայն" (Մատթ. ԺԵ, 32).

եւ գիտենք որ "նքթիլ"ը անօթութեան վերջին հետեւանքն է, défaillance, ինչպէս կ հանէ գղղ. թրգ ը, եւ անգլ. faint, նոյն մտօ:

Պաստառ — զն. *upastarema*, պհլ. *patstarr* (Hb, Նպ. پستر որ եղած է նաեւ "Բաստառ":

Պատան(ք) — զն. *paitidâna*, պհլ. *padtân* = արկանելի, վերարկու զոր manteau կը թարգմանէ D. եւ աստի կը համարի պհլ. *padân* եւ արդի փարսիներուն *panôm* ը որ է վարշամակ զոր աղօթքի ժամանակ կէս դէմքէն իվայ կը

կախեն, գարշ արտաշնչութեամբ սրբազան հուրը չպղծելու համար: փօդօմ, ֆօդօն եւ ֆօնդօմ կոչած են զսա մեր մատենագիրք:

Պատելու պարուրելու գաղափարով նոյն դօփ արմատն է դարձեալ որ կը ներկայանայ զանազան պէսպիսութիւններով, պատատ(եմ, փաթաթ(եմ), փաթ(անք), փաթ(եթք), փաթ(ոյթ), պտ(ոյտ), պտ(ուտ-ակ), եւս եւ պատ(ատ-ուկ), պատ(աղ-իճ), պատ(եան), պատ(նէշ), պատ(ուար), պատ(սպար), եւն:

Պատասխան-ի — հպ pātisa(h)uvan, պհլ. patsanᵛ-an (Hb.), նպ. پاسخ:

Ասկէց յայտնի կ'ըլլայ որ մեր բառին ծայրի ի որ դասականութեան կնիքը կը կրէ, այնչափ ալ էական չէ:

Պատգամ — նպ. پیغام، پیام، պհլ. paitam, թերեւս patgam, ինչպէս կ'ենթադրէ Hb, եւ ինչպէս կը պահանջէ հյ. կազմը: Աստի "պատգամաբեր" = پیامبر، پیمبر، پیغمբر:

Պատերազմ — բարդեալ

զն. paiti = vers, contre, sur (Hr.)
" rasma = ռազմ արմատներէ
պհլ. patrazm է (Hb.).

որով ընդհանուր իմաստը կը լինի — յարձակիլ իվերայ:

Պատիժ — նպ. پاداش، պհլ. pat dahishn, որ ինքն ալ կը լուծուի զն. paiti եւ dâ արմատներուն:

شادپاییն իմաստը պ․ի մէջ մեր պատիժին չպատասխաներ ուղղակի, այլ ընդհանրապէս փոխարինութիւն կը նշանակէ թէ ի վարձ եւ թէ ի պատիժ (տ․ եւ Պատուհաս)։

Պատինճան — պ․ بادنكان (patingan), բայց մերը ար․ بادنجان ին կը պատասխանէ, յետնոց փոխառութիւն։

Պատիպատ — պ․ بادوید։

Պատիւ — տ․ Հետ(ք)։

Պատկանդարան — Եղիշէի այս բառը երկու կերպով իմացուած է․ մի՝ իբրեւ դարան պատկանի, այսինքն փքին (پیکان) դնելու աման կամ կապարճ եւ յայս միտս իբրեւ մի բառ միացեալ գրուած է Եղիշէի Ա․ Պոլսական տպին մէջ, 1764, զոր առաջի աչաց ունինք։ Երկրորդ՝ իբրեւ դարան պատկանաւոր, այն է՝ պատշաճ, յարմար, յոր միտս եւ ուղղուած եւ անջատ գրուած է Վենետկոյ 1893 փոքրադիրին մէջ։

Առաջին իմացուածը խաբուսիկ է, որչափ ալ Միք․ Փորթ․ Փաշայի հետ

դարանը, դիրան կամ դերան

ընենք تیر (նետ)ին մօտեցնելու համար։

Երկրորդը աւելի յարմար է տեղւոյն եւ դիտման, որպէս թէ ըսած ըլլար Եղիշէն "Սատանայն իր թոյնը լեցնելու համար ամենէն յարմար աման գտաւ Ցազկերտը"։

Այս "դարան"ի նմանութիւնը ուրիշ տեղ ալ գործածած է Եղիշէն, առանց "պատկան",

եւն. վերադրի, ուրեմն իրեն յատուկ մի ոճ է կրնայ ըսուիլ՝ սա։

Կամ այս երկու բառերը, իբր ճոխ ասացուած, նոյնանիշ ալ գործածած լինի Եղիշէն, զի بادکان կամ بایکان պահակ, պահարան ալ կը նշանակեն, ինչպէս դիտած է Փաշան։

*Պատկեր* — պհլ. *patkar*, նպ. پیکر։ Զօդիակոսի Յունարէն Երկաւորին կ'ըսուի, այսպէս, *dô patkar* (دوبادکر)։

*Պատճէն որ եւ պատճեան* — հպ. *patičayana*, պհլ. *pačen* (Hb.)։ Նոր մատենագրութեան մէջ փարսի հեղինակները շատ կը գործածեն فچین (*facîn*)՝ ընդօրինակել նշանակութեամբ։

Այս է նաեւ *պաճիկը*։

Հ. Պ.ին այս բոլորը "պատճառ"ին հակառակէն կը բերէ։

*Պատմ(եմ)* — պհլ. *patmāyem*, նպ. *parmayan* տիպերուն հետ կը համեմատէ Hb.։

*Պատմուճան* — պհլ. *patmûjan*, զն. *paiti smuk'ta* որ մպ.ով پادموزن (*patmûzan*) կը անուանուի։

Աստի է նաեւ "*պատմուճակ*"ը որ հանդերձեղէններու տեղ կամ վրակեցու կը նշ.։

*Պատնէշ* — զն. բարդութիւն մ'ունինք *paiti-nisharetar* „qui soutient, maintient" նշանակութեամբ (Hr.) որ կը լուծուի *paiti-niś-har* որուն մէջ յայտնի կ'երեւայ *paitinish* արմատը, ինչպէս մեր "պատ-նէշ"ը կը մատնանշէ. ամրութեան եւ ապահովութեան իմաստով ալ կարի յարմար։

Պատշաճ — զն. paiti եւ šač է բարդութիւն։ պհլ. sâzâk եւ նպ. ساز կը նշանակեն իրաւ, արժան, ըմբռն։ Մեր բառը զն.ը կը շօշափէ։

Պատշգամ(բ) — հպ. pati-kamba, նպ. pashkam կամ pishkam (بشکم)։

Պատուանդան — ծայրի ան մասնիկը վերցընելով կը պատասխանէ պհլ patwantին որ է նպ. پیوند այն է پایوند կամ پای بند = ոտքի կապ, կռուան, հիմ, խարիսխ։

Պատուաստ — պհլ. patwast, զն. paiti bast = յարմարցնել, զօդել, զուգել, նպ. پیوست (= پای بست) = ոտքը կապել։

Պատուար — սնս prātivāra, զն. paitivara = գղղ. défense, գրմ. Abwehr (Hb.)։ Ուրեմն բառին տիրական իմաստն է ամրութիւն, պատսպարութիւն որուն անվիճելի հաստատութիւնը կը տեսնենք Նորագիւտ Մնացորդաց մէջ.

“Եւ պահ արկեալ նստէր Դաւիթ շուրջ զպատուարաւն„.

ուր Եօթանասնիցը կ'ըսէ.

“Եւ նստաւ Դաւիթ յամրոցին„ (Ա. Մն. ժա, 7)։

Նոյն բառը քիչ մը վերը մի այլ ձեւի տակ ալ կը ներկայանայ — “պարուար„ — զոր չեմ կրնար սխալ ըսել, առաջի ունենալով بروار (barvar) կամ پروار (parivar) ձեւերը, պարբերեալ նշանակութեամբ։ Սակայն այս

մեկնութիւնը ինքնին կ'իյնայ ծանօթութեան մէջ դրուած ուղղագոյն գրչութեան մ'առջեւ որ "զպատուարն" կ'ընթեռնու զօր եւ Խօթանամիցը կատարելապէս կը հաստատէ.

| Ասոր. թրգ. | Յն. թրգ. |
| --- | --- |
| "Եւ եհաս կալաւ Դաւիթ զպարուարն Սիհոնի." | "Եւ առ (Դաւիթ) զամրոցն Սիոնի" |

ըստ այսմ ուրեմն ծանօթագրեայը պետք է որ բնագրին մէջ անցնի։

*Պատուէր* — Hb.ը եւ Թերբեւս անկէ առնելով "Բանբեր"ը զն. *paiti vaeda* դրած են։ Բայց այս տեսութեամբ պէտք էր որ պատուէր գայր մեր բառը։

*Պատուհան* — նպ. بادخن կամ بادخان = օդ բանելիք ճեղք կամ պատառուածք որ بادکير (*patkîr*) ալ կ'ըսուի։

*Պատուհաս* — պհլ. *pâtfrâs*, զն. *paitifrasa*, մպ. پادافراه (*pâdafrah*) կամ پادفراه (*pâdfrâh*)։ Նպ.ի մէջ զանազանութիւն չկայ պատիժի եւ պատուհասի մէջ. աս ալ پاداش է։

Նշմարած եմ սակայն որ پادفراس ը իբր պատուհաս աւելի կը գործածեն, իսկ پاداش ը (պարգեւ)՝ իբր վարձատրութիւն, բայց, ինչպէս ըսինք, հաստատուն չէ (կարն., ծան. 29)։

*Պատսպար* — զն. *paitispar*, նպ. اسپر (*aspar*) կամ سپر (*sipar*) որով իմաստը կը լինի աս-պարել, կամ շուրջանակի իբրեւ ասպարաւ պահպանել։

Պատրաստ — պհլ. *virâst* որ *vadrast* ալ կրնայ կարդացուիլ, ինչպէս կը վկայէ հպ. *patirâsta* որ իբրեւ հնագոյնը՝ միշտ նախապատուութիւն ունի պհլ ի վրայ: Մեր բառն ալ միւս կողմէն նոր ապացոյց մը կ'աւելցնէ vad աւելի archaïque ընթերցուածին:

Նպ. پیراست ը յետնորդ է ժամանակաւ, *d* = *y* փոխանակութիւնը արդէն կատարուած:

Պատրոյգ — զն. *paitiraoka* (Hb.):

Պատրուակ կամ աւելի ճիշդը՝ պարտակ — Նպ. پرده (*pardah*), զն. *var* արմատէն որ ծածկել կը նշ. յորմէ եւ Նպ. وردک (*vardak*) = հարսի ագանելիք, օժիտ:

Պատրուճակ (զենեալ կամ զենլի կենդանւոյ միս) — պ بادروزه (*padruzah*) = հանապազօրեայ ուտելիք, նշանակութիւն որ մերինէն շատ ալ չտարբերիր (Հ. Պ. Ի):

Պար (շուրջ) — զն. *pairi*, հպ. *pary*, յն. περί, պհլ. եւ Նպ. *pîr* (پیرامون = շուրջանակի) որ եւ *par* (پرکار կամ پرکال = պարագիծ): Աստի պարոյր (պարուրեմ) իբր پریور (*parîvar* կամ *pariûr*) = շուրջ ածել. պարառ, պարբերի, պարագայ եւ այլ բոլոր "պար„ ով յօրինուածութիւնք:

Պարար (բտած, գիրուկ) — պ. پروار կամ پرور (*parvar*), վի կորստեամբ մեր բառին մէջ. բայ՝ پرواردن, پروریدن = բուծանել, սնուցանել, پرورش (*parvarish*) = սնուցումն, տածումն: Աստի

Պարարտ — պ. [illegible]:

Պարաւանդ — [illegible] ([illegible]) եւ [illegible] ([illegible]) կամ [illegible] արմատներէ շինուած = կուրծքի կապ, եւս եւ հաստ նիգ կամ ձող որ դրան ետեւը կը դրուի՝ դրսէն չբացուելու համար: Նպ. [illegible] կամ [illegible]:

Hb.ին տուած սնս. pādabandha եւ Հպ. padabanda տիպերը մեր փաթաւանդին կը պատասխանեն, ոչ պարաւանդին:

Պարբեր — տ. Պար:

Պարիկ — տ. Պայազատ:

Պարիսպ — «Պատսպար»ին մի այլ ձեւն է իբր «պարսպար» = շուրջանակի ապարեալ, ամրացեալ (պար-սպար) յ. եւ اسپر կամ سپر արմատներէն, այս վերջինին երկրորդ անգամը կամ Rն իյնալով:

Պարկ — برك. (برهان.):

Պարկեշտ — տ. Հրաժար, Հրաժեշտ:

Պարկէն — պ. پاركين = Նեխած ջուրերու փոս:

Պարման / Պարմանի — Տուրանցի կտրիճի մը անունն էր, ասկէ, կ'երեւի, սովորութիւն եղած է մեր մէջ ամէն կտրիճ հասակի տարածել բառը:

Պարոյր — տ. Պար:

Պարպատ(եմ) = «լեփլեցուն ընել, ըլլալ, տկուիլ, ճաթիլ, ճաթռտիլ». այսպէս կը մեկնէ Աբ.ը, հիմնուելով անշուշտ Աւետարանի այն համարին վրայ ուր կ'ըսէ.

"փակեցին ի ներքս բազմութիւն ձկանց յոյժ, մինչեւ պարպատէին ուռկանք նոցա„ (Ղուկ. Ե, 6):

Արդարեւ ալ հոս դ-ր-դ-փեմը լեցունութենէն պատռելու ատրեծանին գալ կը նշ., ինչպէս յոյնն ալ կ'ըսէ διεῤῥήγνυτο եւ միւս թարգմանութիւնք ալ նոյնը կը հաստատեն. լտ. rumpebatur, գղղ. rupture, եւն.:

Ասկէ ազդուելով է որ Հ. Պ.ին ալ "պատռեմ„ի մէջ կը փնտռէ բառը: Սակայն բառին վերլուծական իմաստը աս չէ, այլ՝ փճացնել, եղծանել, խաթարել, ապականել, եւ այս իմաստները տուողը պ. برباد (barbad)ն է: Կ'ըսուի برباد دادن եղծանել (abîmer), կամ բառացի՝ յօդս ցնդել (برباد) իբրեւ հողմով հոսել. բացատրութիւն որ տճ.ի մէջ ալ սովորական է برباد ايتمك = խ-ր-ր-տ ընել:

"Պարպատ„ին մի այլ ձեւն ալ է "վայրավատ„ը եւ սորա կրճատ "վարատ„ը, որոնց հետ կը նոյնացնեմ նաեւ "փարատ„ը ողք քիչ մը հեռուները պտտելով հանդերձ կու գան միանալ դարձեալ փճ-ն-ւ մայր գաղափարին շուրջը: Աբ.ը հոս ալ իր առողջ դատումը կը յայտնէ "վայրավատնեմ„ը մեկնելով՝ "մսխել, փճացնել, տարտղնել„: Այս վերջինին կրճատն է վատնեմը յորմէ վայր = յ. նախանդամը ինկած:

Պարտ — անս. partu տիպը որ Hb. կը ցուցընէ հարկ չթողուր ուրիշ աղբիւրներ որոնել եւ

տարրոտի ձայներ խճողելու։ Ինձ կը թուի թէ նպ. باید (պարտ է, վայել է, արժան է) ձեւը վաղեմի بارد ի մը ներկայացուցիչը լինի՝ իբրեւ բղխումն նոյն հնագոյն partuի։

Պարտաս(իմ՝) — պ. پرداس եւս եւ پرداز, բայց پرداخت որ կը նշ. հետամտիլ, զբաղիլ, յոգնիլ, ի փոխման հասանել գործոյ, ձեռնթափ լինել։ Յոգնութեան գաղափարն է մեր մէջ տիրականը։

Պարտէզ — նպ. پاليز (pâlîz) կը նշ. այգի, անդ, յորմէ پاليزبان (palîzbân) կամ پاليزوان (pâlîzvân) = باغبان = պարտիզպան։ Բայց ինք pâlîzն ալ մի համառօտութիւնն է հնագոյն զն. տիպի մը pairidaeza զոր Հ. Ա. Տ. "վայր շուրջ փակեալ" կը մեկնէ։

Տարակոյս չկայ որ այս երկու ծայրագոյն ձեւերուն մէջ տեղ կ'իյնայ նպ. (firdavs)ը, յն. παράδεισος որ Սեմական ճիւղերու ալ פרדיסא անցած է։

Hb. ին հետ մենք ալ դիտած էինք որ տառադարձութեան տեսակէտով բացառիկ շեղում մը կայ հոս. պէտք էր որ, ըստ սովորեալ դրութեան՝ "պարդեւս" կամ գոնէ "պարդէզ" գար մեր բառը, այլ կը տեսնենք որ հոս dը նոյնութեամբ պահուած է։

Պարտիմ՝ (յաղթուիլ) — արմատ թէեւ "պարտ", բայց վերի partuին հետ կապ չունի, այլ برده (bordah)ը կը շօշափէ՝ եւ պատերազմի մէջ տարուած, յաղթուած որ գերի ինկած կը նշ.։

Պետ — զն. *paiti*, պհլ. *pat*, նպ. بد, օր. سپهبد (սպայապետ, սպարապետ)։

Պերեւեթեմ — տ. Փերեւետիմ։

Պերճ — պ. ورج եւս եւ وورج, օր. ورجاوند = պերճաւէտ (տ. բարձր եւ կարն., ծան. 85)։

Պէշասպիկ — պ. پچ (*paċa* = ձագ) եւ اسب (ասպ = ձի) բառերէ բաղդեալ = ձիու ձագ կամ մտրուկ։

Պէս — զն. *paesa*, $\sqrt{pis}$ = forme (Hr.) — պհլ. *pêsh*, նպ. وش (*vesh*), օր. مهوش (*mahvesh*) = լուսնատիպ։

Պիծ-ակ — պ. بز (*biz*)։

Պիհ — պ. به (*bih*) = բարի, յարմար եւ տարածաբար՝ բարիք (biens, goods)։ Այս իմաստը գեղեցիկ կը բացատրէ Ռուկ.ին հետեւեալ խօսքը (Հ. Պ. Ի).

"Ցափշտակել զպիհս ուրուք"։

Պիսակ — "պէս" արմատէ ածանցեալ, պհլ. *pêshak*։

Պիստակ — պ. پسته (*pista*)։

Պիտակ (Թղթիկ, Նամակ) — պ. بتك (*bitak*), յն. πιττάκιον (Հ. Պ. Ի)։

Պղինձ — պ. برنج (*birinj*)։

Պղպեղ — պ. پلپل, فلفل։

Պշնում — պարզ այլակերպութիւն "Աշխիմ"ի, որպէս թէ լինէր "ապշանամ" կամ "ապշնում" կամ վերլուծաբար՝

(ա)պ — (ու)շ — նում

այսինքն ապուշ (بيهوش) լինել։

Պոռոշխատ — ضلوع կամ ضلوع:

Պսակ — Հպ. pushâ, Նպ. بساك (pisâk), ըստ պ. Բառագրոց, կը նշ. մազրամներէ, ծաղիկներէ կազմուած բոլորչի փունջը զոր թագաւորք ի տօնական աւուրս եւ նոր փեսայք յաւուր հարսանեաց գլուխնին կը դնէին:

Նոյնը կը հաստատէ նաեւ افسر (աւսար = թագ)ը որ պհլ. ابسر եւ նպ. برسر (ի վերայ գլխոյ)ի համառօտեալն է.

Այս մեկնութիւնը ոչ միայն մեր բառին կազմութիւնը կը պարզէ այլ եւ պատմական գեղեցիկ հանգիտութիւն մ'ի վեր կը հանէ թէ ի հնումն առ Պարսս ալ փեսայն թագաւորի նմանցնելու եւ գլուխը պսակ բոլորելու գաղափարը եւ սովորութիւնը կար, ինչպէս առ Հայս եւ տարակոյս չունիմ որ նոյն իսկ քնոայ բառն ալ ուրիշ բան չէ, բայց եթէ "պսակ", ինչպէս պ. աղբիւրներն ալ կը վկայեն:

Պրտու — պ. پرو = եղէգ:

## Ջ.

Ջախ(եմ) | Նպ. چاك = կոտրել, պատռել.
Ջախջախ(եմ) | յորմէ چاك چاك = ջախջախ:

Ջանք — պ. جنگ = պատերազմ, զի արդարեւ ջանքը յարատեւ պատերազմ է ընդդէմ դժուարութեանց:

"Պատերազմակից լինել ինձ յաղօթս վասն իմ առ Աստուած" (Հռ. ԺԵ, 30):

"Ջանակից եղերուք յաղօթս առ Աստուած" (Ոսկ.)։

"Ջանացարուք մտանել ընդ դուռն նեղ" (Ղուկ. ԺԳ, 24)։

"Մեծ ուրեմն ջան եւ մարտ առաջի կայր" (Ոսկ. Հռովմ.)։

Այս ամէն դէպքերուն մէջ յոյնը մի եւ նոյն ἀγωνιστής բառը կը գործածէ։

Զարմանք որ "ախոյան" բառի առթիւ Հ. Պ.ին այս վկայութիւնները բերելով հանդերձ, چوب եւ [illegible] այսքան որոշ եւ ակներեւ նոյնութիւնը կ'անտեսէ եւ ինչչի հաւակներէն կը ճգնի բերել ձախողակի։

Ջատագով — հպ. yata gauba, պհլ. ǰatak-gob։ Բառին բ. անդամին վրայ արդէն խօսեցանք (տ. գով) որ պհլ. guptano, նպ. کوپ ին արմատն է gub = gow = گو = աս-ել։

Ջատ = զն. yata = օրհներգ, ներբող։ Զրադաշտեանց հանապազօրեայ աղօթքին հիմը կը կազմէ.

yata ahu Vairya

"օրհնեմք զքեզ, Տէր" ի մտօք։

Որով ջատագովը կը լինի ներբողասաց, գովասաց, դրուատող, պաշտպանող։

Հ. Պ.ի ին յիշած "դատագով"ը, եթէ կայ, մեր բառին աղբիւրը չէ, այլ նմանակը միայն կը լինի։

Հ. Ս. Տ.ը անիմանալի ըլլալու չափ մութ է։

Ջատուկ — զն. *yâtu*, պհլ. *jâtuk*, նպ. جادو = **mauvais génie invoqué dans les opérations magiques et inspirant le meurtre (Hr.)**։ Մեր մէջ ալ գրեթէ նոյն իմաստով է՝ խաբեբայ, կախարդ, եւն։

Ջերմ — զն. *garema*, նպ. گرم։

Աստի ջեռնում, ջերանեմ, ջերաջերմ, ջերմաջերմ (گرماگرم), եւն։

Ջին (ծեծելու գաւազան, ձաղկիչ) — պ. جناغ (*ċinag*) = ապազէն փոկեայ որ թերեւս ծեծելու ալ կը գործածուէր (Հ. Գ. Ի)։

Ջմուշկ — պ. چمشك (*ċimushk*), چشاك։

Ջոկատ — պ. جوخ (ար. جوق եղած) = վաշտ, խումբ։

Ջոկ(եմ) — պ. جك (*jók*) մըն ալ կայ որ մածունը հարելով կարագը զատել կը նշ.։ Այս է անշուշտ որ Պալաթցի Գ. դպիրը կը յիշէ "որոշել, զատել" նշանակելով։

Ջոշիր — նպ. جوشیره ، جوشیر = կերակուրի տեսակ մը, մինչ առ մեզ կինամոնի հիւթ կը նշ.։ Թերեւս کاوشیر էր սա (կովու կաթ) եւ կերակուրն ալ ասով կը պատրաստուէր Պարսից մէջ։

Ջով (դեռահասակ, նորընձիւղ ոստ) — նպ. جوان որ զն. *yuvan* (jeune)ի կը պատասխանէ։

Ջուլհակ — նպ. جولاه, բայց սա արաբացեալ ձեւն է բառին, մինչ իսկականն է جلفا որ ցայժմ ալ ի գործածութեան է։

Ջուխտ — զն. *yukhta*, պհլ. *jukht*, նպ. جفت։ Ինչպէս կ՚երեւայ, մեր բառը աւելի **archaïque** (հին) է քան նպ.ը որ գիր մը կը շփոթէ։

## Ռ.

*Ռազմ* — պ. رزم (տ. Պատերազմ)։

*Ռահ* — պ. râs, նպ. راه որ եւ ره։

*Ռահվիրայ* — ճանապարհ հորդող, պատրաստող — պ. راه وبرای, բայց ویراستن կամ پیراستن։

*Ռամ* — տ. Երամ։

*Ռամիկ* = Երամիկ (ամբոխական)։

*Ռաստ* — զն. rasta, պհլ. եւ նպ. راست = ուղիղ։

*Ռատ* — տ. Առատ։

*Ռոճիկ* — զն. raojanh, հպ. raočas, պհլ. եւ նպ. rôzî (روزى) որոց կարգին կը յիշէ Hr. մեր բառն ալ, առ ընթեր դնելով նաեւ լոյսը lohs ուղղագրութեամբ։ Ակներեւ է հոս տարադիպութիւն մ'ըլլալը, սակայն միւս կողմանէ ալ անժխտելի է որ լոյսի գաղափարը արդէն ռոճիկին մէջն է, իբրեւ روزى, այսինքն օրուան՝ ցերեկուան աշխատութեան վարձ։

*Ռոշնական* — իբր روشن (rôshan) ական = լուսաւոր, պայծառ, հին rukhsh (رخش) արմատէն։

*Ռուշինա* }
*Ռօշնա* } = լուսոյ քար, գայլախազ (Ար.), նոյն Ռոշն (روشن) արմատէն։

## Ս.

*Սաղր-եմ* — ըստ Մագգէական վարդապետութեան, Ահրիմանի աջակից եւ օգնական Չար

Ազխներուն մէկ մասը Çatar կը կոչուէր[1] որոց պաշտօնն էր չար թելադրութիւններով մոլորեցնել մարդիկը։

Հայերէնի մէջ ալ գիտենք որ Սադրանքը միշտ ի յոռի միտս կ'առնուի, գէշ խրատ, դրդում բուն իր հարազատ իմաստով յորմէ ապա տարածաբար՝ Սատար (սատարել, օգնել) առումը։

*Սախտեմ* — պ. ساختن որոյ միւս բայարմատն է ساز յորմէ եւ سازیدن = կազմել, հանդերձել, կարգաւորել, սազել, ինչպէս Արեւելեայց մէջ կը գործածուի։ Սախտեմը մեր մէջ աւելի ձիու կազմածքին յարդարանքին համար կ'ըսուի։

*Սակ* — պհլ. sâk, նպ. سا եւ ساو = բաժ, հարկ, տուրք։ Սովորաբար باج կամ باژ ին հետ մէկ տեղ կը գործածուի. կ'ըսուի باجوساو = բաժ եւ սակ։

*Սահման* — պ. سامان, հայերէնի բոլոր առումներով։

*Սաղար* որ եւ *Սալար* — նպ. سالار, յորմէ Սպասալար (سپه سالار)։

*Սաղաւարտ* — զն. *sāravāra*, պհլ. *sārvār* կամ *salvar*, հպ. *sāravarti* որոնց մէջ կը նշմարուի سر (սար = գլուխ) եւ var կամ vard (պահպանելիք) արմատը որ մեր Հովարտին ալ արմատը տուած կ'երեւի։ Երբեմն սաղաւարտը տարածաբար կը նշ. գլխու պահպանելիք, ծածկոց կամ գլխանոց։

---

[1] „Génies auxiliaires subalternes d'Ahriman" (Hovelacque).

*Սամետ*
*Սամետէ*
*Սամետի*, ք — լծկաններուն վիզը կապուած պարան կամ փոկ (տճ. պօյունտուրուք): Ման. Çamya-dè:

*Սամիք* (լուծ, ղեկ) — զն. simâ, նպ. سیم (sayam):

*Սամոյր* — պ. سمور:

*Սայր* — պ. سر (սար) որ եղած է նաեւ Ծ—յր եւ Ս——ր, ինչպէս լծորդաբար ալ կ'ըսենք Ռ—յշ———ր, Սր—ծ—յր, որ խառացած կ'երեւի ի Սուսեր (իբր սուր սայր): Այս վերլուծութիւնն ինձ այնքան հաւանական կը թուի որքան Hb.ին ցուցցած ասորական safsērā, յն. σαμψήρα եւ նպ. šamšēr (شمشیر)ը:

*Սառն* — զն. sareta, նպ. سرد, سرما, եւս եւ سرن (զով): Սոյն պ. Ս—րտ արմատն է որ կ'երեւի ի Ս—րտ-ն——մ, Շ—րտ-ն——մ որ կրնար ալ ցր— ն——մ գալ, ինչպէս կայ ցր— —ն——մ, Vցուրտ որ մի եւ նոյն د ր—ն է մի քիչ այլազանեալ: Սառտնուլ, շրտնուլ, նոյն իսկ խրտնուլ կամ խրտչելն ալ, եթէ մօտէն նայուի՝ ցրտանալ, պաղել, ուծանալ, հեռանալ չէ՞:

Կը յուսամ որ մեր համազգի հմուտ լեզուաբան Պ. Բագրուպաննեանը ինքն ալ հաւանութիւն կու տայ այս տեսութեան քանի հնտեւր. s͡khordosի դիմելու "ցուրտ"ին ծագումին համար:

*Սաստ* որ դարձած է նաեւ շեշտ — զն. sâs = commande (Hr.) = ազդ, հրաման:

*Սաստակ* որ եւ յստակ, իստակ — պ. ساده:

Սատակ(ել) — պհլ. √zat, յորմէ zatano, նպ. زدن — զարնել, սպաննել։

Նոյն այս արմատն է որ, ինչպէս տեսանք, շօթ-էկը եւ հոս ալ սօթօօէկը տուած է, Ս = Զ օրինօք։

Սատլինչ — տ. Ճատրակ։

Սար — զն. sara, պհլ. եւ նպ. سر = գլուխ (տ. Սայր)։

Սարեակ — սնս. sārika, պհլ. سار, նպ. shârak։

Սարոյ — տարակոյս չունիմ որ սա պ. سروն է (նոճի, ձերբ, ինչպէս բացատրեցինք)։ Եւ ասոր ամենամեծ ապացոյց կը համարիմ բառին ծայրի ոյ ձայնավանկը որ անշուշտ سروին մէջ ալ նոյն ձայնը կը պահէր սկիզբները եւ արաբ գրչութեամբ է որ շփոթուած եւ vի փոխուած է ետքերը։ Կամ թէ ի հնումն ալ երկու հնչումները հաւասարապէս գոյութիւն ունէին։ Պարսիկները, ինչպէս ուրիշ առթիւ ըսած ենք, այս ձայները միշտ aw կամ ow տալու հակամէտ են, մինչ թուրքերը vով։

Սարսափ }
Սարսուռ } ուրիշ մեկնութիւն չեմ տեսներ բաց ի պ. سر آسیمه (sar asîmâ) էն որ գլուխը դարձած, ահաբեկած, շփոթած, խռոված կը նշ.։ Նոյն բառն է որ տճ. ալ սէրսէմ եւ սարսըմաք եղած է։

Սարտնում }
Սարտչիմ } տ. Սառն։

Սափոր — պ. سبو (sabô), յորմէ անշուշտ ինկած պէտք է ըլլի Բը.

*Սեաւ* — զն. *syava*, اسیا (*isyâ*), سیاه (*siâh*)։ Հոս ալ դիտելի է մեր -են ձի գիծերու ելքերը։

*Սեղան* — պ. شیلان (*shêlân*) = table, մանաւանդ մեծամեծայնելու եւ արքայականները, եւս եւ պաշտուած խորտիկները։

*Սեպ* — տ. Շեպ։

*Սեպուհ* — տ. Ազատահայեր։

*Սեռ* — պհլ. زر (zer) արմատ մը կը նշմարեմ, եթէ Սեմական չէ, յենլով Կարն.ի այն կտորին վրայ ուր կ'ըսէ.

„Papak la χavitunast aiγ Sasan nim toχmak Dârâ-i Darâian zarχunt yekavimunat“.

Զոր փարսի թարգմանիչը կը հանէ.

بابك نمیدانست که ساسان از تخمهٔ دارای
دارایان زاده شده است

եւ զոր մենք թարգմանած ենք.

„Բաբակ չէր գիտեր որ Սասան Դարեհեան Դարեհի տոհմէն սերած է„ (Կարն., էջ 4)։

Ուր, ինչպէս կը տեսնենք, պ. زاده եւ հյ. “սերած„ը պհլ. *zarχunt*ին ճիշդ թարգմանութիւններն են։

Ապա ուրեմն կրնանք գրեթէ ապահովաբար գնել՝ *zar-χunt* = սեր-հունդ (սերունդ)։ Նոյն ձեւն է ուրեմն եւ

*Սերը* (սերական, անձեցական իմացմունք)։ Այլ է

*Սեր* — պ. شیر (կաթ)։ Վերի խումբին մէջ կ'իմանամ նոյն իսկ

*Սէրը որ իր ուրիշ տարածումներովը հանդերձ դարձեալ նոյն ծննդական մայր գաղափարին կը յանգի, իբրեւ հզօրագոյն ազդակ եւ միջոց սերունդը ապահովելու, ինչպէս կ'ըսէ* **Schopenhauer**:

*Այս ընտանիքէն թերեւս օտար չըլլայ Սերմ(ն), Զարմ եւ Արմ խումբն ալ որ ըստ հնչականութեան եւ ըստ իմաստի շատ մերձաւորութիւն կը ցուցնէ*:

*Սին (դատարկ, պարապ) — զն. sûnya* = vide, dépourvu (Hr.):

*Սիր = ցօղախառն մեղմ օդ (Աբ.) — պ.* سیر *որ ի բարդութիւնս աւելի կ'երեւի, օր.* کرم سیر *(տաք կլիմայ),* سرد سیر *(ցուրտ կլիմայ)*:

*Սիրամարգ — զն. saeno mərəγō, պհլ. sēn(o) muruk, փզ. sinmurū* (Hb.), *նպ. simurγ* (سیمرغ), *առասպելեալ թռչուն, որ արեւելեայ երեւակայութեան եւ մատենագրութեան մէջ մեծ տեղ բռնած է եւ զոր* فریدالدین عطار *հռչակաւոր բանաստեղծը պանծացուցած է իւր* منطق الطیر *քերթուածով, թարգմանեալ յայլ եւ այլ լեզուս*:

*Պ. Բառագիրք "Սիմուրգ"ը կը մեկնեն* سی = 30 *եւ* مرغ = *թռչուն, զի թռչնոց այն լէգէոնէն որ թագաւորութիւն առաջարկելու կ'երթային կովկաս, տեղւոյն հեռաւորութեանը պատճառաւ շատերը դժկամակելով* 30 *հատ միայն մնացեր էին*:

*Այս murγին մօտ դառնալուն մի ուրիշ*

օրինակ ալ ունինք ի լորամարգ = գիրուկ լոր թռչունը (տ. եւ Ցին)։

*Սիրտ* — զն. *zaredhayó*, *zaredhô*, սնս. *hṛid*, նպ. دل որ շատ հեռացած է նախնականէն եւ իրաւամբ կը կարծէ Darm. թէ *drd* կամ *hrd* միջիններէ անցած լինի։ Բայց եւ այնպէս այս *rd* կամ *rz* խումբին lի փոխուիլը ուրիշ օրինակներու մէջ ալ կայ. ինչպէս զն. *bareza* որ նպ.ի بالا անցած է, եւ զն. *marez* (մարձ, մարզ) նպ. مالیدن եղած է։

Ըստ նորագոյն տեղեկութեանց, Պարսկաստանի հիւսիսային գաւառներուն մէջ մինչեւ ցայսօր *zṛdի համար *zyrd* կ'ըսուի, փոխանակ دلի (Meillet)։

*Սիւն* — զն. *stûna*, պհլ. *stûn* եւ նպ. ستون, استون, استن։ Մեր բառին մէջէն * մը ինկած կ'երեւի, թերեւս հետեւողութեամբ յոյնին որ ունի κίων։

*Սլանամ* — տ. Սրանամ։

*Սլաք* — պհլ. *çûlâk*, սնս. *çûla* = pointe, fer de lance ou de charrue (Hr.)։

*Սխալ* — սնս. *skhal* (Hb.), յորդ

*Սխալակեմ* (երերալ գինովներու)։

*Սկահ* — տ. Սկի։

*Սկաւառակ* — նպ. سکوره (*sugûra*) կը նշ. ծաղկաման։ Դիտելի է սակայն որ արաբատառ անհաստատ ցի պատճառաւ բառին ու (—) ձայնը տիրական չէ, կրնանք բաղաձայն *v* ով ալ կարդալ եւ ունենալ *syawra* զոր. հրամայողաբար կը պահանջէ եւ կ'օրինաւորէ մեր

բառը։ Կ'ենթադրեմ որ պհլ. ձայնը անպատճառ سکورك (sgawrak) լինելու է։

Ակեսուր — զն. hʿasura, սնս. çvaçura, նպ. خسر (χasur), خسور (χusur), خشور (χushur), خسوره (χusûrah) եւ վերջապէս خسرو (χusrow)։

Չեմ գիտեր թէ դասական օկեանոս է ուղիղը թէ ռամկացած կեանոսը որ, ինչպէս կը տեսնուի, պարզ աղաւաղութիւն մը չէ օկեանոսին, այլ երկուքն ալ իրենց ներկայացուցիչներն ունին հին ձեւերուն մէջ։

Գ. Բառագրոց մէջ ճշտութիւն կը պակսի նշանակութեան մասին. ոմանք թէ՛ փեսային եւ թէ հարսին հայրը կամ մայրը կ'իմանան, ոմանք միայն այս վերջինը։ Ինչ որ ալ լինի, մեր բառին իմաստը շատ ճիշտ եւ շատ որոշ է։

Այս անուանակոչութիւնը թերեւս անտի է որ, Պարսից մէջ ալ, ինչպէս այլ առթիւ ըսած ենք, փեսայն թագաւոր ըմբռնուած էր, ուստի եւ բառս خسرو որ եղած է ար. كسرى = Cesar, **K**zar, **K**aïzer։

Բնական էր որ թագաւոր — փեսային մայրն ալ, իւր բարձր աստիճանը յիշեցնելու համար, որդւոյն կրած տիտղոսին մասնակցէր։

Ակի ⎫ = բաժակ, գաւաթ, մանաւանդ սրբա-
Ակիհ ⎭ զանը — պ. سکی թէ՛ բաժակ եւ թէ գինի կը նշ. Շիրազցւոց լեզուին մէջ եւ ասոր պատճառ կուտան Գ. Բառագիրք այն արաբամուտ սովորութիւնը որ կ'եռացնէր գինին մինչեւ 6 դանգէն 2 մնար, այն է $^1/_3$ը یکی ։

Ա՞յս է իրապէս մեր բառը որուն երբեմն մենք ալ յարեալ էինք, թէ σκάφη-ի մի ձեւազանութիւնն է զոր մեր Սչ-Հն ալ կը յիշեցնէ: Կը վարանիմ որոշելու:

*Սմբակ* — նպ. سنب (*sunb*) որ ոչմամբ سم (*summ*) կը գործածուի, կորսուած են شدّه-ով փոխանակելով: Նոյնին -չով ածանցեալ ձեւն է մեր մէջ գործածականը:

*Սմպատակ* — պ. سنباده (*sunbâdah*) = փորձաքար:

*Սնգոյր* — شنكار:

*Սոխ* — سوخ, աւելի գործածական է پیاز ը:

*Սուգ* — սնս. *çôka*, զն. *çaôka*, նպ. سوك, յորմէ سوكوار = սգաւոր:

*Սուսեր* / *Սուր* } տ. Սայր:

*Սուքամ* — զն. *sri* = avancer, pénétrer (Hr.) բաւականաչափ կը մեկնէ մեր բառը՝ √սուք + ամ:

*Սուրբ* — սնս. *çubhrá* (Hb.):

*Սուրհամ* / *Սուրհանդամ* / *Սուրհանդակ* } «Սուրամ»ի զանազանութիւններ:

*Սպահ* / *Սպայ* } سپاه:

*Սպանախ* — سپاناخ, اسپاناخ, արաբացի اسفناج:

*Սպանդ* = զոհ, զոհելը, մորթելը, մորթուածը (Աբ.): Ասոր հետ ոչխարի գաղափարը նշանին կը միանայ անշուշտ իբրեւ յարմարագոյնը եւ

յանձնախնամը զոհի։ Այս է որ պ. Համազասպը կը գտնենք պհլ. gôçpend, նպ. گوسفند = ոչխար։ Աստի Սպանդարան, Սպանդանոց, Սպանդութիւնք, եւն։

*Սպանդ* (խոտ մը) — պ. اسپند, سپند։

*Սպանդարամետ* — պհլ. çpendarmat, զն. çpenta armaiti, նպ. سپندارمد اسفندارمد։ Ահուրամազդա վեց ոգեղէն պաշտօնեայ ստեղծած էր, խորհրդանշիչը դէտ եւ խնամակալ կարգելով տիեզերքի վարչութեան ինչ ինչ մասերուն։ Ասոնք amesha çpenta (Ամշասպանդ) կը կոչուէին։ Ասոնց չորրորդին անունն է Çpenta armaiti, այսինքն Ոգի իմաստութեան՝ կարգաւորութեան, եւ խնամակալ Երկրի։ Մեր բառը ճիշդ պատկերացումն է ասոր.

Çpenta = Սպանդ
Armaiti = Արամետ։

*Սպառ* — զն. asporana, պհլ. uspurîk կամ spurîk (Hb.) կը նշանակեն = կատարումն, լրումն, վերջ, վախճան։ Աստի է որ նպ. ի մէջ կ'ըսուի سپری شد = վախճանեցաւ։ Աստի նաեւ *սպառազէն* այսինքն կատարելապէս կազմեալ հանդերձեալ, կուռ վառեալ։

Աստի՝ *իսպառ* = մինչեւ ի վախճան.

*Սպառ*՝ եւ կրկնութեամբ՝
*Սպառասպառ* = լեցուն, տամամ։
*Սպառ ի Սպառ* }
*ի Սպառ ի Սպառ* } ամենեւին, բոլորական։



 

*Սպառնամ* — նոյն վերի արմատէն կամ سپر (տապար, սպար) է յօրինուած, իբր սպառազինութեան ցոյց:

*Սպաս* — պ. سپاس = պաշտօն, ծառայութիւն (ի սպասու կալ):

*Սպասալար* — سپهسالار:

*Սպասել* — սնս. spáç = ակն ունել, մնալ զն. spas:

*Սպիտակ* — զն. spaèta կամ spîta, սնս. svêta, պհլ. spêtak, նպ. سپید կամ سفید, سپیتاك, سپتاك:

Այս ձեւերը կը ցուցնեն որ հաւաստարապէս ուղիղ են մեր թէ՛ սպիտակ եւ թէ պատուական սպիտակ հնչումները, ինչպէս որ սպասն ալ որ մենք ըսպաս սովորած ենք հնչել, պաւառացիկ ոմանք, ինչպէս լսած եմ, ըսպաս կ'արտասանեն որ աւելի ճիշդն ալ է համդէպ պ. سپاس ի:

Միանգամ եւս կը կրկնենք այս առթիւ որ Զով Շով Սով սկսող բառերը մարթ է եւ միապէս ուղիղ է թէ՛ նախընթաց եւ թէ՛ հետեւորդ Ըով կարդալ, օր. ըԶ կամ Զը, ըՇ կամ Շը, ըՍ կամ Սը, յատուկ եւ ընդհանուր օրէնք մը չկայ: Նոյնպէս է նաեւ պարսկերէնն ալ, թէ՛ اسپند եւ թէ سپند, թէ՛ سپید եւ թէ اسپید, թէ՛ ستوار եւ թէ՛ استوار (ստուար), եւն եւն: Եւ եթէ աւելի խորը մտնենք խնդրոյն՝ կը տեսնենք որ սկիզբի յաւելուածական ձայնաւորը, պ.ի մէջ, յետին դարերու եւ նոր ժամանակներու գործ կ'երեւի, իբր օժանդակ առոգանութեան:

*Շատ իրաւացի է* Nöldeke*ի դիտողու-թիւնը "Ստահր„ բառի առթիւ զոր յառաջ կը բերեմ* Oswald Wirth*ի Փռ. թարգմա-նութեամբ.*

"*Istachr* — en réalité *Stahr*, car c'est ainsi que cela s'écrit en Pehlevi, comme d'ailleurs les monnaies sassanides portent ST. comme abréviation du nom. Les Arméniens écrivent *Stahr*. La forme avec voyelle initiale *Istahr* est du persan moderne.

Les Syriens, qui de même que les Persans modernes ne peuvent prononcer le son ST. sans le faire précéder d'une voyelle, avaient déjà autrefois adopté *Istahr* [1] „

*Ապա յայտ է թէ բուն հին եւ ուղիղ հնչումը առանց սկզբնական օժանդակի է ինչպէս Յոյնք մինչեւ ցայսօր եւ բոլոր եւր. ազգեր տեսակ մը սահուն եւ թեթեւ ոլոր-մամբ կ'արտաբերեն այդ ձայները,* spasme, style, *στεῖρα, σφάλλω, σταυρός, եւն եւն։*

*Մենք Արեւելեայքս, մեր վրայ խօսելով ի մասնաւորի, չեմ գիտեր ի վաղուց անտի, թէ յետոյ ուրեմն թրքական ազդեցութիւնը կրելով, բնական անհաշտութիւն մ'ունինք այդ ձայները թեթեւակի գլորել թրթռա-ցընելու. պէտք է անպատճառ դանդաղենք,*

[1] Études historiques sur la Perse ancienne, էջ 220։

տափակենք, ծանրացնենք հնչումը, նեցուկներ փնտռենք քալելու, ինչպէս "Երեք„ի ռւմժիւ ալ ըսինք։

Հ. Ա. Այտընեանին տուած կանոնները, իւր քերականութեանը մէջ, ուղիղ են իբրեւ յարացոյց սահմանափակ շրջանակի մը (Պոլսականին), այլ իրաւունք եւ հանգամանք չունին իբրեւ ընդհանուր օրէնք նկատուելու։ Ինչ որ տեղ մը (Պոլիս, գ.օ.) ըօղօօ կ'ըսուի՝ նոյնը կը լսենք որ ուրիշ տեղ ալ, եւ ոչ նուազ իրաւամբ ըօղօօ կ'արտասանուի, ըօֆօնդը՝ սըկունդ, օըֆանէմը՝ ըսփունմ, օըքէնը՝ ըսկին, օըղըտէլը՝ ըսպրդիլ։

Եւ հին քերականները, եւ ոչ նուազ յարդեաց, տողադարձները միշտ ղը, չը ըրած են եւ կ'ընեն։

Ցանիրաւի չէր ուրեմն որ մենք երբեմն ընդդէմ ելանք հոգելոյս Նարպէյի, երբ նա ըօֆօղէլ կը պնդէր եւ մենք օըֆօղէլը կը պաշտպանէինք։

Ճշմարտութիւնը սակայն ոչ մի եւ ոչ միւս կողմն է բացարձակապէս, ինչպէս այն ատեն ալ ըսած էինք։

Ուղիղը, ճիշտը ըՍին եւ Սըին մէջ տեղ գլորուն թրթռուն ձայն մ'է զոր գործ է տալ, ահա այս է որ մեզ դժուարութիւն կ'ընծայէ։

Եւ սակայն պէտք է, լաւ է որ վարժուինք, կամ գոնէ նոր սերունդը վարժեցնենք, նոր ուղղութիւն տալով թելադրած ըսուած այբբենարաններուն, առով գոնէ դժուարութեանց

մէկը բարձած կ'ըլլանք առանց այդր ալ մեր կարի դժուարահունչ լեզուէն։

*Սպուժեմ* — سپوز (*sipóz*) եւ سپوخت (*sipoχt*) բայարմատներէն որք յամել, յուլանալ, ատ անդ վայրապար դեգերել կը նշանակեն։

*Սպունգ* — ըստ. Պ. Բառագրոց اسپنج եւ اسفنج որ հնագոյն եւ բուն պ. سپنك մը կ'ենթադրէ, ինչպէս յն. σπόγγος ն ալ կը վկայէ։

*Սպուռ* — տ. Սպառ։

*Սպրամ* — հասարակ անուն հոտաւէտ ծաղկանց (**herbes aromatiques**) — զն. *ciparam* որ նպ.ի մէջ سپرم, سپرغم եւ այլ ձեւերու դարձած է։

*Ստամբակ* — պհլ. *staxm*, փզ. *stahm* (Hb.), նպ. ستم կամ استم յորմէ ستنبه կամ استنبه որ թշնամանող, դաժան եւ խիստ կը նշ.։

*Ստան-ամ* նպ. *sita-dan* կը դնէ Hb. բայց ուղիղ չէ, բուն բառն է ستانيدن (برهان.) որ կը նշ. առնուլ, գրաւել, եւն, արմատ՝ ستان (*stân*)։ Կ'ըսուի ستانم = Ստանամ։

*Ստէպ* — տ. Շտապ։

*Ստուար* — զն. *stavra*, նպ. استوار կամ ستوار որ եւ ستبر (*sitabr*) կամ استبر = հաստ, թանձր, խոշոր։

*Ստրուկ* — նպ. ستروك (*sitrûk*) որ կը նշանակէ անինչ (بی مایه), անարգ, անազգի, անազնիւ, յոռեմոյն (برهان.), մակդիրներ որ բաւականապէս կ'որակեն ոչ միայն ստրուկը, այլ ինչ որ ցած եւ *ստոր է* (ստոր-ին, ստոր-ոտ, եւն)։

Հ. Պ.ին սոֆայնանկի հետ կ'զբաղի։

*Սրահ* — سراى կամ سرا, հպ. srāda։ "Սարայ„ը մեր հիմակուան ըմբռնումով մեծ եւ շքեղ ապարանքի մը գաղափարը կը զարթուցանէ մեր մտքին մէջ, բայց բառին բուն նախնական իմաստը այն չէ, այլ որ եւ է բնակարան առ. հասարակ սոֆայէ։

Միւս կողմէն, մեր բառն ալ անպատճառ վրան բաց կամ գոց բակ չնշանակեր գլխաւոր շէնքէն դուրս, ինչպէս որ աւլու (յն. αὐλή) բառով այժմ կ'իմանանք, այլ ընդարձակ ժողովատեղի մը (دالان, ديوانخانه), salon մը ուր կարելի լինի բազմութեան հաւաքուիլ, ինչպէս ըսուած է "ի սրահ քահանայապետին„ որ չեմ կարծեր թէ արտաքին բակը եղած լինի, քանի որ եղանակը տակաւին ցուրտ ալ էր եւ չէր կարելի որ քահանայապետը դուրսը բաց օդին նստած լինէր Յիսուսը դատելու։

Սեղովայ աւազանին պատմութիւնն ալ կը ցուցնէ որ հինգ սրահներ էին ատոնք մէջէ մէջ, մի եւ նոյն շէնքին մէջ։

Յայտնի է ուրեմն որ Սոֆային եւ Սրահին մէջ իմաստի հեռաւորութիւն չկայ։

Մեր բառը կը նշ. նաեւ վարագոյր, առագաստ, պատի զարդ։

Կարծեմ այս տեղ سراچه ին երկրորդ բառը թողուած եւ զօրութիւնը առաջինին վրայ բարդուած է, մինչ ուրիշ տեղ ամբողջ բառն ալ պահուած է "սարուփարթայ„ խժալուր կազմի մէջ։

*Սրահակ* / *Սրահանգ* | Սրահի ծնունդներ, նուազական իմաստով։

*Սրանամ* — տ. Սուրամ։

*Սրսկապան* — “Ներսի խուց վարագուրով պատած„ (Աբ.)։ Պ. سرشکوان կընշ. ըստ برهان ք.ի, առագաստի գիշերը հարսին երեսը ձգուած քօղ։ Ուրեմն գաղափարը երկուստեք նոյն է, գործնական թեթեւ տարբերութեամբ։

*Սրսկեմ* — զն. *sərəska*, հպ. *sṛska* (Hb.), նպ. سرشك (*sirishk*) որ կը նշանակեն ցօղել կաթել անձրեւի եւ արտասուաց։

*Սփիռ* / *Սփիւռ* | յն. σπείρω նոյն է իրաւ, ինչպէս կ'արժեցնեն Hb. եւ Հ. Պ. ի. սակայն չեմ կարծեր թէ մեր բառը անկէ կամ գէթ ուղղակի անկէ եկած ըլլայ, քանզի յայնժամ պէտք էր որ «փի» լինէր։ Մեր ւ-ի գոյութիւնը կը հաստատէ որ անոր համազօր տառ մը կար նախատիպներէն մէկուն մէջ ինչ որ պ. سپهر (*sipihr*)ին մէջ միայն կը գտնենք որ է *çpihar* Աւեստայի (Casartelli), այն է Հաստատութիւն երկնից, համօրէն ոլորտք կամ տիեզերք։ Ուրեմն հոս ալ Հի դիմաց եղած կը տեսնենք մեր բազմազան ւ-ը։ Մեր այս տեսութիւնը անով ալ կը հաստատուի որ մեր բառը «փի»-ալ չէ մեր արդի ուղղագրութեամբ, այլ «փի»-՝ ըստ հնոց որով աւելի շօշափելի կը դառնայ նոյնութիւնը سپهر ին հետ։

Շատ շատ կրնանք ըսել թէ յունականն ալ մի եւ նոյն աղբիւրէ ծագած լինի, առանց մեզ տուչական դեր կատարելու։

Այս վերլուծութենէն բացայայտ կ'երեւի որ «ֆֆի-ս» գրչութիւնն է նախապատիւը քան «ֆֆի» որ պակասաւոր է։

## Վ.

*Վագր* — պհլ. *vagr*, սնս. *vijāghra* (Hb.), նպ.ի *babr* (ببر) անցած է մի քիչ այլափոխութեամբ, մինչդեռ *bagr* بکر կամ *vagr* (وکر) կը սպասուէր։

Բառին բուն աղբիւրը ծանօթ ըլլալով ուրեմն, Տիգրիսի՝ Տիգրանի հետ խաղալու (Հ. Պ.ի) տեղի չմնար։

*Վազ* (եմ՝, — ք) — զն. արմատ *vaz* = aller, faire aller (Hb.). պհլ. *vazîtano*, նպ. وزيدن։ Hb.ը باختن ն ալ կը յիշէ, բայց անոր վրայ այնչափ յարմարութիւն չեմ տեսներ, աւելի խաղալ (بازى) իմաստով գործածուած է։ Նոյն "վազ"ն է որ կ'այլակերպի նաեւ ի Վէժ, ինչպէս թ-ր-վ-ղ = թ-ր-վէժ, Չըվէժ, եւն։

*Վախ* — տ. ԱՀ։

*Վահան* — Hb. եւ Hr. զն. *veret'ra*, √*var*, *vrtra* նախատիպը կը ցուցնեն, առանց մէջէն օթեւանները յայտնելու որոնցմէ անցած լինի բառը մինչեւ իւր վերջին պարզութեանը հասնիլը։ Հ. Պ.իին ցուցցած *fahâneh* (فهانه) որ նիզ եւ ամրութիւն կը նշ. (رهان.), ինձ աւելի յարմար եւ գոհացուցիչ կ'երեւայ, իբրեւ պահպանութեան եւ պաշտպանութեան գործի եւ միջոց։ Եւ որչափ կը յիշեմ, Նարեկացին բառ

ալ է կարծեմ “վահան ամրութեան„ որ կը ցուցնէ թէ նախնիք ալ ամրութեան եւ պաշտպանութեան իմաստով ըմբռնած են։

Վաճառ — պհլ. vâċâr որ նպ.ի بازار դարձած է, յորմէ بازرکان ، بازار = վաճառական։ Հատ հին բառ է, մինչեւ իսկ Բեհիստունի (بستون) Պարսկական արձանագրութեանց մէջ գտնուած է abâcar զոր marché կ'իմանայ Darm.ը։

Եւ Արտաշրի հիմնած Ahvâz (اهواز) քաղաքին անունն ալ որ յետինք, արաբական շրջանին մէջ سوق الاحواز (Ահուազի վաճառանոց) ըրած են, ի հնումն خوزستان وجار (Խուժաստանի վաճառ) կ'ըսուէր։

Ասոր հետ կը նոյնացնեմ վաճառ եւ պաշարն ալ, իբրեւ հեթեթանք, ապրուստ, եւն։

Վայրավատին — տ. Պարպատեմ։

Վանգ, Վանգիւն, Վանկ — տ. Բան։

Վանդակ — տ. Բանտ։

Վան-եմ — զն. van կը նշ. ծեծ, գան, յորմէ vânitan = գանել։

Մեր բառն ալ պարզապէս վռնտել չնշանակեր, այլ՝ զարնել, յաղթել, մարտընչել (Աբ.), որով վան եւ գան կը հաղորդակցին։

Վանք — զն. vaṅh (վանհ) = բնակարան, բնակել։

Վաշխ — տ. Բաշխ։

Վառ (Նուրբ շղարշ եւ բարակ հիւսկէն՝ ճոխ եւ զարդարուն) — պ. ار = ծածկոյթ, վարա-

գոյր։ Ասոր մի այլ կերպն է փատ (բարակ մաշկ, Նուրբ Թաղանթ)։

Վառ (վառել, կրակ տալ եւս եւ զինուք զարդարել) — տ. փառք։

Վաստակ — պ. کاستن بستن = մշակական աշխատութիւն։

Վատ — պհլ. vât, նպ. بد, յորմէ

بداختر = վատախտար,
بدبخت = վատբախտ,
بدتر ، بتر = վատթար,
بدتخمه = վատտոհմիկ,
بدمنش = վատամիտ,
بددل = վատասիրտ, եւն։

Վատնեմ — տ. Պարպատեմ։

Վատշուէր — ցարդ անծանօթ մնացած բառ որ Աբ.ը կը մեկնէ "չար, անզգամ, ժանտ, աներես"։ Այս իմաստը բուն բառին էութենէն չէ, այլ գործածուած տեղերուն յարմարութենէն առնուած է։ Եթէ բառը տարրալուծենք՝ կը տեսնենք որ երկու որոշ մասերէ բաղկացած է, վատ որ յայտնի է, եւ շու-էր որ Հայերէնի մէջ ուրիշ տեղ տեսնուած չէ։ Սա պարզապէս պ. شوهر ն է որ կանամբի այր մարդ (կարգուած) կը նշ.։ Ուրեմն վատշու-էրը այն է որ վատ ամուսին եղած է, կամ ուխտը դրժելով կամ բարուց դաժանութեամբ եւ մեր մէջ ունեցած կիրառութիւնն ալ գրեթէ այս միտք է միշտ։

կազմին ալ եթէ ակնարկ նետուի, մի եւ նոյն է երկուստեք՝ հ = – հանգիտութեամբ: Թերեւս մեր բառն ալ շոհեր կը հնչուէր առաջները:

Վար-ել — տ. Վարգ:

Վարազոյր — Հ. Պ.ին farazîr (فرازير) մը կը գտնէ՝ նոյն նշանակութեամբ: Այս բառին գոյութիւնը պ.ի մէջ՝ մեզ տարակուսական է, եւ եթէ լինի ալ ուրիշ բան չկրնար նշանակել, բայց եթէ Ցէլէվոյ, որ որչափ ալ բռնազբօսենք՝ դարձեալ մեր բառին իմաստը չչօշափեր:

Եթէ բառ մը յօդել հարկ է, ես մտադիւր զն. var (ծածկոյթ)ը կ'ընտրէի միացնել کير (gîr) արմատին հետ, իբր وارکير = վարգիր յորմէ վարագոյր, այսինքն ծածկոյթ կրող, կամ ծածկոյթ պարզապէս: Այսով գոնէ տարտամ եւ երկբայելի աղբիւրներու տեղի չմնար:

Վարազ — զն. varâza, պհլ. varaz, նպ. وراز եւ گراز (gurâz):

Վարակ = ոստ, կապ, ոլորք (Աբ.) — նպ. بَرك (bark) եւ ورك (vark): Աստի

Վարակել (ոստ արձակել, ճիւղաւորել, տարածուիլ) որով բառին ախտաբանական առումն ալ կը լուսաբանուի՝ իբր տարածումն հիւանդութեան:

Վարատ-ել — տ. Պարպատեմ:

Վարաւանդ — տ. Պարաւանդ:

Վարդ — եթէ չլինէր զն. varədā (Hb.), նմանութիւնը բռնադատող առաջին բառը պիտի

լինէր սեմական ורדא (varda) եւ ար. ورد (vard)ը։ Սակայն ասոնց վրայ խորհելն անգամ աւելորդ է, քանի որ Արիական յայտնի աղբիւր կայ։

*Վարդապետ* — տ. Վարդ։

*Վարզ* — պ. ＞＞., ＞＞. = գործ, աշխատութիւն, ուսմունք, արհեստ, եւն։

Սոյն այս բառն է որ այլ եւ այլ կերպարանափոխութիւններով տուած է մեզ Վարդ որ նոյն է ընդ վարժի եւ կը նշանակեն ուսմունք, արհեստ, եւն, յորմէ վարդապետ, վարժապետ, իբր վարժից՝ հրահանգացպետ, կամ բուն բառը գործածուելով՝ վարպետ։

Այս վերջին պատուական բառը որ Վուր կրճատ ձեւն է Վուրղ կամ Վուրժի, գեղեցկապէս կը լուսաբանէ նաեւ վար (վարուցանք) եւ վարեմ (հերկել, մշակել) եւս եւ ուրուր եւ Նուր-ունքը, առանց vrĕti, aperio, veru, verofe, vrata եւ ոչ ալ art տիպերու դիմելու, ինչպէս որ առաջարկուած են. Վուր-եմը diriger, conduire նշանակութեամբ ալ վերի սահմաններուն մէջն է։

Գալով Վուրթրաղնաին, ի զուր է ըստ իս անոր իսկութիւնը այս շրջանակէն դուրս փնտռելը, միայն թէ մեր այժմու կրօնական ըմբռնմամբ եւ մի միայն ուսուցանել հրահանգել իմաստին կապուելու չէ, այլ անոր հետ զոյգ իմանալու է նաեւ հասարակ գործաւորութիւն, աշխատութիւն, արհեստ եւ

արհեստաւորութիւն առումներն ալ որ բառին բուն եւ էական իմաստներն են: Հատ ճիշդ սահմաններ է Աբ.ը “վարժապետ, ուսուցիչ, ճարտար, վարդապետ եւ վարպետ, տճ. ուստա, հօճա, 2. արուեստաւորաց գլխաւոր“:

Այս երկրորդ նշանակութիւնն է ահա որ նորագիւտ Մնացորդաց, այն է բուն իսկ թարգմանչաց ձեռքէն ելած ասորական թարգմանութեան մէջ կը նուիրագործուի “գործաւորաց պետ եւ վերակացու (ուստա պաշը) իմաստով„:

| Ասոր. | Եւթ. |
| --- | --- |
| “Եւ արարին կազմեցին պատրաստեցին տարան ի ներքս զերախայրիան զգուշութեամբ, եւ ի վերայ նոցա վարդապետ քահանայն Ղեւտացի:„ | “Եւ բերին անդր զպտուղսն եւ զտասանորդսն հաւատովք, եւ էր նոցա վերակացու Քովքենիաս Ղեւտացի:„ Բ. Մն. ԼԱ, 12: |
| “Եւ ժողովեաց Սողոմովն եւթանասուն հազար այր բեռնակիր եւ ութսուն հազար այր քարակոփ ի լերինն եւ վարդապետս ի վերայ նոցա երեք հազարս եւ վեց հարիւր:„ | “Եւ ժողովեաց Սողոմոն եւթանասուն հազար արանց բեռնակրաց, եւ ութսուն հազար քարահատաց ի լերինն, վերակացուս նոցա երեք հազար եւ վեց հարիւր:„ Բ. Մն. Բ, 2: |

Նոյն մտօք Խորենացիին մէջ ալ կը կարդանք, Վանայ հռչակաւոր ամբարտակին առթիւ,

"Արդ հրամայէ (Շամիրամ) զամբոխն ի բազում դասս որոշել եւ ի վերայ իւրա-քանչիւրոց դասուց ընտիրս ի ճարտարացն վարդապետս կարգել" (Ա. Թ.Զ)։

Տարակոյսի ստուեր անգամ չկայ ուրեմն որ վարդապետը պարզապէս ուստա պաշը է եւ իբր այն՝ վարժապետ եւ մանաւանդ վար-զապետ է եւ մինչեւ անգամ ժողղողեփ, եթէ չուննենայինք, այլ առմամբ՝ մարզպետ։

Փութանք ըսելու որ նոյն իսկ մարզն ալ, մարզանք, կրթանք նշանակութեամբ, տարբեր չէ վողղէն որուն հարկատու կը ճանչնամ նաեւ մարծ եւ մուրցը՝ արմատ ժքջէժի։

Մի եւ նոյն ոստէն ունինք ուրեմն իբրեւ ստեղունք՝

Վար
Վարդ
Վարզ
Վարժ
Վարձ
Մարզ
Մարձ եւ
Մուրց

բոլորն ալ մի եւ նոյն մայր-գաղափարի շուրջ բոլորեալ, այն է գործ՝ աշխատութիւն՝ կրթանք։

Վար — տ. Վարզ։

Վարկ — տ. Արգ, Ցարգ։

Վարծ — տ. Վարզ։

Վարշամակ — Նպ. باشامه (bâshâmah) = ծած-կոյթ կամ քօղ երեսաց (կանանց)։ Պահլաւ-աբար bâshâmak կամ vâshâmak։

Վարոց = քշելու գործիք, գաւազան (Աբ.) — Վարզ ի սահմանին մէջ է երկրագոր-ծական ըմբռնմամբ։

Վարուժան — պ. ورشان (varshân) զոր աբ. կը կարծէ برهان։

Վարունգ — Նպ. بادرنك յորմէ وارنك եւ այժմ ի գործածութեան بالنك։

Վարս — զն. varesa, պհլ. vars, Նպ. ورس։

Ասոր զանազանութիւններն են.

Բարս (բարսմունք),
Բարշ յորմէ
Բաշ, եւ
Վարսամ — պ. ورسن
Պարսամ — պ. برسم (բարսամ), տճ. برجم։

Վարսակ — Նպ. فرزه (farzah) = դեղ, դալար, դալարիք (Հ. պ.ին), զոր եւ կը հաստատէ برهان։

Վարտիք — պ. բառագիրք وردك (vardak)ով կ'իմանան հարսին բերած ագանելիքը (օժիտ) եւ بارده (bârdah)ով՝ վարտիք, ճէհիզը։

Հ. Աճառեան՝ զն. var (ծածկոյթ) արմա-տէն varəti, varətiya ձեւերը կը ցուցնէ, որոնց հետ اندر (andar)ը միացնելով կ'ստանայ ան-դարվարտի։ Գրեթէ նոյն արմատը ցոյց կու-տայ նաեւ Ղ. Բագրուպանեան bhr̥diyos ձեւի տակ ("Հանդ. Ամս." 1908, Օգ.)։

*Var* արմատի ազդեցութեան տակ ըլլալով՝ պատրուակ, պարտակ, վարագոյր (وردك ، ورده ، ورکیر ، ورده) ընտանիքին մէջն է ուրեմն։

Վաւեր — պհլ. *vaver*, նպ باور ، բայ باوریدن (վաւերել), յորմէ վաւերական (واورکان)։

Վեհ — զն. *vas* կամ *ves* որ եւ *vañhu*, հպ. *vahu*, պհլ. *veh* (وه), նպ به (*beh*) որ կը բացատրեն թէ մեր վեհը եւ թէ վեստ կամ վէստ կամ վէս ձեւերը որոնց մէջ տիրող միտքը դարձեալ իշխանականութիւն, մեծութիւն, եւն է։ Կարն.ի մէջ տեսանք որ (ծան. 28) նոյն զն. وس արմատն է նաեւ մեր "Վասպուրական" (وسپورکان) = ազատորդիք, ազատազնեայք, վեհազունք։

Այս وه արմատէն գեղեցիկ բարդութիւններ ունինք թէ պ.ի եւ թէ հյ.ի մէջ, օր.

وه زاد = بهزاد = հյ. վեհազատ.
وه دین = بهدین = վեհադեն (Զրադաշտեանց իրենց տուած անունը)։

Այսպէս կրնանք իմանալ մեր.

Վեհազնը (ՎԵՀԱԶԻՆ կամ ՎԵՀԱԶՆ) = իբր պհլ. وهزان յորմէ وهزاد (վեհազատ)։
Վեհանման = وهمون ، وهنا։
Վեհապատիւ = وهپایه = պհլ. *veh-pat* (*pat* = տէր)։
Վեհապետ = وه بد ، بهبد (պհլ. *veh-pat*) զն. *paiti* (գլուխ) էն։
Վեհապէս = وهوش։

Վեհաւէտ = وهاوند, ըստ օրինակի ورجاوند ի այն է պերճաւէտ:

Վեհափառ = وهافر (فر = փառ-ք):

Վեր, ի վեր, ի վերոյ, վերայ, ի վերայ — պհլ. եւ նպ. ابر, بر եւ ور, յն. ὑπέρ, սնս. upari, upero: Առնցմէ օտար չեմ կարծեր նաեւ فرا եւ ورا ձեւերը: دبستان ի մէջ կը կարդանք արդարեւ.

هرچه هست ایزداست وورای‌او چیزی نه

"Ամենայն ինչ որ կայ՝ Եզդ (Աստուած) է, եւ չիք ինչ ի վեր (ի վերոյ) քան զնա":

Այս նախադրութիւններով գեղեցիկ յօրինուածքներ ունինք պ.

برخواستن = ի վեր կալ.
برداشتن = ի վեր ունել, առնուլ.
ورنامه կամ برنامه = վերնամակ (titre).
ورتنی, برتنی, ابرتنی = ապարթանել, մեծամտել.
برتری, ابرتری = ապարթարել, մեծամտել (տես պարն., ծան. 30, 31, 140).
برین = վերին.
بررس = վերահաս (տ. հասանել).
وارس, فرارس = ի վերայ հասանել, կալ.
فرفر = վեր ի վերոյ = շտապաւ, արտորնօք (برهان):

Ոմանք մեր Գերն ալ այս կարգին մէջ կ'իմանան, բայց չեմ կարծեր. جر կամ • جر աւելի յարմարութիւն կը ցուցնեն, իբր յաղթական, գերիվերոյ, գերազանց։

Վերջ — Հ. Պ.ին ուղիղ կը համեմատէ فرجام ի հետ, ընդ նմին առնելով եւ վախճանը որ թերեւս ֆ-րջ-ն կամ փ-րջ-ն միջիններէ անցած լինի, ինչպէս ունինք Ուրջ։

Վեց որ եւ վեշ — զն. k'shvaš ի վերջին պարզութիւնը կ'երեւի, ձգելով խշ խումբը, ինչպէս պհլ.ն ալ անկէ sh ձայնը միայն կը պահէ եւ այնպէս ալ առուած է նպ.ի՝ shash (شش)։ Այսպէս զն. k'shvashashi (խշվաշաշի) = վեցաչեայ։

Հ. Պ.ին յայտնապէս կը սխալի ՎԵՑի, ՎԵՇի հետ բաղդատելով, քուէի վեցանկիւն ձեւէն հրապուրուելով։

Վզուրկ — հպ. vasrka, պհլ. vzurk, նպ. بزر. ուրկէ կ'ստուգուի որ վզուրկ գրչութիւնը սխալ է։

Վէգ — զն. vaèg'a = course impétueuse, élan, peut-être projectile (Hr.)։ Յամենայն դէպս կուիւ՝ պայքարի շուրջը կը դառնայ խնդիրը որով շատ լաւ կը բացատրէ մեր "ի վէգ գալ"ը, իբր պայքարիլ, մարտնչիլ զօր եւ բառին միւս վէճ ձեւն ալ կը հաստատէ։ Բառին projectile իմաստովն ալ ինքնին կը լուսաբանուի ՎԷԳ (կոռ, աշըք) նշանակութիւնը, նկատելով ՎԷԳը իբր նետելու իր։

Վէժ — տ. Վազ։

Վէժ որ եւ Բէժ եւ Վիժակ (ծածկոյթ, վարագոյր) — կախել նշանակութեամբ آویختن ին آویز արմատը ցոյց տրուած է, բայց հաւանութեան չէ, մերիններ բուն համապատասխան բառն է պ. پیچ, پیچه եւ پیچك որ նոյնպէս ծածկոյթ (կանանց) կը նշ.:

Վէմ — զն. vaema:

Վէս / Վէստ } — տ. վեհ:

Վիզն / Վիկն } = տճ. պուրչաք — պ. فوك (fûg):

Վիճակ — Hb.ին ցուցցած bēža, vēža ձեւերը ամենեւին յարմարութիւն չունին, անոնք Նպ.ի ویژ, ویژو եւ ویژوار ի նախատիպերն են որ յըստակ՝ զուտ՝ անարատ՝ անապակ կը նշանակեն եւ նոյն գաղափարի հետեւութեամբ երկրորդաբար ալ՝ սեփականութիւն, proprius, peculiaris, ինչպէս ինքը Hb.ն ալ կը դնէ:

Եւ իբր այս՝ մեր Վճիտին կը պատասխանեն որ ճիշտ նոյն իմաստն ունի, գրեթէ նոյն յօրինուածով:

Վիճակին ճիշտ մեկնութիւնը հիանալի կերպով Աբ.ի մէջ կը գտնենք՝ որ է.

“1. վէճի տակ ինկնալու բանին որոշում՝ վէգով կամ քուէով. 2. բախտ. 3. մէկին ընկած բաժինը. 4. իշխանութեան տեղը, թեմ. 5. կալուածք, գետին. 6. եկեղեցական պաշտօն:„

Բառարանը որչափ որ այլ եւ այլ ընթերցուածոց համեմատ պէսպիսացուցեր է ի-

մաստները, սակայն եւ այնպէս դժուար չէ նշմարելը թէ ամենուն ալ ծագամ ծնունդտուող հիմը մէկ է, այն է վէգով քուէով որոշել: Բախտը, բաժինը, թեմը, կալուածքը ի՞նչ են յիրաւի, եթէ ոչ վիճակաւ որոշուած բաներ:

Հ. Պ.ին շօշափած է այս հանգիտութիւնը, բայց իւր "իհակառակէն"ներու անտեղիտալի նախասիրութեամբ աս ալ "վէճ"ին հակառակէն կը բերէ, փոխանակ տիրապէս ա՞յն է ըսելու. ազդուելով թերեւս բերած վկայութենէն:

"Վիճակ դադարեցուցանէ զվէճս" (Առակ. ԺԸ, 18), որ սակայն աւելի կը հաստատէ նոյնութիւնը քան հակառակութիւնը բառին:

Վիշապ — զն. *vishô vaèpa* = qui lance du poison (Hr.):

Վիշտ — զն. *tbaešah*, պհլ. *beš*, նպ. *bîsh* (بیش) = վէրք, ցաւ:

Հ. Պ.ին շուայտ, տուայտ ին հետ կը համեմատէ տարադիպաբար:

Վիրամ (ածիլել) — պ. արմատ ویرای ، پیرای ، ویرا ، پیرا ، ի բայէս پیراستن ، ویراستن ، պհլ. *padrast* որ կը նշ. թէ ածիլել եւ թէ կազմել, հանդերձել, պատրաստել: Ինչպէս որ նոյն մտօք եւ կազմով կայ նաեւ آرا ، آرای ، آراستن = յարդարել, զարդարել որք գրեթէ միշտ ալ զոյգ կը գործածուին آراستن եւ پیراستن:

Եւ մեր մէջ ալ վէրամը միայն ածիլել, մազ կտրել չնշանակեր, այլ պատրաստել, յար-

գարել ալ, ինչպէս ունինք —ւճկէր—յ = ճամ–բայ բացող, վարսավէրայ = մազ շտկող:

Վկայ — զն. vîkaya, պհլ. vi-kâç: Հպ.ը շատ խանգարուած է տեղաշրջութեամբ՝ گواه (gvah):

Վճար (վերջ, վախճան եւ որոշում, վճիռ) — պհլ. vicar, յորմէ vicarishn եւ vicartan (մեկնել, որոշել, վճռել): Նպ.ի մէջ թէ وجارش, թէ وذارش եւ թէ v = g փոխանակութեամբ كذارش է, բայ كذاردن ,كذرانيدن եւ كذاشتن:

Վճիռ — զն. vîcira, պհլ. vicir, Նպ. وجر (برهان.):

Հակառակ երկու տարբեր աղբիւրներ ցուցնելուն, վճ—ր եւ վճի—ը չէ կարելի իրարմէ զատել:

Վճիտ — Hb ը Նպ. گزيده եւ պհլ. vicilakh հետ կը բաղդատէ որ ընտրեալ կը նշ.: Իրաւ է մեր բառն ալ որ զուտ, անապակ, անխառն կը նշ., դարձեալ նոյն գաղափարը կը շօշափէ, ընտիր, մաքուր, որոշեալ, զատեալ, բայց գործածութեան մէջ նուրբ երանգ (nuance) մը կայ, گزيده ընդհանուր մտօք ընտրեալ կը նշ., մինչ մեր վճիտը մաքրութեան՝ անարատութեան աւելի կը յարի եւ յայսմ պ. ويژه ին աւելի կը պատասխանէ, ինչպէս ըսինք (տ. Վիճակ) եւ ինչպէս Գալաթցի Դպիրն ալ իմացեր է:

Ինձ կուգայ որ մենք շատ անգամ մեկ երկու աննշան տարբերութեան համար արմատները չարաչար կը բաժանենք կը հեռացնենք առ ի պէտս, մինչ բառերուն թէ կազմական եւ թէ իմաստի յայտնի մերձակցութիւնք ասոր հակառակին կը վկայեն:

Ես կը կարծեմ ուրեմն որ վերոյիշեալ *bēža*, *vēža*, ویژه, *vic-it-ak* մի եւ նոյն տիպերն են, նոյն եւ մի *vij*, կամ *viċ* արմատէ սերեալ։

Վնաս — պհլ. *vnaç* որ *v* = *g* եւ *s* = *h* օրինօք Նպ.ի گناه (*gunâh*) եղած է։ Պհլ. այս պարզ արմատի անգիտութենէն՝ Հ. Պ.ին անհնարին տագնապներու կը մատնուի Վ..ին գրերը տեղափոխելով Ճ..ը հանելու։

Վստահ — Հպ. *vista(h)ura*, պհլ. *v(i)stāxv* (Hb.) կամ *vstar*, ինչպէս Ատրպատի մէջ տեսանք, առ ընթեր *vstaχ*ի, Նպ. وستاخ կամ گستاخ (*gustaχ*)։

Վտակ — զն. *vitaxti* (Hb.), պհլ. *vitaχt*, Նպ. گداخت (*gudaχt*), բայ՝ گداختن = հալեցնել, հեղուկ դարձնել։ Այս հիման վրայ է մեր բառին վազուկ ջուր նշանակելը։

Վտանգ — սնս. *ātaṅga* որուն թերեւս *vitanka* կամ մօտ ձեւ մը կար Հպ.ի մէջ (Hb.) եւ որ ձգելով սկզբնատառը Նպ.ի տուած تنگ զոր մենք այլապէս ալ ունինք ի Թ..գ կամ Թ..կ։

Վտառ — պհլ. *vitâr*, Նպ. وذار (*vδar*) եւ گذار (*guδar*) = անցք, վազք յորդումն։ Կենդանեաց եւ ի մասնաւորի ձկանց բազմութիւն նշանակելն ալ, անոնց՝ որոշ եղանակներուն, մէկ կէտէ միւսը խուռներամ գաղթելուն պատճառաւն է.

Ասոր մի այլ ձեւն է։

Վտար (քշել, հեռացնել), զն. *vîtarem* = au-delà de, dépassant (Hr.)։ Հ. Աճառեանն ալ կը յիշէ այս մերձեցումը "Իրանեան *vitar*

արմատէ մը փոխառեալ„ ըսելով (Հանդ. Ամս. 1908, Ապր., Թ. 4)։

Սոյն տիպի հարկատուներն են

Վտարակ
Վտարանդի } = դուրս քշուած, ելած։

Վտարանջեմ՝ = գլուխ քաշել, հեռանալ։

Վրէժ — Ս. Պետրբ. հրատարակուած 1904ի "Բանբեր„ին մէջ պ. բառից կարճ ցուցակ մը կար յորս, ի շարս այլոց, վրէժն ալ յիշուած էր, սակայն աղբիւրը նշանակուած չըլլալով չգիտցուեցաւ թէ պ. ո՛ր բառին հանդէպ հանուած էր, Hb.ը լուռ է այս մասին։

Մեր խուզարկութիւնը ցոյց կուտայ որ պ. فرز (ferîz) կամ فریش համազօրներուն հետ կրնանք համեմատել։ فرز կը նշ., ըստ برهان ի, փետտել, քերթել, քեղթել, իսկ فریش ը՝ յարձակիլ, աւարել (تاخت وتاراج)։ Թէպէտ ուղղակի վրէժ նշանակութիւնը չէ, այլ սակայն նկարագրուած գործողութիւնը հոն կը յանգի դարձեալ։

Այս համեմատութիւնը աւելի եւս ոյժ կ'առնէ հետագայ օրինակաւ։

Վրէպ — պ. فریب որ եւ وریب, բայց فریفتن, فریبیدن, وریبیدن = վրիպեցնել, վրիպել, խաբել, նենգել, եւն։

## Տ.

Տաժանիմ — Hr.ը կը ձախողէ զն. dazh արմատին հետ բաղդատելով մեր բառը։ Dazh

կը նշ. վառել, այրել որ ոչ մի առնչութիւն չունի տ-ճ-նէրին հետ որ տքնիլ, յոգնիլ, տառապիլ կը նշ.:

Ինձ համար ուրիշ աղբիւրներ քրքրելը տարապարտ աշխատութիւն է, Տ-ճ-ն-ին բուն տեղը Դ-ճ-ն, Դ:--ճ-ն խումբին մէջն է, եւ ճիշդը տ-ճ-ն ալ չէ, այլ՝ տ-ր-ճ-ն, համեմատ տր--ճ-ն եւ տր--ճ-ի:

Հ. Պ.ին շատ լաւ դիտեր է այս կապակցութիւնը:

Հ. Ա. Տ. մեծապէս կը սխալի եկամուտ կարծելով տ-ր-ճ-ն-ին ըն, մինչ ամենէն էական մասն է բառին եւ անոր անկմամբն է որ բառը իր բուն ակէն կը հեռանայ:

*Տախտ* — պ. تخت:

*Տախտակ* — պհլ. taxtak, նպ. تخته:

*Տակ* — հին արմատ, յորմէ եւ տակոյ, -յճ, -ի = արմատին թելերը, մազմզուքը (Աբ.) — տ Յատակ:

*Տակառ* — տ. թաղար:

*Տաճար* — պ. تجر (tajar) = ձմեռուան բնակարան, գանձատուն, պահարան: Այս յարմարութեամբ է սրբավայրերուն եւ ներքնատուններուն ալ տաճար ըսուիլը.

"Առէք եւ բերէք տաճարապետիդ"
"Եւ իբրեւ ճաշակեաց տաճարապետն":

Յովհ. Ը, 9:

*Տաճիկ* — նպ. تاجيك կամ تاجك: ճիշդ ու որոշ մեկնութիւն մը չտեսայ այս բառին: Պարսիկ-

ները առով կ'իմանան Պարսկաստան մնած մեծցած տղաները. իսկ Արաբներուն առ հասարակ تاج անունը կուտան: Ցայտնի է որ մի եւ նոյն բառն է:

Տամ — Այս բառին մէջ արմատը ներկայացնողը մի միայն Տ տառն է, —մ բայածանցը վերցնելով եւ յայսմ կը պատասխանէ պ. دا կամ ده արմատին

دا—دن = տ—ալ

ده—دم = տ—ամ

Նոյն երեւոյթը կը տեսնենք նաեւ միւս ցեղակից բարբառներուն մէջ, ինչպէս լտ. *d—o*, սնս. *dá — dām*, զն. *δa-δa-mi*, յն. *δί-δω-μι*, եւն:

Տայգր (տագր) — սնս. *dēvár*, յն. *δαήρ*, հնդեւր. *ďaivér* (Hb.): Հյ.ի մէջ *v* = *g* (գ)ի փոխանակութիւն կատարուած է:

Տան-իմ — √տար = զն., հպ., պհլ. եւ նպ. دار, բայ = داشتن ունել (avoir), կրել: Կ'ըսուի داروكير (տա՛ր եւ ա՛ռ) խուճապի՝ շփոթութեան պարագաներուն, որոյ համդէպ մենք ալ "դիրուտար" ասացուածն ունինք:

Ըստ պարսկական արմատի՝ մեր բառը պէտք էր տար-իմ ըլլար, կամ այն է որ բերնէ բերան րն նի փոխուած է եւ կամ տա-նիմ տրոհելու է, րն ինկած հաշուելով:

Տանջ — նպ. تنج (*tanj*), բայ تنجيدن = նեղել, ճնշել, տանջել:

Ես ալ Hb.ի հետ تكٓ արմատը կը տեսնեմ հոս, արաբացի ուղղագրեալ, այն է մեր Թունգ եւ Թունկը։

Տ. եւ Թանչք։

*Տաշ-եմ* — զն. *tash*, պհլ *tâsh-itan* արմատները կը ցուցնէ Hr , fabriquer, former նշանակութեամբ, որուն եւ Hb. կը համաձայնի։

Որչափ ալ կազմով *tash* եւ տաշ նոյն ըլլան, չեմ կրնար հաւանիլ որ մեր բառին ճիշդ համազօրը ան լինի, զի fabriquer, former չէ հյ. տաշելը, այլ, ինչպէս կ'ըսէ Աբ.ը՝ "կոշտ մասունքը կտրել, մաքրել, կոկել, տճ. եօնմաք, ընտելէմք„, եւ այս իմաստը տուողը նպ. تراشيدنն է √تراش։

Տարաձայնութիւնը հաշտեցնելու համար հարկ է թերեւս ընդունիլ որ հին արմատները անաղարտ հասած չեն, անոնց մէջ ալ կար R մը որ ինկած պէտք է լինի։

*Տաշտ* — զն. *tashta*, նպ. طشت։

*Տապ* — զն. *tap*, սնս. *dabh*, պհլ. *tâp*, նպ. تاب որ եւ تاو եւ تب եւ تو (*tav*), յորմէ։

*Տապակ* — պհլ. *tâpak*, նպ. تابه, تاوه։

*Տապանակ* — նպ. تبنكو (*tabangu*) = զամբիւղ, սապատ, արկղ (برهان.) զոր եւ Հ. Պ.ին դիտած է։

*Տապաստ* = փռել, փռուիլ, փռոց (տապաստ յերկիր անկանիմ, կործանիմ, դիտապաստ, եւն)։

Նոյն միտքը կը յայտնէ պհլ. *tapast*ն ալ որ նպ.ի تبست եղած է = անկում, կործանում,

սատակում, եւս եւ նուաղում, դադարում, խափանում: Եւ այս վերջին առմամբ կը նոյնանայ, հին tapas (تباس) եւ նպ. تباه (tapah)ի հետ որ այժմ աւելի գործածական է:

Շատ գեղեցիկ յարադրուած են երկու ձեւերն ալ سوزنی (Սուզանի) ի հետեւեալ տողերուն մէջ որոյ երկրորդը յառաջ բերած էր Հ. Աճառեան՝ իւր այս բառին վրայ ըրած տեսութեանը մէջ (Հանդ. Ամս. 1908, Ապր., թ. 4).

اکرنه عدل شه استی ونیك رائی او
شدی سراسر کار جهان تباه و تبست

"Եթէ չլինէր թագաւորին արդարութիւնը եւ բարի խորհուրդը: — Աշխարհի գործերը գլխովին ծուռ ու ձախող կ'երթային":

Հ. Պ.ին հոս ալ կը գայթէ "Նապաստակ"ին հետ համեմատելով:

Տապար — պ. تبر (tapar):

Տան — տ. Երեսուն:

Տար (հեռու) — զն. taras, taro, հպ. tara, պհլ. եւ նպ. tar = à travers, au-delà, outre: Այս արմատէն ունինք բաւական բարդութիւններ:

Տարագիր, տարադատ, տարադէմ, տարադէպ, տարաժամ, տարակոյս, տարաձայն, տարապարհակ, տարապարտ, եւն:

Տարած — նպ. دراز: Կ'ըսուի درازکشیدن = տարածուիլ, ընկողմանիլ:

Տարափ — սնս. drapsá յորմէ անշուշտ անգղ. drop (կաթել):

Հ.Պ.ին [illegible] [illegible] հետ կը համեմատէ անաչառաբար:

Տաք — նպ. داغ:

Տեղի — մռ. tala (Hb.):

Տենչ որ եւ տենչ մի այլ ձեւը կ'երեւի [illegible] որ է تنچ = ... զի տենչն ալ մի կերպ տանջանքն է հոգւոյն: Այս տեսութեամբ աւելի ուղիղ է Ջով ուղղագրել քան Չով:

Տարանեմ — զն. dares, dars, յն. δέρχ եւ ուրիշ ճիւղակցաց մէջ ալ քիչ շատ նման ձեւերուն նայելով մարթի հետեւցնել թէ մեր բառէն հաւանականաբար ր մը ինկած է, նախնականը լինելով [illegible]:

Տեւեմ — Համոզիչ բան մը չգտայ հեղինակաց մէջ: Hb.ին պաշտպանած լտ. dū-r-oն մեր բառը չմեկներ: Աւելի քան հաւանական է որ "տիւ"ի շարունակեալ տեւողութիւնը լինի, ինչպէս կը կարծէ Հ.Պ.ին որ միշտ անաչառ չէ:

Տէգ — զն. tig'ra, հպ. taèyha, նպ. تيغ (tigh) = pointu, acéré (սուր):

Տիկ — պ. ալ ديك (dîk) է, սակայն սան եւ կաթսայ նշանակութեամբ:

Տիկին — Այս բառին վրայ բաւական տարբեր կարծիքներ յայտնուած են:

Չեմ գիտեր ուրկէ առնելով Պալաթցի Գ.. Գալիբը պ. [illegible], [illegible], [illegible], [illegible] ձեւերը հանդիպադրած է զորս ի զուր փնտռեցինք մենք պ. բառագրոց մէջ: Եւ այս անհաստատ ցուցման վրայ յենլով է որ Հ.Պ.ին վստահ շեշտով մը կը յայտարարէ թէ "Այս

բառին բաց յայտմանէ ուրիշ որ եւ իցէ մեկնութիւն օտար է եւ բռնազբօսիկ, եւ այն մեկնութեանց հետեւութիւնները սխալ„ (Ստուգ. բառ., էջ 29—30, ծան.):

Եթէ չունենայինք համակազմ. տէր բառը, կրնայինք տիկին վրայ անկախ յօրինուածութիւն մը տեսնել: Բայց այս երկու բառերը այնքան իրարու համերաշխ կ'երթան որ չարաչար կը թուի անջատումը: Երկու դէպքին մէջ ալ նախավանկ տի մը կը նշմարուի որ հոլովման մէջ անփոփոխ կը մնայ, երկրորդ անդամն է որ կը հետեւի հոլովական թեքումներու,

Տի-առն (տե-առն):
Տի-արամբ (տե-րամբ):
Տի-առնէ (տե-առնէ):
Տի-արք (տե-արք):
Տի-արց, արանց (տե-արց, տե-րանց):
Տի-արամբք (տե-րամբք):

---

Տի-կնոջ:
Տի-կնաւ, կնամբ:
Տի-կանայք (տի-կ[ա]նայք):
Տի-կանանց (տի-կ[ա]նանց), եւն:

Ուրեմն, համաձայն Meilletի եւ նախորդ բանասիրաց, մենք ալ տի-այր եւ տի-կին վերլուծութեանց վրայ կանգ կ'առնենք, իբր տուագ (տի) այր եւ տուագ կին:

Տիւ — տ. Դեւ:
Տիմար — տ. Ախմար:

*Տխուր* — Թերեւս տ-խուր, ոչ خرّم (Հ. Պ.ի)։

*Տկար* — գործելու անատակ, անկարող, տ ժխտականէ եւ կար (كار) արմատէ։

*Տոհմ* — զն. *taoχman*, պհլ. *toχm*, նպ. تخم (*toχm*) = սերմ, ունդ, ազգ, սեր, օր. تخم مرغ (*toχm-u-murγ*) հաւկիթ։

*Տուգ-անք*, √տոյժ, եւ

*Տուժ-եմ*, √տոյժ մի եւ նոյն توز արմատէ են, բայ توختن = վճարել, հատուցանել որ երկու բայարմատով կը խոնարհի توخ եւ توز։

*Տոմար* — նպ. تومار, յն. τομάριον։

*Տուն* — սնս. *dam*, զն. *nmâna*, յն. δόμος, լտ. domus ցեղակիցները որոնց ամենուն մէջ *ա* պահուած կը տեսնենք, տեղի կուտան կարծելու թէ մերինին մէջէն ինկած լինի թերեւս, կամ -ի ազդեցութեամբ վտարուած (տոմն)։ Այս ենթադրութիւնը կը բացատրէ միանգամայն թէ ինչու հոլովման մէջ Տ-ան կը լինի բառը, զի անսովոր է որ Տու-նէն տան գայ։ Այլ տոմ-նէն շատ բնական է տոմ-ան գալը, իսկ իյնալով ոմ խմբի, ինկած է նաեւ զինք փոխանակող ոն խումբը եւ բառը վերածուած է պարզ եւ լերկ տ-անի։

*Տրտում* — Հին եւ Նոր պ. dard (درد) (ցաւ, վիշտ) արմատի հարկատու կ'երեւայ մեր բառը՝ ում ածանցով։

*Տօթ*, այն է տաւթ, յորում կը ձայնակցի սնս. *tapti*, նպ. تفت (*taft*)ի որ տապ, տաք, ջերմ կը նշ.։

# Ր.

*Րախ* — տ. Խրախ։
*Րահետ* — տ. Արահետ։
*Րամ* — տ. Երամ։

# Ց.

*Ցախ* (ճիւղ, ոստ) — մնս. *ċakha*, նպ. شاخ։
*Ցամ*, *ցամն* (ըստ ուղղագրութեան Ն. Բիւզանդացւոյ. *ցում*, *ցումն*՝ ըստ հին տպագրութեան) = "փտտած հիւթ մարմնոյ" (Աբ.), "այտոյց, ուռոյց" = պ. سام (Հ.Պ.Բ)։

Պ. բառագիրք ուղեղի հիւանդութիւն մը, տեսակ մը այտուց (?) կ'իմանան եւ ասով կը մեկնեն յայտնի սէրսէմ (ապուշ) բառը իբր سرسام (գլուխը խանգարեալ) զոր եւ տեսանք سر آسيمه։

Նաեւ տեսակ մը անասնիկ կ'իմանան (سوسمار) զոր եւ արմաւի մուկ (خرما موش) կը կոչեն։ Դժուար է որոշ իմաստ մը հանելը թէ ինչ կարգի եւ տեսակի անասնիկ է, թերեւս որդի տեսակ մը լինի, նայելով մանաւանդ Ոսկ.ի յառաջ բերուած այն կտորին

> "(Մեռեալք) յետ միոյ կամ երկուց աւուրց հոտին եւ ցամին եւ թարախ եւ որդունս ծնանին"

ուր "թարախ"ի հետ որ այտուցի ուռեցքի գաղափարը կ'արդարացնէ՝ կայ նաեւ որդանց յիշատակութիւն։

Յամաք — զն. zem, zema, պհլ. zamîk, նպ. زی, համառօտութիւն زمین, V زم։

Յանկամ — զն. sén'ha = désirer, demander (Hr.)։

Յասումն — տ. Հեշման։

Յին (ուրուր Թռչուն) — ռնս. hyēná, զն. saena, նպ. sîmorγ (سیمرغ) որ Թուի լինել զն. saēno-mərəγo-ի ամփոփումը (Hb.)։

Յիռ (իշավայրի) — Թերեւս լինի کور (gûr կամ gôr) որոյ որսը շատ սիրելուն աղագաւ Սասանեան Թագաւորներէն մէկը, Բահրամ կամ Վահրամը, بهرام گور (Վահրամ գոռ) կոչուած է։

Յուպ — պ. چوب։

Յուրտ — նպ. سرد (sard) — տ. եւ Սարսնում, Շրանում։

Յտեմ (բզքտել, փետտել) — Թերեւս լինի պ. چیدن = փրցնել, քաղել, կորզել (Հ.Պ.Ի.)։



Փաթերակ (չար աչք) — պ. پتیاره, پتیره (patyara, patîra) որ պհլ. patîrak մը կը մատնանշէ = ամէն ինչ որ տգեղ, չար եւ վնասակար է։

Փաղանգամուշկ (մուշկի տեսակ մը, խոտ մը, ձարխոտ) — նպ. پلنکمشك զոր արաբք فلنجمشك ըրած են։ Արմատ մ'է սա որոյ ծաղիկը, կ'ըսեն, նմանութիւն ունի վագրի գաւակի խայտուցներուն հետ եւ մշկաբոյր է։

Փայիկ (ոտքով վազող) — պ. پیك։

Փանդամ — պհլ. padam, զն. paitidâna =

վարշամակ որով. մոգերը քիթ բերան կը ծածկեն, աղօթքի ժամանակ, իրենց արտաշնչութեամբ սրբազան հուրը չպղծելու համար, զոր եւ Եղիշէն կը յիշէ:

Փաշաման որ եւ փոշիման, փզ. pashamân, Նպ. پشیمان:

Փառք — Նպ. فرّ (farr) = մեծվայելչութիւն, պերճութիւն, պայծառութիւն, զն. xᵛarenah, հպ. farnah: Այս դէպքերուն մէջ ձայնարձակ ոը (nah) սովորաբար կ'իյնայ, օր. parena = پر (թեւ), kamna = کم (սակաւ), եւն:

Բալուցւոց լեզուին մէջ "փառ"ը գործածական է եղեր, ցոյց նշանակութեամբ (Հանդ. Ամս., 1903, փետր.): "Փառ"ին մի ուրիշ ձեւն է նաեւ վառ (փայլ, ինչպէս Հոլգէր Պետերսընն ալ կ'ընդունի (Հանդ. Ամս., 1903, Մարտ), զ. օր. խաչվառ, վառ ի վառ, փառփառ, եւն:

Փարախ — տ. Հրապարակ:

Փարատ-եմ — տ. Պարպատեմ:

Փարգաստ (քաւ լեցի) — Նպ. پرکست ، پرکست ، پرکس ، پر:

Փարթամ — հպ. fratama, զն. fratəma, պհլ. fratum, փզ. fradum (Hb.):

Փարուազ (շրջանակ, քղանցք) — Նպ. پرواز (parvaz):

Փարսախ — տ. Խրասախ:

Փարտայ — տ. Պատրուակ:

Փեռեկեմ, իմ, տիմ — տ. Պառակտիմ:

Փետուր — զն. patera, յն. πτερὸν որ սղելով Նպ.ի տուած է پر:

Փերեւեղեմ
Փերեւտեմ
Փերեւերտեմ } = հագուիլ, սգուիլ — նպ. برازیدن ի համազօր կ'երեւայ որ նոյն նշանակութիւնն ունի, յորմէ برازندگی = արդուզարդ։ Ասոր տարբերակները կը տեսնեմ

Պերեւեթը եւ
Պերեւեշտը չի պեխերը ոլրել՝ գանգրելն ալ (Աբ.) յարդարանքի սահմանին մէջ է։

Փիղ — فیل։
Փշիտ (պզտի ստակ) — նպ. پشیز ، پشیزه։
Փող — پول։
Փոշիշ — տ. փուրսիշ։
Փուճ — նպ. پوچ։
Փունջ = 1. արմատ, բուն, 2. խուրձ, կապոց (Աբ.)։ Սովորաբար այս երկրորդ նշանակութիւնն է աւելի գործածականը։ Պ. پنج կ'ըսուի ոլրելով ճակտին վրայ ձգուած խոպոպներուն որ տրցակ կամ խուրձ մը կը կազմեն։ Հանգիտութիւնը ակներեւ է։
Փուշտիկպան — պհլ. pushtîkpan, նպ. پشتیبان ، پشتوان

پشت (pusht) = քամակ, կռնակ, թեկն
بان = պան

այն է թիկնապահ։

Նոյնն է նաեւ, մի այլ կերպարանքով՝ պաշտպանը = նեցուկ, քամակ, ինչպէս, տեսանք։
Փուտ (փտութիւն, փտած) — զն. puitika

√*pui, puiti* (infection, pourriture) յն. πύω (Hr.), նպ. پوی:

Պհլ. *Vendidad*ի մէ (Fargard II, 120) կը կարդանք *kaka pûtak* = փտած ակռայ:

Փրփրեմ (տճ. սէմիզ օթ) — պ. فرفیر (*fïrfîr*):

Փքին — նպ. پیکان:

## Ք.

Քաղ (արու այծ, քօշ, նոխազ) — նպ. کل (*kal*) որ ամէն տեսակի կենդանեաց, այլ մասնաւորապէս գոմէշի արուն կը նշ.:

Քաղթնատ (թօթով, կակազ) — պ. کلته (*kalta*) = թօթով, թլուատ:

Քաղցր — զն. *x^v ərəzu* ընթերցուածը կուտայ Hb. զոր կ'երեւայ աւելի ուղիղ պիտի ըլլար *χ^v arzu* կարդալ, քանի որ նպ.ի մէջ خوار արմատը կը տեսնենք որ خوال եւ خوالی ալ եղած է որ առ հասարակ խորտիկ, կերակուր կամ ոյտ եւ կեր կը նշ. եւ Hb.ին տուած խըրզու եւ Hr.ին *h^v asta* եւ *h^v astra*ն ալ անպատճառ doux եւ douceur չեն նշանակեր, այլ համեղ, բարեհամ, „qui donne la saveur aux choses“, ինչպէս կ'ըսէ Hr.:

Այս ամենուն մէջ, ինչպէս կ'երեւի, խասար, խարզ, խալզ ձայներն են տիրական որ մեր քաղց եւ քաղցրը կ'ընդգրկեն:

Ուրեմն քաղց եւ քաղցր մի եւ նոյն գաղափարի շուրջը կը դառնան, այն է ուտելու եւ անոր յառաջընթաց ախորժի եւ քաղցի բնական զգացման:

Չեմ գիտեր ինչո՛ւ տարբեր եւ անջատ կ՚ըմբռնէ Հ. Ա. Տ. այս երկու եզրները եւ գաղափարները իրարմէ:

Կենդանակերպից շարքին մէջ Cancer մը կայ զոր Խեցգետին կ՚իմանանք հայերէն, զոր հին Պարսք kalaçang կոչած են (Casartelli): Այս վերջնոյն մէջ անհնար է չնշմարել Vkalaçին նոյնութիւնը մեր Քաղց ին հետ զոր, այլուստ, նոյն արմատով եւ նոյն միտքը ախտաբանօրէն յայտնող մեր "Քաղց-կեղ" բառն ալ անհերքելի յայտնութեամբ կը հաստատէ:

Այս Քաղց կամ Քաղցքի սահմաններէն դուրս չեն երբեւք Քաղցր եւ Թերեւս Քացախն ալ (Հ. Պ. Ի.), իմաստներու՝ առումներու պէսպիսութիւններով:

Քամակ — նպ. كمك (komak) = կռնակ, նեցուկ:

Քանդակ — պհլ. kandak, նպ. کنده որոյ արաբացեալն է خندق (χandak) = փոս, խրամ:

Քանդուկ (կ՚ըսէ կարասի պէս աման ցորեն, եւն պահելու) — նպ. کندو (kandû):

Քաշ(ք) (մեւակաշտ) — պհլ. kāš, զն. kaša, սն. kakša (Hb.), նպ. کش (kash): Թերեւս ասկէ լինի քուշկէնը զոր "ուրար սարկաւագուհի կանանց" կ՚ըսէ Աբ. ք:

Քաշտի — նպ. کشتی:

Քար — خارا (տ. եւ խարակ):

Քարբ — զն. karpen, նպ. کروه (karva) = վիշապ օձ (Հ. Պ. Ի.):

Քարկիր, քարուկիր — նպ. کارکل (kargîl) =

*կիրով* (کل) *կատարուած գործ կամ* کاه‌کل = *յարդով եւ կրով։*

*Քարկուր* — کارکیر։

*Քարշեմ, քաշեմ* — *զն. եւ սնս.* *karš* (Hb.), *նպ.* کشیدن, √کش։

*Քաւ եմ* — *պ.* کیفر (*kaifer*) *կը նշ. պատիժը որ յանցանքի համար կը սահմանուի։ Տարակոյս չունիմ որ նոյն* کیف *արմատն է որ մեզ +--ը տուած է յորում մեր --ը կը փոխարինէ զ.f։*

*Քափուր* — کافور, کاپور։

*Քաք* — *պ.* ککی (*kakî*), ککه (*kaka*) = *աղբ, ապաւառք։*

*Քաքար (պաքսիմաթ)* — کک, کاك։

*Քեղի (ղեկ)* — *պ.* کله, خله։

*Քեմուխտ (սեկ, կաշի)* — *պ.* کیمخت (*kemuχt*,։

*Քերքէշ* = *տճ. էկեր օթու* (*Ար.*) *բժշկական խոտ, բաղշտակ,* acorus, *պ.* کرکاس "*սերմն խոտոյ երկք որ բուսանի ի մէջ ջրերնոյ եւ գարւոյ*"։

*Հ. Աճառեան (Հանդ. Ամս.* 1908, *Ապր.)։*

*Վերի չակերտեալ մասը Պալաթցի գրքէն ըլլալու է որ ինչպէս յամենայնի, որպէս դիտած եմ, հոս ալ ճիշդ թարգմանութիւնն է* برهان*ին։*

*Քէն* — *զն.* *kaena*, *նպ.* کین։ *Կ'ըսուի*

کینه‌ور = *քէնաւոր,*
کینه‌جوی = *քինախնդիր։*

*Քէշ* — *զն.* *t-kaèsha*, *պհլ.* *kêsh*, *նպ.* کیش։

*Քիմք* — *նպ.* کام *որ թէ կամք եւ թէ քերմեին ձեղունը* (palais) *կը նշ.։*

Քիչ — պ. کیچ: Ս՚ըսուի کیچ کیچ = քիչ-քիչ:
Քմին — Նպ. کمین:
Քոյր — Չգելով միւս ճիւղակիցները, կը տեսնենք որ սնս. svasur եւ զն. $x^{r}$aṅharն է որ Նպ.ի خواهر ը տուած է: Մեր բառն ալ ճիշդ նոյնն է, նկատելով մանաւանդ իւր [illegible] ձեւին տակ որոյ պարզ սղում կամ ամփոփումն է [illegible]ը:

Աւելի շօշափելի ընելու համար այս համագիտութիւնը՝ դիտենք որ մեր [illegible]ն կը պատասխանէ $\chi$ին, իսկ [illegible]ը հոս ալ դէմ ելած է hին եւ մեր [illegible]ն կատարելապէս կը պատկերացնէ [illegible] ձայնախումբը, զի, ինչպէս գիտենք [illegible]ն երբէք փօ չէ եղած մեր մէջ, այլ միշտ [illegible], ինչպէս հիմա ալ գաւառացւոց կենդանի հնչումը կը վկայէ: Ուրեմն բառը մեր մէջ դարձեր է քուօհէր = (خواهر) = քուէր:

Քուն — զն. $h^{r}$afna, պհլ. եւ Նպ. خواب ($kh^{r}ab$):

Որչափ հեռու է, ըստ երեւոյթին, $\chi^{r}$âbը [illegible]էն, սակայն մի դոյզն ուշադրութիւնը բաւական է, սովորական օրինաց հետեւողութեամբ, երկուստեք նոյնութիւնը տեսնելու, դիտելով $f = \chi$ մէկ կողմէն եւ [illegible] $= f$ կամ b միւս կողմէն: Ուրեմն հոս ալ [illegible] կամ [illegible] կամ [illegible]է աւելի մեր բառը քան թէ ու([illegible])ով քուն (kun):

Չմոռնանք յիշելու որ Նպ.ի մէջ کویان բառ մ՚ալ ունինք, ճիշդ քուն (նինջ) նշանակութեամբ:

*Քուշտընգիր* } *տ. փոխ:*
*Քուշտնգուր*
*Քուռակ* — *պ.* کُرّه (*korrah*)։
*Քուրայ, քրայ* — *պ.* كوره:
*Քսակ* — *նպ.* كيسه:
*Քրտակ* (*տեսակ մը տափակ հաց*) — *պ.* كرده (*krdah*)։
*Քրտիկար* — *պ.* كردكار*ը որ* Hb. *կը դնէ՝* **Եղիշէին** *բառը ամենեւին չմեկներ:* **Մէք. Փորձ.** *փաշային առաջարկած "քրպիկար"ը անտարակոյս աւելի յարմար եւ նպատակայարմար է համեմատաբար, իրր բարեգործութիւն,* فِکر *եւ* کار *տարրներով որ բարեպաշտութիւն, բարի եւ Աստուածահաճոյ գործ եւ ջերմեռանդ վարք եւ այլ այսպիսի կրօնական միտքեր կը յայտնէ, այլ գործածուած տեղւոյն՝ պարագաներուն եւ մանաւանդ քաղաքական հանգամանքներուն ուշ դնելով՝ բարեկողն ալ յարմար չեմ գտներ, ինձ համար բուն բառը كردار*ն է որ գործ եւ արդիւնք կը նշանակէ, ինչպէս ժամանակին* Աւարայրի *եւ* Բազմավէպի *մէջ ալ ցուցցեր եմ:*
*Քրքում* (*զաֆրան ծաղիկը* — *պ.* کُرکُم (*kurkum*)։

# Օ.

*Օղ* (*աւղ*) — *զն.* aóta = vent froid (Hr.), *պհլ.* sart, sarmak, *նպ* سرد, سرما:

*Ուրեմն բառը, ըստ կրկին տուչութեան, կրկին շրջաններէ անցած է,* aóta *էն* աւդ (*օդ*) *եւ* sart *էն* ցուրտ *եւ* սուրտ *եւ* չոր *իմաստները տալով:*

*Օձ (աւձ)* — *զն. azhi*, √*ag*, *յորմէ աժ դահակ* (*azhi-Dahaka*) = serpent destructeur (Hr.)։

*Տարակոյս չունիմ որ մեր ստահակն ալ աժդահակէն տարբեր չէ։*

*Այն այս աժ արմատն է որ տուած է նաեւ մեր իժը՝ փոքր ինչ ձայնական փոփոխութեամբ։*

*Օճառ* — *տ.* Աւճառ։

*Օն (աւն)* — *պ.* هان, *բացագանչութիւն որ միշտ նոյն պարագաներուն մէջ կը գործածուի ինչպէս մեր* Օ՜*նը*։

Հ. Աճառեան՝ Գաղղիացի ծանօթ հեղինակ Michel Bréal*ին մէկ վերլուծութիւնը յառաջ կը բերէ (Հանդ.* Ամս. 1906, Մայ.) *որ սնս. apnas (հարստութիւն, ինչք)ը կը մատնանշէ յորմէ յն.* ἄφενος (*պաշար, հարստութիւն*), *կամ աւելի հին՝* ἄφνος, *յորմէ* ἀφνεός (*հարուստ*)։ *Հարստութեան գաղափարէն ժողովուրդը անցած է ուժի, թուի եւ արագութեան գաղափարներուն, կ'ըսէ, իսկ մեր բառը այս առատութեան գաղափարը կորսնցնելով պահած է արագութեան գաղափարը միայն։*

*Օշնան (աւշնան)* — *զն. us-snāna, նպ* (Hb.) اشنان։

*Օտար (աւտար)* — *“*Տար*„ կամ “*Վտար*„ի մի այլակերպութիւնը կ'երեւի, զի օտարանալ է ի տար աշխարհ երթալ կամ վտարուիլը։*





 

# ՄԻ ՔԱՆԻ ՑԱՑՈՒԿ ԱՆՈՒԱՆՑ ՇՈՒՐՋ

Անահիտ — Հայոց այս սիրելի դիցուհւոյն վրայ այնչափ գրուած խօսուած է որ լուսաբանութեան կարօտ չէ։

Հին Պարսից մէջ ալ մեծ յարգ եւ պաշտօն ունէր նա, կամ լաւ եւս՝ նէ, զի իգական Եազատա (ایزد = Յազդ) ներու կարգէն էր, խնամակալ ջրոց եւ ծննդական արգասաւորութեան եւ իբր այն մասնաւորապէս փառաբանուած՝ Աւեստայի մէջ *Ardvi Çûra Anâhista* կոչմամբ (տ. Արտասուք)։

Աքեմենեան բեւեռագիրք *anâhata* կը յիշեն, իսկ միջին եւ նոր պ. գրականութեան մէջ اناهید, ناهید ձեւի տակ կը ներկայանայ զոր زهره (Զօհրայ = Արուսեակ = Venus) կ'իմանան։ Ուստի՞ է սակայն այս անունը։

Իրաւ է որ Ան–ահիտ կամ Ան–իտ նոյն էր առ Երանեանս ինչ որ է Դիանա առ Յոյնս եւ հրապուրիչ պիտի լինէր յոյն անունէն հակադարձ ընթերցմամբ պարսկականը հանել, ինչպէս կը փորձուի Հ. Ղ. Ալիշանը (Հին հաւատք Հայոց, 264), սակայն ասով բառին իմաստը չպիտի մեկնուէր։ Յաւել նաեւ որ,

թող անդրագոյն շրջանները որ մեզ անծանօթ են, Պարսից եւ Յունաց յարաբերութեանց պատմական շրջանը Աքեմենեաններէն կ'սկսի, Աղեքսանդրէն քիչ առաջ, մինչդեռ Աւետայի խմբագրութեան սկզբնաւորութիւնը անկէ շատ առաջ, Փիշդատեան օրերէն կը դնեն, ուրով չէր կարելի յունական փոխադրութիւն մ'ըլլալ ոչ անուան եւ ոչ անձին։

Եթէ աչքի առջեւ բերենք Դիցուհւոյն ընծայուած ստորոգելեաց մէջ առ հասարակ տիրականը, այն է սրբութեան մաքրութեան գաղափարը, ստուգաբանութիւնը ինքնին կը հետեւի։

„Quant au nom propre de la déesse Anâhita, կ'ըսէ Hovelacque (l'Avesta, 254), il a également un sens qualificatif, celui d'intacte, nette, sans souillure." ինչ որ Աւեստական օրհներգութիւններն ալ կը հաստատեն։

Բուն ճշմարտութեան մէջ ենք ուրեմն ընդունելով որ սա պարզապէս մեր ան-ախտ ան-աղտն է, զոր եւ զն. եւ պհլ. աղբերք ալ պայծառապէս կը յայտագրեն՝ *akhti*, *ahiti*, *akht* = souillure, impureté, եւս եւ խօթութիւն, անառողջութիւն։ Ուրեմն ան-ախտը ասոնց հակառակը պիտի լինի, ինչպէս եւ է իսկ եւ շատ գեղեցկապէս ըսուած է "Անահտական Դիք„, իբր անախտական թէ յանձուկ միտս (յստակ, ջինջ, մաքուր) եւ թէ լայնաբար, իբր sans péché, ինչպէս կ'ընդունին եւ

կը մեկնեն փարսի Աւեստաբանք եւ զոր աւելի բարձրաքարոզ կը ցայտեցնէ Տրդատ՝ "մայր ամենայն զգաստութեանց„ կոչելով։

*Արտաւան* — Հին պ.ի rt խումբին ջէնտը կը պատասխանէ sh ով,

պ. *martiya* = զն. *mashya* (մարդ),
„ *fravarti* = „ *fravashi* (պահապան հրեշտակ),
„ *arta* = „ *asha* (սուրբ),
„ *Artavan* = „ *ashavan* (D.)։

Եւ Որմզդական օրհներգութեանց մէջ ամենէն շատ գործածուած բառերէն է Աշ——նը՝ սուրբ նշանակութեամբ։

„**Ahuram Mazdam ashavanem, ashaė ratûm Yazamaidhê.**"

(ԶԱհուրա Մազդա, զսուրբ եւ զսուրբն սրբոց բարձր առնեմ։)

Սուրբ կ'ըսուին ամէն անոնք որ Զրադեշտական դենի հաւատարիմ հետեւող եղած են, մաքուր եւ ամբիծ կենցաղավարութեամբ։

Նոյն այս Աշաւանն է ուրեմն մեր բառը, հին պարսկական տիպով պահուած։

*Արտաւազդ* — Խտացումն պհլ. *arta-vahistaի* որ նպ.ի اردیبهشت եղած է։ Երկրորդ մասին, *vahistaի* վրայ տարաձայնութիւնը չկայ, դա՝ յայտնի *vah* կամ *vehն* է (Հյ. վէհ), *ist* գերադրականով աճած։

Իսկ առաջին մասը տարբեր մեկնութիւններ առած է։ Ոմանք *artaի* մէջ սնս. *rtaն* կը

տեսնեն, ordre նշանակութեամբ։ Մենք ամենայն իրաւամբ կարող ենք մեր Vօրդը տեսնել հօռ, կարգ, ձեւ, կերպարանք իմաստով որոյ գեղեցիկ շարքը կու տայ Եզնիկ։ Եւ այսպէս բառին մեռքը կը լինի "գերագոյն կամ վեհագոյն կարգաւորութիւն"։

Ուրիշները rt խումբը զն. տհի հանդիպադրելով որ հաստատուն է, ինչպէս վերը տեսանք, artaն ashaին հետ կը նոյնացնեն եւ սուրբ, մաքուր, նշանակութեամբ՝ Էրէյօ ասօրէ, ֆէրօմօֆօօր, օրէօց ասօրէ կ'իմանան գերադրապէս։ Մենք պիտի ըսէինք տառաբար

*arta* = սուրբ
*Vah-ista* = վեհա·գոյն

Աւեստական Պանթէոնին մէջ, ի բաց առեալ զնոյն ինքն Ահուրայն-Մազդայն (*ahuram-mazdam*), մնացած վեց Ամշասպանդներու որոնց առաջինն է Վոհու-Մանու (բահման = յօր.)՝ երկրորդ կու գայ Արտա-Վահեստը, կամ իւր հայ անուանով կոչելով Արտավաշտը, գեղեցկագոյնն ի դէս որ լոյս եւ պայծառութիւն կը ցոլար ամեն ուրեք եւ սրբազան պաշտամանց կը հսկէր եւ ախտ եւ ցաւ կը փարատէր եւ հանապազ ի մարտի էր ընդ Ահրիմնեանս։

Աւեստայի մէջ դեռ ուրիշ շատ բարեմասնութիւնք կը թուարկուին յատուկ Ցաշտով զորս աւելորդ է հոս կրկնելը։

Ի՞նչ աւելի հրապուրիչ ուրեմն քան այսպիսի բարձր անուն մը կրելը զոր եւ Հայք չթերացան վաղ իսկ պատշաճել իրենց նշանաւոր Շահազատներէն միոյն, Արտաշխեան Արտաւազդին որ անդնդասոյզ ի խորափիտս Մասեաց, ըստ հայրենի անիծից, չունեցաւ ժամանակ իրագործելու ինչ որ կը յուսացնէր իւր անունը։

*Երան եւ Աներան* — "Երան„ի վրայ խօսք չկրնար ըլլալ, դա արդէն յայտնի "Իրան„ն է (ایران), պհլ.ի *Ayrian shatur*ը, նպ. ایرانشهر (= Արեաց աշխարհ)։

Այլ "Աներան„ը որ "Ոչ-Իրան„ մեկնուած է առ հասարակ, այնչափ ալ հաստատուն չերեւար ինձ. կարելի է ուրիշ կերպ ալ մեկնել ոչ նուազ իրաւամբ։

Գիտենք որ آنْ , آن از պ.ի մէջ սեփականութիւն կը յայտնէ, սովորական լեզուի մէջ անգամ կ'ըսուի این چیز از آن من است = իմ է այդ։ Այս կէտէն մեկնելով կը խորհիմ թէ انیران ը ایران آن (ա՛ն ը Իրա՛ն) չէ՞ արդեօք, ـا՝ գոյականը ـ եւ ـن ժխտականի հետ շփոթուելով։

Այս ենթադրութեան շատ ոյժ կուտան այն մի քանի ընթերցուածները որոնց հանդիպեցայ եւ որք ճիշդ այս իմաստով եւ գրչութեամբ են։ آئینهٔ هوشنك անուն հնաւանդ եւ շատ յարգի գրքին մէջ, հրատարակեալ ի Փարսի հանրածանօթ Մանիկջի է, կը կարդանք որ Պարսից նախապատմական (առասպելեալ) Հարստութեան նահապետ-արքայ-

ներէն վեցերորդը, Ֆերիդուն[1], յանժամու ծանօթ աշխարհը Հիւսիսէն Հարաւ երեք մասի բաժնեց եւ իւր երեք որդւոցը տուաւ։ Առաջնոյն ինկաւ Արեւելեան մասը, վերին $^1/_3$ը, զոր آن‌ایران անուանեց, Երկրորդին՝ միջինը, այսինքն Իրանը, իսկ երրորդին՝ Արեւմտեան մարզը, ստորին $^1/_3$ը զոր ایران کویژ (Իրան-Գուէժ) այն է Ստորին Իրան՝ անուանեց։

Նոյնը կը հաստատէ ուրիշ տեղ ալ, կոչելով Արեւելեանը, կամ իր իսկ բառերով بهرهٔ خاور ը (Խաւարային բաժին)[2] آن‌ایران, միջինը ایران կամ وه.بوم (= հյ. վեհ բուն = վեհագոյն երկիր), եւ վերջինը այն է بهرهٔ باختری (արեւմտեան մաս)ը՝ ایران کویژ, ըստ վերնոյն։

Այս կրկին կրկին տրուած մի եւ նոյն բացատրութիւնը եւ آن ը اضافه ով (—ն-ը) նշանակելու խնամոտ զգուշութիւնը կը ցուցնէ որ վայրապար եւ մտացածին չէ մեր վարկածը, այլ յառաջնոց իսկ իրապէս նոյն ըմբռնուած եւ աւանդուած է։ Գուցէ — ժխտականին պատճառաւ որ ձայնաւորի քով —ն կը դառնայ, յետոյ շփոթութիւն մտած եւ բացառական իմաստը գերակշիռ մնացած է։

Սասանեանց օրով աւելի տարածութիւն առաւ իմաստը եւ ոչ միայն Արաբին ماوراءالنهر (յետ կոյս գետոյ) կոչած անդր Օքսեան[3] աշ-

---

1 «Հռուդէն„ Խորենացիի։

2 خاور ով Պարսիկը արեւմուտքը կ'իմանայ սովորաբար, Հակառակ մեր "Խաւար„ին։

3 Օքսոս կամ Ամու Դարիա (امدریا) ըսուած գետը։

խարհի, Տուրանի, տրուեցաւ, այլ եւ այն ամէն երկիրներուն որք իսկապէս Իրան չէին թէեւ, բայց Իրանին օտար եւ անաղերս ալ չէին, այլ, ինչպէս բնական է կարծել, ընդ լծով եւ իշխանութեամբ էին Պարսից։ Այլապէս, անիմաստ եւ անմեկնելի պիտի մնային այն հրամանները, հրովարտակները զոր Արեաց Տէրերը կ'արձակէին ի սփիւռ աշխարհի, Արեաց եւ Անարեաց, եթէ սոքա (Հայք, Վիրք, Աղուանք, Լփնիք, Ծանդեայք, Կորդուիք, Աղձնիք, եւն եւն) հարկատու չէին։

Ասկէ կը հետեւի որ Անէրան ալ նոյն մտօք իմանալի է, այսինքն Արիք եւ Ան-(ը) Արիք, իմա՛ ընդ Արեօք։

Իբր ուղղագոյն եւ ստուգագոյնը չեմ ներկայացներ այս տեսութիւնը, այլ իբր կարեւոր ծանօթութիւն մը, առ ժամս, թերեւս աւելի ոյժ առնէ ապագային։

*Մուշկան-Նիւսալաւուրտ* "Մուշկան" բառը միակը չէ, ունինք "Մուշկ" ալ, "Մշկան" ալ, թերեւս լինի մուշկ հասարակ անունը, պ. مشك (կենդանական հոտաւէտ հիւթը), որ իր քաղցր բուրմանը պատճառաւ, մարդու ալ տրուած եւ յատուկ անուն եղած լինի, ինչպէս իր համազոյգը ամպար عنبر, عبير որ նոյնպէս իբր անուն կը կրուի, ինչպէս նաեւ շատ մը ծաղիկներ սմբուլ, շուշան, վարդ, եւն զորս սովորութիւն եղած է կրել։

Գալով "Նիւսալաւուրտ"ին որոյ վրայ լռեր են հեղինակք, սա ինձ շատ որոշ եւ բա-

ցայայտ Սասանեան վերջին շրջանի բառ մը կ'երեւայ զոր հետեւաբար մարթ է առանց դժուարութեան լուծել

نو = նոր
سال = ամ, տարի,
آودر = բերաւ կամ բերող.

آوردن բայէն, զոր եթէ մենք ալ հայերէնի մէջ նմանողաբար բարդենք, "ամանորաբեր" ծանօթ բառը պիտի ելլէ:

Զարմանալի չպիտի թուի այս անուանակոչութիւնը եթէ միտք բերենք որ ի հնուց իվեր միշտ սովորութիւն եղած է ազգաց մէջ դից եւ դիւցազանց եւ վեհ արանց անունները կրելը: Նախնի Պարսից եւ Հայոց մէջ մանաւանդ շատ ընդհանրացած էր այս սովորութիւնը որոյ հարկատու են Վահան, Վահրամ, Որմիզդ, Խորաշետ, Հրատ, Հրազդան, Տիգրան, Տրդատ, Միհրդատ, Միհրան, եւ այլ անհամար անուանք որք կամ լուսաւորաց եւ կամ խնամակալ Ոգւոյ անուններն էին:

Այսոնցմէ մին էր նաեւ Նոր տարւոյ պտղաբերութեան Տեսուչ կամ Խնամատար Դիք որ ամէն Նոր տարւոյն սկիզբը, Նաւասարդին[1], այնչափ աշխարհախումբ հանդիսութեամբ կը տօնուէր, ինչպէս Հայոց նոյնպէս եւ Պարսից մէջ, անտարակոյս, յորմէ եւ Դիքն, թէ ինքն Արամազդը լինի եւ թէ այլ, Ամանորաբեր անունը առած էր, պ. نوسال آورد:

---

1 Նաւա = نو = նոր, սարեդա = ամ (սնս):

Այս տօնախմբութեանց եւ խրախճանութեանց մի գոյզն եւ չփոթ յիշատակութիւնը կը գտնենք առ Ագաթանգեղոսի, բաւական տարբեր ընթերցուածով այլ եւ այլ ձեռագրաց։

Վերջին Տփխիսի Համեմատեալ տիպն ունի։

“Եւ զյիշատակս վկայիցն բերելոց ժամադրեաց ի տօն մեծ հռչակել, սնոտեացն պաշտաման ի ժամանակի՝ դիցն Ամանորոյ ամենաբեր նոր պտղոց տօնին, Հիւրընկալ դիցն Վանատրի, զոր յառաջագոյն իսկ ի նմին տեղւոջ պաշտէին յուրախութեան նաւասարդ աւուր։”

Վենետկոյ տիպն ալ գրեթէ նոյն է։ Մի այլ օրինակ.

“Դիցն ամանորաբեր նոր պտղոց”։

Նոյն է եւ մեր սեփական ձեռագիրը։

Այլ՝ մի այլ օրինակ զոր Babd կը նշանակէ Տփխիսեան տիպը, կը կարդայ.

“Դիցն ամանորոյ, ամաբեր նոր պտղոց”։

Ինձ ամենէն տրամաբանականը այս վերջինը կը թուի, զի նշանակութիւն չունի “ամանորաբեր նոր պտղոց”ը որ մի եւ նոյն իմաստի աւելորդ կրկնութիւնն է, մինչ “ամաբեր նոր պտղոց”ը թէ աւելորդ տարր չունի եւ թէ “ամանորաբեր”ը յստակապէս կ՚ստուգաբանէ։

Աւելի ուղիղ պիտի լինէր եթէ այս ընթերցուածին տրուէր նախապատուութիւնը։

Ո՛ր ձեւով ալ լինի սակայն, սա պարզ է որ ամենուն մէջ ալ տիրողը նոյն եւ մի կոչումն է, "ամանորաբեր"ը որ Նոր տարւոյ խնամակալ Դիքը կը յատկանշէ։

Սոյն آورد վերջաւորութեամբ ուրիշ անունի մ'ալ կը հանդիպինք Գ. Փարպեցւոյն քով. "Վասաւուրտ Կարքային" (Տփխ. տիպ), "Վասավուրտ Հարքային" (Վենետ.)։

Երկրորդ անդամը ինձ անծանօթ է, այլ առաջինին մէջ յայտնի "վաս" եւ "աւուրտ" տարրերքը կը տեսնեմ։

"Վաս"ը որ եւ "վահ" եւ وه եւ به, մեր յայտնի "վեհ"ն է, ասոր տարակոյս չկայ, եւ միշտ բարձր եւ ազնուական եւ վսեմի յայտարար (Վասպուրական, Վասակ, եւն.)։

Իսկ "աւուրտ"ը յայտնի آوردن ի արմատն է, ինչպէս վերը տեսանք։ Որով բառին ամբողջական իմաստը կը լինի՝ "վեհաբեր", թերեւս վեհատուր իմացմամբ՝ ինչպէս են Տիրատուր, Տրդատ, Միհրդատ, եւն։

Եթէ չունենայինք "վեհ"ով ուրիշ բարդութիւններ, այս միակը երկբայելի մնար գուցէ, սակայն բաւական թուով ուրիշ օրինակներ ալ ունինք որ սովորութիւնը կը հաստատեն, զ. օ. Վեհ-Արտաշիր, Վեհ-Դենշապուհ, Վեհ կաւատ, Վեհ Միհրշապուհ, Վեհշապուհ, Վեհ-ռոտ (دود وه = երեւելի գետ), Վեհսաճան, Վեհվեհնամ, եւն։

Ինչպէս միւս կողմէն ալ ունինք "Նիւշապուհ" (Ապար աշխարհի Նիւշապուհ շա-

հաստանը) որ այժմու "Նիշափուր„ն է, մօտ Խորասանի, յանուն Շապհոյ այսպէս կոչուած՝ իբր Նոր դաստակերտ Նորին։

*Սօս* — Արայեան Արայի պայազատին, Անուշաւանին անունն էր սա ինչպէս կ'ուսանինք Խորենացիէն։

"Արայեանն Արայ մեռանի . . . թողլով արուզաւակ . . . զԱնուշաւանն որ Սօս անուանէր, քանզի ձօնեալ էր ըստ պաշտամանց ի Սօսին Արամենակայ որ յԱրմաւիր„ (Ա. Ի.)։ Բայց այս ընթերցուածը կը կորսնցնէ իւր զօրութիւնը մի այլ ընթերցուածով՝ "Սօսանուէր„ որ Գ. Մագիստրոսի ալ վկայութեամբ մեծ ոյժ կ'առնէ։

"Սօսին յԱրմաւիր՝ առ դրան ապարանիցն արքունի, զոր Անուշաւանն պատուէր՝ Արայեանն մանուկ, վասն որոյ Սօսանուէրն կոչիւր„ (Հին հաւ. Հայ. 70—71)։

Ցայտնի է որ այս տեղ շփոթութիւնը երկու գրչութեանց նմանութենէն յառաջ եկած է

Սօսանուանիւր (կամ — էր)
Սօսանուէր։

Երկուքն ալ անյարմար չեն թէեւ, տեղւոյն եւ իմաստին նայելով, բայց մին հարկաւ ընտրելի է, իբր աւելի հարազատ եւ վաւերական։

Արդ՝ պարսկերէնի մէջ سوس կամ سوسن բառն ունինք որ թէ մեր ծանօթ շուշան ծա-

ղինը կը նշանակէ եւ թէ՛ ծառ մը զոր տճ. բառագիրք ج.صنو կ'իմանան եւ զոր արաբք ج.صنو (սանուպէր) կը կոչեն։

Մեր մէջ "սօս"ին նշանակութիւնը այնչափ ալ որոշ չէ. Ա.Բ.ը՝ "բարտի, ճերմակ կաղամախ, տճ. չընար" կը դնէ. Հ. Գ. Ալ.ը Բորոքով ուրիշ ծառ մը կ'իմանայ. եւ կը յիշեմ որ ժամանակին՝ բանասիրաց մէջ բարտիի եւ կաղամախի շուրջը վէճ մ'ալ եղած էր։

Ինչ որ է, մեզ հետաքրքրողը ծառին ոչ այնքան տեսակը որքան անունն է եւ յոյժ կարեւոր կը նկատեմ ար. ج.صنو կոչումը որ միանգամայն սանուբէր, սանովբր եւ սանուբէր ալ է (ասոր. սէնէվէր) որ ճիշդ ու ճիշդ մեր սանուբէրը կը պատկերացնէ, նախավանկ Սօսն ի բաց բառնալով եւ սա-ին հոս ալ տալով իւր ով ձայնը զոր ուրիշ շատ առիթներով տեսանք (նուէր = նո + ւէր = նո + պէր = ج.ڤ)։

Կարելի չէ՞ ենթադրել թէ Սօս էր իսկզբան բառը եւ ընդօրինակող մը Սանուբէրն ալ իբր բացայայտիչ լուսանցքը դրած ըլլայ եւ յետոյ ուրիշ ընդօրինակողէ մը երկուքը միացած եւ բնագրին մէջ անցած լինին, իբր մի բառ երկու Ս երէն մէկը ինալով, իբր հակառակ հյ.ի ոգւոյն։

Կամ թէ Սանուբէր էր բառը եւ մի եւ նոյն դիտմամբ եւ ընթացքով Սօսին հետ միացած։

Պիտի ըսուի թերեւս թէ ج.صنو ը արաբերէն է կամ Սեմական շարքէն, բայց դիտելի է որ

سوس եւ سوسن ալ յստակ պ. չեն, այլ ասորական ծագում կը ցուցնեն, Šōšan, յն. Σουσάννα, Σωσάννα, պհլ. (փոխառաբար անշուշտ) שן שׁו, ինչպէս եւ Շաւշ = ասոր. šuš, ար. sūs, եբր. Šūšan (Hb.)։

Կամ թերեւս, իբր մի ա՛յլ կարելի ենթադրութիւն, երկու բառն ալ միանգամայն գործածուած էին “Սօս-Սանուէր„, իբր մին միւսոյն բացայայտիչը։ Դէպքը եզական եւ նորանշան չէ, շատ լաւ կը յիշեմ լսած ըլլալ “սուսամպէր„ անունը զոր եթէ ուրիշներն ալ Հաստատեն՝ ամէն տարակոյս կը փարատի։



# ՎՐԻՊԱԿՔ

| Էջ | Տող | Սխալ | Ուղիղ |
|---|---|---|---|
| 17 | 3 | քնհինչպ· | ինչպ· |
| 18 | 3 | եւ նոյն ի թ աք | եւ նոյն |
| 18 | 18 | همیب | عیب |
| 22 | 18 | նմի | ն մի |
| 25 | 14 | կարեւորութեան | կարեւորութիւն |
| 25 | 15 | ամէնէն | ամենէն |
| 25 | 20 | տգիտութիւնէն | տգիտութենէն |
| 33 | 29 | ողմամբ | աղմամբ |
| 37 | 14 | յոյամ· | յայամ |
| 39 | 28 | գովիստ | գովեստ |
| 48 | 7 | برن. | بزن. |
| 48 | 11 | خوان | خواب |
| 48 | 12 | کلو | کاو |
| 58 | 5 | بیدان | بیداد |
| 64 | 4 | سنم | ستم |
| 64 | 16 | հ.յգ· | հյ· |
| 65 | 6 | ապերատ | ապիրատ |
| 65 | 28 | մինշեւ | մինչեւ |
| 70 | 18 | անտեզի | անտեղի |
| 72 | 21 | կշրադատաբար | կշռադատաբար |
| 72 | 22 | բերելու | բերելոյ |
| 73 | 16 | բարդութիւնքդ | բարդութիւնք |
| 76 | 4 | մագուցն | մոգուցն |
| 78 | 3 | ساراه | شاهراه |

| Էջ | Տող | Սխալ | Ուղիղ |
|---|---|---|---|
| 81 | 10 | իը | կր |
| 95 | 6 | وناولها | وناولها |
| 106 | 8 | پتيث | پتيت |
| 111 | 9 | Հպ. էն | Հ. Պ. իէն |
| 127 | 11 | չաստուածն էր որ Գրուժը | չաստուածն էր Գրուժը |
| 127 | 23 | Գեյան | Գ. իլան |
| 157 | 18 | կը մենէ | կը մեկնէ |
| 168 | 17 | دشبام | دشنام |
| 172 | 5 | լաուէր | բաուէր |
| 185 | 24 | շատ | պատ |
| 207 | 24 | չհակառակեր | չհակառակիր |
| 237 | 27 | եՀծան | Հեծան |
| 247 | 17 | վերլուցաքար | վերլուծաքար |
| 277 | 10 | يدا | يدا |
| 277 | 16 | avaut | avant |
| 309 | 26 | կարբէն | կարգէն |
| 330 | 17 | թարքմանած | թարգմանած |
| 352 | 17 | رزك. | زرك. |
| 354 | 2 | ծագամ | ծագում |
| 276 | 4 | Աւետայի | Աւեստայի |

## ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆ

Ներկայ աշխատասիրութեան տպագրութիւնը աւարտեցաւ 1920 թուին։ Ողբացեալ Հօրս հետագայ ձեռագրաց մէջ կը կարդամ թէ ստուգած եւ հաստատած է girîb (Տ. Գրիւ) բառին գործածութիւնը Պարսից մէջ։

Նիւ-Եօրք 1920։ Մ. Յ. Թ.

